a

| | | | | |
|---|---|---|---|---|
| | ՆԽԶ | ԼԹ | Ը | |
| —Մամլնա հռսրուածն յԱպահունիս յամսեանն մեհեկի Ժ (10)[54] | ՆԽԷ | Խ | Թ | |
| | ՆԽԸ | ԽԱ | Ժ | —Մահ Դաւթի կորապաղատին։ |
| | ՆԽԹ | ԽԲ | ԺԱ | |
| | ՆԾ | ԽԳ | ԺԲ | |
| | ՆԾԱ | ԽԳ | ԺԳ | |
| | ՆԾԲ | ԽԵ | ԺԳ | |
| | ՆԾԳ | ԽԶ | ԺԵ | |
| | ՆԾԳ | ԽԷ | ԺԶ | |
| | ՆԾԵ | ԽԸ | ԺԷ | |
| | ՆԾԶ | ԽԹ | ԺԸ | |
| | ՆԾԷ | Ծ | ԺԹ | |
| | ՆԾԸ | ԾԱ | Ի | |
| | ՆԾԹ | ԾԲ | ԻԱ | |
| | ՆԿ | ԾԳ | ԻԲ | |
| —Եղև շարժումն յԱպահունիս և բազում գեղս աւերէ։ | ՆԿԱ | ԾԳ | ԻԳ | |
| | ՆԿԲ | ԾԵ | ԻԴ | |
| | ՆԿԳ | ԾԶ | ԻԵ | |
| | ՆԿԳ | ԾԷ | ԻԶ | |
| | | | oo | |
| —Եղև հրաման ի Վասլէ շինել զՆարբին։ | ՆԿԵ | ԾԸ | Ա | —Տէր Պետրոս։ |
| | ՆԿԶ | ԾԹ | Բ | —Սպանաւ թագաւորն Բուլխարաց ի գաւ րաց իւրոց և տիրէ Վասիլն։ |
| | ՆԿԷ | Կ | Գ | |
| | ՆԿԸ | ԿԱ | Գ | |
| | ՆԿԹ | ԿԲ | Ե | |
| —Թագաւորն Սենաքերիմ փոխէ զգաւառս Հայոց և որդաւքն իւրովք գնաց ի Հոռոմս։[56] | ՆՀ | ԿԳ | Զ | |
| | ՆՀԱ | ԿԳ | Է | |
| | ՆՀԲ | ԿԵ | Ը | --Պատերազմի ընդ թագաւորին Վրաց և բազում արիւն հեղու և աւարէ զերկիրն նորա։ |
| | ՆՀԳ | ԿԶ | Թ | |
| | ՆՀԴ | ԿԷ | Ժ | |
| —Թագաւորէ Կոս[ա]նդին նորին եղբայր ամս Գ (3)։ | ՆՀԵ | ԿԸ | ԺԱ | |
| | | oo | | |
| | ՆՀԶ | Ա | ԺԲ | |
| —Ռոմանոս ամս Գ (3) թագաւ[որէ]։ | ՆՀԷ | Բ | ԺԳ | |
| | ՆՀԸ | Գ | ԺԳ | —Բերկրոյ հարուածոն և Ուրհայի մի ամ էր։[57] |
| | | oo | | |
| | ՆՀԹ | Ա | ԺԵ | |
| | ՆՁ | Բ | ԺԶ | |
| --Թագաւորէ Միխայլ։ | ՆՁԱ | Գ | ԺԷ | |
| | | oo | | |
| | ՆՁԲ | Ա | ԺԸ | |
| | ՆՁԳ | Բ | ԺԹ | |
| | ՆՁԳ | Գ | Ի | |
| | ՆՁԵ | Գ | ԻԱ | |
| | ՆՁԶ | | ԻԲ | |
| | ՆՁԷ | | ԻԳ | 58 |
| | ՆՁԸ | | | |
| | ՆՁԹ | | | |
| | ՆՂ | | | |
| | ՆՂԱ | | | |
| | ՆՂԲ | | | |
| | ՆՂԳ | | | |
| | ՆՂԴ | | | |
| | ՆՂԵ | | | |

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Տե՛ս և հմմտ. «Եւսեբի Պամփիլեայ Կեսարացւոյ Ժամանակականք երկմասնեայ», մասն Բ, Վենետիկ, 1818, էջ 260, «Սամուէլի քահանայի Անեցւոյ հաւաքմունք ի գրոց պատմագրաց», Վաղարշապատ, 1893, էջ 52։

2. Եվսեբիոս Կեսարացին այսպես է գրում. «Ցուցանէ Գաղիղէացի յապստամբութիւն գնդէայս զորագնաց» (նույն տեղ, էջ 260), հմմտ. Ս. Անեցի, էջ 52։

3. Ե. Կեսարացին գրում է. «Ի ժամ սաստիկ սով եղև, մինչև վաճառել յառնկացն գրիւ մի՝ քսան և եօթն դենարի և կիտոյւ» (նույն տեղ, էջ 260)։

4. Այս վկայությունը թերևս աղճատված է. Ե. Կեսարացու մոտ կարդում ենք. «Նուաղութիւն արեգական եղև. և Աւգոստոս վախճանեցաւ» (էջ 262)։ Հմմտ. Ս. Անեցի, էջ 52։

5. Հմմտ. Ս. Անեցի, էջ 52, իսկ Ե. Կեսարացին համառոտ հիշում է այդ քաղաքները (նույն տեղ, էջ 262)։

6. Իրականում Տիբերիոսին հաջորդում է Գայոսը և ապա Կլավդիոսը, որոնց իշխանության տարիների գումարը կազմում է մոտավորապես 20 (հմմտ. Ե. Կեսարացի, նույն տեղ, էջ 266, 268, Ս. Անեցի, էջ 54, 55)։ Մեր հեղինակը այս երկու կայսրների իշխանության շրջանը միացրել է և նշել մեկի անունով, որը բնագրում չի ընթերցվում, բնագիրը վնասված լինելու պատճառով։

7. Հմմտ. Ե. Կեսարացի, նույն տեղ, էջ 268։

8. Խոսքը վերաբերում է հրեա պատմիչ Հովսեփոս Փլավիոսին, որի մասին Ե. Կեսարացին գրում է. «Փղաւիոս Յովսէպոս պատմագիր՝ եղև զօրավար հրէից ի պատերազմին» (նույն տեղ, էջ 272)։

9. Հրեաների ապստամբությունը տեղի է ունեցել 66—67 թթ.։

10. Տիտոսը Երուսաղեմի գրավումը ավարտել է 70 թ. սեպտեմբերին։

11. Ե. Կեսարացին ավելի պարզ է գրում. «Երկուց ամսոց անուանք փոխեցան, սեպտեմբերի՝ Գերմանիկոս. և հոքտեմբերի՝ Պարթենիկոս» (էջ 276), հմմտ. Ս. Անեցի, էջ 56։

12. Հմմտ. Ե. Կեսարացի, էջ 278։

13. Ե. Կեսարացին մի փոքր այլ բան է գրում. «Ներուաս յախտէ ապականեցաւ ի Սաղուստեան բուրաստանոն» (էջ 280)։

14. Ե. Կեսարացու մոտ կարդում ենք. «Ադրիանոս մահկանացու ջրգողութեամբ անկեալ վախճանեցաւ ի Բախսէ» (էջ 286)։

15. Բնագիրը թերևս աղճատված է։ Ե. Կեսարացին այդ առթիվ գրում է. «Երուսաղէմացւոց եկեղեցւոյն առաջին ի հեթանոսաց եկաց եպիսկոպոս Մարկոս ամս ԺԶ, ի նըւազել ի թլպատութենէն եպիսկոպոսաց» (էջ 286)։

16. Այս վկայությունը մի փոքր աղճատվել է։ Ե. Կեսարացին գրում է. «Մարկոս Աւրեղիանոս, որ և Բերոս Ղուկիոս Աւրեղիոս կոմոդոս ամս ԺԹ» (էջ 288)։ Հմմտ. Ս. Անեցի, էջ 58։

17. Ե. Կեսարացու վկայությունը շեղվում է. «Կոմոդոս յանկարծակի վախճանեցաւ հերձեալ յապարանսն Բէստիղիանոսի» (էջ 204)։

18. Ս. Անեցին վերցնելով Ե. Կեսարացուց, գրում է։ «Որոգինէս ի դպրոց էր յԱղեքսանդրիայ», էջ 66, հմմտ. Եվս. Կեսարացի, էջ 298։

19. Տե՛ս և հմմտ. Ե. Կեսարացի, էջ 208։

*20. Հռոմի հիմնադրումը հաշվում են 753 թ. ն. մ. թ.։ Նշանակում է Հռոմի կառուցման 1000 տարին լրանում է մեր թվարկության 247 թ., կամ Փիլիպոս կայսր իշխանության 4-րդ տարում։*

*21. Այսինքն Անահիտին՝ «Անահտա»։*

*22. Տիեզերական երկրորդ ժողովը տեղի է ունեցել 381 թ. Կ. Պոլսում։ ՃԾ (150) վերաբերում է ժողովի մասնակիցների քանակին, դրա համար էլ կոչվել է «150-ի ժողով»։ Ս. Անեցին ևս գրում է. «ՅՂԶ Ս. ժողովն Կոստանդնուպօլսի, ՃԾ-իցն՝ վասն հոգեմարտին Մակեդոնի» (էջ 67)։*

*23. Բնագրում անունը բաց է թողել, խոսքը վերաբերում է Ջավեն կաթողիկոսին։*

*24. Խոսքը վերաբերում է Ավարայրի նշանավոր ճակատամարտին, որը տեղի է ունեցել 451 թ. մայիսի 26-ին։ Իսկ Քաղկեդոնի ժողովը կայացել է նույն տարում։*

*25. Այս բառը հեղինակը գուցե օգտագործել է «ինքնակալ» նշանակությամբ, նկատի ունենալով հունարեն «αυτοχρατωρ» բառը, թեև բառի կազմությունը նույնանում է լատիներեն «auctor» բառին, իսկ վերջինս ունի նաև առաջնորդ, վարիչ, սկզբնահայր, հիմնադիր, իշխան իմաստը։*

*26. Խոսքը վերաբերում է Հով. Բ. Գաբեղյան կաթողիկոսին, որը, ըստ Օրմանյանի, կաթողիկոս եղել է 557—574 թթ.։ Սա Գաբեղյան նահանգի, այժմ Կաղզվան, Սյունձեղվան գյուղից էր։ Բնագրի «Սնձվայ» բառը Սյունձեղվան անվան մի ձևն է, կան նաև այլ ձևեր, Սնձեղվան, Ձեղվան, Սյունձեղ, Սիննեղ։*

*27. Եթե բացառենք այս վկայության այն մասը, թե Հուստինիանոս կայսեր 34-րդ տարում է գրվել հայոց թվականը, ապա մնացածը ստույգ է։ Ասողիկը ևս այդպես է գրում. «Եւ Հայք յայսմ ամի և յայսմ ժամանակի ի բաց կացին ի Յունաց հաղորդութենէ։ Եւ էր Յունաց թուականն ՅԴ՝ յէ ամէն Փիլիպպոսի կայսեր» (Ստեփաննոսի Տարօնեցւոյ Ասողկան պատմութիւն տիեզերական Ս. Պետերբուրգ, 1885, էջ 83)։ Հռոմեական թվարկության առաջին հազարամյակը վերջանում է 247 թ., այստեղից էլ (դրան ավելացրած) 304 թ. կստանանք 551.*

*28. Պետք է լինի Տիբեր, իշխել է 578—582 թթ.։*

*29. Պարսիկները թված վայրերը նվաճել են տարբեր ժամանակներում՝ 604—605 թթ. նրանք նվաճեցին Դարան, հաջորդ մի քանի տարում՝ Եդեսիան, Անտիոքը, Դամասկոսը և այլն, 614 թ. պաշարեցին և գրավեցին Երուսաղեմը. 619 թ.՝ Ալեքսանդրիան և Եգիպտոսը* (акад. Я. А. Манандян „Маршруты персидских походов императора Ираклия", Византийский временник", III, 1950. *էջ 133—134)։ Այս նվաճումները կատարել է Խոսրով Փարվեզի զորավար Շահվարազը։ Մանրամասնությունները տես Սեբեոսի մոտ («Պատմութիւն Սեբէոսի եպիսկոպոսի ի Հերակլն» ՍՊԲ, 1879, էջ 76—82, 89—97)։*

*30. Հերակլ կայսրը պարսիկների դեմ կռվելու համար Կ. Պոլսից դուրս եկավ 622 թ. ապրիլի 5-ին։ 622—623 թթ. ձմեռելով Պոնտոսում, 623 թ. ապրիլին շարժվեց Հայաստան, ապա Ատրպատական։ 627 թ. դեկտեմբերի 12-ին Նինվեի մոտ Հերակլի և Պարսից զորավար Ռահզադի միջև տեղի ունեցած վճռական ճակատամարտում պարսիկները պարտվում են, իսկ Ռահզադը սպանվում է։ Այս անհաջողություններին ավելանում է գահակալական պայքարը, թագավոր է դառնում Կավատը, որը 628 թ. փետրվարի 29-ին սպանում է Խոսրով Փարվեզին* (акад. Я. А. Манандян „Маршруты персидских походов императора Ираклия", *նույն տեղում, էջ 135—153)։*

*31. Եթե ճիշտ է բնագրի մեր վերականգնումը, ապա 663 թվի զատիկն ընկնում է ապրիլի 2-ին և այդ օրն էլ իբր խավարել է արեգակը, սակայն աստղաբաշխական տվյալներն այլ բան են ասում, համաձայն պրոֆ. Օպպոլցերի հաշվումների 663 թվին արևը խավարել է մայիսի 12-ին և նոյեմբերի 5-ին (*„Canon der Finsternisse" von Hofrath Prof. Th. Ritter v. Oppolzer. [Denkschriften der kaiserlichen Akademie der Wissenschaften Mathematisch — Naturwissenschaftliche classe], zweiundfünfzigster Band, Wien, 1887, *էջ 180)։*

*Եթե ընդունենք, որ հայոց 112 թվականը համապատասխանում է մեր թվարկության 663 թվին, ապա պրոֆ. Օպպոլցերի տվյալների համաձայն արեգակը այդ թվին խավարել է մարտի 22-ին, ապրիլի 21-ին, սեպտեմբերի 14-ին և հոկտեմբերի 14-ին (նույն տեղ, էջ 180), նույն տարվա զատիկն էլ կընկնի ապրիլի 6-ին։*

*32. Տես, Ասողիկ, էջ 101։ Դավթի նահատակությունն Ասողիկը նշում է Վարդանակերտի ճակատամարտի տարում, իսկ վերջինս տեղի է ունեցել 703 թ.։*

33. Ս. Անեցին 724 և 727 թվերի միջև հիշում է «խողասպանութիւն» դեպքը (էջ ․․7, աևռ և հմմտ. «Մեծին Վարդանայ Բարձրբերդեցւոյ պատմութիւն տիեզերական», Մոսկվա, 1861, էջ 102). մեր բնագրում եղածն արդյոք այս բառի աղճատված ձևն է, թե՞ մի ուրիշ բառ։ Ինչպես հայտնի է, խալիֆ Եզիդ II-ը, մի ֆանատիկոս մարդ, կարգադրում է կոտորել խոզերին, որպես «անսուրբ» կենդանիներ (տե՛ս, Ղևոնդ երեց, Պատմութիւն Հայոց, ՍՊԲ, 1887, էջ 100)։

34. Մանազկերտի ժողովը տեղի է ունեցել 720 թ., (տե՛ս, Ասողիկ, էջ 102—103), ժողովի կանոնները տես, Ս. Անեցի, ծանոթ. 36, էջ 287—288։

35. Իմա, Վահան Գողթնեցի, 706 թվին Նախճավանում սպանված հայ նախարարներից մեկի, Գողթանի իշխան Խոսրովի որդին, որը 707 թվին, տակավին չորս տարեկան հասակում, ուրիշների հետ գերվեց և պահվեց Դամասկոսում։ Այստեղ նա դառնալով իսլամի հետևորդ, վերանվանվում է Վահապ։ Հետագայում, 719 թվին հատուկ թույլտվությամբ և կարճ ժամանակով գալիս է Հայաստան, հայրենի գավառը և հրաժարվում ետ վերադառնալուց։ Այդ բանի համար նրան նահատակում են 737 թվի (Թ. Արծրունի, էջ 404) մարտի 18-ին, ուրբաթ օրը (տե՛ս. Օրմանյան «Ազգապատում», էջ 861, մանրամասնությունները նույն տեղում §§ 549, 580, 585—589). Հայսմավուրքում նահատակությունը նշված է 736 թ. մարտի 28-ին (№ 1512, էջ 388բ, իսկ նահատակության պատմությունը՝ էջ 386ա—388բ)։ Վարքաբանությունը տե՛ս, «Սոփերք հայկականք», Վենետիկ, հատ. ԺԳ, էջ 61—91։ Վահանի նահատակության տարեթվի, ինչպես մեր բնագրի, այնպես էլ Ս. Անեցու (էջ 87) վկայությունները ստույգ չեն։

36. Մեր մատենագիրներից միայն Ղևոնդ պատմիչն է իմաստավորում այս բառը նա նկարագրելով արաբական խալիֆաթի հարկային ծանր քաղաքականությունը, Տրդատ Ա Օձմնեցի կաթողիկոսի մասին, ուշագրավ հետևյալ տեղեկությունն է հաղորդում. «Թէպէտ և բազում անգամ բողոքէր իշխանն Սահակ և հայրապետն տէր Տրդատ որ ի տաճէ Նախարարացն Վանանդ գաւառի՝ այլ ոչ լուաւ զաղաղակ նոցա Եզիտն որ ի վերայ հարկին էր յաշխարհս». («Պատմութիւն Ղեւոնդեայ մեծի վարդապետի Հայոց», էջ 136, ընդգծումը մերն է—Վ. Հ.)։ Այս երկու վկայությունների համաձայն նշանակում է Տրդատ Ա Օձմնեցին ունեցել է ազնվական ծագում։ Եվ եթե ժամանակագրի վկայությունը բանասիրական առումով աղերս չունի Ղևոնդ երեցի վերոհիշյալ վկայության հետ, համենայն դեպս դա ցույց է տալիս առաջարկվող բնագրի բազմաթիվ տեղեկությունների հավաստի լինելը։ Ոչ միայն մեր մատենագիրները (Ասողիկ «Պատմութիւն տիեզերական», Ս. Պետերբուրգ, 1885, էջ 105, Ս. Անեցի, էջ 87 և այլն), այլև կաթողիկոսների հնագույն ձեռագիր ցանկերը (Հովհ. Դրասխանակերտցու ցանկը № 579, էջ 197բ, իսկ սրա երկու տարբերակը նշում են 27 տարի №№ 1486, էջ 92ր, 2966, էջ 89ա, Անանուն ցանկեր №№ 7117, էջ 93ա, 1721, էջ 132ր և այլն) սրա կաթողիկոսության տարիները նշում են 23 տարի, մինչդեռ մեր հեղինակը նշում է 20 տարի։ Մ. Օրմանյանը ընդունում է 741—764 թվերը («Ազգապատում», էջ 869)։

37. Համառոտ այս վկայությունը հավանաբար վերաբերում է արաբների դեմ 774—775 թթ., հայերի համաժողովրդական ապստամբության արձագանքներից մեկին։

38. Բնագրում նոր ձեռացագրով գրված է. «տէր ողորմեայ, տէր ողորմեայ»։

39. Արաբ զորավար Բուղան Հայաստան արշավել է 852 թ.։

40. Թ. Արծրունին գրում է, որ Բուղան Վասպուրականում ապստամբելուց հետո, գնաց Դվին ձմեռելու. «և արձակեաց զզօրսն իւրաքանչիւր զօրագլխօք եկելոց առ նա յամենայն ազգաց յաշխարհէս Հայոց՝ երթալ ձմերել յիւրաքանչիւր տեղիս բնակութեանց...», («Թովմայի վարդապետի Արծրունւոյ պատմութիւն տանն Արծրունեաց», Թիֆլիս, 1917 թ., էջ 276)։

Նկատի ունենալով այս հանգամանքը, ըստ երևույթին խոսքը վերաբերում է արաբական նման մի զորագնդի և հայերի միջև 852—853 թթ. տեղի ունեցած ընդհարումներից մեկին, որի մասին իմանում ենք այս բնագրով։ Կաճկաքարը գյուղ է Վանանդում. այդ առիթով հիշում է Ասողիկը. «Եւ ապա եկեալ Հոռոմղի արանցն ի Վանանդ ի գիւղն Կաճկաքար՝ կոտորեցան ի ձեռն Սահակայ որդւոյ Իսմայելի» (էջ 144)։

41. Որդի Քուրդկայ, Մամիկոնյանների վերջին ներկայացուցիչը։ Բուղան գերեց և ուղարկեց Բաղդատ (Թ. Արծրունի, էջ 310), բայց բանդից փախավ և փորձում էր ամրանալ Բագրևանդի Գաղանածակ բերդում, սակայն «ոչնի եօթն աւուրց մեռանի» (Վ. Արևելցի, էջ 111)։

*42. Այս Արասը Հայոց սպարապետ Սմբատ Խոստովանողի (Ս. Անեցի, էջ 93) կամ Աբլարասի անդրանիկ որդին էր, Աշոտ Ա Բագրատունի թագավորի եղբայրը։ Այստեղ նշըված կռվի մասին Թ. Արծրունին հիշում է մութ կերպով. «յիշեցուցանէր զոր ինչ գործեաց ընդ Աշոտ ե ընդ աշխարհ նորա, յուշ առնէր և զքաջութիւն արիութեան նորա, և զի չզօրեաց կալ ընդդէմ նորա...»։ (էջ 282)։*

*43. Բնագրում այնուհետև այլ ձեռացագրով ավելացրել են. «Տէր Յիսուս, Քրիստոս, միածին որդի Աստուծոյ, ողորմեաց Կատային, Շրուանշահին ե Գրիգորոյ ե իւրոցն ամենայն ի կենդանեաց և մեռելոց ասածցուք, ամէն ի քէն տէր ողորմէ կեցո տէր»։*

*44. Այս վկայությունը վերաբերում է Սմբատ Ա-ի և կայսիկների (Ապահունեաց գավառում) միջև տեղի ունեցած կռվին։ Թ. Արծրունին իր պատմության 3-րդ դպրության ԻԸ գլխի առաջին մասում (էջ 394—396), բավական մանրամասն է խոսում այս կռվի մասին, որտեղ սարեթիվը, ինչպես և մեր բնագրում, նշված է 902 թ. ներքո։ Սակայն Թ. Արծրունին չի տալիս ճակատամարտի վայրը, մինչդեռ մեր բնագիրը այն նշում է Ուշի կամ Ցուշի։ Թ. Արծրունին այլ առիթով այն կոչում է դաշտ, որը գտնվում է Մանազավյան նահանգի վերին մասում. «Նւ եղև յետ մեծ պատերազմին, որ յառաջ քան զգրուցացդ գրելոյ ելին, ի գլուխս Մանազաւեան նահանգին և Ցուշոյ դաշտին»...(էջ 413)։ Ցուշի դաշտը պետք է լինի Ուշտունիքից դեպի արևմուտք, այժմյան հարճկան—Սպարկերտի սահմաններում։*

*Ջաքարիա սարկավագը ևս հիշում է Ցուշի անունով բնակավայր, որտեղ Հովանավանքը հողային տարածություն է ունեցել...«ի Ցուշի զՍերմակորուսան՝ Բ օր. («Պատմագրութիւն», հատոր երրորդ, Վաղարշապատ, 1870, էջ 29), իհարկե Արագածոտն գավառի այս գյուղը տարբեր է Թ. Արծրունու հիշած Ցուշի դաշտից։*

*45. Դեպքերին ժամանակակից պատմիչ Հովհ. Դրասխանակերտցին մանրամասն նկարագրելով Աֆշինի արշավանքը Հայաստան, չի նշում տարեթիվը («Յովհաննու կաթողիկոսի Դրասխանակերտեցւոյ պատմութիւն Հայոց», Թիֆլիս, 1912, էջ 166—167, հմմտ. նաև Ասողիկ, էջ 161)։*

*16. Տես և հմմտ. Ասողիկ, էջ 170։*

*47. Շարժական տոմարի հաշվով արևի խավարումը պետք է տեղի ունեցած լինի մեր թվականության 939 թ. հուլիսի 12-ին, ուրբաթ օրը, բայց ըստ պրոֆ. Օպպոլցերի հաշվումների՝ հուլիսի 19-ին (էջ 206)։*

*48. Ասողիկը ևս հիշատակում է այս անձնավորության մասին (էջ 188, 198, 234)։ Սալարյան առանձին դինաստիան հաջորդեց Սաջյաններին, որոնք իշխում էին Արդաբիլից հարավ, Ադրբեջանի և Գիլանի միջև բնակվող Դեյլեմիկներ լեռնային ցեղին։*

*49. Խոսքը վերաբերում է Դադիկ Արծրունի թագավորի (909—943 թթ.) որդի Աշոտ Դերենիկին։ Ասողիկի համաձայն վերջինիս հայրը՝ Դադիկ Արծրունին մահացել է 943 թ. (էջ 281), որին հաջորդել է որդին՝ Դերենիկը, իշխելով 17 տարի, մահացել է 958 թ. (էջ 281)։ Ըստ երևույթին հավաստի է Ասողիկի վկայությունը, եթե Դերենիկի թագավորության տարիները հաշվենք ոչ թե 17, այլ 15, ընդունելով հայկական «է» (ժէ) և «ե» (ժե) տառերի սովորական շփոթումը (ինչպես կարծում է ակադ. Ստ. Մալխասյանցը Ասողիկի հրատարակության 146 ծանոթագրության մեջ, էջ 393), այստեղից էլ կստանանք 392 (943)+15=407 (958)։*

*50. Ասողիկը ևս հաստատում է սարեթիվը, առանց ամիսը և օրը նշելու (էջ 183)։ Շարժական տոմարի համաձայն հայոց 415 թ. տրե ամսի 13-ը կհամապատասխանի մեր թվականության 966 թ. հուլիսի 9-ին, իսկ վերջինս ոչ թե չորեքշաբթի է, այլ երկուշաբթի։ Նշանակում է ինչ որ սխալ կա։ Ասողիկի պատմության ձեռագրերից մեկը ունի ոչ թե հայոց 415, այլ 416 (էջ 183)։ Ս. Անեցին ևս հաստատում է այս վերջին գրույթը, ըստ նրա արևը խավարել է մեր թվականության ՋԿԹ (969) թվին (էջ 100), և որովհետև նրա մոտ հայ և մեր թվականության հարաբերությունը 1:553 է, ուստի 969 թ., եթե հանենք 553, կստանանք դարձյալ 416։ Այս հաշվով 967 թ. հուլիսի 9-ը կլինի երեքշաբթի։ Եթե հաստատ է բնագրի չորեքշաբթի օրը, այն ժամանակ արևը խավարած պետք է լինի հայոց ՆԺԶ թվի տրե ամսի ԺԴ (14)-ին, որը կհամապատասխանի 967 թ. հուլիսի 10-ին, իսկ այդ օրն իրոք չորեքշաբթի է, և իսկապես, պրոֆ. Օպպոլցերի հաշվումները ևս հաստատում են, որ արևը խավարել է 967 թ. հուլիսի 10-ին (տես, նույն տեղ, էջ 208)։ Այսպիսով, պետք է սրբագրել մեր բնագրի ոչ միայն «տրէ ԺԴ»-ն դարձնելով «տրէ ԺԴ» (ըն-*

ունենալով «Դ» և «Դ» տառերի շփոթության սովորական փաստը), այլև «ՆԺԵ»-ն՝ «ՆԺԶ», որպեսզի ստանանք 967 թ. հուլիսի 10, չորեքշաբթի։

51. Այս վկայությունը վերաբերում է Խլաթի ամիրապետ Բատի ասպատակություններին։ Ասողիկն այդ մասին գրում է. «Վերըստին չինէ (Բատը—Վ. Հ.) զքաղաքն Մանազկերտ. և սրով և գերութեամբ անմարդացոյց զգաւառն Տարօնոյ, յաւարի առեալ զքաղաքն Մուշ...» (էջ 192)։ Բնագրի երկրորդ մասը վերաբերում է Վասիլ II-ի դեմ Վարդ Սկլյառոսի կազմակերպած ապստամբությանը և կռիվներին։

Ժամանակագրության մեջ վերոհիշյալ երկու դեպքն էլ դրված են միևնույն տարեթվի տակ՝ 975։ Սակայն 975 թ. վերաբերում է միայն Տարոնի գերեվարությանը. որ այս ճիշտ է, երևում է Ասողիկի վկայությունից, վերջինս Վարդ Սկլյառոսի ապստամբությունը և կռիվները նշելով 976 թ., Տարոնի գերևարությունը դնում է «և մինչ գայսուս (էջ 192), նշանակում է մինչև 976 թ.։ Այս դեպքերի մասին հիշում է նաև Ա. Լաստիվերտցին (տես «Պատմութիւն», Վենետիկ, 1901, էջ 21), Մ. Ուռհայեցին («Ժամանակագրութիւն», Վաղարշապատ, 1898, էջ 33—34)։

52. Սույն կռվի մասին Ասողիկը գրում է, որ Դողթանի ամիրա Աբուսլփոն արշավում է Վասպուրական, իսկ հայերի բանակը գնում է Աբուսլփոյին ընդառաջ և իջևանում «ի Ծուաշ գաւառի, ի տեղին որ կոչի Բակեար...» (էջ 190), որտեղ և լինում է կռիվը։ Այս նույն դեպքը Մ. Ուռհայեցին նշելով հայոց 425 թ. ներքո և մանրամասն պատմելուց հետո (էջ 30—33) ավելացնում է. «Այս ինչ եղև ի Ծուաշ գաւառին Հայոց աշխարհին, ի գեւղն՝ որ կոչի Բակ, սահմանակից Վասպուրականայ» (էջ 33)։ Կարծում ենք, խոսքը վերաբերում է միևնույն տեղանվան, որը X դարում, Ասողիկի ժամանակ, եղել է բերդ և կոչվել է Բակեար, իսկ հետագայում Մ. Ուռհայեցու ժամանակ, XII դարում, այն դարձել է գյուղ և կոչվել Բակ։ Անվան հենց այս ձևն էլ գործածել է մեր հեղինակը։ Այս գյուղը կարելի է տեղադրել Խոյ (Հեր) քաղաքից հյուսիս, պատմական Ծուաշռոտ գավառում։

53. Այս վկայությունն ինչ որ եղելությունների արձագանք է, բայց ստույգ չկարողացանք որոշել։

54. Ատրպատականի էմիր Մամլունի այս արշավանքի մասին մանրամասն խոսում է Ասողիկը, որի համաձայն հայ և վրաց միացյալ զորքը հասնում է Ապահունեաց գավառի Ծմբո գյուղը, մի բարձրադիր վայրում ամրանում Մամլունի բանակի դիմաց (էջ 269—274)։ Հայ-վրացական և արաբական զորքի միջև առաջին ընդհարումը, ըստ Ասողիկի, տեղի է ունենում «յամսեամտին արեգ ամսոյ, յերեքշաբաթւոջ աւուր ընդ առաւօտանալն...» (էջ 271), ըստ այսմ կստանանք 998 թ. հոկտեմբերի 18-ին (Հայոց 447 թ. արեգ ամիսը սկսվում է 998 թ. հոկտեմբերի 17-ին երկուշաբթի), այդ օրն էլ իրոք երեքշաբթի է։ Մինչդեռ ժամանակագրության համաձայն Մամլունի պարտությունը տեղի է ունենում Հայոց 447 թ. մեհեկի 10-ին, որը կհամապատասխանի 998 թ. սեպտեմբերի 26-ին։ Մ. Ուռհայեցին ևս հիշում է այս դեպքերը (էջ 34—37), նշելով Հայոց 432 և 434 թվերի արանքում։ Տես և համտ. Ս. Անեցի, էջ 104։

55. Խոսքը վերաբերում է Տաո-Կղարջեթիի կյուրապաղատ Դավթի մահվան։ Համաձայն Ասողիկի, Դավիթը «վախճանեցաւ յաւուր մեծի փրկչական Զատկին, ի ՆԽԹ. թուականին» (էջ 275)։ Ըստ այսմ 1000 թ. մարտի 31-ին։ Համտ. Ս. Անեցի, էջ 104։

56. Տես և համտ. Մ. Ուռհայեցի, էջ 48—49, Ս. Անեցի, էջ 107։

57. Մի տարվա տարբերությամբ (1028 թ.) Ս. Անեցին նշում է, որ «ի սոյն ժամանակի առաւ Բեկրի ի Տաճկաց» (էջ 106), իսկ ըստ Ա. Լաստիվերտցու Միխայիլի թագավորության ժամանակ «եղև մեծ կոտորած զօրացն Հոռոմոց ի բերդաքաղաքն, որ կոչի Բերկրի»։ Եւ այնուհետև նա նկարագրում է այդ անց ու դարձը («Պատմութիւն Արիստակեայ վարդապետի Լաստիվերտցւոյ», էջ 37—38)։ Խոսքը հավանաբար վերաբերում է սելջուկների ասպատակություններից մեկին։

58. Բնագրում 163ա էջի երկրորդ կարգի սյունակների աջ կողմում, վերից վար ուղղությամբ, ժամանակագրություն կազմողը թողել է հետևյալ հիշատակարանը «Տէր Յիսուս Քրիստոս միածին որդի Աստուծոյ ողորմէա Գիչլին և Աղիզմամին և զաւակաց նոցա՝ տէր Սարգսի[ն], Կարապետին և Մելքիսեդեկա և մեղաւոր աւաղէրէց Յովաննէսի, որդւոյ Գիչլի, որ զգրկունքս գնեցի և յետ ՄԾԴ (254) ամի, զցանկս յաւրինէցի ի ՈՀԴ (1225) թուականիս։

II

## ՀԵԹՈՒՄ ՊԱՏՄԻՉԻ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ (XIII դ.)

*Հեթում Պատմիչի «Պատմութիւն խրոնիկոնին»-ը մինչև այժմ հրապարակված չի եղել։ Այն գտնվում է Մատենադարանի № 1898 ժողովածուի 123ա—167ր էջերում։ Որքան մեզ հայտնի է, նրա մասին առաջին անգամ 1893 թ. տեղեկություն է տվել Ա. Տեր-Միքելյանը Ս. Անեցու ժամանակագրության ներածականում[1], ուր նա խոսում է իր օգտագործած ձեռագրերի մասին։ Այնուհետև վերոհիշյալ ձեռագիրը և նրա բովանդակությունը մանրամասն նկարագրվել է հայագետ Ֆ. Ն. Ֆինկի կողմից 1901 թվին[2]։ Ավելի ուշ փորձել են սույն բնագիրը հրատարակել ռուսերեն թարգմանությամբ, սակայն ինչ-ինչ պատճառներով այդ նախաձեռնությունը չի իրականացվել[3]։*

*Այս ժամանակագրությունն ընդգրկում է 1294 տարվա եղելությունների նկարագրություն, սկսած 1 թ., մինչև 1294 թ. սրանք վերաբերում են Հռոմի կայսրներին և պապերին, ֆրանսիական. պատմության Մերովինգների և Կարոլինգների շրջանին, խաչակրաց արշավանքներին, խաչակիրների հիմնադրած լատինական թագավորություններին ու իշխանություններին և այլն։ Աշխատության առաջին մասի վկայությունները համառոտ են և գերազանցապես վերաբերում են Հռոմի կայսրներին ու պապերին, սակայն որքան գալիս ենք դեպի հեղինակին մոտիկ ժամանակները, սկսած* XII *դարի վերջին տասնամյակներից, տեղեկություններն այնքան դառնում են ընդարձակ և մանրամասն։ Այս բնագրում սկսած 1173 թվից տեղ են գտել նաև Կիլիկիայի հայերին վերաբերող բազմաթիվ տեղեկություններ։ Սրանցից երկուսը, որոնք գտնվում են ձեռագրի 151ր էջի ներքևի լուսանցքում, սկսվում են Հայոց թվականով, իսկ մնացածները նշված են մեր թվականությամբ, շարադրված նյութին զուգընթաց։*

*Այս բավական հետաքրքիր աշխատության հեղինակը հայագետ Ֆ. Ն. Ֆինկի կարծիքով եղել է Հեթում Պատմիչը և մեջբերելով սույն բնագրի*

---

[1] *«Սամուէլի քահանայի Անեցւոյ հաւաքմունք ի գրոց պատմագրաց», Վաղարշապատ, 1893, Առաջաբան, էջ Ը։*

[2] „Zeitschrift für armenische philologie" (Herausgegeben von F. N. Finck), Marburg, 1901. I—II *տետր։ «Պատմութիւն խրոնիկոնին»-ի մասին տես* 1 *տետր, էջ 12։*

[3] *Այս աշխատության հայերեն և ռուսերեն բնագրերը գտնվում են Հայկական ՍՍՌ Գիտ. ակադեմիայի Պատմության ինստիտուտի արխիվում, գործ № 106։*

խորագիրը, ավելացնում է. «Վերնագիրը մինչև հիմա մեզ հասած միակ ձանոթ, համառոտ վերսիան է 1076—1307 թվերի մասին՝ Ժամանակագրութիւնք երեք հարիւր և մէկ ամաց կարճ ի կարճոյ հաւաքեալ ի զանազան պատմութեանց, Հայ, Ֆռանկ և Ասորի. շարագրեալ պարոն Հեթմոյ տեառն Կոռիկոսոյ, և արար զայս բանք ի թուին Հայոց ՉԽԵ և յամի մարդեղութեան տեառն ՌՄՂԶ»[1]։

Մեզ հայտնի չեն Ֆ. Ն. Ֆինկի փաստերը, սակայն նրա ենթադրության առաջին մասը ստույգ է։ Խորագրում Հեթում Պատմիչը շատ պարզ գրում է. «...Հեթումս տէր Կուռիկաւսոյ փոխեցի ի ֆռանգ գրոց»։ Իսկ այս նշանակում է, որ Հեթում Պատմիչը տարբեր աղբյուրներից՝ այսինքն «ի ֆռանգ գրոց», հաւաքել է առանձին տեղեկություններ և դրանք գուցե ոչ միայն թարգմանել բառի նեղ իմաստով, այլև համառոտ կերպով բովանդակությունը շարադրել ու կազմել առաջարկվող բնագիրը։ Սրան համապատասխան բնագրում գտնում ենք բազմաթիվ օտարազգի բառեր, որոնք մատնում են, թե այս աշխատությունն ինչ լեզվից կարող էր թարգմանվել։ Թարգմանությունը չի կատարված մաքուր հայերենով։ Բնագրում հանդիպում ենք հարյուրից անցնող հունարեն, արաբերեն, լատիներեն և ֆրանսերեն բառերի։ Օտար բառերի ճնշող մեծամասնությունը ֆրանսերեն են, որոնց թիվն անցնում է չորս տասնյակից, օրինակ նոյել (noel), դուկ (dux), պրֆաս (préface), ոմաճ, ումաճ, ամաճ (homage), վեսք (evesque, vesgue), հառնեզ (harneis, harnez), ադր (otreier, otroi), լիճ (lige), կրամայր (grammaire), գադր (quatre), դամփլ (temples), արծվեսք (eveque) և այլն, իսկ լատիներեն բառերը, անշուշտ, անցել են ֆրանսերենի միջոցով։ Այս բառերի մի մասը, անտարակույս, կիլիկյան հայերի լեզվում գործածական էր, իսկ մյուս մասն էլ, հավանաբար, սկզբնական բնագրից նույնությամբ անցել է այս բնագրին։ Որ Հեթում Պատմիչն այս տեղեկությունները քաղել է ֆրանսերեն բնագրերից, այդ երևում է, ի միջի այլոց, նաև նրանից, որ բնագրում երկու անգամ հանդիպում ենք «լատին» բառին. նշանակում է նա տարբերել է այդ երկու՝ «լատին» և «ֆռանգ» հասկացողությունները և «ի ֆռանգ գրոց» ասելով նա հասկացել է ֆրանսերեն աղբյուրները։

Այսպիսով, մեզ զբաղեցնող բնագիրը պատկանում է Հեթում Պատմիչի գրչին։ Սակայն սույն ժամանակագրությունը չպիտի շփոթել, ինչպես վարվում է Ֆ. Ն. Ֆինկը, միևնույն հեղինակի անունով հայագիտության հայտնի մի այլ ժամանակագրության հետ[2]։

Հեթում Պատմիչի «Թաթարների պատմություն» աշխատության առընթեր լատին գրչի վկայությունից իմանում ենք, որ այդ աշխատությունը «...գրէ նա զանձնէ իւրմէ, Իսկ թարգմանիչ նորա եղև Նիկողայոս Սալկոնի, որ ի հրամանէ ծայրագոյն քահանայապետին Կղեմայ հինգերորդի ի քաղաքն Պիկդաւիոյ նաև զայս գիրս գաղղիերէն գրեաց, որպէս և զխարդ թե-

---

[1] Zeitschrift fur armenische philologie. 1-es Heft, էջ 12։ Նշված բնագրի հեղինակի հարցը մանրամասն քննված է սույն ժողովածուի առաջին հատորում (տես ՄԺ, 1, էջ 68—70), որտեղ որպես հեղինակ մատնացույց ենք արել Հեթում Բ. թագավորին և ոչ թե Հեթում Պատմիչին։

[2] Այս երկու բնագրի աղերսի հարցը քննված է առաջարկվող ժողովածուի առաջին հատորում, տես ՄԺ, 1, էջ 71—73։

յագրեցաւ նմա ի Հեթմոյ, և ապա ի լատինն վերածեաց ըստ կարի յամի տեառն 1307»[1]։

Այս վկայությունը մեզ ենթադրել է տալիս, որ Հեթում Պատմիչը ֆրանսերեն վարժ չէ իմացել՝ այսինքն, նա ֆրանսերենից հայերեն կարողացել է թարգմանել, բայց ընդհակառակը՝ ոչ։ Ֆրանսերենից հայերեն կատարված սույն թարգմանության մեջ գտնում ենք ոչ միայն բազմաթիվ ֆրանսերեն բառեր, այլև անհարթ թարգմանության հետքեր, օրինակ՝ բնագրում կարդում ենք. «Սա (Լևոն III-ը) կարգեաց պապ զՊատրիսիոս», այս հատվածից երևում է, որ պապ Լևոն III-ը Պատրիսիոսին կարգել է պապ, մինչդեռ իրականում Հռոմ քաղաքի պատրիսիոսի նախաձեռնությամբ Լևոն III-ը դառնում է պապ, հենց այդպես էլ գրում է Մարտինոս Լեհացին (տես ներքևում, էջ 82, ծանոթ. 28)։ Նման մի քանի վկայություններ ես հանդիպում ենք։

Հեթում Պատմիչի աղբյուրների մասին շատ դժվար է որոշակի ցուցումներ անել, սակայն եթե XIII դ. հեղինակ Մարտինոս Լեհացու ժամանակագրությունը համեմատենք այս բնագրի հետ, ապա կարող ենք նկատել, որ այդ երկու բնագրերի վկայությունների մի մասն իրար նկատմամբ ունեն շոշափելի կետեր. հենց այդ հանգամանքը մեզ ենթադրել է տալիս, որ Հեթում Պատմիչն իր տեղեկությունների մի մասը վերցրել է Մ. Լեհացու ժամանակագրությունից։ Դրանում համոզվելու համար դեմ առ դեմ կբերենք երկու բնագրերից մեկ օրինակ,

Հեթում Պատմիչ

«ՇԿ Եղև պապ ի Հռոմ Բելասիոս Երկրորդ ազգաւ Հռոմայեցի, կացեալ ամս Ժ, ամիսս Բ և աւուրս Ժ. յետ որոյ եկաց աթոռն առանց հայրապետի ամիսս Դ և աւուրս ԻԵ։ Սա ձեռնադրեցաւ առանց հրամանի իշխանութեան, վասն զի Լունկուպարտքն պաշարեալ էին զՀռոմ և սաստիկ աւերեալ զԻտալիա։ Առ սովաւ եղև այնչափ սաստիկ բազմութիւն անձրևաց, մինչ զի նմանեցուցանէին աւուրց ջրհեղեղին և այնպես մեծ հարուածս եղև, զի ոչ ոք էր լուեալ այնպիսի» (էջ 48)։

Մարտինոս Լեհացի

«ՇՁԷ Բէլաճիոս Երկրորդ, ազգաւ Հռոմացի, նստաւ ամս ԺԲ, ամիսս Ի, օրս Ժ, զտեղի եպիսկոպոս ամիսս Ջ, օրս ԻԵ. սա եղև եղեալ պապ առանց գիտելո և կամ իմացանելս աշխարհական իշխանաց... ի սոյն Բէլաճիոսիս աւուրքն Լօնպարտքն պաշարեցին զՀռոմ և բազում վնաս բերին անդ ես. և բազում աւեր լինէր յԻտալիա ի նոցանէ. ընդ այն ժամանակին անձրև սաստիկք և անչափ տեղանայր յերկրի և այնպէս էր ցասմնական, զի յաւիտեանց ոչ եղև այնպիսի յերկրի, մինչ զի ամենայն ոք ի մազկանէ ակն ունէր եթէ կրկին ջրահեղեղ լինելոց է յերկիր»[3]։

Սակայն, որպես կանոն, այս երկու բնագրերում համապատասխան վկայությունների տարեթվերը տարբեր են, իսկ Մ. Լեհացու տեղեկություններն առավել ընդարձակ։ Մեզ թվում է, որ Հեթում Պատմիչը, հավանաբար, վերջինիս ժամանակագրությունից քաղած տեղեկությունները ոչ թե թարգմանել է բառի նեղ իմաստով, այլ որևէ վկայության բովանդակությունը համառոտելով կրկին շարադրել։ Այնուամենայնիվ, նա միշտ այդ-

---

[1] «Հեթում Պատմիչ Թաթարաց», թարգմ. Մ. Ավգերյանի, Վենետիկ, 1842, էջ 4։

[2] Ներսես Պալիենցը XIV դարի կեսերին հայերեն թարգմանեց այս բնագիրը, որի չորս ընդօրինակությունները գտնվում են Մատենադարանում։

[3] № 2841, էջ 89բ։

*պես չի վարվել։ Բազմաթիվ տեղեկություններ, որոնք կարծեք թե Մ. Ուռհայեցու ժամանակագրությունից է քաղված, բայց դրանք նա իրականում վերցրել է մի երրորդ աղբյուրից, որովհետև այս դեպքում երկու բնագրերը նկատելիորեն շեղվում են միմյանցից։ Վերջինս գուցե օգտագործել են երկու հեղինակներն էլ։ Հնարավոր է, որ Մ. Ուռհայեցուց վերցրած վկայությունները համառոտելուց հետո, նա սրանք գրել է ուրիշ աղբյուրներից վերցրած, իր կարծիքով ավելի հավաստի, տարեթվերի տակ։ Գուցե դրանով բացատրել, թե ինչու այս երկու բնագրերում էլ համապատասխան տեղեկությունները գրված են տարբեր տարեթվերի տակ։ Իսկ եթե այս ենթադրությունը հավաստի չէ, նշանակում է այդ տեղեկությունները քաղված են բոլորովին ուրիշ, մեզ համար առայժմ անծանոթ, աղբյուրներից։ Մնացած աղբյուրների մասին այլ բան չենք կարող ասել, սակայն, երկբայելի չէ, որ ժամանակագրության վերջին տեղեկությունները, սկսած XIII դ. 70—80-ական թվերից, պատկանում են Հեթում Պատմիչի հեղինակությանը։ Անկասկած վերջինիս է պատկանում նաև հայերին վերաբերող վկայությունները։*

*Նկատի ունենալով այն հանգամանքը, որ սույն բնագրում առկա են բազմաթիվ հետաքրքիր տվյալներ հայերի մասին և, որ ամբողջովին բնագիրը հետաքրքրության առարկա կարող է դառնալ մասնագետների համար, նպատակահարմար գտանք հրապարակել համարյա ամբողջական ձևով, դուրս թողնելով Հռոմի պապերի երկար շարանի մեծ մասը (մինչև 1185 թ.), որոնք ոչինչ տալ չեն կարող ընթերցողին ու հետազոտողին և ոչինչ չեն կարող ավելացնել այդ մասին եղած, բազմիցս անդամ ստուգված ու հրապարակված գրականության վրա, կամ թե որոշ սրբագրություններ մտցնել նրա մեջ։ Դուրս ենք թողել (սկզբի էջերից) նաև մի շարք «փաստեր», քաղված ավետարանից, կամ վաղ քրիստոնեության շուրջը հորինված ավանդություններից, որոնք որևէ գիտական արժեք չեն ներկայացնում։*

II

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԽՐՈՆԻԿՈՆԻՆ ԶՈՐ ՆՈՒԱՍՏ ԾԱՌԱՅՍ ՔՐԻՍՏՈՍԻ ՀԵԹՈՒՄՍ ՏԷՐ ԿՈՒՌԻԿԱՒՍՈՅ ՓՈԽԵՑԻ Ի ՖՌԱՆԳ ԳՐՈՑ Ի ԹՈՒԻՆ ՀԱՅՈՑ ՉԽԵ (=1296)[1] 123ա

ի Քրիստոսէ

*Ա (1) Ցառաջին ամի ծննդեանն Քրիստոսի եղև գալ մոգուցն յերկրպագութիւն։*

*Եւ ընծայիլն տեառն ի տաճարն։*

*Եւ գնալն յԵգիպտոս։*

*Եւ էր կայսր Հռոմա յաւուրս յայս Հոգտաւիոս, որ կոչեցաւն Աւգոստոս, որդի Հոգտաւիոս կայսեր յազգէն Էնիասոյ։ Սա յետ ծննդեանն Քրիստոսի եկաց յաթոռ կայսերութեանն ամս ԺԴ (14)։ Սա արար զամենայն տիեզերս ընդ միով իշխանութեամբ։ Բայց այնպիսի մեծ կայսր ոչ էր առանց արատոյ, այլ ունէր յինքն բաղում պոռնկական ախտ մինչև ի մերձաւորսն իւր և ննջէր ի մէջ ԺԲ (12) կանանց և ԺԲ (12) կուսից[2]……*

*ԺԵ (15) Մեռաւ Հոգտաւիոս կայսրն Հռոմա, որ կոչէր Աւ-* 123բ
*գոստոս Կլաւդիոս. և յետ նորա եկաց Տիբերիոս կայսր Հռոմայեցոց ամս ԺԸ (18) մինչև յամի խաչելութեան Փրկչին մերոյ, Սայ էր խորթ և փեսայ Հոքտաւիոսի և կոչեցաւ Կլաւդիոս Տիբերիոս և էր այր իմաստուն ի պատերազմի և բարեբախտ և վարժեալ իմաստութեամբ գրոց և ունէր գեղեցիկ պատասխանատվութիւն, բայց էր ագահ և չարաբարոյ։*

*ԻԶ (26) Եկաց Պեղատոս դատաւոր ի վերայ Հրէից……*

*Խ (40) Գրեաց Մաթէոս Աւետարանիչն զիւր աւետարանն։*

*Ընդ այսու ժամանակաւ էր կայսր Հռոմայեցոց Գայիոս Գալիկուլա, որ թագաւորեաց ամս Գ (3) և ամիսս Ժ (10) և աւուրս Ը (8) և էր յաւուրս Պետրոսի Առաքելոյն։ Սա էր այր ամբարիշտ և պոռնկեցաւ ընդ երկոսին քորսն իւր և ընդ դուստր քաւր իւր, զոր ծնեալ էր ի նմանէ։*

*ԽԴ (44) Սատակեցաւ Գայիոս և թագաւորեաց Կլաւդիոս, կացեալ ամս ԺԴ (14), և ամիսս Է (7), և աւուրս Է (7)։*

*Ի ժամանակս սորա Մարկոս Աւետարանիչն գրեաց || զիւր* 124ա
*աւետարանն և յայնմ ժամանակի եղև սով սաստիկ։*

ի Քրիստոսէ

ԽԵ (45) Սուրբն Պետրոս եկաց պապ ի Հռոմ։......

ԾԲ (52) Ներոն եհան ի Հռոմայ զՀրեայսն։

ԾԵ (55) ԶՊաւղոս առաքեալն տարան կապանաւք ի Հռոմ։

ԾԶ (56) Եկաց Ներոն կայսր յաւուրս սրբոյն Պետրոսի ամս ԺԳ (13), ամիս Է (7), աւուրս ԺԸ (18)։ Սա խախտեաց և նուաղեցոյց յոյժ զկայսերութիւնն Հռոմա և եսպան բազումք ի մեծամեծաց քաղաքին և էր թշնամի ամենայն բարեաց առն։ Սա եսպան զեղբայրն իւր, և զկին իւր, և զմայր իւր, և զվարդապետն իւր, և այրեաց հրով զՀռոմ քաղաքն։ Եւ սա արար զառաջին հալածանս քրիստոնէից, վասն որոյ ընկեցին զնա յաթոռոյ Հռոմայեցիք և սպանաւ ի մէջ ճանապարհին Սալայիր և Նոմէնդանու։......

ԿԵ (65) Սուրբ առաքեալն Պետրոս և Պաւղոս վկայեցին ի Ներոնէ ի միում աւուր, յետ համբարձմանն տեառն ԼԸ (38) ամի։

ԿԸ (68) Վէսպիանոս գնաց Ցերուսաղէմ ի վերայ Հրէից։

ԿԹ (69) Նահատակեցաւ Մարկոս Աւետարանիչն։

Հ (70) վախճանեցաւ Ներոն և թագաւորեաց Սապա, այս 124բ.
Սապա եկաց կայսր Հռոմա Ը (8) ամիս։

ՀԱ (71) Եկաց պապ ի Հռոմ Լինոս, որ էր յաշխարհէն Իտալիոյ, յերկրէն որ կոչի Դուսգան, որդի առն որում անուն էր Սկոյլան։ Սա եկաց պապ ամս ԺԱ (11), ամիս Գ (3) և աւուրս ԺԲ (12)։ Սա հրամանաւ Պետրոսի առաքելոյն սահմանեաց՝ զի ամենայն կին որ մտանիցէ յեկեղեցոյն ծածկոյթ կալցի գլխոյն իւրոյ։ Սա նահատակեցաւ և թաղեցաւ առ գերեզմանաւ առաքելոյն Պետրոսի ի Վաթիկանն Թ (9) աւուրբ յառաջ քան զկաղանդացն հոգտեմբերի։ Առ սովաւ էր ի Հռոմ կայսր Վէսպիանոս, և եկաց այս Վէսպիանոս կայսր ամս Թ (9), ամիս ԺԱ (11) և աւուրս ԻԲ (22)։ Զսա կացուցին կայսր ի Պաղեստինէ. առ սովաւ ազգն Հրէից նուաճեցան ընդ իշխանութեամբն Հռոմայեցոց։ Սա և որդին իւր Տիտոս գերեցին զԵրուսաղէմ, վասն որոյ սիրեցին զնա առաւել Հռոմայեցիքն։ Եւ վախճանեցաւ ի տկարութենէ որովայնի։

Ձ (80) Եկաց կայսր ի Հռոմ Տիտոս ամս Բ (2)[3]։......

ՁԷ (87) Եկաց կայսր ի Հռոմ Դոմէտիանոս։ Սա եղև այր 125ա.
ամբարիշտ և եսպան յազգէն իւր և ի մեծամեծացն Հռոմա զբազումս։ Եւ աւանդեաց Հռոմայեցոցն ի կարգ աստուածոցն կոչել զանուն նորա։ Սա արար զերկրորդ հալածումն քրիստոնէից յետ Ներոնի և սպանաւ յիւրոց սպասաւորացն։

ՂԳ (93) Եկաց պապ ի Հռոմ Կլէմայնս, ազգաւ Հռոմայեցի՝ յերկրէն Սիլիոն, որդի Ֆաստինեայ, կացեալ ամս Թ (9), ամիս Բ (2) և աւուրս Ժ (10)։ Սա գրեաց բազում գրեանս և կարգեաց Է (7) դաս կարգաւորս և առաքեաց զմի ոք ի նոցանէ ի կողմ մի աշխարհիս, վասն տեղեկանալոյ նահատակութեան մարտիրոսացն և գրելոյ զպատմութիւնս նոցա, թէ որպէս կատարեցան։ Սա ընտրութեամբ կոչեցաւ առաջին պապ Հռոմա, յետ սրբոյն

ի Քրիստոսէ

Պետրոսի, բայց եղև երրորդ աթոռակալ յետ սուրբ առաքելոյն։ Սա առաքեաց ի Բարիզն զսուրբն Դիոնէսիոս և ի Լիոն զսուրբն Ֆատին և ի Ներպունն զսուրբ Պաւղոս և ի Դուրսն զսուրբն Կրասիանոս և ի Մայնսն զսուրբն Ճուլիան և յետոյ նահատակեցաւ։

ՂԷ (97) Սուրբն Դիոնէսիոս նահատակեցաւ ընկերաւքն։

ՂԸ (98) Եկաց կայսր ի Հռոմ Ներվա ամս Ա (1) և ամիսս Դ (4)։ Սա դարձոյց ի յաքսորանաց զսուրբ աւետարանիչն Յոհաննէս[4]։

Ճ (100) Եկաց կայսր ի Հռոմ Տրայիանոս ամս ԺԹ (19)։ Սա յետ առնելոյ զԱսիա և զԲաբելոն գնաց մինչև ի յեզր աշխարհիս, մինչև ի նշանաւոր տեղիսն. ուր հասեալ էր Աղեքսանդր Մակեդոնացին։ Եւ ոչ իւրովի, այլ ի սայդրելոյ խորհրդակցացն իւրոց արար զերրորդ հալածումն քրիստոնէից։

ՃԲ (102) Եկաց պապ ի Հռոմ Անակտորոս Առաջին, յազգէն ‖ 125բ Յունաց, աթենացի, որդի Անտիոքու. կացեալ ամս Թ (9) ամիսս Բ (2) և աւուրս Ժ (10)։ Սա կարգեաց զյիշատակն սրբոյն Պետրոսի և շինեաց զտեղիքն ուր գերեզմանքն են պապերսյն Հռոմա. և թաղեցաւ առ գերեզմանաւ սրբոյն Պետրոսի, Գ (3)-ն ի յուլիսն։ Սա սահմանեաց զկլերիկոսքն լինել առանց մաւրվաց և առանց յերկայն մազի։......

ՃԺԱ (111) Եկաց պապ ի Հռոմ Եվարիստոս Առաջին, յազգէն Յունաց, որդի Ենիֆա, որ կոչէր Յուդաս, ի քաղաքէն Բեդղէհեմի։ Սա եկաց պապ ամս Ժ (10), ամիսս Է (7) և աւուրս Բ (2). եւ յետ սորա եկաց աթոռն առանց հայրապետի աւուրս ԺԳ (13)։ Սա սահմանեաց զտիթլն[5] ի Հռոմ քաղաք և կարգեաց զի Գ (3) քահանայ և Է (7) սարկաւագունս առընթեր կայցեն եպիսկոպոսին, յորժամ քարոզեսցէ զբանն Աստուծոյ, վասն վկայ լինելոյ ուղեղ քարոզութեանն[6]։

ՃԻԱ (121) Եկաց պապ ի Հռոմ Աղեքսանդր Առաջինն, յազգէն Հռոմայեցոց, որդի Աղեքսանդրու, կացեալ ամս Ը (8), ամիսս Ե (5) և աւուրս Բ (2). և եկաց աթոռն առանց հայրապետի աւուրս ԻԲ (22)։ Սա յաւել ի խորհուրդ պատարագին նշանաւոր ազաւթս առանձինն և կարգեաց զջուր աւրհնելն աղիւ։

Յայսմ ամի եկաց կայսր ի Հռոմ Ադրիանոս ամս ԻԱ (21)։ Սա երկրորդ անգամ հնազանդեցոյց զապստամբեալ Հրեայսն և վերստին շինեաց զքաղաքն Երուսաղէմ և կոչեաց յիւր անուն Էլիա։

‖ Յայնմ ժամանակի Աքիլևս Պոնտիկոս երկրորդ թարգմա- 126ա նիչ յետ եւթանասնիցն յայտնեցաւ։ Այս կայսր էր այր փառաւոր յամենայն իրս և կարգեաց աւրէնս կայսերականս զանազանս և շինեաց յանուն իւր սոյն մի ի քաղաքին Հռոմա։......

ՃԽԳ (143) Անտոնիոս եկաց կայսր Հռոմա ամս ԻԲ (22) և ամիսս Գ (3)։ Սա ազատեաց յաշխարհին Հռոմայ զամենայն հարկս եկեղեցեաց։ Սա փեսայ էր ‖ Ադրիանոսի և էր փառաւոր 126բ

այր և քաղցր ընդդէմ քրիստոնէից, վասն որոյ կոչեցաւ անուն
սորա Բիոս և Հայր։ Սա եթող զանձս բազումս յետ իւր և բազ-
մացոյց զհասարակաց ինչսն. և այնչափ բարեբախտ եղև, մինչև
ցանկային սմա յետ մահուան իւրոյ իբրև Հռոմիլոսին։......
ՃԾԴ (154) Եկաց պապ ի Հռոմ Անակլէտոս Առաջին, ազգաւ
Սուրիան, որդի Ցոհաննէսի, ի գեղջէ որ կոչի Մերութ, կացեալ
ամս Թ (9), ամիսս Գ (3) և աւուրս Դ (4)։ Սա կարգեաց զի
կլերիկոսքն փոքրեսցեն զհերսն և սափրեսցեն զգադաթունսն։......
ՃԿԵ (165) Եկաց կայսր Հռոմա Մարկոս Անտոնիոս Սէվիոս
եղբարբ իւրով Լիւսով, կացեալք ամս ԺԹ (19)։ Ի սոցանէ սկսաւ
ի Հռոմ լինել երկուս կայսերս ի միում տէրութեան։ Այս Մար-
կոս Թէպէտ և էր այր բարի, բայց ‖ յիւրոցն սկսաւ չորրորդ հա- 127 ա
լածանքն քրիստոնէից։ Եկաց պապ ի Հռոմ Սաւտիր Առաջին,
ազգաւ Գարանիացի, որդի Գունգարտա, ի քաղաքէն Ֆունտիսի,
կացեալ ամս Թ (9), ամիսս Է (7) և աւուրս ԻԱ (21). և եկաց
աթոռն առանց հայրապետի աւուրս ԻԲ (22)։ Սա կարգեաց, զի
հաւատաւոր կանայք մի մերձեսցին յուծեալ անօթս եկեղեցոյ
և ոչ խնկարկութիւն արասցեն ի սուրբ եկեղեցին և հրամայեաց
արկանել ի վերայ գլխոցն խլայս։
ՃՁԳ (183) Եղև կայսր ի Հռոմ Գաւստոս Ավրէլիոս հան-
դերձ Լիւսիաւ, որ կոչէր Նավրէլիայ, տիրեալ ամս ԺԳ (13)։......
ՃՂԷ (197) Եղև կայսր Հռոմա Էլիոս Փէրթոինաքս։ Սա էր
այր դժնեայ և ժլատ, կացեալ ամս ԺԴ (14)։ Ի սմանէ խնդրե-
ցին սինկղիտոսքն, զի թագաւորեցուսցէ զորդի իւր և զկին իւր
և նա ոչ կամեցաւ, վասն որոյ սպանաւ ի զաւրացն իւրոց։
Ցայնմ ժամանակի էր չորրորդ թարգմանիչն Սիմաքոս և Նար-
սիոս, եպիսկոպոսն Երուսաղէմի, փայլէր և պայծառանայր բազում
սքանչելաւք։ Դարգիլիան Ափրիկ ‖ եցի էր սքանչելի վարդապետ 127 բ
եկեղեցոյ և Որոգինէս էր ի դպրոց յԱղեքսանդրիա։......
ՄԺԱ (211) Եղև կայսր Հռոմա Անտոնիոս Կարսելայ, որդի
Սեվերեայ կայսեր, տիրեալ ամս Է (7) և էր այր չար։ Ի սորա
աւուրս գտաւ յԵրիքով Ե (5)—երորդ էտիսիուն գրեանքն, բայց
ոչ յայտնեցան դրուագքն[7]։
ՄԺԸ (218) Եկաց պապ ի Հռոմ Կալեստոս, սա առաջին յազ-
գէն Հռոմայեցոց, որդի Տիմէնիկոյ, ի քաղաքէն Հռաւանոյ, կաց-
եալ ամս Ե (5), ամիսս Բ (2) և աւուրս Ժ (10). և մնաց աթոռն
առանց հայրապետի աւուրս Զ (6)։ Սա շինեաց զտաճար սրբոյ
Աստուածածնին, յայնկոյս Դոյր գետոյ և սահմանեաց զԴադր
դամիլ պահքն, զոր պահեն ի Դ (4) եղանակս տարոյն։
ՄԻԲ (222) Եկաց կայսր ի Հռոմ Մարկոս, և տիրեաց ամս 128ա
Ա (1)։ Զսա և զորդի իւր սպանին նախտնձով։ Եւ յետ նորա եկաց
այլ ոմն Անտոնիոս անուն և տիրեաց ամս Գ (3)։ Ի սորա աւուրս
գտաւ ի Նիկոյպաւլիս Զ (6)-երորդ էտիսիուն գրեանքն և յայն
ժամ յայտնեցաւ Սարէլիոս։

ի Քրիստոսէ

*ՄԻԳ (223) Եղև պապ ի Հռոմ Ուրբանոս Առաջին, ազգաւ Հռոմայեցի, որդի Իուննիանի, կացեալ ամս Թ (9), ամիսս ԺԱ (11) և աւուրս ԺԴ (14)։ Եկաց աթոռն առանց հայրապետի աւուրս Լ (30)։ Սա շինեաց զամենայն սպասս եկեղեցոյ ոսկեղէնս և արծաթեղէնս և կլայկեղէնս. և դարձոյց զբազումս մկրտութեամբ, մանաւանդ զազնուական այրն զՎալէրիանոս, զայրն սրբոյն Սիլիսէ, որ քաջութեամբ ժամանեալ ի հանդէս նահատակութեան։*

*ՄԻԵ (225) Եկաց կայսր Հռոմա Աղեքսանդր, կացեալ ամս ԺԳ (13)։ Յաւուրս սորա Որոգինէս էր յոյժ անուանի յԱղեքսանդրիայ։ Սա կոչեցաւ յիւրոց զաւրացն Կեսար և ի սինկղիտոսացն՝ Ֆիրտոս Աւգոստոս։*

*Սա յաղթեաց պատերազմաւ զԲարսնաթն, բայց յետոյ հատին զգլուխ նորա ի Մանկուսն։......*

*ՄԽԱ (241) Եկաց կայսր Հռոմա Մաքսիմիանոս և տիրեաց* 128 բ
*ամս Գ (3)։ Սա կարգեցաւ առաջին կայսր յաւժարութեամբ ձիաւորացն Հռոմա առանց ընտրութեան սինկղիտոսացն, և սա յարոյց Ե (5)[9] հալածանս քրիստոնէից և յաղթեաց Թուրքացն[10] Գերմանիկոյ։*

*Գորդիանոս եկաց կայսր Հռոմա ամս Զ (6)։......*

*ՄԽԷ (247) Եկաց կայսր Հռոմա Փիլիպոս և որդի նորա Փիլիպոս. սա տիրեաց ամս Է (7) յաւուրս Ֆապիանոսի։ Սա եղև առաջին կայսր, որ հաւատաց ի Քրիստոս։ Ի սորա առաջի ամին եղև հազար ամ Հռոմա շինութեանն[11]։......*

*ՄԾԴ(254) Եկաց կայսր Հռոմա Տէսիոս, որ է Դեկոս[12], կացեալ* 129 ա
*ամս Ա (1) և ամիսս Բ (2)։ Սա եղև չար յամենայն իրս և յարոյց զԶ (6)-երրորդ հալածանսն քրիստոնէից։*

*ՄԾԵ (255) Եկաց կայսր Հռոմա Կալլոս և Վաւլէսիանոս և եկաց ամս Բ (2) և ամիսս Դ (4), յաւուրս սորա յայտնեցաւ հերձուածն Նաւատիոս։......*

*ՄԾԹ (259) Եկաց կայսր Հռոմա Վալէրիանոս և որդի նորա Գալիանոս, տիրեալ ամս ԺԵ (15)։ Սա մերկացոյց զԿոդի[13] և զաշխարհն Յունաց և զՄակեդոնիայ և զԱսիա և զՊոնտոս և սա պատերազմեցաւ ընդ Սաբուռիոս[14] արքայն Պարսից ի Միջագետս և յաղթեցաւ ի նմանէ։......*

*ՄԿԳ (263) Եղև պապ ի Հռոմ Դիոնէսիոս Մոնակացի, որոյ ազգութիւն ոչ է յայտնի, կացեալ ամս Բ (2) և ամիսս Գ (3)։ Սա կարգեաց զծխաւորսն և ետ նոցա եկեղեցիս || և հողվայրս և* 129 բ
*բաժանեաց զթէմս եպիսկոպոսաց[15]։......*

*ՄԿԹ (269) Եղև կայսր Հռոմա Կլաւդիոս, կացեալ ամս Ա (1) և ամիսս Թ (9)։ Սա յաղթեաց Կաւդացոց, որք աւերէին զԼիւրիկէ և զՄակեդոնիա։*

*ՄՀ (270) Եկաց կայսր Հռոմա Աւրէլիանոս կացեալ ամս Ե (5)։ Սա արար զԷ (7)-երորդ հալածանսն զԺԱ (11) ամացն։ Սա հարեալ կայծակամբք և առժամայն վախճանեցաւ։*

ի Քրիստոսէ

*ՄՀԴ (274) Եկաց կայսր Հռոմա Դասիտոս, տիրեալ ամս Է (7) և ամիսս Դ (4)։ Սա էր աղնուական և քաջ և յաղթեաց Բ (2) թագաւորաց։*

*ՄՀԵ (275) Եկաց կայսր Հռոմա Պրոբոս, կացեալ ամս Զ (6) և ամիսս Դ (4). զսորա հատին զերակսն և վախճանեցաւ......*

*ՄՁԱ (281) Եկաց կայսր Հռոմա Գլարոս հանդերձ որդով 130 ա իւրով Կարինիաւ և Նոմէրիանոսիւ, կացեալ ամս Բ (2) և հարեալ գնա կայծակն առ ժամայն վախճանեցաւ։*

*ՄՁԳ (283) Եկաց կայսր Հռոմա Դիոկղիտիանոս և Մաքսիմիանոս և Կոստանցիոս և Լիւսինիոս, կացեալ ամս ԺԳ (13)։ Սա այրեաց բազում գրեանս Աստուածաշունչս և հալածանս յարոյց քրիստոնէից ընդ ամենայն տիեզերս զամս Ժ (10)։*

*Սա առաջին զգեցաւ հանդերձս մարգրտաշարս և ակամբք պատուականաւք զարդարեալ և յետոյ սատակեցաւ մահացու դեղով։*

*ՄՁԷ (287) Եղև պապ ի Հռոմ Մարսէլինոս Առաջին Հռոմայեցի, որդի Պրաւլիկոյ, կացեալ ամս Է (7), ամիսս Բ (2) և աւուրս ԻԷ (27). եկաց աթոռն առանց հայրապետի, յետ սորա, ամս Է (7), ամիսս Զ (6) և աւուրս ԻԶ (26)։ Սա նեղեալ ի կայսերէն Դիոկղիտիանոսէ երկրպագեալ կռոց, բայց յետոյ զղջացաւ ի ժողովն, որ եղև ի Զամբայնն, խոստովանեալ զյանցանսն իւր առաջի ՃՀԱ (171) եպիսկոպոսաց և էարկ մոխիր ի վերայ գլխոյն և զգեցաւ մազեղէնս և ապաշխարեաց։ Եւ յայնժամ բարկացեալ Դիոկղիտիանոսի հրամայեաց և հատին զգլուխ (Sl) նորա և թաղեցաւ ի գերեզմանին Պրիսիլու ի ճանապարհին, որ կոչի Սալայր......*

*ՅԱ (301) Եկաց կայսր Հռոմա Վալէրիոս հանդերձ Կոս- 130 բ տանդեաւ և Լիւսինեաւ, կացեալ ամս Բ (2)։ Այս Կոստանդին ընդ ձեռամբ արար զՍպանիա և էառ ի կնութիւն զդուստր թագաւորին Բրդանիոյ, որ կոչէր Հէլէն, յորմէ ծնաւ Կոստանդիանոս մեծն։ Կոստանդիանոս եկաց կայսր Հռոմա ամս Լ (30), ամիսս Ժ (10)։ Սա առաջին քրիստոնեայ եղև ի կայսերացն։ Սա հրամաև ետ քրիստոնէից ժողովել համարձակութեամբ և շինել եկեղեցիս ի պատիւ Քրիստոսի։*

*Ի սորա ժամանակն սկսաւ հերձուածողութիւնն Արիանոսի, վասն որոյ հրամայեաց Կոստանդիանոս գումարել ժողովոյն ի Նիկիա հալածել զհերձուածսն։ Եւ առ սովաւ եղև գիւտ սրբոյ խաչին յԵրուսաղէմ ի Հէլլինեա մաւրէն իւրմէ։ Սա յետ յաղթելոյ Մաքսէնսիոյ և Լիւսինիոյ և Մաքսիմոյ և Սէվերիոյ մկրտեցաւ ի Քրիստոս ձեռամբ Սեղբրեստրոսի պապու, վասն սրբելոյ ի գոդութենէն, զոր ունէր, որ ետ եկեղեցոյն զամենայն կայսերական արժանաւորութիւնսն և ինքն փոխեցաւ ի Կոստանդինուպաւլիս և շինեաց զիւր ապաբանսն յերիս կողմս քաղաքին։......*

*ՅԶ (306) Եղև պապ ի Հռոմ Սեղբեստրոս Առաջին, ազգաւ 131 ա Հռոմայեցի, որդի Ըռաւփինեայ. կացեալ ամս ԻԳ (23), ամիսս Ժ (10) և աւուրս ԺԱ (11). յետ որոյ եկաց աթոռն առանց հայ-*

բապետի աւուրս ԺԵ (15)։ Հրամանաւ սորա եղև առաջին ժողովն ի Նիկիա ուր գումարեցան ՅԼԸ (338) հայրապետք ուղղափառք, որք խոստովանեցան զկատարեալ հաւատն։ Սա գրեաց բազում գիրս կանոնաց։ Սա մկրտեաց զկայսրն Կոստանդիանոս որ և առ ժամայն սրբեցաւ ի գոռութենէն։ Եւ ի սորա ժամանակն շինեաց կայսրն Կոստանդիանոս զտաճար սուրբ վկային Լաւրէնտիոսի ի ճանապարհին Տիպուրդինեա, ի տեղին ուր կոչի Վռան. ի վերայ այրին, և շինեաց զքանչելի սանդուղխսն, որ իջանէ ի գերեզման սրբոյն և կազմեաց զտաճարն մարմարիոնաւ և արտաքոյ ծածկեաց արծաթով։......

ՅԼԲ (332) Եղև պապ ի Հռոմ Յուլիոս Առաջին, ազգաւ Հռոմայեցի, որդի Ըռուսթինեայ, կացեալ ամս ԺԱ (11), ամիսս Բ (2) և աւուրս Է (7)։ Յետ որոյ եկաց աթոռն առանց հայրապետի աւուրս ԺԵ (15)։ Սա հրամայեաց և աւրէնս եդ զի կլերիկոսքն ոչ իշխեսցեն վկայութիւն տալ ի դատաստանի յատեանս դատաւորաց, բայց միայն յեկեղեցոջն։

ՅԼԳ (333) Եկաց կայսր Հռոմա Կոստանդին, որդի Կոստանդիանոսի ‖ 131 բ և Կոստանդիոս և Կոստաս եղբարք նորա, կացեալ ամս ԻԵ (25)։

Բայց եղբարք սորին յորժամ պատերազմեցան ընդ Հռոմ, կորուսին զպաւրութիւն իւրեանց. և յետոյ Կոստանդինն յաղթեաց և կալաւ զկայսերութիւնն և եղև քրիստոնեայ։ Եւ Կոստաս եղև արիանոս և յարոյց հալածանս քրիստոնէից ընդ ամենայն աշխարհն։

Եւ աւգնականութեամբ այս Կոստասի գնաց Արիոս ի Կոստանդինուպաւլիս հակաճառել ընդ ուղղափառսն վասն հաւատոյ. և յայնժամ հարկ եղև նմա ելանել յարտաքին պէտս և անդ յանկարծակի ի վայր հեղաւ ամենայն փորոտին և անդէն սատակեցաւ։ Յայսմ ժամանակի էր Տաւնաթն, որ գրեաց զարհեստ կրամայրին[16] և էր վարդապետ Ճէրոնիմոսի։ Եւ սուրբն Անտոնիոս միայնակեացն վախճանեցաւ յայնմ ժամանակի։ Եւ յայն ժամ փոխեցին զնշխարս սրբոյն Անդրէի և սրբոյն Ղուկասու առաքելայն ի Կոստանդինուպաւլիս։

ՅԽԳ (343) Եղև պապ ի Հռոմ Լիպէրիոս Առաջին, ազգաւ Հռոմայեցի, որդի Ակոստանաստասա, կացեալ ամս Ը (8), ամիսս Է (7) և աւուրս Թ (9). յետ որոյ եկաց աթոռն առանց հայրապետի աւուրս ԻԱ (21)։ Սա վարեցաւ յաքսոր ի կայսէրն Կոստասա, վասն ոչ համաձայնելոյ արիանոսացն և եկաց յաքսորս ամս Գ (3)։ Յետ որոյ աղաչանաւք Էվլրիարի և Վալանտէի կոչեցաւ յաքսորանացն, այլ նա ոչ կամեցաւ մտանել ի քաղաքն. կացեալ առ ժամանակ մի յեկեղեցոջն սրբոյն Աննայի։ Սա աւրէնս եդ քահանայից՝ աւրհնել զպսակս ամուսնութեան։

ՅԾԳ (353) Եղև պապ ի Հռոմ Փիլիքս Երկրորդ, որ էր հերետիկոս, ‖ 132 ա ազգաւ Հռոմայեցի, որդի Անաստասի, կացեալ ամս Բ (2), ամիսս Գ (3) և աւուրս Դ (4)։ Սա կարգեաց զի յորժամ

։ի Քրիստոսէ

ամբաստանութիւն լիցի ղեպիսկոպոսէ և կոչեսցի ի ժողովս անյապաղ գնասցէ ի ժողովն վասն քննութեան։ Յետ որոյ Լիպէրիոսն, զոր վերոյ յիշեցաք, եկաց դարձեալ յաթոռն ամս Ե (5), որ և հաւանեցաւ հերձուածոյն Արիոսի, վասն որոյ հրամանաւ Կոստասա կայսեր կոչեցաւ դարձեալ յաթոռ հայրապետութեանն, զի առ կենդանութեամբ այս Լիպէրիոսի արիանոսքն կացուցին յաթոռ հայրապետութեան զՓիլիքս և զԼիպէրիանոս առաքեցին յաքսոր։ Յայնժամ էր եկեղեցոյ մեծ հալածումն։ Եւ յետոյ հրամանաւ Կոստասի Արիանոսի հատին զգլուխ նորա։ Յայնմ ժամանակի էր սուրբն Իլարիոն եպիսկոպոս աշխարհին, որ կոչէր Բոդեր։......

ՅԾէ (357) Եկաց կայսր Հռոմա Յուլիանոս ամս Բ (2) և ամիսս Թ (9)։ Սա թոռն էր Կոստանդիանոսի և այնչափ ցանկացաւ կայսերական աթոռոյն մինչ զի եթող զքրիստոնէական կրաւնոն և յարոյց հալածանս քրիստոնէից, յետ որոյ յայտնապէս հարեալ ի հրեշտակէ Աստուծոյ սատակեցաւ։

ՅԾԹ (359) Եկաց կայսր Հռոմա Յոբիանոս, կացեալ ամիսս Է (7)։ Սա քրիստոնեայ էր։ Սա և Սարուտիոս[17] արքայն Պարսից խաղաղացեալ ընդ միմեանս թաղեցին զմարմինն Յուլիանոսի։
‖ Յետ որոյ կացեալ Վալէրինտիանոս և Վալանտ եղբարք տիր- 132 բ
եալ ամս ԺԱ (11)։ Սա եղև քրիստոնեա և յաղթեաց, որոց կոչէին Սնէսք[18]։ Այլ եղբայր սորա Վալանտ եղև Արիանոս կամեցեալ ջնջել զուղղափառ քրիստոնեայս, այլ եղբայրն ոչ ետ թոյլ նմա։....

ՅՀ (370) Եկաց կայսր Հռոմա Վալանդ հանդերձ Գրանսիանոսիւ և Վալէրիանոսիւ, կացեալ ամս Ե (5)։ Ի սոցա աւուրս սուրբն Ամբրոսիոս եպիսկոպոսն Մելանու սրբացաւ։

Եւ սուրբն Մարգին եպիսկոպոս քաղաքին, որ կոչի Դուրս, արար բազում սքանչելիս։

ՅՀԴ (374) Եկաց կայսր Հռոմա Կրասիանոս Վալէնտիանոսիւ և Թէոդոսիւ կացեալ ամս Զ (6)։ Յայնմ ժամանակի հրամանաւ Թէոդոսի կործանեցին զտաճար կռոցն։

ՅՀԸ (378) Եղև պապ ի Հռոմ Սիրիկոս Առաջին Հռոմայեցի, որդի Տիպուրսիէ, կացեալ ամս ԺԵ (15), ամիսս ԺԱ (11) և աւուրս ԺԵ (15). յետ որոյ եկաց աթոռն առանց հայրապետի աւուրս Ի (20)։ Սա եդիտ զմանիքեցիսն և առաքեաց զնոսա յաքսորս։ ‖ Եւ կարգեաց, զի մի հաղորդեսցին ընդ հաւատացեալսն 133 ա
ի սուրբ պատարագն և հրամայեաց զի էթէ ոք ի նոցանէ զըղջացեալ դարձցի ի սուրբ եկեղեցի բնաւ մի հաղորդեսցեն զնոսա. միայն ընդունել հրամայեաց ի կարգ կրաւնաւորաց, զի անդ կացեալ աղքատութեամբ ապաշխարեսցէ պահաւք և աղաւթիւք մինչև ի վախճան. և յայնժամ ապա ընդունել զմարմինն տեառն։ Սա արար զերկրորդ ժողովն ի Կոստանդինուպաւլիս ՅԾ (350) եպիսկոպոսաց։ Յաւուրս սորա Ծերոնիմոս քահանայ, թարգմանիչ և գեղեցիկ վարդապետ, փոխեաց զգիրս Աստուածաշնչոցն ի Հրէական լեզուէ ի Լադին։

ի Քրիստոսէ

ՅԶԱ (381) Եկաց կայսր Հռոմա Թէոդոս Վալէնտիանոսաւ, կացեալ ամս ԺԱ (11)։

ՅՂ (390) Եկաց կայսր Հռոմա Արկադէոս Ոնորիոսիւ, կացեալ ամս ԺԳ (13)։ Ի սորա աւուրս սուրբն Տաւնաթ եպիսկոպոսն Երերոյ փայլէր սքանչելի վարուք։ Սա եսպան մեծ վիշապ թքանելով ի բերան նորա և այնչափ մեծ էր, զի Ը (8) լուծս եզանց բռամբ կարացին քարշել զնա ի տեղոջ մի, վասն այրելոյ, զի մի նեխեալ մարմինն ապականեսցէ զաւդն և վնասեսցէ զմարդիկ։ Յայնմ ժամանակի մարմինք սրբոց մարգարէիցն Ամբակումայ և Միքիայ յայտնեցան։......

ՆԲ (402) Եկաց կայսր Հռոմա Ոնորիոս փոքր Թէոդոսիւ 133 բ
եղբաւրորդեաւ իւրով, կացեալ ամս ԺԲ (12)։ Ի սորա աւուրս Գոդացիքն առին զՀռոմ և Լիվանդրն, զՍպանիա և Ալամանքն յաշխարհէն, որ կոչի Սուայվը, առին զՖրանսն։ Եւ Ռադակնիս թագաւորն Գաւդացոց սպանաւ ի զաւրացն Հռոմայեցոց։ Առ սովաւ Բէլասիոս քարոզէր յաշխարհին Յունաց, հակառակ Քրիստոսի, զիւր հերձուածսն, վասնորոյ եղև ժողով ի Գարդաճն[19] ԲՃԺԳ (213) եպիսկոպոսաց։ Յայնմ ժամանակի փայլէր յեկեղեցոջ Կիւրիլոս եպիսկոպոսն Աղեքսանդրու։......

ՆԺԷ (417) Եկաց կայսր Հռոմա Թէոդոս Փոքր Վալէնտիա- 134 ա
նոսիւ փեսայիւ իւրով, կացեալ ամս ԻԷ (27)։ Սա յորժամ թագաւորեաց առ ժամայն կացոյց կայսր և զհարճորդին իւր զՎալէնտինիան։ Առ սովաւ Վէնարիացիքն ի Սպանիոյ անցեալ յայնկոյս յԱփրիկէ և անդ եդծին զուղղափառ հաւատն հերձուածովն Արիոսի։ Զայսու ժամանակաւ Նեստորիոս եպիսկոպոսն Կոստանդինուպաւլսի յայտնեաց զհերձուածն իւր. ընդդէմ սորա ժողովն եղև յԵփեսոս, որք նզովեցին զնորա վնասակար հերձուածն։ Յայնմ ժամանակի երեեալ ի կղզոջն Կրետացոց դև ի նմանութիւն Մովսէսի մարգարէին և հաւատացոյց բազմաց, թէ նա առաջնորդեսցէ նոցա յերկիրն աւետեաց, գնալով ի վերայ ծովու
իբրև ի ցամաքի, որ և կորոյս բազումս յայնցանէ, որք հաւա-
տացին նմա, բայց որք զերծան զղջա ‖ ցեալ դարձան ի շնորհս 134 բ
տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

ՆԺԹ (419) Եղև պապ ի Հռոմ Քսեստոս Երկրորդ, ազգաւ Հռոմայեցի, որդի Քսեստոսի, կացեալ ամս Ը (8) և աւուրս Թ (9)։ Սա եդ սահման զի մի ոք ձեռնադրեսցի յայլում վիճակի։ Եւ սորա արարեալ զխոստովանութիւնն սրբոյն Լաւրէնտիոսի մարտիրոսի ի սիւնս Պաւրֆիրայք։

Զմանէ եղև ամբաստանութիւն վասն պոռնկութեան, բայց ի ժողով մի, որ եղև ԿԶ (66) եպիսկոպոսաց, գտաւ սուտ ամբաստանութիւնն այն և պատժեցաւ ամբաստանաւղն։

ՆԻԷ (427) Եղև պապ ի Հռոմ Լէաւն Առաջին, ազգաւ Դուսդան, որդի Գինսիանու, կացեալ ամս ԻԱ (21), ամիսս Ը (8) և աւուրս ԻԷ (27). յետ որոյ եկաց աթոռն առանց հայրապետի աւուրս Ը (8)։ Սա առաքեաց ընթերցուած մի առ կայսրն և առ

ամուսինն իւր յոյժ գեղեցիկ և զարմանալի մեկնեալ զամենայն հաւատս քրիստոնէութեան։

Եւ յղեաց առ եպիսկոպոսն Յապիանոս ընթերցուածս Ը (8), յորոց միջի էր մինն յոյժ յայտնի և ճշմարիտ ընդդէմ Եւտիքեայ, նախատելով զաղտեղութիւն նորա։ Սա յետ կատարածի Վայնտրոցն[20], նորեաց զամենայն կահս եկեղեցոյ և արար արծաթեղէնս։

Առ սովաւ եղև երրորդ ժողովն Քաղկեդոնի ՉՃԼԶ (636)[21] եպիսկոպոսաց, բայց ի հայրապետաց և ի զանազան առաջնորդաց։

Սա թաղեցաւ յեկեղեցոջն սրբոյն Պետրոսի յապրիլ Գ (3) աւրն։

ՆԽԵ (445) Եկաց կայսր Հռոմա Մարսիանոս Վալէնդին, կացեալ ամս Է (7)։ Եւ ի սորա սկիզբն էր ժողովն Քաղկեդոնի, յոր նզովեցին զԵւտիքէս և զԴէոսկորոս։ Ի վեցերորդ ամի || 135 ա Թագաւորութեան սորա Թէոդորոս Թագաւորն Կաւդացոց եմուտ ի Սպանիա քաղաքն զաւրաւք։......

ՆԾԳ (453) Եկաց կայսր Հռոմա Լէաւն ամս ԺԳ (13), յորում ժամանակի Աղեքսանդր և Եգիպտոս լցեալ էին հերձուածովս Դէոսկորոսի հերէտիկոսի, որք լցեալ պեղծ հոգով հաջէին իբրև զշունս։......

ՆԿԷ (467) Եղև պապ ի Հռոմ Յիլիքս Երրորդ, ազգաւ Հռոմայեցի, որդի Յիլիքս քահանային, ի գաւառէն որ կոչի Յաստիաւլ, կացեալ ամս Ը (8), ամիսս ԺԱ (11) և աւուրս ԺԸ (18). յետ որոյ եկաց աթոռն առանց հայրապետի աւուրս Ե (5)։ Սա շինեաց զտաճար սրբոյն Ագաբիթեայ, առընթեր տաճարի սրբոյն Լաւրէնտիոսի || 135 բ և թաղեցաւ յեկեղեցոջն սրբոյն Պաւղոսի։ Սա եդ սահման զի եպիսկոպոսունքն աւծցեն զտաճարսն։ Առ սովաւ մեռաւ Ջիլտրիկն և թագաւորեաց Կլաւվանոն, որ ամուսնացաւ ընդ դուստր թագաւորին, որոյ անուն էր Գլաւհաւթ։

ՆԿԹ (469) Յայտնեցան հերձուածքն որք հակառակ էին ժողովոյն Քաղկեդոնի։ Յայսմ ժամանակի կայսրն Լէաւն ետ բերել ի Հռոմա ի Կոստանդինուպաւլիս զամենայն նկարեալ պատկերս սրբոցն և անդ հրամայեաց այրել զնոսա։

ՆՀ (470) Եկաց կայսր Հռոմա Զենոն ամս ԺԶ (16)։ Սա եդ բազում աւրէնս և եսպան զորդի կայսրն Լևոնի։ Ընդ այսու ժամանակաւ յայտնեցաւ մարմին սրբոյ առաքելոյն Բառնաբա և աւետարանն սրբոյն Մարկոսի։......

ՆՁԵ (485) Եկաց կայսր Հռոմա Անաստասիոս ամս ԻԶ (26)։ 136 ա Առ սովաւ Գրազմունթ թագաւորն Վնտրացոց փակեաց զուղղափառ եկեղեցիսն և առաքեաց յաքսորս ի Սառտայն կղզոջն եպիսկոպոսս ՃԻ (120)։ Յայնմ ժամանակի Աւլոնպիոս, որ ի Գարդայճն եպիսկոպոս էր, արիանոս նախատեաց զսուրբ երրորդութիւնն և առժամայն հարեալ եղև յայտնապէս ի հրեշտակէ Գ (3) նիզակաւ հրոյ և այրեցաւ։ Եւ այլ ոմն եպիսկոպոս արիանոս Պարպար անուն, որ ի մկրտելն կարդայր անպատշաճ աղաւթս ընդդէմ

*կանոնաց սրբոյ եկեղեցւոյ։ Եւ յաւուր միում յորժամ մկրտութիւն առնէր և սաէր դանպատշաճ աղաւթսն առժամայն ջուրն, որ կայր յաւազանն ցամաքեցաւ, և որք եկեալ էին ի մկրտութիւն իբրև տեսին թողեալ զնա և գնացին յուղղափառաց եկեղեցիս և մկրտեցան։......*

*ՇԸ (508) Եղև պապ ի Հռոմ Յոհաննէս Առաջին, ազգաւ Դուսգան, որդի Կոստանդեայ, կացեալ ամս Բ (2), ամիսս Դ (4). յետ որոյ եկաց աթոռն առանց հայրապետի աւուրս Ը (8)։*

*Ի սորա աւուրս Յրանսն հաւատաց ի Քրիստոս և առ սովաւ վախճանեցաւ Գլովայնս[23] թագաւորն Ֆրանսին, որում էին || Դ (4) որդիս՝ անուն միոյն Թէոդորիկ, որ թագաւորեաց աշխարհին. և անուն երկրորդին Գլաւտէմոյր, որ տիրեաց քաղաքին, որ կոչի Աւրլիայնս։ Սա եսպան զթագաւորն Սիկիզմոնթ։ Եւ անուն երրորդին Գլաւդայր, որ ժառանգեաց զՍադսոն, որ և ամուսնացաւ ընդ Մակունդ, դուստր թագաւորին Պրդանիոյ. բայց կինն այն փախեաւ և կրաւնաւորեցաւ սրբութեամբ։ Եւ անուն չորրորդին Զիտէպէրս, որ ժառանգեաց զԲարիզն։......* 136 բ

*ՇԺԳ (513) Եկաց կայսր Հռոմա Յուստին, կացեալ ամս Թ (9)։ Սա բորբոքեալ վասն հաւատոյն կամեցաւ ջնջել զհէրէտիկոսսն և կոչեցեալ դարձոյց զաքսորեալ եպիսկոպոսունսն։......*

*ՇԻ (520) Եկաց կայսր Հռոմա Յուստիանոս, կացեալ ամս ԻԸ (28)։ Սա դարձոյց զԱգապիտոս պապն ի հերձուածոյն Եւտիքեա։ Սա եդ աւրէնս և ժողովեաց զդաւտն և զտիճայստ դըրեա || նսն[23]։ Առ սովաւ Բասիլարիոս բադրիսիոսն սաստիկ յաղթեաց Պարսից, որ յետոյ առաքեցան յԱփրիկէ, հրամանաւ հաւրն Յուստիանոսի կայսեր, վասն կոտորելոյ զազգն Վայտրացոց։ Եւ յայնմ ժամանակի Հռոմ քաղաք պաշարեալ եղև շուրջանակի ի Կաւդացոցն զամ մի։ Եւ յետ ամին զերծան Հռոմայեցիքն ի պաշարմանէն աւդնութեամբ Էլիսայր պատրկին.......* 137 ա

*ՇԼ (530) Կլաւդայր թագաւոր Ֆրանսին վախճանեցաւ[24] և կալան զաշխարհն չորեքին որդիքն իւր, որոց անուանքն են՝ առաջնոյն Զիբերիր, երկրորդին Հարպայրս, երրորդին Գունդրայմս, չորրորդին Սիճէպայրտ։*

*ՇԽ (540) Եղև պապ ի Հռոմ Բէլաիոս Առաջին, ազգաւ Հռոմայեցի, որդի Յոհաննիսի, կացեալ ամս Դ (4), ամիսս Ժ (10) և աւուրս ԺԹ (19). յետ որոյ եկաց աթոռն առանց հայրապետի ամիսս Դ (4)։ Սա աւրէնս եդ՝ զի հէրէտիկոսսն և հերձուածսն աշխարհական դատաստանաւ տանջեսցին։...*

*ՇԾԷ (557) Եղև պապ ի Հռոմ Բենէդիքտոս Առաջին, կացեալ ամս Դ (4), ամիսս Ա (1) և աւուրս ԺԸ (18)։ Առ սովաւ Լունպարտքն արշաւեցին յամենայն Իտալիա. և յայնմ ժամանակի Յուստիանոս ետ բերել բազում նավս ի Հռոմ ցորեան բարձեալ և զերծոյց զնոսա ի մեծ սովոյ։* 137 բ

*ՇԾԹ (559) Եկաց կայսր Հռոմա Յուստինոս ամս ԺԱ (11)։ Յայնմ ժամանակի վախճանեցաւ սուրբն Բէնէդիքտոս հայրն*

ի Քրիստոսէ

աբեղայից։ Եւ Զիբէրիր ի Ֆրանսն կալաւ զեղբայրն իւր զՃիճէպայրթն պատերազմաւ։ Յետ որոյ մեռաւ Կունդայր եղբայր Զիբերիրին և եթող զիւր թագաւորութիւնն Զիլտէպերթին որդոյ եղբաւրն իւրոյ Սիճէպէրթին։

ՇԿ (560) Եղև պապ ի Հռոմ Բելասիոս Երկրորդ, ազգաւ Հռոմայեցի, կացեալ ամս Ժ (10), ամիսս Բ (2) և աւուրս Ժ (10)․ յետ որոյ եկաց աթոռն առանց հայրապետի ամիսս Գ (4) և աւուրս ԻԵ (25)։ Սա ձեռնադրեցաւ առանց հրամանի իշխանութեան, վասն զի Լունկուպարտքն պաշարեալ էին զՀռոմ և սաստիկ աւերեալ զԻտալիա։ Առ սովաւ եղև այնչափ սաստիկ բազմութիւն անձրևաց, մինչ զի նմանեցուցանէին աւուրց ջրհեղեղին և այնպէս մեծ հարուածս եղև, զի ոչ ոք էր լուեալ այնպիսի։

ՇԿԸ (568) Եկաց կայսր Հռոմա Լիւգէրինոս ամս Է (7), առ 138 ա սովաւ Լունկուպարաքն առին զԻտալիա և աւերեցին։......

ՇՀԵ (575) Եկաց կայսր Հռոմա Մավրիս։ Ի սորա աւուրս ձեռնադրեցաւ Գրիգորիոս և էր այր շնորհալի 'ընդդէմ Հռոմայեցոցն։ Առ սովաւ Լունկուպարտքն պաշարեցին զՀռոմ և արարին աւերս բազումս։ Առ սովաւ վախճանեցաւ ի Ֆրանսն Զիլաէպայրտ, որդի Սիճէպէրտին։ Սա թողեալ Բ.(2) որդիս՝ զԹէոդիպայրտ, որ թագաւորեաց Ադրիու և զԹիւտաւրիկ, որ կալաւ զթագաւորութիւնն Կունդրամի։......

ՇՁԸ (588) Եղև պապ ի Հռոմ Պաւնաւֆանց Չորրորդ Մար- 138 բ. սէլացի, կացեալ ամս Զ (6), ամիսս Ը (8) և աւուրս ԺԲ (12). յետ որոյ եկաց աթոռն առանց հայրապետի ամիսս Է (7) և աւուրս ԻԵ (25)։ Սմա եա կայսրն Ֆուկաս և աւդրեց, զի Հռոմա առաքելական աթոռն սուրբ Պետրոսի լինիցի գլուխ ամենայն եկեղեցեաց, զի եկեղեցին Կոստանդինուպաւլսի կոչէր առաջին ամենայն եկեղեցեաց։......

ՇՂԶ (596) Եկաց կայսր Հռոմա Ֆաւդոս ամս Է (7)։ Սա ընտրութեամբ ձիաւորացն եղև կայսր և եսպան զկայսրն Մավրիսէ և այլ բազումք ի մեծամեծաց իւրոց և շարժեաց մեծամեծ պատերազմունս Հռոմայեցաւք ընդդէմ Պարսից, որք ոչ կարելով զդէմ ունել Պարսից կորուսին զԵրուսաղէմ և այլ բազում գաւառս[25]։ Սա աւդրեց Պաւնեֆանց պապուն զտաճարն Բանպէուն։......

ՌԴ (604) Եկաց կայսր Հռոմա Հերակլ հանդերձ որդով իւ- 139 ա. րով Կոստանդեաւ, կացեալ ամս ԼԱ (31)։ Սա զՍերոստոս փառաւոր իշխողն Կաւգացոց հնազանդեցոյց և բազում գաւառս ընդ ձեռամբ արար և զՀրեայսն, որ էին յիւրում թագաւորութեանն, դարձոյց ի քրիստոնէութիւն։ Ի Գ (3) ամին այս Հերակլի Խոսրով թագաւորն Պարսից էառ բազում գաւառս յիշխանութենէն Հռոմայեցոց և աւերեաց զԵրուսաղէմ և զփառաւոր տեղիսն հրակէզ արար և անտի բազում ժողովուրդ ի քրիստոնէից գերի վարեալ հանդերձ հայրապետաւն Երուսաղէմի Զաքարիաւ և զսուրբ և փառաւորեալ խաչափայտն տարաւ ի Պարս[26]։ Եւ ի ԺԲ (12)

ամին Հերակլի Խոսրով սպանաւ ի Հերակլէ և դարձոյց զսուրբ խաչն. և զգերիսն, զոր գերեալ էր Խոսրով[27]։ Առ սովաւ էր Մանմատ մարգարէն Տաճկաց, որ սնոտի աղանդիւն իւրոյ մոլորեցոյց բազում ազգս և ազինս և դարձոյց ի կրաւնս իւր։......

ՈԼԶ (636) Եկաց կայսր Հոռմա Կոստանդին, որդի Հերակլի, 139 բ հանդերձ Երատունաւ որդով իւրով, կացեալ ամս ԻԸ (28)։ Սա սպանաւ ի Սիկիլիա։ Առ սովաւ բազում գաւառս և ինչս յափշտակեցաւ ի Հոռմայեցոց, զոր Տաճիկք առին ի նոցանէ, զի էր յոյժ Թուլամորթ և պեղծ այս Կոստանդին. և նոյն ինքն եսպան զպապն Մարգին։ Ցայնմ ժամանակի եկն Կոստանդ կայսրն ի Հոռմ և խափանեաց զամենայն սահմանեալսն ի Նմանէ, և բազում ի գանձուց նոցա տարեալ զհետ իւր || ի Սիկիլիա։...... 140 ա

ՈԾԱ (651) ԶԹէաւտաւրիկ Թագաւորն Ֆրանսին հանին ի Թագաւորութենէ և կրաւնաւորեցուցին և զՉիլարիկ եղբայր նորա Թագաւորեցուցին, որ յետոյ սպանաւ ի զաւրացն և դարձեալ Թէաւտաւրիկն տիրեաց աշխարհին։ Եւ Իռաւին, կրցեր եղբայրն իւր, ետ սպանանել զսուրբն Լճեր։

ՈԾԲ (612) Եղև պապ ի Հռոմ Լևոն Երկրորդ, Սիկիլացի ազգաւ, որդի Պաւղոսի, կացեալ ամիսս Ժ (10) և աւուրս ԺԷ (17)։ Սա ընդունեցաւ զԶ[6]-երրորդ ժողովն և մեծաւ խորհրդականութեամբ փոխեաց || ի Լադին լեզու։...... 140 բ

ՈԾԶ (656) Եղև պապ ի Հռոմ Յոհաննէս, ծնեալ ի Սուրիոյ ի գաւառէն Անտիոքա, որդի Գիրիասի, կացեալ ամ Ա (1) և աւուրս Ժ (10)։ Յաւուրս սորա հնազանդեցուցին զԱփրիկէ ընդ իշխանութեամբ Հոռմայեցոց։

ՈԾԹ (659) Եղև պապ ի Հռոմ Կոնոն Առաջին, Հռոմայեցի ազգաւ, կացեալ ամ Ա (1) և աւուրս Ժ (10). յետ որոյ եկաց աթոռն առանց հայրապետի ամիսս Բ (2) և աւուրս ԻԳ (23)։ Ցընտրութիւն սորա եղև բազում անհաւանութիւն, զի կլէրիկոսքն խնդրէին զՊետրոս աւագէրէցն, և ձիաւորքն կամէին զԹէոդորոս քահանայն և այնչափ վիճեցան վասն երկոցունց սոցա, մինչ զի սոքա երկոքեան ընդրեցին իւրեանց կամաւ զԿոնոն։......

ՈԿԲ (662) Եկաց կայսր Հռոմա Կոստանդին, որդի Կոստան- 141 ա դեա, կացեալ ամս ԺԷ (17)։ Ի ժամանակս սորա մտին Տաճիկք ի Սիկիլիա և դարձան բազում աւարաւ։ Եւ առ սովաւ Ե (5)-երրորդ ժողովն գումարեցաւ ի Կոստանդինուպաւլիս ընդդէմ պատրիարգին Գրիգորի։

ՈԿԶ (666) Էառ զաշխարհն Ընկլէզաց Կիլամ Պաստառոտն։

ՈՀԳ (673) Եղև պապ ի Հռոմ Լևոն Երրորդ, ազգաւ Հռոմայեցի, կացեալ ամս Բ (2) և աւուրս Ի (20)։ Սա կարգեաց պապ զՊատրիկիոս[28]։......

ՈՀԷ (677) Վախճանեցաւ Բբինն, որդի Աճիզի և եթող Բ (2) որդիս ի հարճէն իւրոյ՝ զՏրաւաւն և զԿրիմաւլթ։ Եւ Թէաւտաւրիկն վախճանեցաւ և տիրեաց որդի նորա Կլաւտաւվէնս։

ի Քրիստոսէ

ՈՀԸ (678) Եղև պապ ի Հռոմ Յոհաննէս Է(7)-երրորդ, ազգաւ Յոյն, որդի Պզատանի, կացեալ ամս Բ (2), ամիսս Է (7) և աւուրս ԺԷ (17). յետ որոյ ‖ կացեալ աթոռն առանց հայրապետի ամիսս 141 բ
Դ (4)։

Յայնժամ էր Յուստինիանոս կայսր, որ տիրեաց ամս Ժ (10)։ Սա արարեալ հաշտելութիւն ընդ Տաճիկսն Ժ (10) ամաւ, ի ցամաքս և ի ծովս։ Սա էր բարի և առատ և յոյժ աճեցոյց զկայսերութիւնն Հռոմա և գործք սորա գրեալ են ի Յաճախապատում պատմագիրսն......

ՈՁԸ (688) Եկաց կայսր Լևոն, որ Երկրորդն կոչեցաւ, ամս Գ (3)։......

ՈՂԱ (691) Եկաց կայսր Հռոմա Տիբերիոս, կացեալ ամս Է (7)։ Առ սովաւ Ծիղոլֆ դուսքն[10] Պաւնաւվանթոյ աւերեաց զամենայն գաւառն Գամբանիոյ, վասն որոյ եղև սով մեծ.......

ՈՂԵ (695) ‖ Եղև Տրաւոն թագաւոր Ֆրանսին։ 142 ա

ՈՂԶ (696) Գնաց Բրինն յԱլամանք ընդդէմ Վալանդիոսի աուկին։

ՈՂԸ (698) Եկաց կայսր Հռոմա Յուստինիանոս Երրորդ, կացեալ ամս Զ (6)։ Սա ոչ է այն Յուստինիանոսն, որ զգիրս աւրինացն ժողովեաց։ Ի սորա աւուրս վախճանեցաւ Ջիլտըպայրդն և եկաց Կաւտըպէրդ Փոքրն։ Եւ ապա վախճանեցաւ Բրինն և եկաց Ջառլը Մարդէլն, որ դատաւոր էր Ֆրանսիզաց յաւուրս Դակուպէրթին։ Այս Ջառլը Մարդէլ ետ հոգս ծիաւորացն զինչս սրբոյ եկեղեցոյն։

ՉԳ (703) Եկաց կայսր Հռոմա Ֆիլիպն ամ Ա (1) և ամիսս Զ (6)։ Յայնմ ժամանակի ընտրեցաւ պապ Հռոմա Գրիգորիոս Երրորդն, ազգաւ Հռոմայեցի, որդի Մարդէլին։ Սա կացեալ ամս ԺԱ (11), և ամիսս Զ (6), և աւուրս ԻԴ (24). յետ որոյ եկաց աթոռն առանց հայրապետի ամիսս Ը (8)։ Սա յաւելցոյց ի ծածուկ խորհուրդս պատարագին մասն ինչ։ Սա եհան զկարողութիւնն Իտալիոյ ի ձեռանէ կայսերն Լևոնի և բանադրեաց զկայսրն Լևոն վասն անարգելոյ զպատկերսն և ընկեց յաթոռոյն։

ՉԴ (704) Եկաց կայսր Հռոմա Անաստաս ամս Դ (3)։ Սա կալաւ զՖիլիպն և փորեաց զաչսն։

ՉԷ (707) Եկաց կայսր Հռոմա Թէոդոսիոս ամ Ա (1)։

ՉԸ (708) Եկաց կայսր Հռոմա Լևոն որդովն իւրով Կոստանդեաւ, ամս ԻԵ (25)։ Ի սորա ժամանակին Տաճիկքն եկեալ ի Կոստանդինուպաւլիս պաշարեցին զքաղաքն զԳ(3) ամս։

ՉԺԴ (714) Եղև պապ ի Հռոմ Զաքարիայ Առաջին, ազգաւ Յոյն։ Սա կացեալ ամս Ժ (10), ամիսս Գ (3) և աւուրս ԺԵ (15). յետ որոյ եկաց աթոռն առանց հայրապետի աւուրս ԺԴ (14)։ Սա արար աբեղայ զթագաւորն Ֆրանսին զմեծն Ջառլ, զեղբայր Բընին և առաքեաց ‖ զնա ի վանս, որ կոչի Կազմանս. և սա ետ 142 բ
վանիցն բազում տուրս սիգեղիւ եկեղեցոյն։

ՉԺԶ (716) Մեռաւ Տակուպէրթն և եկաց իր որդին Թէաւտաւբիկն։

ի Քրիստոսէ

ՉԻԴ (724) Եղև պապ ի Հռոմ Ստեփանոս Երկրորդ, ազգաւ Հռոմայեցի, որդի Կոստանդեա, սա եկաց ամս Ե (5) և աւուրս ԻԸ (28). յետ որոյ եկաց աթոռն առանց հայրապետի ամիսս Ա (1) և աւուրս Ե (5)։ Սա գնաց ի Ֆրանսն,՝ վասն զի թագաւորն Լունկուպարտաց Աստիլֆն հարստահարէր զնա և միաբանեալ ընդ Բբինն պսակեաց թագիւ զերկու որդիսն իւր և զԲբինն առեալ ընդ իւր դարձաւ յԻտալիա, ընդ ձեռամբ արար զԲավի քաղաքն և այլ Ի (20) քաղաքս, վասն որոյ եղև պատրոսիոս Հռոմա։......

ՉԼԳ (733) Մեռաւ Ջառլ Մարդէլն, իշխան Ֆրանցիզացն, զոր սուրբն Ստեփանոս ետես ի տեսլեան, զի էր նա ի դժոխս հոգով և մարմնով, վասն զի տուեալ էր զաասանորդս եկեղեցոյն հոռգ զաւրաց իւրոց և վասն այլ բազում չարեաց, զոր գործեալ էր։ Եւ յետ նորա կացին որդիքն իւր Բբինն և Ջառլն։

ՉԼԵ (735) Եկաց կայսր Հռոմա Կոստանդին Երինեաւ մարբն իւրով կացեալ ամս Ժ (10)[30]։......

ՉԽԱ (741) Եղև Է(7)-երրորդ ժողովն։ 143 ա

ՉԽԳ (743) Եղև պապ ի Հռոմ Ադրիանոս Առաջին, որդի Թէոդորեայ, ի գաւառէն Վիալագա, կացեալ ամս ԻԴ (24), ամիսս Ժ (10) և աւուրս ԺԸ (18)։ Ի խնդրոյ սորա թագաւորն Ջառլն, որդի Բընին, պաշարեաց զԼունկուպարտքն ի Բաբի[31] և կալաւ զթագաւորն Լունկուպարտաց, որ կոչէր Տիզիտէր և տարաւ ընդ իւր ի Ֆրանսն զթագաւորն և զկին իւր կապանաւք և յորժամ եկն յերկրպագութիւն ի Հռոմ ետ սրբոյն Պետրոսի զամենայն, զոր Բբին, հայրն իւր, պարգևեալ էր և առաւել ետ զդուկութիւնն, որ կոչի Սպաւլիդ և զՊաւնիվայտ, վասն որոյ արարին զնա պատրոսիոս Հռոմա։ Եւ յայնմ ժամանակի Ջառլ Մայնն և Բբինն գնացին ի վերայ Էիհալու։

ՉԽԴ (744) Մեռաւ Թէաւտաւրիկն և Զիլտրիկն թագաւորեաց։

ՉԽԶ (746) Եկաց կայսր Հռոմա Կոստանդին որդովն իւրով Լևոնիւ, կացեալ ամս ԺԶ (16)։ Ի ժամանակ[ս] սորա մեռաւ Բբին թագաւորն Ֆրանսին, որ պատրոսիոս էր Հռոմա։

ՉԽԸ (748) Բբինն թագաւորեաց և Զիլտրինն հաբեղայ եղև։

ՉԾԷ (757) Մեռաւ Բբին թագաւորն Ֆրանսին և կալան զիշխանութիւնն Ջառլն և Ջառլբ Մայնն։......

ՊԸ (808) Կուրացաւ կայսրն Կոստանդին։ 143 բ

ՊԹ (809) Եկաց կայսր ի Հռոմ Ջառլ Առաջին[32], ի ժամանակս պապուն Լևոնի Չորրորդի, կացեալ ամս ԺԳ (13), ամիսս Ա (1) և աւուրս Դ (4)։ Ի ժամանակ[ս] սորա քաջ ձիաւորքն՝ Ըռաւլանթն և իւր ընկերքն, որ կոչէին Գունթ բալադին, յաղթեցին զաւրացն Տաճկաց յերկրին Սպանիոյ[33], բայց յետոյ մեռան աուրտվութեամբ գունթի միոյ, որ կոչէր Կանըլուն։

ՊԺԶ (816) Եկաց կայսր Հռոմա Միխայլն ամ Ա (1)։

ՊԺԷ (817) Եկաց կայսր Լևոն ամ Ա (1)։

ՊԺԸ (818) Եկաց կայսր Հռոմա Լաւիզն, որդի Ջառլին Մեծի, հանդերձ որդովն իւրով, որ կոչէր Լաւգայր, կացեալ ամս ԻԵ (25)։

ի Քրիստոսէ

*Սորա էին Բ (2) եղբարք, մինն տիրէր Ալանաց և միւսն՝ Սպանիոյ և ինքն իշխեաց երկոցունցն։ Սորա երեեցաւ ի տեսլեան գիշերի Յովաննէս Մկրտիչն և հրամայեաց նմա ‖ զի շինեսցէ* 44 ա. *տաճար ի փառս Աստուծոյ և յանուն նորա։ Եւ նա ելեալ խնդութեամբ շինեաց զտաճարն յանուն Մկրտչին, ի տեղին որ կոչի Արծաթիկ, որո[յ] եւ ընտճիկս բաղումս[34]։*

*ՊԻԴ (824) Եղև պապ ի Հռոմ Եւգինէս Երկրորդ, ազգաւ Հռոմայեցի, կացեալ ամս Դ (4), ամիսս Է (7) և աւուրս ԺԹ (19)։ Սա ընարեցաւ և կարգեցաւ պապ յաշխարհական արանցն Հռոմա։.....*

*ՊԻԸ (828) Եղև պապ ի Հռոմ Գրիգոր Չորրորդ, ազգաւ Հռոմայեցի, որդի Յոհաննիսի։ կացեալ ամս ԺԶ (16)։ Սա քակեաց զտաճարն սրբոյն Մարկոսի և վերստին շինեաց։*

*ՊԽԳ (843) Եղև պապ ի Հռոմ Սէրճիոս Երկրորդ, Հռոմայեցի ազգաւ, որդի Սէրճի, կացեալ ամս Գ (3). յետ որոյ եկաց աթոռն առանց հայրապետի ամիսս Բ (2) և աւուրս ԺԵ (15)։ Սորա կոչէին մականուն Խոզբերան[35]։ Ձկնի այս պապուս սկսան փոխել զանուանսն պապքն Հռոմա։*

*ՊԽԴ (844) Եկաց կայսր Հռոմա Կլաւդայրն ամս Ժ (10) և որդի նորա Լաւիզ ամս Ե (5)։ Սա եղև յոյժ բարի քրիստոնեա։*

*Ի սորա աւուրս Տաճիկք յԱփրիկոյ եկեալ նաւուք ի Հռոմ և կողոպտեցին զտաճար սուրբ առաքելոյն Պետրոսի և Պաւղոսի և զամենայն սահմանսն Հռոմա։ Այլ ի դառնալ նոցա յԱփրիկէ, ուստի եկեալ էին, ընկղմեցան ի ծովն։*

*ՊԽԶ (846) Եղև պապ ի Հռոմ Լևոն Ե(5)-երրորդ, ազգաւ Հռոմայեցի, որդի Կիտաւազդա, կացեալ ամս Ը (8), ամիսս Դ (4) և աւուրս Զ (6). յետ որոյ եկաց աթոռն առանց հայրապետի ամիսս Բ (2) ‖ և աւուրս ԺԵ (15)։ Սա շինեաց զքաղաքն, որ կոչի* 144 բ. *Լէաւնիանէ և շինեաց զտաճար սրբոյ Աստուածածնին, որ կոչի Նոր, և այլ բազում տաճարս շինեաց։*

*ՊԾԲ (852) Դարձեալ եկաց կայսր Հռոմա Կլաւդայր Լաւիզ որդով իւրով ամս Ե (5)։*

*ՊԾԴ (854) Եղև պապ ի Հռոմ Բէնէդիքտոս Երրորդ, ազգաւ Հռոմայեցի, կացեալ ամս Բ (2), ամիսս Է (7) և աւուրս Ե (5). յետ որոյ կացեալ աթոռն առանց հայրապետի աւուրս ԺԵ (15)։ Սա աւրէնս եդ կլէրիկոսացն կարգաւորապէս կեալ։*

*ՊԾԶ (856) Եղև պապ ի Հռոմ Նիկաւլայոս ամս Թ (9), ամիսս Զ (6) և աւուրս Թ (9)։ Սա բանադրեաց յաւուրսն իւր երկուս կայսերս՝ զմինն ի կողմ արևելեան, որ կոչէր Միխայիլ, վասն Իգնատիոսի, զոր ընկեցեալ էր յաթոռոյ առանց իրաւանց և զհիւսիւսայինն, որ կոչէր Կլաւգայր, վասն հարճին իւրոյ Վալտրիա։ Սա կարգեաց՝ զի յետ մահուան պապուն, կարտնարքն ժողովեալ ընտրեսցեն պապ, էթէ Հռոմայեցի և էթէ յայլազգաց։*

*ՊԾԷ (857) Եկաց կայսր Հռոմա Կլաւդայր ամս ԺԸ (18)։......*

*ՊՀԶ (876) Եկաց կայսր Հռոմա Ջաւլ Երկրորդ, կացեալ ամ Ա (1) և ամիսս Ը (8)։ Ի ժամանակս սորա արշաւեցին Տաճիկք*

‖ յԻտալիա և այրեցին զտաճարն սրբոյն Բէնէդիքտոսի, որ է Իմունդ Կարսինն։

ՊՀԷ (877) Եկաց կայսր Հռոմա Ձաղ Երրորդ ամս Ը (8)։......

ՊՁ (880) Եղև պապ ի Հռոմ Ադրիանոս Երրորդ, ազգաւ Հռոմայեցի, որդի Բէնէդիքտոսի, կացեալ ամ[ս] Ա (1) և ամիսս Դ (4)։ Սա աւրէնս եդ զի կայսերքն մի ձեռնարկեսցեն յընտրութիւն պապուն։,.....

ՊՁԹ (889) Եղև պապ ի Հռոմ Ֆորմոսիոս Առաջին, ազգաւ Հռոմայեցի, կացեալ ամս Ե (5) և աւուրս Ը (8)։

Առ սովաւ եկաց կայսր ի Հռոմ Կլաւգայր ամս Դ (4)։

Եւ անտի ի հետ սկսան լինել կայսերք յաշխարհէն Իտալիոյ և ելաւ կայսերութիւնն ի ձեռանէ Ֆրանցիզացն կամաւ Հռոմայեցոցն, վասն զի զայնու ժամանակաւ ոչ աւգնէին Ֆրանցէզքն Հռոմա ընդդէմ Լունկուպարտացն, որ նեղէին զաշխարհն Հռոմա։

ՊՂԲ (892) Եկաց կայսր յԻտալիայ Պրնճեր ամս Ը (8)։.......

ՊՂԶ (896) Եղև պապ ի Հռոմ Յոհաննէս Ժ (10)-երորդ, կա- 145 բ
ցեալ ամս Բ (2) և աւուրս ԺԵ (15)։ Սա պատերազմեցաւ ընդ
Հռոմայեցիսն։.....

ՋԲ (902) Եղև պապ ի Հռոմ Սէրճիոս Երրորդ Հռոմայեցի, որդի Բէնէդիքտոսի քահանայի, կացեալ ամս Է (7), ամիսս Գ (3) և աւուրս ԺԶ (16)։ Սա վերստին շինեաց զտաճարն Լադրանու։ Առ սովաւ եղև կայսր Ոյկն ամս Զ (6) յԻտալիա՝ հանդերձ Պրնճեր որդով իւրով։ Ի ժամանակ[ս] սորա ազգն Ունգռաց, որ բնակեալ են առ գետովն Տաւնաւոյ, աւարեցին զաշխարհն Սպանիոյ։

Եւ յայնմ ժամանակի աստեղք երևեցան յերկինս ի ձև հրեղէն նետից։

ՋԸ (908) Եկաց կայսր Բրնճեր ամս Ը (8)։......

ՋԺԲ (912) Եղև պապ ի Հռոմ Յոհաննէս ԺԱ (11)-երորդ, կա-
ցեալ ամս ԺԴ (14), ամիսս Բ (2) և աւուրս ԺԴ (14)։ Սա պատե-
րազմեալ ընդ Տաճիկսն, վարեաց զնոսա յԻտալիոյ ի Սիկիլիա ‖ 146 ա
և շինեաց զտաճարն ի Լադրանն։

ՋԺԵ (915) Եկաց կայսր Կլաւգայրն ամս Գ (3)։

ՋԺԷ (917) Եկաց կայսր Բրնճեր ամս ԺԱ (11)։......

ՋԻԹ (929) Եղև պապ ի Հռոմ Յոհաննէս ԺԲ (12)-երորդ կացեալ ամս Դ (4), ամիսս Ժ (10) և աւուրս ԺԴ (14)։ Սա էր որդի պապուն Գրիգորի Չորրորդին։

ՋԼ (930) Եկաց առաջին կայսր յԱլամնաց Աւդն, կացեալ ամս Զ (6)։ Եւ աստ փոխեցաւ կայսերութիւնն յԻտալացոցն յԱլամանսն[86]։......

ՋԼԷ (937) Եղև կայսր Աւդն հանդերձ Աւդոււն որդով իւրով, կացեալ ամս ԺԸ (18)։ Սա մի անգամ յաղթեցաւ ի Կալավրացոցն և յետոյ յաղթեաց նոցա և անտ գտեալ զմարմին Բարթողոմէոսի և եբեր ի Հռոմ, կամեցեալ տանել յաշխարհն իւր և ոչ բաւեալ մեռաւ անդ և եդաց նշխար սրբոյն ի Հռոմ։......

ի Քրիստոսէ

ՋԽԲ (942) Եղև պապ ի Հռոմ Յոհաննէս ԺԴ (14)-երրորդ ի գաւառէն Վիելադա, որդի Ալպրիկ իշխանին Հռոմա, կացեալ ամս Զ (6)։......[37]

ՋԾԱ (951) Եղև պապ ի Հռոմ Յոհաննէս ԺԴ (14)-երրորդ, 146 բ կացեալ ամս Է (7) և ամիսս ԺԱ (11)։ Զսա կալեալ Պետրոս Բրովաւստն, յարգելանս էդ զնա ի բերդն Սայնթ-Անջլն[38] և ապա առաքեցաւ յաքսորս ի Դամբոնիա. և յետ Ժ (10) ամսոյ և ԻԶ (26) աւուր դարձաւ ի Հռոմ. և կայսրն Աւդ տանջեաց սաստիկ զհալածաւղսն իւր։

ՋԾԷ (957) Եկաց կայսր Աւդն Երրորդ ամս ԺԲ (12). և յետ սորա դատարկ եկաց կայսերական աթոռն ամս ԺԲ (12)։

ՋԿԱ (961) Եղև պապ ի Հռոմ Բէնէդիքտոս Զ (6)-երրորդ ամ[ս] Ա (1) և ամիսս Զ (6)։ Սա եղաւ ի բանտի ի Սայնթ-Անջլն և անդ խեղդեաց զնա Սինքիոս։

ՋԿԴ (964) Եկին Տաճիկք ի վերայ Գարամիոյ.......

ՋՀԱ (971) Եղև պապ ի Հռոմ Պաւնեֆանց Է(7)-երրորդ, ազգաւ Հռոմայեցի, կացեալ ամս Ը (8), ամիսս Զ (6)։ Սա աւգնութեամբ կայսերն կալաւ բազումք ի Հռոմայեցոցն և պատժեաց։

ՋՀԲ (972) Եկաց թագաւոր Ֆրանսին Հոյը Զաբն. և յետ մահուան նորա եկաց Հեռի իր որդին։

ՋՀԴ (974) Եղև սով սաստիկ։......

ՋՁ (980) Եկաց կայսր Հեռի Առաջին ամս ԺԲ (12) և ամիսս Զ (6). և յետ || նորա եկաց աթոռն առանց կայսեր ամս Բ (2)։ 147 ա

Եւ պարտ է գիտել, որ բազում գտանի ի պատմագիրսն Հեռի թագաւոր քան թէ կայսր, վասն որոյ յորժամ առաջին Հեռի լուիցես ի պատմութիւնս, դու այնպէս իմացիր, թէ ի կայսերս։ Սա եղև առաջին կայսր, որոյ անուն էր Հեռի. նոյնպէս և յորժամ Քուռաթ լուիցես առաջին և երկրորդ՝ այնպէս իմացիր։......

ՋՂԲ (992) Եկաց կայսր Քուռաթ[39] Առաջին ամս ԺԶ (16). յետ որոյ եկաց աթոռն առանց կայսեր ամս ԻԴ (23)։ Յաւուրս սորա մեռաւ թագաւորն Ռաւպէրտ և եթող Բ (2) որդիս՝ զՀոյը և զՀեռի. և էր Ռաւպերտն տուկ Պրկոյնին։......

ՋՂԷ (997) Մեռաւ Ռոիջառդ տուկն Նորմանդոյ. յետ որոյ եկաց իր որդին Ռոիջառդն։......

ՋՂԹ (999) Եղև պապ ի Հռոմ Սեղբեստրոս Երրորդ, կացեալ ամս Դ (4), ամիս[ս] Ա (1) և աւուրս Թ (9)։ Սա էր յոյժ գիտնական. և էր կացեալ հայր վանից և ապա եղև արքեպիսկոպոս Ռաւանոյ և յետոյ եղև պապ ||։ Յաւուրս սորա կատարեցաւ 147 բ հազար ամն, սկսեալ ի մարմնաւորութենէն Քրիստոսի։......

ՌԺԶ (1016) Եկաց կայսր Հեռի Երկրորդ ամս ԺԱ (11). յետ որոյ եկաց աթոռն առանց կայսեր ամս ԻԴ (24)։ Սա եկն յԻտալիա և կալաւ զՊանտուլֆ բրինձն Գարոյ և տարաւ կապանաւք. և զայլ ոք Պանտուլֆ անուն կացոյց ի տեղի նորա։

Յաւուրս սորա մտին Նորմանդքն ի Հռոմ։......

ի Քրիստոսէ

ՌԼԱ (1031) Եղև պատերազմ մաւտ ի սուրբ Պետրոս, զոր Ջաղն արար։

ՌԼԲ (1032) Եղև պապ ի Հռոմ Բենէդիքտոս Թ (9)-երրորդ կացեալ ամս ԺԴ (14)։ Զսա ընկեցին յաթոռո և եդին զՅոհաննէս եպիսկոպոսն Սապիոյ և կոչեցաւ Սեղբեստրոս։ Եւ յետոյ ընկեցին և զսա և դարձեալ եկաց Բէնէդիքտոսն պապ։ Եւ դարձեալ երկրորդ անգամ ընկեցին զԲենէդիքտոս և կացուցին պապ զՅոհաննէս աւագէրէցն սուրբ Յոհաննիսի, որ է մերձ ի դուռն Լադին։ Եւ դարձեալ ընկեցաւ սա հրամանաւ կայսերն Հեռէ։......

ՌԽԷ (1047) Եղև պապ ի Հռոմ Կլէմայնս Երկրորդ ամիսս 148 ա
Թ (9) և աւուրս Զ (6)։ Սա եղև կողոպտիչ եկեղեցոյ։

ՌԽԸ (1048) Եղև պապ ի Հռոմ Լևոն ամս Ե (5), ամիսս Բ (2) և աւուրս Զ (6)։ Առ սովաւ Ըռաւպէրտ Կիջարդ եմուտ ի Հռոմ և պաշարեաց զքաղաքն Դիպուրդինայ։ Եւ եղև սով սաստիկ ընդ ամենայն տիեզերս։ Յայսմ ամի երևեցաւ լուսաւոր աստղ մի ի մէջ բոլորի լուսնին, յորժամ լուսինն նոր էր, ի մայիս ամսոյ Ժ՛Դ (14) աւրն, յառաջին պահ գիշերոյն։......

ՌԾԳ (1053) Այրեցաւ հրով մեծ մասն Հռոմայ. և եղև յայնմ ամի երաշտութիւն սաստիկ։......

ՌԾԶ (1056) Եկաց կայսր Հեռի Երրորդ ամս ԺԵ (15)։ Սա յորժամ եկաց կայսր, կալաւ զհայր իւր և եդ ի բանտի, որ և անդ վախճանեցաւ։ Յաւուրս սորա Ըռաւպէրտ Կիջայրդն պատերազմեալ յաղթեաց կայսերն Կոստանդինուպաւլսի Ալէքսին։ Այս Ըռաւպէրտ Կիջայրդ էր իշխան ոմն Ֆրանսէպ, եկեալ զաւրաւք ի վերայ Հռոմայ և ոչ կարաց առնուլ և անտի եմուտ յերկիրն Բոյլին և էառ փոքր փոքր զերկիրն ամենայն։

‖ Սորա էր եղբաւրորդի մի Ըռաւճէլ անուն, որ եղև Թա- 149 բ
գաւոր Սիկիլիոյ։ Եւ դուստր մի էր Ըռաւճէլին, որում անուն էր Կոստանցիա, որ եղև մայր Ֆրտրիկ կայսերն այնմ, զոր բանադրեաց եկեղեցին և եհան ի ժառանգութենէ իւրմէ։ Եւ դարձեալ այս Ըռաւճէլ Թագաւոր Սիկիլիոյ ծնաւ որդի մի, որում անուն էր Կիլամ. և սա ծնաւ զմիւս Կիլամն, որ եղև Թագաւոր Բոյլին և եղև սա այր փառաւոր և արժանի յիշատակի։

Ի սորա աւուրս էր Թագաւորութիւն Բոյլին յոյժ աջողակ և բարէլի, քան զամենայն Թագաւորութիւնս։......

ՌԾԹ (1059) Եղև պապ ի Հռոմ Նիկաւլայոս Երկրորդ, ազգաւ Պրկոյնուն, կացեալ ամս Բ (2), ամիսս Զ (6) և աւուրս ԻԶ (26)։ Յաւուրս սորա մեռաւ Հեռի Թագաւորն Ֆրանսին և եկաց յետ նորա Ֆիլիպ որդի նորա։

ՌԿԵ (1065) Հանկեաւ սուրբն Այմար. յետ որոյ եկաց Թագաւոր Ընկլէզաց Էրարտ եղբաւրորդին իւր։

ՌՀԲ (1072) Վախճանեցաւ կայսրն Հեռի։

ՌՀԴ (1074) Եղև պապ ի Հռոմ Գրիգոր ամս Ժ (10), ամիս[ս] Ա (1) և աւուրս Ը (8)։ Յաւուրս սորա էր ոմն Ալէքսանդրոս կայսր ի Կոստանդինուպաւլիս։

ի Քրիստոսէ

ՌԼ (1080) Եղև պապ ի Հռոմ Կլեմենդէս Երրորդ կացեալ ամս Ի (20)։ ‖ Սա էր հերձուած և կողոպտիչ եկեղեցոյ և լեալ էր 100ա յառաջ եպիսկոպոս Ռաւաննոյ……

ՌԼԶ (1086) Վախճանեցաւ թագաւորն Կիլամ[40], որ զԸնկլէզաց աշխարհն առեալ էր. յետ որոյ եկաց Կիլամն իր որդին։

ՌԼԹ (1089) Եղև պապ ի Հռոմ Ուրբանոս, որ էր ի կարգէն, որ կոչի Գլինի, Ի սորա աւուրս դուքսն Կաւտաւֆրէ, զաւրաւքն քրիստոնէից, թափեաց զԵրուսաղէմ։ Կացեալ ամս ԺԱ (11), ամիսս Դ (4). յետ որոյ եկաց աթոռն առանց հայրապետի աւուրս ԺԶ (16)։

ՌԽԵ (1095) Եղև ժողովն ի Գլէրմունթ, վասն ազատելո֊րացն, որոց Փէո կրաւնաւորն առաջնորդեաց։

ՌԽԶ (1096) Շարժեցան բազմութիւն ազատվորացն ի Ֆրանսէն գալ ի թափումն Երուսաղէմի և յԱնտիոք։

ՌԽԷ (1097) Առաւ Նիկիա[41] և Անտիոք[42] յանաւրինաց,

ՌԽԹ (1099) Առաւ Երուսաղէմ յանաւրինաց և տիրեաց իշխանութեանն Երուսաղէմի Կաւտաւֆրէ տը Պուլունն[43], որ էր տուկ Նորմանդիոյ։

ՌԾ (1100) Եղև պապ ի Հռոմ Պասկալ Երկրորդ կացեալ ամս ԺԸ (18), ամիսս Ե (5) և աւուրս Ը (8)։ Զայս Պասկալ պապ յորժամ թադէր զկայսրն Հեռի, կալան և զամենայն գարտինարքն և զդարպաս նորա, հրամանաւ կայսերն Հեռէ։ Եւ յայնժամ վախճանեցաւ Կաւտաւֆրէ տը Պոյլունն յԵրուսաղէմ, Եւ ի տաւն ծնընդեանն Քրիստոսի թագաւորեաց Պաղտին եղբայրն իւր, որ եղև առաջին թագաւոր Երուսաղէմի[44]։

ՌԾԱ (1101) Առաւ Սզայրն[45] յանաւրինաց։

ՌԾԲ (1102) Թագաւորն Երուսաղէմի Պաղտին միւս անգամ 100բ խանգրեաց զզաւրս Մսրայ ի դաշտն Ռամլէոյ[46]։

ՌԾԴ (1104) Առաւ Աքա յանաւրինաց[47]։ Եւ Ռաւպէրտ տուկն Նորմանդոյ[48] դարձաւ յաշխարհն իւր և պատերազմեցաւ ընդ թագաւորն Հէռի. և ըմռնեցաւ տուկ Ռաւպէրտն և իր եղբայրն[49]։ Եւ դարձեալ եղև երրորդ պատերազմ քրիստոնէից ընդ Մսրցիք ի տեղին, որ կոչի Իպլին[50]։

ՌԾԸ (1108) Վախճանեցաւ Ֆիլիպ ռոէ տը Ֆրանցն և թագաւորեաց իր որդին Լաւիզն[51]։

ՌԾԹ (1109) Առաւ Տրապաւլիս յանաւրինաց[52],

ՌԾԺ (1110) Առաւ Պերութ[53] և Սաիտէ[54] յանաւրինաց։

ՌԾԺԳ (1113) Թագաւորն Պաղտին չորրորդ անգամ խանգրեաց զՄսրա հեծելն ի սահմանսն Տապարիոյ[55]։

ՌԾԺԵ (1115) Քրիստոնէքն շինեցին զՇաւպաքոյ բերդն[56]։

ՌԾԺԸ (1118) Վախճանեցաւ թագաւորն Երուսաղէմի Պաղտինն յերկիրն Եգիպտոսի ի տեղի մի, որ է ընդ Ֆարամին և ընդ Ցարիշն, ի մէջ յապրիլի Բ (2) աւրն[57]։ Եւ ընտրեցին երկրորդ թագաւոր Երուսաղէմի զՊաղտին տը Պուրգն։

Եւ մեռաւ կայսրն Յունաց Ալէքսն։ Եւ սկիզբն եղև Դամ֊

ի Քրիստոսէ

փլցեց[58]։ Եղև պապ ի Հռոմ Ճէլայզ Երկրորդ ամ[ս] Ա (1) և աւուրս ԺԵ (15)։

ՌՃԺԹ (1119) Եղև պապ ի Հռոմ Կալիստոս Երկրորդ ամս Ե (5), ամիսս Ժ (10) և աւուրս ԺԳ (13)։ Եւ խեղդեցան որդիք թագաւորին Ընկլիզաց ի տեղին, որ կոչի Պարպարուն։

ՌՃԻԳ (1123) Եղև Ե (5)-երրորդ խանգրումն Մսրցեց ի յերկրորդ թագաւորէն Երուսաղէմի՝ ի Պաղտնէն[59]։

ՌՃԻԴ (1124) Եղև պապ ի Հռոմ Ոնորիոս Երկրորդ ամս Ե (5), ամիս[ս] Ա (1) և աւուրս ԺԹ (10)։ Եւ առաւ քաղաքն Սուր յանաւրինաց[60]։

ՌՃԻԶ (1126) Թագաւորն Երուսաղէմի Պաղտին խանգրեց զՄսրցիք, որ եղև ‖ Զ(6)-երրորդ խանգրումն ի տեղին, որ կոչի 150 ա Մարճսաֆար յաղվեստաւս[61] ԻԱ (21) աւրն։ Յայնմ ժամանակի եղև Կլաւգայրն կայսր, կացեալ ամս ԺԲ (12)։

ՌՃԻԹ (1129) Եղև պապ ի Հռոմ Ինաւսանթ Երկրորդ։ Սա արար ընթհանրական ժողով յեկեղեցի սուրբ փրկչին և պատժեաց զՓէռ Լէաւնն[62] և զիւր սահմանադրութիւնն, կացեալ ամս ԺԳ (13), ամիսս Ը (8) և աւուրս Ը (8)։

ՌՃԼԱ (1131) Թագաւորն Երուսաղէմի Պաղտինն մեռաւ. յետ որոյ եկաց երրորդ թագաւոր Երուսաղէմի իր փեսայն Ֆուքն, որ կոչէր մականուն տ Աւնճեր[63]։ Եւ Ինաւսանթ պապն կանգնեաց զտաճարն Տոյնի։

ՌՃԼԵ (1135) Մեռաւ Հեռի[64] թագաւորն Ընկլիզաց. յետ որոյ եկաց թագաւոր Ընկլիզաց իր եղբաւրորդին Ստեֆն։ Եւ յայնմ ժամանակի եղև երկրորդ Քուռաթն ընըրուր, կացեալ ամս ԺԵ (15)։ Յաւուրս սորա գիտնական մի, որում կոչէին Հեռնատ, քարոզէր ի քաղաքին Հռոմայ և նախատէր զհարստութիւնն և զիշխանարար վարիլն եկեղեցականաց, յորո քարոզութիւն բազումք ի գիտնականաց հաւանէին. այլ ի նախանձու և յատելութենէ եկեղեցականացն յետոյ կալան զնա և կախեցին զփայտէ։ Եւ յայնմ ժամանակի եկաց ըմբրուր Ֆրտրիկն ամս ԼԵ (35)։ Զսա թագեցին ի տաճարի սրբոյն Պետրոսի։ Սա ետ վերստին շինել զքաղաքն Դիպուրդինա։ Եւ ի դառնալն իւր աւարեաց զգաւառն Սպաւլիտոյ յառաջի ամին թագաւորութեան իւրոյ։ Սա էր այր իմաստուն և ճարտասան, ըստ և շնորհալի յամենայն իրս. և յետոյ դէմ եդեալ գնալ յաւգնութիւն սուրբ քաղաքին Երուսաղէմի. և ի ճանապարհին յորժամ լոկանայր ի դետ մի փոքր անդ խեղդե ‖ ցաւ և եղև սուգ մեծ վասն մահուան նորա[65]։ 150 բ

ՌՃԼԶ (1136) Մեռաւ Լաւիզ[66] ըռէ տը Ֆրանցն. յետ որոյ թագաւորեաց իր որդին Լաւիզն։

Ի թուին Քրիստոսի ՌՃԼԷ (1137) վախճանեցաւ կայսրն Յունաց Կալաւժան Պաւրֆերաւիէնն[67] մերձ յԱնաւարզա, հարեալ ի գեղուն նետէ, որ և յառաջ քան զվախճանելն կացոյց յաթոռն զկրսեր որդին իւր զՄանուիլն[68]։

ՌՃԽԱ (1141) Մեռաւ թագաւորն Ընկլիզաց Ստեֆն,......

ի Քրիստոսէ

ՌՃԽԳ (1143) Եղև պապ ի Հռոմ Լիւսիոս Երրորդ ամիսս ԺԱ (11) և աւուրս ԺԳ (13)։ Յայնժամ վախճանեցաւ թագաւորն Երուսաղէմի Ֆուքն. յետ որոյ եղև չորրորդ թագաւոր Երուսաղէմի Պաղտինն իր որդին[69]։

ՌՃԽԵ (1145) Եղև պապ ի Հռոմ Որոդինէս Երրորդ, ազգաւ Բիզան, կացեալ ամս Ը (8), ամիսս Գ (4) և աւուրս Ի (20). յետ որոյ եկաց աթոռն առանց հայրապետի աւուրս Բ (2)։

Յաւուրս Որոդինէս պապուն սահմանեցաւ Դամփլցեց կարմիր խաչ կարել ի փիլոնն[70],

ՌՃԽԶ (1146) Եղև երկրորդ բասաճն Ֆռանդաց[71], որ եկն ընրրուրն և ըռէ տը Ֆրանցն։ Յայսմ ամի թագեցին ընրրուր ի Հռոմ զԵ(5)-երորդն Հեռի։ Եւ յորժամ թագաւորեաց առժամայն եմուտ յաշխարհն Բոյլին բազում զաւրաւք։ Սա ետ զՏուսկանաց երկիրն Հռոմայ։ Սա ամուսնացաւ ընդ Կոստանցիա դուստր թագաւորին Սիկիլիոյ Ըռաւճէլին և յետոյ եմուտ յաշխարհն Սիկիլիոյ բռնութեամբ և էառ զաշխարհն մինչև ի Նաըլն[72], և պաշարեաց զՆաըլն ամիսս Գ (3) և վասն վատառողջութեանն, որ մեռանէին բազումք ի զաւրաց նորա, ելալ անտի գնաց յաշխարհն իւր. և յայնմ ամի ոչ կարաց հաւանեցուցանել զերկիրն զայն։ Եւ յետ Դ (4) ամաց ապա եկեալ էառ զամենայն աշխարհն Բոյլին և պատժեաց բազումք ի հակառակացն իւրոց։ Սա վախճանեցաւ ի Բալէռմն[73]։ || Եւ յետ մահուան նորա եղև մեծ հակառակութիւն յաշխարհն Ալամնաց, զի ոմանք կամեցան թագաւորեցուցանել զԱւդունն[74] և ոմանք զՖիլիպն։ Եւ ապա Աւդն թագաւորեաց և յետոյ հաշտեցաւ ընդ Ֆիլիպն. և ի հաշտութիւնն սպանաւ Ֆիլիպն տուրտվութեամբ ի Յալթըկրաւէն և Աւդն կալաւ զթագաւորութիւնն խաղաղութեամբ։

ՌՃԽԷ (1147) Պաշարեցին զԴամասկոս ընրրուրն Ալամնաց և Լաւիզ ըռէ տ Ֆրանցն և ոչ կարացին առնուլ[75]։......

ՌՃԾԴ (1154) Եղև պապ ի Հռոմ Ադրիանոս Չորրորդ, ազգաւ Ընկլէզ, ամս Դ (4), ամիսս Զ (6) և աւուրս Ի (20)։ Եւ յայնմ ամի Պաղտին, չորրորդ թագաւորն Երուսաղէմի, էառ զԱսխալան յանաւրինաց[76]։ Եւ վախճանեցաւ թագաւորն Ընկլիզաց Ստեֆն. յետ որոյ թագաւորեաց Հեռի որդի Մահաւթ կայսերուհոյն։

ՌՃԾԷ (1157) Լաւիզ ըռէ տը Ֆրանցն ետ զդուստր իւր յամուսնութիւն թագաւորին Ընկլիզաց Հեռէ։

ՌՃԿԱ (1161) Եղև պապ ի Հռոմ Աղեքսանդրոս Երրորդ ի Դուսկլանէն, կացեալ ամս ԻԱ (21), ամիսս ԺԱ (11) և աւուրս ԻԵ (25)։ Յաւուրս սորա եղեն հերձուածք. և սա կոչեաց զընբրուրն Ֆրտրիկ[77] գալ յուղղութիւն, վասն զի ընդունէր զհերձուածողսն։ Սա սահմանեաց Բ (2) ժողովս, զմինն ի Դուրսն և զմիւսն ի Հռոմ, ուր գումարեցան ԽԸ (48) եպիսկոպոսունք, բաց ի հայրապետից։

ՌՃԿԳ (1163) Մեռաւ թագաւորն Երուսաղէմի Պաղտին Չորրորդն[78]։

ի Քրիստոսէ

ՌՃԿԴ (1164) Եկաց Ե (5)-երրորդ թագաւոր Երուսաղէմի Ամառի[79]։

ՌՃԿԷ (1167) Թագաւորն Երուսաղէմի Ամառին գնաց յԵգիպտոս և էառ ‖ զԱղեքսանդրիա և զԲլղէս[80]։ 151 բ

ՌՃԿԸ (1168) Թագաւորն Երուսաղէմի Ամառի խանգրեաց զՍալահատինն և աղարեաց զՏամիաթն[81] Հաւռեոյն աւգնութեամբ և ոչ կարաց առնուլ զնա։

ՌՃԿԹ (1169) Առին զԳլինաս անաւրէնքն ի քրիստոնէից. և շինեցաւ վանքն, որ կոչի Վալմունգ։

ՌՃՀ (1170) Եղև շարժ սաստիկ և փլան քաղքնի և բերդեր ի Սէհլն, այսինքն՝ Սուր, Աքքա, Տրապաւլիս, Ցարկա, Լատիկն, Վալանին, Անտաք և այլք ի քաղաքաց քրիստոնէից և յանաւրինաց, յաւուր տաւնի սուրբ առաքելոցն Պետրոսի և Պաւղոսի[82]։

ՌՃՀԱ (1171) Նահատակեցաւ սուրբն Թումաս յաշխարհին Ընկլիզաց։

Ի թուին Հայոց ՈԻԲ (1173) ի յաւգոստոս ԺԳ (13) ի հինգշաբթի փոխեցաւ առ Քրիստոս սրբազան կաթողիկոսն Հայոց տէր Ներսէս Շարակնասացն[83]։

ՌՃՀԴ (1174) Մեռաւ թագաւորն Երուսաղէմի Ամառին և թագաւորեաց Զ (6)-երրորդ իր որդին Պաղտինն[84]։

Ի թուին Հայոց ՈԻԵ (1176) կայսրն Յունաց Մանուիլն յաղթեցաւ ի Խլիճ Ասլան սուլտանէն մերձ յԻկոնիա[85]։

ՌՃՀԷ (1177) Եղև պապ ի Հռոմ Լիւսիոս Երրորդ ամս Դ (4), ամիսս Բ (2) և աւուրս ԻԵ (25)։

Յայսմ ամի թագաւորն Երուսաղէմի Պաղտին Գոդին խանգրեաց զՍալտահատինն ի տեղին, որ կոչի Մունճիզարդ, ի գեկտեմբրոն Բ (2) աւրն, զաւրութեամբ սրբոյ խաչին Քրիստոսի, զոր ընդ ինքեանս բարձեալ ունէին ի պատերազմն։

ՌՃՀԸ (1178) Եղև մեծ հարուածք ի մորեխէ։

ՌՃՀԹ (1179) Պատերազմեցաւ թագաւորն Երուսաղէմի Պաղտին ընդ Սալահատինն ի տեղին, որ կոչի Մարճըլիուն և յաղթեցան զաւրքն քրիստոնէից և խաչն սուրբ ոչ էր հետ զաւրացն, այլ մնացեալ էր ի Տապարիա։

ՌՃՁ (1180) Մեռաւ Լաւիզ ըռէ տը Ֆրանցն և թագաւորեաց Ֆիլիպ[86] որդին նորա։ Եւ վախճանեցաւ կայսրն Յունաց Մանուիլն, և թագաւորեաց որդի նորա Ալէքսն[87]։

ՌՃՁԱ (1181) Թագաւորեցուցին Երուսաղէմի Է (7)-երրորդ 152 ա
զփոքր Պաղաինն, զորդի մարգիզ Կիլամին, որում կոչէին Լունկըսպէ[88]։......

ՌՃՁԵ (1185) Մեռաւ թագաւորն Երուսաղէմի Պաղտին Գոգին[89]։

ՌՃՁԶ (1186) Մեռաւ թագաւորն Երուսաղէմի Պաղտին Փոքրն[90] և եկաց ի թագաւորութիւնն Ը (8)-երորդ մայր նորա, Սպիլ թագուհին և իր հայրգիրն Կի տը Լըզինայն։

ՌՃՁԷ (1187) Կոտորեցան զաւրքն քրիստոնէից յաշխարհն

ի Քրիստոսէ

Երուսաղէմի և կալան զԹագաւորն Կի և անյայտ եղև սուրբ խաչն Քրիստոսի, ի տեղին որ կոչի Գառնահադին, ի Դ (4) աւրն ի յուլիսն։ Եւ սպանվան մերձ ի Գաղա լ Ռաւպէրտն մայստռն Ոսպէթլուն, ֆրէր Ռաւճեր տը Մալին և մարաջախտ Դամփլուն ֆրէր Ճագ տը Մայլի, յառաջի աւրն ի մայիս, որ յառաջ էր քան զկորուստ սուրբ խաչին և յորժամ յաղթեցան քրիս[տ]ոնեայքն և անյայտ եղև սուրբ խաչն։ Ի նոյն աւրն առւին ի Սալահատինն զԱքայ և ապա զԱսխալան ի Դ (4) ի սեխտեմբրոն։ Եւ ի հոգ-տեմբրռ Բ (2) աւրն էառ Սալահատինն զԵրուսաղէմ և զամենայն Սէհլն, զարդ ի Սրոյ և ի Տրապալսոյ[91]։ Եւ ի սոյն ամի սկսաւ շմորն ընդ ըռէ տը Ֆրանցն և ընդ Թագաւորն Ընկլիզաց։

ՌՃՁԹ (1189) Երեկ Թագաւորն Կի պաշարել զԱքայ և ի սոյն ամի եղև Թագաւոր Ընկլիզաց Ռոիջառդն։

ՌՃՂ (1190) Կայսրն Ալամնաց Ֆրտրիկն խեղդեցաւ ի [152 բ] դետն Սելևկիոյ և Թաղեցաւ յԱնտիոք[92]։Եւ ի սոյն ամի եկաց պապ ի Հռոմ Սէլէստինոս Երրորդ Հռոմայեցի, կացեալ ամս ԻԳ (23), ամիսս Թ (9) և աւուրս ԺԱ (11)։ Սա յառաջին ամին իւր Թագեաց կայսր զՀեռի, որդի Ֆրտրկին, որ Թագաւորեաց ամս Թ (9)[93]։ Եւ ի սոյն ամի Ֆիլիպ ըռէ տը Ֆրանց և Ռոի-ջառդ[94] Թագաւորն Ընկլիզաց եկին պաշարել զԱքա և ի գալն Ռոիջառդ Թագաւորն Ընկլիզաց էառ զԿիպրոս կղզին ի Յունաց ի Կեռսակ տուկէն[95], Եւ յայսմ ամի եղև սկիզըն կարգաւորութեան Ալաման ֆրէրացն։

ՌՃՂԱ (1191) Ըռէ տը Ֆրանցն և Թագաւորն Ընկլիզաց Թափեցին զԱքա յանաւրինաց ԻԲ (22) աւրն ի յունիս[96]։

ՌՃՂԲ (1192) Կի Թագաւորն Երուսաղէմի գնեաց զԿիպրոս կղզին ի Թագաւորէն Ընկլիզաց[97]։ Եւ հաշիշիքն սպանին զմար-գիզն։ Եւ գունԹն Հեռի պսակվեցաւ ընդ Զապէլ դուստր Թագա-ւորին Ամառէ, որ յառաջ լեալ էր կին Հանֆրէի։

ՌՃՂԳ (1193) Թագաւորն Ընկլիզաց Ռոիջարդ արար սէր ընդ Սալահատինն և Թափեաց սիրով զՃաֆն, զԱրսուֆն, զՍը-զայըն և զԳայֆազ և ապա գնաց յայնկոյս ծովուն և ըռնուեցաւ ի տուկ Տաւս տը Ռիչէն[98],

ՌՃՂԴ (1194) Մեռաւ Կի Թագաւորն Երուսաղէմի և Թ (9)-երրորդ Թագաւորեաց եղբայր նորա Հէմրի։ Յայսմ ամի Լևոն տէրն Հայոց կալաւ զՊէմունտ բրինծն Անտաքոյ և գնտանեաց ի Սսոյ կլայն[99]։

ՌՃՂԵ (1195) Ազատեցաւ Պեմունտ բրինծն ի Սսոյ կլայէն միջնորդուԹեամբ գունԹ Հեռէ, որ արար խնամուԹիւն յիրենց մէջն։ Եւ յայսմ ամի վարեցին զԲիզանքն ի Յաքայոյ և յե‖ տոյ [153 ա] մառւցին զԲիզանքն ի քաղաքն։ Եւ ազատեցաւ Ռոիջառդ Թա-գաւորն Ընկլիզաց[100]։

ՌՃՂԶ (1196) Մեռաւ. Սալահատինն և իր ազբայրն Սէֆը-տինն հայրենէԹ[ա]վեց զաղր[ո]ր որդիքն և ինք տիրեաց Մսրա և Դմշխա[101],

ի Քրիստոսէ

Եւ մեռաւ Հէմրի պատրիարգն Անտաքոյ, յետ որոյ եկաց պատրիարգ Պետրոս եպիսկոպոսն Տրապալսոյ։

Եւ եղև մեծ սով ի Ֆրանսն, որ աժեցաւ ցորենն խտերն[102] Դ (4) լիվր։

ՌՃԽԷ (1197) Առին քրիստոնէքն զՃպլէթ դաւով յանաւրինաց։ Եւ ընրրուրն Հեռի[103] էառ զԲոյլն[104] և զՍդիլն[105]։ Եւ յղրկեց պապն յաւգնութիւն ծովուն այս դեհիս յոլով աղաւթվորք, որ խաչ էին վերուցել[106]։ Եւ գունթ Հեռին, որ էր ի Ցաքա ընկաւ ի պատուհ[ա]նէն ի վայր և մեռաւ[107]։

Ե Մէլէքըլ Ցայտլն էառ զՃաֆն ի քրիստոնէից։

Եւ աժեցաւ ի Ֆրանսն սիստեր մի աղն Դ (4) լիվր։

ՌՃԽԸ (1198) Թագաւորն Կիպրոսի Հէմրի պսակուեցաւ ընդ թագուհին Զապէլ։ Եւ եպիսկոպոսն Մայանսու թագեաց զԼեոն տէրն Հայոց թագաւոր. և եղև առաջին թագաւոր Հայոց յաշխարհն Կիլիկեցոց[108]։ Եւ առաւ Պերութ[109]։ Եւ վախճանեցաւ ընրրուր Հէռին[110]։ Եւ ալամանքն սղարեցին զԴուրունն և ոչ կարացին առնուլ։ Եւ թեացին առանց կայսր ամս Է (7)[111]։

ՌՃԽԹ (1199) Ռոհջարդ թագաւորն Ընկլիզաց մեռաւ ի զարկուց նետի[112]. և թագաւորեաց իր որդին Ճուանն[113]։ Եւ Լաւիզ, որդի Ֆիլիպ ըռէ տը Ֆրանցին, պսակվեցաւ ընդ Տամբըլանչն, դուստր Ալֆունս ըռէ տը Կաստէլին։

ՌՄԱ (1201) Մեռաւ Պեմունդ ըրինծն Անտաքոյ և եկաց Պեմունդն իր որդին, որ էր կոմս Տրապալսոյ։

Եւ Նիլոս գետն Մսրա ‖ նուազեցաւ և եղև սով և սղութիւն մեծ յԵգիպտոս։ 104 բ

ՌՄԲ (1202) Եղև մեծ շարժն որ փլոյց զԱքա և զՍուր, զՃպլէթ, զԱրկա և մեծ մասն ի Տրապալսոյ և այլ շատ քաղքնի ի քրիստոնէից և յանաւրինաց։ Եւ Գունթըլ տ Ֆլանտրն խլեցաւ յիր աշխարհէն գալ յԵրուսաղէմ։

ՌՄԳ (1203) Թագաւորն Հայոց Լեոն էառ զԱնտաք ինչու ի Դամփլն և կեցաւ ի ներս Գ (3) աւր[114]։ Եւ թագաւորն Ընկլէզաց Ճուանն կալաւ զԱրդուսն և զայլ իշխանսն ի Միրապիա։

ՌՄԴ (1204) Եսպան Մարչուֆլն զորդի Կեռսակ կայսերն։ Եւ Գունթըլ տ Ֆլանդրն և տուկն Վնիժին առին զԿոստանդինուպաւլիս ի Յունաց[115]։ Եւ վազցուցին զՄարչուֆլն[116] ընդ սոյն մի ի վայր և մեռաւ։ Եւ թագեցին կայսր Կոստանդինուպաւլսի զՊաղտինն[117]։

Եւ թագաւորն Կիպրոսի Հէմրի յղրկեց զիր զալէքն ի Կիպրոսաւս և ի Սեհլէն յԵգիպտոս, որ աւերեցին զՖուէն և բերին մեծ շահ։

Եւ Ֆիլիպ ըռէ տը Ֆրանցն շահեցաւ ի թագաւորէն Ընկլիզաց զՆորմանդոյ երկիրն[118]։

ՌՄԵ (1205) Մեռաւ թագաւորն Կիպրոսի Հէմրին։

ՌՄԶ (1206) Պեմունդ ըրինծն Անտաքոյ էառ զՆֆինն և զՃպլաքարն ի յիրենց տէրոջն, որ մոռել էին ընդդէմ իր։

ի Քրիստոսէ

*ՌՄԷ (1207) Թագվեցաւ. ընբրուր Աւդունն ծնեալ ի Սագսոնաց. և սորա ամք վասն այն որ չէ դրած, որ եկեղեցոյն հակառակ եղև, զոր յետոյ եկեղեցոյն հրամանաւ. Ֆրտրիկն ընբրուր թագվեցաւ, հակառակ Աւդին. և գնաց շատ զաւրաւք ի վերայ Աւդին և յաղթեաց նմա և ինքն կալաւ զաշխարհն[119],*

*Ի սոյն ամի եկաց պապ ի Հռոմ Ինաւսանթն ամս ԺԸ (18) ‖ , 154 ա ամիսս Դ (4) և աւուրս ԻԳ (23). յետ որոյ եկաց աթոռն առանց հայրապետի աւր Ա (1)։ Յայսմ ամի Ֆիլիպ թագաւորն Ալամնաց սպանաւ։ Եւ թագաւորն Երուսաղէմի այրեաց հրով զԸռաւչէլն։ Եւ յայսմ ամի թագաւորն Հայոց Լեոն կալաւ զՍնտստիաւսն Հէռի որդովքն և զԿոստանց Խումարտիոշն և զՃաւսլինն և զՊաղտինն[120],*

*Եւ զտէր Յոհանէս կաթողիկոսն ընկեցին յաթոռոյն և եդին կաթողիկոս զտէր Դաւիթ Արքակաղնցին[121],*

*ՌՄԸ (1208) Պեմունտ բրինծն Անտաքոյ խանգրեաց զիւր ձիաւորքն և զԱնտաքոյ դումինն, որ մոտեալ էին ընդդէմ նորա. և վասն զի թելադրութեամբ պատրիարգին եղև մոտութիւնն այն. կալաւ զպատրիարգն և եդ ի բանդի, որ և անդ վախճանեցաւ։ Խոսրովշահ սուլտանն[122] յԻկոնիոյ որդի Խլիճ Ասլանին էառ զԲերդուսն[123] ի Հայոց և կալաւ զտէր նորա զԳրիգոր որդի Լեոնի,*

*ՌՄԹ (1209) Պատերազմեցաւ Լաշքարի կայսրն Յունաց ընդ սուլտանն յԻկոնիոյ ի Խոնաս[124], Եւ յաղթեալ անաւրինացն սպանաւ սուլտանն[125] և եկաց ի տեղի նորա սուլտան Յաղըտին Քայքաուսն։*

*ՌՄԺ (1210) Ամուսնացաւ ընդ թագուհին Երուսաղէմի Մարին Ճուանն, որ յետոյ կոչեցաւ ըռէ Ճուան, որ եկաց Ժ(10)-երրորդ թագաւոր Երուսաղէմի։ Յայսմ ամի Լևոն թագաւորն Հայոց էանց ի կղզին Կիպրոս և ամուսնացաւ ընդ Սպիլ, քոյր թագաւորին Կիպրոսի ըռէ Ոյկին[126],*

*ՌՄԺԱ (1211) Թագաւորն Կիպրոսի Ոյկն ամուսնացաւ ընդ թագուհին Ալիծ,*

*Եւ Կաղթեր տ Մունպլիարդն գնաց զաւրաւք ի Տամիաթն և անաի բերեալ շահս բազումս ‖ ։ Յայսմ ամի վախճանեցաւ կա- 154 բ թողիկոսն Հայոց տէր Դաւիթ և դարձեալ կալաւ զաթոռն տէր Յոհանէս։*

*ՌՄԺԲ (1212) Կաղթեր տ Մունպլիարդն գնաց յԱտալիա և առ զնա և անդ վախճանեցաւ։*

*ՌՄԺԳ (1213) Եւ եղև մեծ պատերազմ ընդ քրիստոնեայսն ընդ Տաճիկսն յաշխարհն Սպանիոյ[127],*

*Եւ հաշիշիքն հարեալ սպանին զՊեմունդ բրինծն Անտիոքա։*

*ՌՄԺԴ (1214) Սպանաւ պատրիարգն Աւպէրտ յաւագ եկեղեցոջն Աքայոյ յորժամ էր ի ըրսիսիոնն. յետ որոյ եկաց պատրիարգ Երուսաղէմի եպիսկոպոսն Սայիտայ.*

ի Քրիստոսէ

Եւ Փիլիպ ըռէ տը Ֆրանցն խանդրեաց զԱւգուն ընըրուրն Ալամնաց ի Կանդարայն, որ կոչի Պուվինս[128]։

Եւ Լաւիզ որդի ըռէ տը Ֆրանցին խանդրեաց զԹագաւորն Ընկլիզաց զըռէ Ճուանն ի գաւառն, որ կոչի Բաւըրդաւ[129]. և յետոյ եղև ըռէ Ճուանն ճորտ եկեղեցոյն Հռոմայ՝ տուեալ հարկս ոսպուն յաշխարհէն Ընկլիզաց։

ՌՄԺԵ (1215) Ինաւսանթ պապն արար ժողով ընթհանրական ի Հռոմ, վասն Թափման Երուսաղէմի, ՆԻԲ (422) եպիսկոպոսաց և ՀԲ (72) արքեպիսկոպոսաց[130]։ Սա հրամայեաց արկանել զանկակ առաջի մարմնոյն տեառն, յորժամ բարձեալ տանիցին ուրեք, զի հաղորդեսցեն զոք։

ՌՄԺԶ (1216) Վախճանեցաւ Ինաւսանթ պապն և յետ նորա եկաց պապ ի Հռոմ Ոնորիոս Երրորդ, Հռոմայեցի ազգաւ, կացեալ ամս Ժ (10), ամիսս Է (7) և աւուրս ԻԳ (23)։

Եւ մեռաւ ընըրուրն Ալամնաց Աւգուննն. և տիրեաց յետ նորա Ֆրտրիկն։ Յայսմ ամի Թագաւորն Հայոց Լեոն էառ դաւով ի գիշերի զքաղաքն Անտիոք[131] և կաց ‖ այց անդ ըրինծ զՀռուբէն, Թոռն Ռաւբինի աւագ եղբաւրն իւրոյ։ 155 ա

Եւ ծնաւ Զապէլ դուստր Թագաւորին Լեոնի։

Յայսմ ամի Քայքաուս սուլտանն յԻկոնիոյ պաշարեաց զբերդ Կապանն և կալաւ զիշխանսն Հայոց զԿոստանդին գունդուստապլն, որ կոչեցաւ Աւագ պարոն և զԿոստանդին, որդի տեառն Լամբրունին և զԿեռսակ տէրն Մաղվայոյ և զայլսն[132]։

ՌՄԺԷ (1217) Եկն յայսկոյս ծովու Թագաւորն Ունգռաց[133] և տուկ Տաւս տը Ռիչն և բազմութիւն խաչվորացն Ունգռաց և Ալամնաց, որ և գնացին մինչև ի Թափաւրական լեռն և շինեցին բերդ զՋաստէլ Բլրինն Դամփլցեց[134]։ Եւ ըռէ Ճուանն և պատրիարգն շինեցին զԱըզայրին բերդն։

ՌՄԺԸ (1218) Վախճանեցաւ ըռէ տը Կաստէլն, որ կոչէր Ալֆունսը լ Պաւն[135]։ Եւ Թագաւորն Կիպրոսի Ոյկն[136] վախճանեցաւ ի Տրապաւլիս։ Եւ գնացին զաւրքն քրիստոնէից ի Տամիաթն[137]։

Յայսմ ամի Թագաւորն Հայոց Լեոն ետ գին սուլտանին զբերդն Լուլվայ և զՀավզատի և աղտտեաց զկալանաւոր իշխանսն իւր։

ՌՄԺԹ (1219) Զաւրքն քրիստոնէից առին զՏամիաթն յանաւրինաց[138]։ Եւ Պեմունտ ըրինծն խլեաց զԱնտիոք յեղբաւրորդոյն իւրմէ յՌռաւբինայ, տուրտվութեամբ Կիլամ Ֆարապէլին։ Եւ յայսմ ամի վախճանեցաւ Թագաւորն Հայոց Լեոն։

ՌՄԻ (1220) Ֆրտրիկն, որ տիրեալ էր աշխարհին Ալամնաց և Բոյլին և Սիկիլիոյ, Թագեալ եղև յՈնորիոս պապէն Հռոմայ ի քաղաքն Հռոմ, ի տաճարի սրբոյն Պետրոսի։

Սա ի սկիզբն Թագաւորութեան իւրոյ երևէր բարի այր և հնազանդ եկեղեցոյ։ Բայց յետոյ չարաչար և մեծամեծ ‖ գործս գործեաց հակառակ եկեղեցոյ։ 155 բ

Ցայսմ ամի վախճանեցաւ Ֆիլիպ ըռէ տը Ֆրանցն և թագաւորեաց որդի նորա Լաւիդն[139], Պարոն Վահրամ Մարաջախտն Հայոց և այլ իշխանքն կամեցան բռնութեամբ թագաւորեցուցանել Հայոց Ըռաւբէն բրինծն։ Եւ պայլն Հայոց Կոստանդին կոտորեաց զնոսա մերձ ի Մսիս և պաշարեալ զքաղաքն Տարսուս ամիսս երիս և աւուրս ինչ. և առեալ զքաղաքն կալաւ զբրինծ Ըռաւբէնն և զիշխանսն և առաքեաց ի բանտի յանառիկ դղեակսն ի Բարձրբերդ և ի Պապեռաւնն[140], Եւ յայսմ ամի վախճանեցաւ կաթողիկոսն Հայոց տէր Յոհանէս։ Եւ եկաց կաթողիկոս Հայոց տէր Կոստանդին Բարձրբերդցին։

ՌՄԻ (1220) Ցալատին սուլտանն Հոռմաց էառ զԿալաւնաւռաւս ի Կէովարդէն[141],

ՌՄԻԱ (1221) Քրիստոնեայքն կորուսին զՏամիաթն[142],

ՌՄԻԱ (1221) Տէրն Պռականո պարոն Վասիլն ետ զՊռականա ի Ցալատին սուլտանն և առ ի նմանէ ապրանք(sɪ) զԱյսպասարն[143],

ՌՄԻԲ (1222) Ըռէ Ճուան թագաւորն Երուսաղէմա անցաւ ծովուն ի յայնգեհն. և եղև խնամութիւն ընդ ինք և ընդ ընբրուրն պապուն հ[ր]ոմնաւք, զի առցէ ընբրուրն ի յամուսնութիւն զդուստրն ըռէ Ճուանին։

Ֆիլիպ որդի բրընծին պսակվեցաւ ընդ Զապէլ դուստր թագաւորին Հայոց Լևոնի. և եկաց երկրորդ թագաւոր Հայոց։

Ցայսմ ամի եղև սաստիկ շարժ և փլաւ Պաֆն ի Կիպրոս կղզին[144],

ՌՄԻԲ (1222) Ալատին սուլտանն էառ զՍիվիլա[145] կովով։*

ՌՄԻԳ (1223) Լաւիդ ըռէ տը Ֆրանցն էառ զՐռաւչայլն[146],

ՌՄԻԳ (1223) Ջսիր-Աանա[147] երկրին ամէն բերդէրն տուին ի Ցալատին սուլտանն։ Եւ ի սոյն ամի առին զՄաղվա սղարով ի Կեռսակէն*։

ՌՄԻԳ (1224) Պեմունտ որդի բրընծին ամուսնացաւ ընդ Ալիծ թագուհին Կիպրոսի։

ՌՄԻԳ (1224) Խամարատինն էառ զՍիկլի[148] ի պարոն Կեռսակին տիկնոջէն խաբնաւք և զտիկինն տարան առ իր այր ի Կնիկաւնն[149]*,

ՌՄԻԵ (1225) Թագեցին զդուստր ըռէ Ճուանին ի քաղաքն Սուր[150] և տարան առ ընբրուրն։

ՌՄԻԶ (1226) Եկաց երրորդ թագաւոր Հայոց Հեթում որդի Կոստանդեա պոյլոյն Հայոց[151],

Եւ եկն պայլ ի Ցաքա գունթը ‖ Թումասն ընդ Ֆրտրիկ 156
ընբրուրին դեհաց։

Ֆրէրքն Ալամնաց սկիզբն արարին շինելոյ զՄաւնֆաւրթն[152],

Ցայսմ ամի վախճանեցաւ Լաւիզ ըռէ տը Ֆրանցն և թագաւորեաց իր որդին Լաւիզն[153],

ՌՄԻԷ (1227) Ցեկեղեցին Հռոմայ կանոնեցին զսուրբն Ֆրանսէզ և զսուրբն Անդոն ի կարգէ Ֆրէրմնուրացն և կարգե-

ցին տանք նոցա։ Յայսմ ամի Ոնորիոս պապն Հռոմայ բանադրեաց զԸնբրուր Ֆրտրիկն. և ապա ի սոյն ամի վախճանեցաւ, յետ որոյ եկաց պապ ի Հռոմ Գրիգորիոս Թ (9)-երրորդ, ազգաւ Գանքանիացի, կացեալ ամս ԺԴ (14), ամիսս Ե (5) և աւուրս երիս. յետ որոյ եկաց աթոռն առանց հայրապետի աւուրս Խ (40)։

Եւ վախճանեցաւ մայստռն Ոսպեթլուն ֆրէր Կարին տ Մունդակոյ։

Շինեցին զՍիդայրին բերդն և զՍայիտոյ։ Եւ վաղջանեցաւ տէրն Պերութա սիր Ֆիլիպ տը Պլինն։ Եւ Քուրետին տիրեաց Դամասկոսի[154]։

ՌՄԻԸ (1228) Ընբրուր Ֆրտրիկն եկն յայսկոյս ծովուն և շինեաց զՃաֆն։ Եւ Թագուհին Կիպրոսի Ալիծն բաժանեցաւ յամուսնոյն իւրմէ՝ ի Պեմընդէ, որդոյ բրընծին Անտիոքա։

ՌՄԻԹ (1229) Ընբրուր Ֆրտրիկն արար սէր ընդ Մէլէք Քէմլն և դարձուցին սիրով ի քրիստոնէքն զԵրուսաղէմ և զՆազարէթ և զԼիտն[155]։

ՌՄԼԱ (1231) Լաւնկուպարտքն առին զՊերութա քաղաքն և պաշարեցին զբերդն և ոչ կարացին առնուլ։

ՌՄԼԲ (1232) Լաւնկուպարտքն խլեցին զԿիպրոսի կղզին և Պերութա տէրն խանգրեաց զԼաւնկուպարտքն և թափեաց զկղզին ի նոցանէ։

ՌՄԼԳ (1233) Լաւնկուպարտքն տուին զԿէռինին բերդն ի
Պերութա տէրն ‖ և ի Ճնուէղքն։ Յայսմ ամի վախճանեցաւ բրինձն 156 բ
Անտիոքա Պեմունտ կոյրն և եկաց բրինծ Պեմունտնանկ[156]։

ՌՄԼԴ (1234) Պեմունտ բրինձն Անտիոքա ամուսնացաւ ընդ դուստր Հռոմայեցի գունդի միոյ, որում անուն էր Գունդ Բաւլ։

Եւ Լաւիզ ըռէ տը Ֆրանցն ամուսնացաւ ընդ դուստր Բրաւվանցին գունդին և գնաց զաւրաւք ի գաւառն գունդ տը Պրրդայնին և կալաւ զԱւդունն։

Յայսմ ամի սիստեր մի ցորեան աժէր ի Ֆրանսն Դ (4) լիվր և սիստեր մի աղն՝ Դ (4) լիվր։

ՌՄԼԵ (1235) Վախճանեցաւ տէրն Պերութա սիր Ճուան տը Պլինն։ Եւ սիր Ճուան, Սիդայրին տէրն և Ոսպեթալն և Դամփլն պաշարեցին զՄունֆռանթն։

ՌՄԼԷ (1237) Դամփլցիք խանգրուեցան ի Դարպսակն[157]։ Եւ եկն ի Հռոմայ պատրիարգ Երուսաղէմի Ճիրաւտն։

ՌՄԼԸ (1238) Ըռէ Տըրակուն Տաւն Ճամն էառ զՎլանս[158] քաղաքն յանաւրինաց։

ՌՄԼԹ (1239) Ըռէ տա Նաւարն և այլ կոմսեր եկին յայսկոյս ծովու և պատերազմեցան ընդ զաւրս Մսրայ մաւտ ի Խազէ[159]։ Եւ անաւրէնք յաղթեցին քրիստոնէից և եղև մեծ կոտորումն։

Եւ ամուսնացաւ ընդ Թագուհին Ալիծ իշխան ոմն, որում անուն էր Ըռայուլ տը Սայշունզ[160]։

ՌՄԽ (1240) Քրիստոնեայք Սէհլին արարին սէր ընդ սուլտանն Դամասկոսի, և առին յանաւրինաց սիրով զԳեաֆաւրթն, զՍաֆէթ և զԵրուսաղէմի ամէն երկիրն[161]։ Եւ դունդ Ռոէջարդն շինեաց զԱսխալան։ Եւ դարձաւ. ըռէ տը Նաւարն յիւր աշխարհն։ Եւ վախճանեցաւ Գալիան Սայիտոյ տէրն։

ՌՄԽԱ (1241) Պերութայ տէրն սկսաւ շինել զԱրսուֆ բերդն։

Եւ յայնկոյս ծովու ընբրուրին դալէքն բռնեցին զծնուէդացն || դալէքն, որ զեպիսկոպոսունքն կու տանէին ի Հռոմ։ 157 ա Եւ դունդ Ռոէջարդն[162] հաստատեաց զՍէհլին հաշտութիւնն ընդ անաւրէնք[163] և աղատեց զդունդ տ Մունֆաւրթն և զայլ իշխանսն զոր Ռուգնատին ղաւրաւարն Մսրա կալեալ էր և դարձաւ յիւր աշխարհքն։

Յայսմ ամի վախճանեցաւ Գրիգոր պապն Հռոմայ. յետ որոյ եկաց աթոռն առանց հայրապետի ամ Ա (1) և ամիսս Թ (9)։

ՌՄԽԲ (1242) Եղև պապ ի Հռոմ Սէլէստինոս Չորրորդն ծնեալ ի Միլանէն, կացեալ աւուրս ԺԷ (17). յետ որոյ եկաց աթոռն առանց հայրապետի ամ Ա (1) և ամիսս Թ (9), վասն հակառակութեան ընբրուր Ֆրարկին։ Սիր Ճաւֆրէ տ Սառճինս, որ էր պայլ Աքայոյ, զաւրաւք Սէհլին և Դամփլցիքն կալան իջվանք, մաւտ ի Յառխալան։ Եւ զաւրքն Մսրա եկին ի վերայ նոցա և պատերազմեցան ընդ Դամփլցիքն, այլ բազումք սպանան յանաւրինաց և այլքն փախստական դարձան։ Յայսմ ամի թագուհին Ալիծ խնդրեց զթագաւորութիւնն Երուսաղէմի և Աքայցիք արարին ոմաճ թագուհոյն և իւր այրկանն Ռաայուլ տը Սայշունին։ Եւ յետ այնորիկ առեալ ի զաւրացն Աքայո գնաց ի Սուր և անտի վարեաց զՀաւնկուպարտքն, որ և փախստական ելան յամէն Սէհլէն։

ՌՄԽԳ (1243) Եղև պապ ի Հռոմ Ինաւսանթ Չորրորդն։

ՌՄԽԴ (1244) Եղև կրկին սէր ընդ Սէհլին քրիստոնէքն և ընդ սուլտանն Տմըշխա և դարձոյց սուլտանն ի քրիստոնէքն զԵրուսաղէմ իւր ամենայն երկրովն, որ է յայսկոյս Յորդանանու՝ զԱրդ, զԵրիքով և զՆապլուզ[164]։ Եւ եկն յԱքա պատրիարդ Երուսաղէմի Ռաւպէրտն։ Եւ հաշիշիքն հարին զԳալիան, տէրն Պերութայ։

Յայսմ ամի Խորազմիքն մտին յաշխարհն Երուսաղէմի || և 157 բ պատերազմեալ խանգրեցին զՍէհլին քրիստոնեայքն և կալան բազում իշխանք և անդ սպանուան մայստռն Դամփլուն՝ ֆրէր Հերմանդ տը Փէոկաւրդն և մայստռն Ոսպեթլուն՝ ֆրէր Կիլամ տը Չաստէլնոյէֆն և Կաղթէր դունդն Ճաֆուն և այլ բազում եպիսկոպոսունք և իշխանք[165]։

ՌՄԽԵ (1245) Ինաւսանթ պապն Հռոմա արար ժողով ընթհանրական ի Լիոն քաղաք։ Եւ հանին ի ժառանկութենէ զՖըրտրիկ ընբրուրն։ Եւ Լաւիզ ըռէ տը Ֆրանցն խաչ էառ, վասն գալոյ յայսկոյս ծովուն։ Եւ վախճանեցաւ Պէրթ պատրիարդն Անտիոքայ։

*ՌՄԽԶ (1246) Վախճանեցաւ թագուհի Ալիծն և թագաւո-
րեաց Կիպրոսի Հեռի որդի իւր։ Եւ պարոն Սմպատ գունդստա-
պլն Հայոց գնաց ի Կիւկ խանն[166]։*

*ՌՄԽԷ (1247) Սուլտանն Մսրա[167] էառ ի քրիստոնէից զՏա-
պարիա և զԱսխալան։*

*Եւ վախճանեցաւ Գալիան տէրն Պերութա, որ էր պայլ.
յետ որոյ եկաց պայլ ի Յաքայ Ճուան ա Պլին, Արսուֆին տէրն։*

*Եւ վախճանեցաւ տէրն Սայիտոյ Ճիլն. յետ որոյ եկաց
տէր Սայիտոյ Ճուլիանն։*

*ՌՄԽԸ (1248) Լաւիզ ըռէ տը Ֆրանցն ելեալ յաշխարհէն
իւրմէ բազում զաւրաւք եկն յայսկոյս ծովու և էջ ի կղզին Կիպ-
րոսի յամսեանն սեպտեմպերի ԻԷ (27) աւրն[168]։ Եւ եկաց պայլ
Աքայոյ Ճուան Ֆոնունն։ Եւ եղև լիկատ Աւդ տը Դուսկլանն։*

*ՌՄԽԹ (1249) Յամսեանն մայիսի Ի (20) աւրն խլեցաւ
ըռէ տը Ֆրանցն զաւրաւք ի Լիմիսոն գնալ ի Տամիաթն և ի
յունիսի Դ (4) աւրն հասան անդ. և ի Ե (5) աւրն առին ցամաք
պատերազմաւ. և ի Զ (6) աւրն առաւ Տամիաթն առանց պա-
տերազմի[169]։ Եւ եղև ի Յաքա շմոր ընդ Ճնուէզքն և ընդ Բի-
զա ‖ նքն, որ դիմացաւ ԺԸ (18) աւր. և կոուեցան ընդ իրար 158 ա
ԻԲ (22) աղդ բարանով։ Եւ դարձեալ եկաց պայլ ի Յաքա Գա-
լիան, Արսուֆին տէրն։ Եւ արար հաշտութիւն ընդ Ճնուէզքն և
ընդ Բիզանքն Գ (3) տարու։ Եւ ի սոյն ամի կոտորեցաւ ի մի-
նայն Աքայո ՀԲ (72) նաւ ընդ մեծ և ընդ փոքր և ի Տամիաթո
մինայն՝ ԼԲ (32) բերդնաւ և Ժ (10) ղալէ։ Յայսմ ամի ԻԷ (27)
աւրն ի նոյեմպերի[170] ըռէ տը Ֆրանցն խլեցաւ զաւրաւք ի Տա-
միաթու գնալ ի Մնսուրա. և հասաւ ի Մնսուրայ ի դեկտեմպերի
ԻԲ (22) աւրն[171]։ Եւ ի տեղին, որ կոչի Շիրիմսահ գտան յանաւ-
րինաց զաւրացն և կոտորեցին զնոսա գունդ տ Արդայղն և Դամ-
փւցիք, որ քրիստոնէից զաւրացն առ[ա]ջին գնայէին(sì)։*

*Եւ յերեկորէն սպաննաւ ի զաւրացն անաւրինաց ՃԾԵ (155)
և ի վաղուենէն, որ լուսցաւ ընդ սպաննած և ընդ բռնած ու
ընդ խեղդած ի ջուրն կորեան զէտ հազար Տաճիկ։*

*Եւ ի յունվարի Ը (8) աւրն Արսուֆին տէրն Սէհլին զաւ-
րաւքն գնաց ի Ծեծ, ի Բիւթանիա, ի Թուրքմանքն, որ անդ էին
բնակել և կալան զգլխաւոր Թուրքմացն և շահեցան ան[ա]սուն
ԺԶՌ (16000) ընդ մեծ և ընդ փոքր։*

*ՌՄԾ (1250) Ի փերվարի Ը (8) աւրն ըռէ տը Ֆրանցն ա
իւր զաւրքն անցան ընդ Դընիիղին գետն և բազումք խեղդեցան
ի զաւրաց նորա ի գետն[172] և ապա շահեցան քրիստոնեայքն զի-
ջուանք զաւրացն անաւրինաց և կոտորեցին բազումք յանաւ-
րինաց և առջնգնայք զաւրացն քրիստոնէից մտին ի գեղաքա-
ղաքն, որ կոչի Մնսուրա և սկսան կողոպտել և շահել զինչս քա-
ղաքին, զորս տեսեալ զաւրացն անաւրինաց, դարձան ի վերայ
նոցա և անդ սպանին զգունդ տ Արդայղն և այլ գունդեր և հե-
ծելվորք։ Ի հինդ աւրն ի յապրիլն ‖ ըռէ տը Ֆրանցն իւր զաւ- 158 բ*

բաւքն խլեցաւ վասն տուայտութեան, զի ոչ ունէին ուտելիք և կամեցան գնալ ի Տամիաթն և ի ճանապարհին բռնուեցաւ. թագաւորն և ամէնն՝ որ ի հետն էին, ի տեղի մի գեղաքաղաք, որ կոչի Շերիմսահ։ Բ (2) աւրն ի մայիսն Մսրցիք սպանին զիրենց սուլտանն[173] և ամիրայքն խաւսեցան վասն ազատելո զըռէ տը Ֆրանցն և զայլ կալանաւորքն։ Եւ այրին երգմամբ հաշտութիւն ընդ իրար և կտրեցին դին ըռէ տը Ֆրանցին և այլոցն ՃՌ (100,000) մարկ արծաթ։ Եւ ազատեցաւ ըռէ տը Ֆրանցն և իր աղբայրքն, և լիկազն, և պատրիարգն և այլ բազում իշխանք և ձիաւորք և աղքատք։ Եւ եկին յԱքա Ը (8) աւրն ի մայիսն։ Եւ յայնժամն պարապեց ըռէ տը Ֆրանցն զԱքայո պուրքն։ Եւ եղբայր ըռէ տը Ֆըանցին Ջառլն և այլ գունդեր և իշխանք գնացին ծովուն ի յայնդեհն։

Եւ ի սեխտեմբր ամիսն Հեռի թագաւորն Կիպրոսի ամուսնացաւ ընդ Բլաժայնա դուստր բըընծին Անտիոքա։ Եւ ազատեցան ի ծառայութենէն՝ Մսրա ֆրէր Կիլամ՝ մայստռն Ոսպեթլուն և ՃԻ (120) ձիաւոր և մանդր մարդ մինչև ի ՐԾ (800)։ Ցայսմ ամի վախճանեցաւ ընբռուրն Ֆրտրիկ յամսեանն դեկտեմպերի ԺԳ (13) աւրն և եթող ժառանդ որդի մի, որում անուն էր Քուռատին, որ ապրեցաւ յետ մահուան նորա տարի Բ (2), ամիսս Ե (5) և աւուրս ԺԵ (15)։ Եւ էր այր չարաբարո իբրև զիւր հայրն։ Ըղսմանէ ասացին էթէ մահացու դեղով ետ սպանանել զՀեռի եղբաւրորդի թագաւորին Ընկլիտաց և զՖրտրիկն զիւր աղբաւրորդին՝ զորդի ըռէ Հեռէ և եսպան բազում ֆրէրներ և այլ կարգաւորք բազում և զանազան տանջանաւք։ Սա ետ փլցնել զպարիսպ Նաըլին և զԴաբին և ետ կոչ ‖ եւ զինք ընբռուր հա- 159 ա.
կառակ հրամանացն եկեղեցո։

Զի ի յայնմ ժամանակի եկեղեցին ընղրեալ էր ընբռուր յաշխարհէն Ալամնաց զդունդը Կիլամ տը Հաւոլանտն, որ թագաւորեալ էր ի վերայ Ալամնաց և ունէր ընդ ձեռամբ զիրաւունք ընբռուրութեանն։ Եւ այս Քուռաթս բանադրուեցաւ ի պապէն Հռոմայ յԻնաւսանթ Չորրորդէն և բանադրած մեռաւ։

Ցայսմ ամի սուլտանն Հալպա գնաց բազում զաւրաւք առնուլ զաշխարհն Մսրա և եռև մեծ պատերազմ ի մէջ երկոցունց զաւրացն անաւրինաց և կոտորեցին սաստիկ զմիմեանս և յաղթեցաւ սուլտանն Հալպա և դարձաւ ի տուն իւր[174]։

Ցայսմ ամի Հեռի թագաւորն Ընկլիզաց էառ խաչ, վասն գալոյ ծովուն ի յայսդեհս։

ՌՄՁԱ (1251) Ըռէ տը Ֆրանցն պարապեց զՍըզայրն և մեռաւ բըինծն Անտիոքա՝ Պեմունտն. յետ որոյ եկած բըինծ Անտիոքա և գունդ Տրապաւլսո իւր որդին Պեմունտն։

ՌՄՁԲ (1252) Ըռէ տը Ֆրանցն պարապեց զՃաֆն և վախճանեցաւ իւր մայրն՝ Պլանչն։

Եւ ըռէ տը Ֆրանցն արար ձիաւոր ի Ճաֆն զՊեմունտ բըինձն Անտիոքա։

Ի Քրիստոսէ

*Ու վախճանեցաւ Զապէլ Թագուհին Հայոց։*

*Եւ Ճուլիան Սայէտո տէրն ամուսնացաւ ընդ Ֆիմի դուստր Թագաւորին Հայոց Հեթմո։*

*ՌՄՇԳ (1253) Դմըշխա զաւրքն քակեցին զՏաւդն և զԸռիգարտանն, որ է մերձ ի Ցաքա և ապա առին զՍայիտէ և սպանին առաւել քանզ ԸՃ (800) քրիստոնէ և տարան ծառա ԴՃ (400)։ Եւ ապա ի սոյն ամի ըռէ տը Ֆրանցն կրկին պարսպեաց զՍայիտէ։*

*Ցայսմ ամի վախճանեցաւ Հեռի Թագաւորն Կիպրոսի։ Եւ Հեթում Թագաւորն Հայոց գնաց առ Մանկո խանն[175]։*

*Ի սոյն ամի ամուսնացաւ բրինծն Անտիոքա ընդ Սպիլ դուստր || Թագաւորին Հայոց Հեթմո։* 159 բ

*ՌՄՇԴ (1254) Կատարեաց ըռէ տը Ֆրանցն զպարիսպն Սայետո և եկն ի Ցաքա և արար ձիաւոր զԳալիան տը Պլինն, զորդի Առսուֆին տիրոջն, որ յետոյ ամուսնացաւ. ընդ Բլաժայնա Թագուհին Կիպրոսի։*

*Եւ վախճանեցաւ Ֆուռաթ որդի Ընրրուրին և յապրիլ ամսո ԻԶ (26) աւրն։*

*Ըռէ տը Ֆրանցն նաւեցաւ գնալ ծովուն ի յայնդեհն և եթող ի Ցաքա Ճ (100) ձիաւորով զոիր Ճաւֆրէ տ Սառճինն, որ էր սենեսջալ Երուսաղէմի և պայլ Աքառ։*

*Եւ եկն ի Ցաքա պատրիարգ Անտիոքա Աւրիս Ճնուէզն։ Եւ եղև պայլ Աքայո Ճուան տը Պլին դունդն Ճաֆուն։ Եւ ի դեկտեմպեր ամիսն մեռաւ Ինաւսանթ պապն Հռոմայ և յետ նորա եկաց պապ ի Հռոմ Ալիջանդր Չորրորդն։ Սա էր եպիսկոպոս Աւստրիո։ Եւ ետ զսուրբ Լազար Բիւթանիո և զԹարաւրական լեառն Ոսպեթլուն տանն։*

*Ցայսմ ամի յայտնեցան Աղաճարիքն և Իսլամպակն։*

*ՌՄՇԶ (1256) Հեթում Թագաւորն Հայոց եկն ի Մանկո խանէն և արշաւեաց զաւրաւք և գաւառն Հոռոմոց ի Մաւռանտինն[176] և ի յայլն։ Եւ ի սոյն ամի ձիաւորեցոյց զանդրանիկ որդին իւր զԼևոն։ Եւ ի Ցաքա սկսաւ ջմորն ընդ Ճնուէզքն և ընդ Վնիցիանքն. և Գունդն եթող զԱքայո պայլութիւնն և եղև պայլ Աքայո Ճուան տը Պլին, Արսուֆին տէրն։*

*Ի յունիս ամսո Գ (3) աւրն եկն ի Ցաքա պատրիարգ Երուսաղէմի մայստռ Ճադն, որ էր եպիսկոպոս Վէրըտաւնին։ Եւ ի մայիս ամիս եկն եպիսկոպոս Աքայո մայստռ Ֆլաւրանսն, որ ձեռնադրեալ էր ի Հռոմ։ Եւ վախճանեցաւ մայստռն Դամփլուն ֆրէր Ըռնաղտ տ Վիչէրն. յետ որո եղև մայստռ Դամփլուն || ֆրէր* 160 ա
*Թումաս Պրարտն։*

*ՌՄՇէ (1257) Աքայեցիք այրին հաշտութիւն ընդ Շամցիք, ի Ցարսուֆին դետէն մինչև ի Պերութա սինաւռն։*

*Ցայսմ ամի Սիրաւտ դարտինալն Ալիջանտր պապուն զաւրաւքն եմուտ յաշխարհն Բոյլին և տվին ի յինք զՖաւճն և զՍայն[Թ]*

Հաւրայնոյն և զՍիրունդն և զՄունթ Սայնդ Անճլն և զամէն ծովեզերքն մինչև յԱւդրայնթն։

ՌՄԾԸ (1258) Հուլայուն խանն էառ զԱլամութ և կոտորեաց զհաշիշիքն[177]։ Եւ ի սոյն ամի էառ Հուլայունն զՊաղտատ։ Եւ վախճանեցաւ թագաւոր եղբայրն Հայոց պարոն Լևոն մարաջախտն։

Թագուհին Կիպրոսի Բլաժանոն բաժնուեցաւ ի յիր այրկէն ի Պալիան Արսուֆին տիրոջն որդոյն և եղև պայլ Աքայո սիր Ճուան տը Պլին, Արսուֆին տէրն։

Եւ եկին ի Ցաքա Ճնուէզացն Ծ (50) զալէ և Դ (4) բերգնաւ, որոց էր գլխաւոր Ըոոււ տ Լադոյրքն. և խանդրուեցան ի վնիցիան զալեացն. և բռնուեցան ի մէջ ընդ Աքա և ընդ Կայֆասն ԻԴ (24) զալէ Ճնուէզ. և կորուսին Ճնուէզքն ընդ սպանած և ընդ բռնած մինչև ի ՌՉ (1700)[178]։ Եւ վարուեցան Ճնուէզքն ի Ցաքայո և փլուցին զիրենց պուրճն և գնացին Ճնուէզքն բնակեցան ի Սուր։

ՌՄԾԹ (1259) Թագաւորն Հայոց Հեթում գնաց ի յաւգնութիւն իր փեսային բըընծին ի Տրապաւլիս, զի ունէր շմոր ընդ իւր իշխանքն և ընդ ձիաւորքն, զոր յետոյ եղև խաղաղութիւն յիրենց մէջն թագուորին միջնորդութեամբն. և թագուորն դարձաւ յերկիրն իւր։ Եւ ձիաւորեցոյց զորդին իւր զԹորոս և ձեռնադրեցաւ եպիսկոպոս թագաւոր եղբայրն տէր Յոհաննէս։

Եւ գողնալով առին զՄունտաս բերդն յանաւրինա[ց], ‖ զոր 160բ եկեալ զաւրքն սուլտանին Հոռոմոց պաշարեաց զՄունտաս և նեղէր զնոսա։ Եւ թագաւորն Հեթում գնաց անդր Հայոց զաւրաւքն և պատերազմեալ խանդրեաց զնոսա և կոտորեաց բազումք յանաւրինացն և այնպէս վերոյց զՄունտասոյ սղարն[179]։

Ցայսմ ամի եկն լեկաթ ի Ցաքա ֆրեր Թումասն ի կարգէ Բրիջուրացն։ Եւ դարձեալ եղև պայլ Աքայոյ սիր Ճաւֆրէ տը Սարճինն։

ՌՄԿ (1260) Հուլայունն էառ պատերազմաւ զՀալպ և զԴամասկոս և զամէն Շամպն ընդ ձեռամբ արար[180] և ինք դարձաւ յարևելս, վասն զի իւր աղբայրն Մանգու խանն մեռեալ էր և յորժամ եհաս խապարն առ Հուլայունն յաւժարութեամբ և փութով կամեցաւ երթալ յարևելս և առնուլ զաթոռ եղբաւրն իւրոյ այլ ոչ ժամանեաց։ Եւ ի Շամպին աշխարհքն եթող ի զաւրաց իւրոց ԺՌ (10000) և գլխաւորք նոցա զՔիթպուղա նուինն և զՊայտար նուինն, զոր ի յետ աւուրց ինչ Խութուզ[181] սուլտանն Մսրա եկեալ ի Շամպն իւր հեծելովն պատերազմեցաւ ընդ Քիթպուղայն և ընդ Պայտարն ի տեղին, որ կոչի Ցայն Ճալուտ[182]. և յաղթեցաւ Դագարն և ի փախուստ դարձեալ ելին ի Շամպուն երկրէն և տիրեաց Շամպուն սուլտանն Մսրայ Խութուզն, որ և ի սոյն ամի սպանուաւ ի յիւր զաւրացն յորժամ դարձեալ գնայր ի Մսր։ Եւ եկաց ի տեղի նորա սուլտան Մսրայ Պտըըտին Պէկպարսն, որ կոչէին Պնտուխտար։

Յայսմ ամի Հուլիան Սայիտոյ տէրն ծախեց Դամփլուն զՍայիտէ և զՊէաֆաւրԹն։ Եւ Թուրքմանքն բռնեցին զՍայետոյ տէրն և ծախեցին ԻՌ (20000) կարմիր։

ՌՄԿԱ (1261) Վախճանեցաւ Ալիշանտր պապն և եկաց պապ ի Հռոմ Ուրբանոս Չորրորդն, որ էր յառաջ լեալ պատրիարգ Երուսաղէմայ։ Սա արար բազում գարտընալք և պարգևեաց զՅագաւորութիւնն ‖ [161 ա] Սիկիլիոյ և զաշխարհն Բոյլին Չառլին, որ էր եղբայր ռէ տը Ֆրանցին և էր գունդ Անճուին։ Եւ ետ նմա սիգեղ և հաստատութիւն պապն վասն վերոգրել պարգևեացս։ Եւ եդիր զինք մէդայր եկեղեցոյն, բայց յառաջ որ Չառլն հասել էր ի Բոյլին աշխարհքն վախճանեցաւ պապն։ Եւ այս Ուրբանոս պապս կոչեց զտուրքն, զոր Ալիշանտր պապն տուել էր Ոյսպեթլուն տանն զսուրբ Լազար Բեթանիոյ։ Յայսմ ամի Գալիան Արսուֆին տէրն ծախեց զԱրսուֆն Ոյսպեթլուն։ Եւ վախճանեցաւ Թագուհին Կիպրոսի Բլաժանսն։ Եւ եդև պայլ Կիպրոսի Ույկ ա Լըզինայն։

Գալիալաւդն[183] էառ զԿոստընդինուպաւլիս ի Ֆռանգնոյն։

ՀեԹում Թագաւորն Հայոց փեսայացոյց զԿոստանդին, որդի Ճաւֆրէ, տէր Սարվանտիքարին, ի դուստր իւր Ռիթա։ Եւ ի սոյն ամի մեռաւ Ճաւֆրի, տէր Սարվանտիքարին[184]։

ՌՄԿԲ (1262) Չառլ եղբայր ռէ տը Ֆրանցին, որ էր գունդ Անճուին և Բրուանսին, պաշարեաց զՄարսեալն և էառ զնա։

Յայսմ ամի վախճանեցաւ Թագաւորահայրն Հայոց Կոստանդին աւագպարոնն[185], ՀեԹում Թագաւորն Հայոց գնաց ի Մանիաւնն և վերոյց զազարն և հացեց[186] զքերդն. և ի դառնալն Խարամանն իր Թուրքման հեծելովն եկն յառաջ Թագվորին և պատերազմեցան ընդ միմեանս։ Եւ զաւրքն քրիստոնէից յաղթեցին նոցա և կոտորեցին ի Թուրքմնացն բազումք և սպանին զեղբայր Խարամնին և զԲ (2) փեսայն իւր և ընկեցին զԽարամանն ի ձիու և դարձեալ հեծաւ ի յայլ ձի և փախեաւ[187]։

Յայսմ ամի զաւրքն Մսրա պաշարեցին զԱնտիոք, այլ Թելադրութեամբ Թագաւորին Հայոց ՀեԹմո, շարժեցաւ Մուզալն գալ ի Թափուծն Անտաքոյ. և յորժամ լուան Մսրցիք զգալն Մուղլին ելան Յանտաքու և գնացին ի Դմըշխ։

ՌՄԿԳ (1263) Պնտուխտար սուլտանն Մսրա եկն զաւրաւք 161 բ հանդէպ Աքայո և ի ԺԵ (15) աւրն ի յապրիլն յիշվեցոյց մինչև ի Յաքայոյ դուռն և արար պակութիւն։ Եւ գերեաց աղքատ, որ քաղքին ընդ դրուցէ գտվան։ Եւ յայնմ աւուր հարեցին զսիր Ճաւֆրէ տը Սարճինն, որ պայլ էր Աքայոյ և այլ բազում ձիաւորք, և սպանին Տաւաշիք, և Հեռի որդի Պեմունտ՝ ըրընծին Անտիոքա և իւր ամուսինն Չապէլն, որ էր դուստր Թագաւորին Կիպրոսի ռէ Ույկին, որով ժառանգութիւնն Երուսաղէմի հասանէր նմա։ Եկին ի Յաքա և խնդրեցին ի Յաքայո պարոնացն զպայլութիւնն Երուսաղէմա Թագաւորութեանն։ Եւ աքայեցիք ընդունեցան զիրենք, բայց ումաճ չայրին վասն այնոր, որ չէին

բերեալ ի հետ իւրեանց զըղորդ ժառանգաւորն գիրենց որդին։

Եւ յայնժամ սիր Հեռին մնաց պայլ ի Յաքա և իւր ամուսինն Զապէլն դարձաւ ի Կիպրոս։ Եւ ի ԺԵ (15) աւրն ի սեպտեմբերն եկն ի Յաքա պատրիարք Երուսաղէմի և լիկաթ Կիլամ, որ էր լեալ եպիսկոպոս Աճանթոյ։

Յայսմ ամի Հեթում թագաւորն Հայոց և Ռուզնատին[188] սուլտանն Հոռմաց և Մուղալ արղուչիքն ժողովեցան յԱռակլիայ վասն ոինաւոնոյն և բերդերոյն բաժնելու։

ՌՄԿԳ (1264) Վնիցիանացն ԾԲ (52) դալէ ընդ դարիթ պաշարեցին զՍուր յանկարծակի և տէրն Սրոյ՝ սիր Ֆիլիպ տ Մընֆաւրթն, ճնուէզաւքն, որ անդ կային և Աքայոյ՝ աւգնութեամբն պահեց զՍուր ընդդէմ Վնիցիանացն և Վնիցիանքն դարձան անտի թաշնաւք։ Եւ յայնմ ամի Ի (20) դալէ ճնուէզացն բռնեցին զՎնիցիանացն կարվանն, որ կու դային յետև իւրեանց Ծ (50) դալէին։

Եւ յայսմ ամի փախճանեցաւ Ոյրբանոս պապն և ճուան տր Պլին Պերութայ տէրն և Հոյէթն, որ էր ժառանգ Սըզայրին, և Զապէլ, կին Հեռէ բըընծին որդոյն։

Եւ եկաց պապ ի Հոռմ մայստռ Կի տը Սայնճիլն ի Բրուանսէն և կոչեցաւ Կլէմայնս Դ (4)։ Սա էր յոյժ գիտնական և
իմաստուն || այր։ Առ սովաւ եկն ի Հոռմ Զառլն և անդ թագե- 162ա
ցին զնա թագաւոր Սիկելիոյ. և տուին ի յինք զեկեղեցոյն նշանակն. և կոչեցին զնա Գունֆ անուներ եկեղեցոյն։ Եւ ինք երդուաւ պահել և մայն դնել զեկեղեցոյն իրաւունքն ընդդէմ ամէն կենդանոյ։ Եւ ապա Զառլն ելեալ ի Հոռմայ գնաց ի Բոյլն և պատերազմեցաւ ընդ ըռէ Մանֆրէ։ Եւ ըռէ Զառլն տիրեալ կալաւ զամենայն աշխարհն Բոյլին և զկղզին Սիկելիոյ, որում թագաւորեալ էր։

Եւ ըռէ տը Գաստէլ Տաւն Ալֆունսոն խանգրեաց զըռէ աը Կըռնաթն և ըզզաւրքն անաւրինաց ի մէջ ընդ Գաւրտուայն և ընդ Շիպիլն. և սպանին յանաւրինաց ԴՌ (4000) հեծման և հետեւակ բազում և եկին ի Յաքա Սիւրաւլիվեր տը Դայրմն։

ՌՄԿԵ (1265) Պնտուխտար սուլտանն Մսրայ էառ զԱրսուֆն ի Յոյսպեթլէն և առին ծառս։ առաւել քան զհազարն ի քրիստոնէից։

Եւ երևեցաւ ի Յաքա նշան զարմանալի լոյս պայծառ իբրև զթուր և յերկայն իբրև զըռումպ և լայնքն թիզ Ա (1), որ եկն յարևելից կուսէ և փիպաւ ի Յաւազ եկեղեցոյն զանկտուննն։ Եւ Ոյկ տ Լըզինայն, որ էր պայլ Կիպռաւսայ, եկն յաւգն Աքայոյ ՃԼ (130) ձիաւորով։ Եւ սիր Սիմուն տ Մունֆաւրթն, որ էր գունդ ի Յընկլիզաց աշխարհն և ունէր ի յամուսնութիւն զքոյր Ընկլիզաց թագաւորին, մռտեցոյց զիշխանքն և ըզաւրքն Ընկլիզաց ընդդէմ թագվորին և կալան զթագ[աւոր]ն[189] և զիւր աղբայրն զգունդ Ռէճարդն, զոր թագաւոր կոչէին Ալամնաց և զԱւտու-

*արտն զիւր որդին, բայց Աւտուարտն ազատեցաւ ի զնտանէն և միաբանեցաւ ընդ բաժին մի իշխանք[190] և ժողովեաց հեծեալ և պատերազմեցաւ ընդ գունդ Սիմուն տ Մընֆաւրթն և ընդ իւր ընկերքն և խանդրեաց զիրենք և յայնժամ սպաննաւ գունդ Սիմունն և իւր աւագ որդին և այլ բազում իշխանք և ապա պատերազմեցաւ ե եսպան զԳունդը տ ֆրէրն և ԴՌ (4000) ձիաւոր։*

*Յայսմ ամի Տաւրպայն ազարեց զՊիրն[191], հրամանաւ* 162 բ *Ապաղա խանին։ Եւ վախճանեցաւ Թագաւոր եղբայրն Հայոց պարոն Աւշին, տէրն Կուռիկաւսոյ ԻԵ (25) աւրն ի դեկտեմբրն ի Նոյէլին[192] գիշերն։ Եւ եկին ի Յաքա Գունդ տը Նըվայրսն և Երարթ տ Նանդոյլ և Երարթ տը Վալարի քառսուն ձիաւորով։*

*ՌՄԿԶ (1266) Պնտուխտար սուլտանն Մսրա եկն զաւրաւք հանդէպ Աքայո Բ (2) աւրն ի յունիսն և եկաց անդ Ը (8) աւր և ապա գնաց պաշարեաց զՍաֆէթ և էառ զՍաֆէթ ի յուլիսի ԻԲ (22) աւրն[193] և ուխտեաց ազատել զքրիստոնէքն, որ անդ կային և յղրկել ի Յաքա։ Բայց յետ առնելոյ զբերդն կոտորեաց զամենայն բերդացիսն։ Եւ ֆրէր մի Դամփլուն, որում անուն էր ֆրէր Լիաւն, տաճկցաւ։*

*Եւ ի սոյն ամի Սմըլմաւթն[194] Մսրայ զաւրաւքն եկն ի Մառի և խանդրեաց զՀայոց զաւրքն, որ անդ կային յամսեանն աւգոստոսի[195] և եսպան զԹագաւոր որդին Հայոց զպարոն Թորոս և բազումք ի զաւրացն Հայոց. և կալան զանդրանիկ որդին զպարոն Լևոն և մտին յաշխարհն Հայոց գնացին մինչև ի Սիս և անտի հասան մինչև ի Յատանա և մինչև ի սահմանս Բարձրբերդոյ, գերեցին զաշխարհն և այրեցին հրով և դարձան բազում աւարաւ յաշխարհն իւրեանց։*

*Յայսմ ամի վախճանեցաւ սիր Ճուան գունդն Ճաֆուն և աքայեցիք և Կիպռաւսայ պայլն Ոյկ տ Լըզինայն գնացին ի Ծեծ, ի Տապարիոյ սահմանքն և ի դառնալն խանգրուեցան ի Սաֆէթու հեծելէն, որ շահընտակ երեկ իրենց և եղև բազում պակասութիւն քրիստոնէից։*

*ՌՄԿԷ (1267) Պնտուխտար սուլտանն Մսրայ եկն հանդէպ Աքայոյ իւր ամէն զաւրաւքն և յղրկեաց սակաւ հեծել մինչև ի Յաքայոյ դուռն, որք ունէին նշանակ Դամփլուն և Ոսպեթլուն, վասն խաբելոյ զժողովուրդքն, որ արտաքոյ քաղաքին էին. և ապա ինք յիշվեաց իր ամէն զաւրաւքն և սպաննին առջև Աքայոյ մանտր մարդ առաւել քանզ ՇԾ (500). և ետ հանել զամէնին լեղին ի փորոյն և զմաղն վարչամ քաշել և ‖ անտի գնաց* 163 ա *ի Սաֆէթ։ Եւ ապա ի ԺԶ (16) ի մայիսն դարձաւ ի Յաքայ և ետ քակել զջաղցնին և զածվնին, և կոտորել զայգիքն և ի յազվեստաւս ամսու ի ԺԶ (16) աւրն, Լոյք տը Կրիմատն, ԻԸ (28) Ճնուէզ զալէով, խլեց զԱքայոյ մինայն և այրեց Բ (2) բերդնաւ Բիզանացն և այլ մանտր նաւեր. և կացին անդ ԺԲ (12) աւր, բայց ի դառնալն ԻԸ (28) Վնիցիան զալէ հանդիպեցան իրենց և բռնեցին ի Ճնուեզացն Ե (5) զալէ սարած։*

Յայսմ ամի վախճանեցաւ թագաժառանգն Կիպրոսի Ոյկէթն և թագուեցաւ Ոյկ տը Լըզինայն թագաւոր Կիպրոսի յաւուր Նոյէլին, ձեռամբ Կիլամ պատրիարգին Երուսաղէմի։ Եւ ի սոյն ամի Լաւիդ ըռէ տը Ֆրանսն և իւր որդին ըռէ տը Նաւարն և այլ բազում դունդեր և պարոնայք ի Ֆրանսէն և յԸնկլէզաց և յԱլամանաց առին խաչ ի ԻԵ (25) աւրն ի մայիսն, վասն դալոյ ի թափուճն Երուսաղէմի[196]։

ՌՄԿԸ (1268) Վախճանեցաւ Կլեմայնոս պապն. յետ որոյ եկաց աթոռն առանց հայրապետի ամս Գ (3)։ Ի սոյն ամի Քուռաթն ի Ցալամանաց որդի միւս Քուռաթին, որ էր թոռն ընբրուր Ֆրտրկին ժողովեաց զաւրս բազումս թելադրութեամբ Բիզանացն և Հռոմայեցոցն, որք մոտեալ էին դէմ ըռէ Չառլին, եկն յաշխարհն և պատերազմեցաւ ընդ ըռէ Չառլն։ Եւ ըռէ Չառլն խանդրեաց զնոսա և կոտորեաց ի նոցանէ բազումք և զՔուռատինն կալեալ եհատ զգլուխ նորա և զայլ բազում մեծամեծաց իւրոց։

Պնտուխտար սուլտանն Մսրայ էառ զՃաֆն խաբէութեամբ և փլոյց. և զՊէաֆաւրթն էառ սղարով։ Եւ դարձեալ էառ զԱնտաք տուրտվութեամբ դունդուստապլին Անտիոքա, յորում անուն էր սիր Սիմուն տը Պոյլուն. և դերեաց զանթիւ քրիստոնեայսն, որ անդ կային։ Փլոյց զԱնտաքոյ պարիսպն և զքաղաքն այրեաց հրով և եղև կորուստն Անտիոքայ ի ԺԷ (17) աւրն ի մայիսն[197]։ Եւ սպաննաւ ի ներքսէ քաղաքին ԺԷՌԸՃ (17800) քրիստոնէ և առաւ դերի առաւել քանզ ՃՌ (100000) քրիստոնէ։ Եւ Դամփըլցիք փրկթուցին զՊաղրաս և զԸռոյշաւլն և զերկ || իրն Արասոյ։ 163 բ Յայսմ ամի ձեռնադրեցին կաթողիկոս Հայոց զտէր Յակոբ։ Եւ ազատեցաւ ի ծառայութենէն Մսրայ պարոն Լևոն, թագաւոր որդին Հայոց, տալով դին նմա զբերդն Դարպսակ և զՍընղուր Աշխարն, որ էր խուշտաշ սուլտանին Մսրայ և կայր ի ծառայութիւն Մուղլին, զոր խնդրեաց Հեթում թագաւորն ի Ցապաղայ խանէն և ետ դին որդոյն իւրոյ[198]։

Եւ եկաց պայլ Աքայոյ և դունդուստապլ Երուսաղէմի Պալիան տը Պլին, Արսուֆին տէրն։

ՌՄԿԹ (1269) Փլան ի շարժէ Սարվանտիքարն և Համուսն և Դեղընքարն և այլ վանորայք և ամրոցք և գեղորայք ի Սևլէռն[199]։

Եւ վախճանեցաւ ի Ցաքայ սիր Ճաւֆրէ տը Սարճինն։

ՌՄՀ (1270) Վախճանեցաւ ի Ցաքայ պատրիարգն Երուսաղէմի Կիլամն։ Յայսմ ամի Լաւիդ ըռէ տը Ֆրանսն և իւր Գ (3) որդին և իւր աղբայրն դունդ տը Բոյդերն և իւր եղբաւրորդին դունդ տ Այրդայզն և այլ մեծամեծայք եկին ի Ցայկըմաւրթն[200] և ի Բ (2) աւրն ի յունիսն Նաւեցաւ անտի իւր զաւրաւքն և էառ ցամաք ի Սարտայն կղզին ի բերդն, որ կոչի Գալարի[201] և անտի խլեցան և գնացին ի Դունիզն և առժամայն առին զԳարդայճն[202]։ Եւ յետ աւուրց ինչ վախճանեցաւ անդ Լաւիդ ըռէ տը

Ֆրանսն և ապա վախճանեցաւ ընդ տը Նաւարն և բազում գունդեր և պարոնայք և ի հեծելէն մեռան բազումք, վասն վատառողջութեան երկրին։ Եւ յետ մահուան ընդ տը Ֆրանսին եկն ընդ Զառլն ի հեծելն և արար հաշտութիւն ընդ Դունիզին սուլտանն. և էառ ինք և այլ պարոնայքն յոլով գանձ ի սուլտանէն և դարձեալ անտի եկին ի Դրարն։ Եւ եղև սաստիկ ժղոր ծովու և կտրեցան Խ (40) բերդնաւ և կորնվան քրիստոնեայքն և իւրեանց ըռղակն և հառնէզն, որ ի նավերն կային և այլն դարձան յաշխարհն իւրեանց։ Եւ թագաւորեաց ի Ֆրանսն Ֆիլիպ որդի Լաւիդին։

Ցայսմ ամի վախճանեցաւ բարի թագաւորն Հայոց Հեթում յամսեանն հոգտեմբերի, ‖ ի սահմանս Բարձրբերդոյ[203] ի գեղն որ [164 ա] կոչի Ակներ, առ եղր Պարատիս գետոյ։ Սա կրաւնաւորեալ վախճանեցաւ և կոչեցաւ անուն կրաւնաւորութեան նորա Մակար։ Վախճանեալ ի բարիոք ծերութեան իւրոյ տարեալ ի սուրբ ուխտն Դրազարկ թաղեցին ընդ հարս իւր։ Եւ տիրեաց աշխարհին Հայոց որդին իւր Լևոն, զոր կացուցեալ էր պարոն Հայոց ի կենդանութեան իւրում յաւուր, յորմէ հետէ աղատեաց զնա Աստուած ի ծառայութենէն Մսրայ։

ՌՄՀԱ (1271) Պարոնն Հայոց Լևոն աւծաւ թագաւոր Հայոց ի մայրաքաղաքն Տարսուս ի տաւնի սրբո Ցայտնութեանն[204]։

Պնտուխտար սուլտանն Մսրայ էառ յՈյսպեթլէն զՀուսնաքրատն և ի Դամփլէն զՋասդէլ Պլանդն և ի բրընծէն զՃըպլաքարն և ի Ցալաթիացն զՄունփաւրդն և բերդ մի ի հաշիշեցն։ Եւ Տաճիկ դալէք ԺԴ (14) կոտրեցան ի Կիպռաւս և բռնվեցան ի Տաճկնոյն ծառայք Վ (3000)։

Ցայսմ ամի սիր Հէռի տ Ալամայնն, որդի Ալաթիաց թագաւորին, սպանաւ ի Վիդայրբ քաղաքն, յեկեղեցոջն ի ժամ պատաբագին, ձեռամբ սիր Սիմուն տ Մընֆաւրդին որդոյնն Սիրէկէ և սիր Սիմունին։ Եւ եկն ի Ցաքայ սիր Աւտուարտ, որդի Ընկլիզաց թագաւորին, յոլով ընկերաւք։ Ցայսմ ամի ընտրեցին պապ Հռոմայ զարժանաւորն Գրիգորիոս, որ եկեալ էր յաղաւթվորութիւն հետ սիր Աւտուարտին և կայր ի Ցաքայ և անտի եկեալ տարան զնա ի Հռոմ ի հայրապետական աթոռն։ Ցայսմ ամի վախճանեցաւ Գունդը տ Բոյդերն և իւր կինն. ուստի ընկաւ ընդ տը Ֆրանցին բազում գանձ, և գունթութիւնն Դուլուզին և Բոյդերին. և Ճենվրն և Ավեռնն և այլ երկիր, զոր Գունթը տ Պոյթերն կալել է։ Եւ եկն ի Ցաքայ սիր Այմունն, սիր Աւտուարտին աղրայրն, սակաւ ընկերաւք։ Եւ Պալալաւղ կայսրն Ցունաց յղրկեց դալէք ի վերայ Նէկրըբունթին[205] և խանդրեցին զՖռանկնին և բռնեցին զշատ բաժին ձիաւորացն ‖ և զհեծելվորացն, [164 բ] որ անդ կային. և առին բերդ մի ի Նէկրըբունթին կղզին։

Ցայսմ ամի Մուղալ հեծելն յէշվեց ի Շամբուն աշխարհն մինչև ի Հալպ և յԱնտաք և դարձան բազում աւարաւ։

Ի սոյն ամի սիր Աւտուարտն և իր աղբայրն և թագաւորն

Կիպրոսի և Դամփլն և Ոսպեթալն և Ալամանքն իւրեանց զաւրաւքն ելան ի Ցաքայոյ և գնացին ի Դադաւն և անդ գտան բաղում Թուրքմանք և գերեցին զնոսա, այլ զպուրճ Դադաւին, որ էր ամրոց նոցա, ոչ կարացին առնուլ։

ՌՄՀԲ (1272) Թագաւորն Կիպրոսի արար հաշտութիւն ընդ Մսրայ սուլտանն, վասն Աքայոյ։ Եւ ի մայիս ամիսն սիր Այմունտ, սիր Աւտուարտին աղբայրն դարձաւ յիւր աշխարհն։ Եւ ի ԺԸ (18) աւրն մայիսոյն հաշիշի մի քշտեց սիր Աւտուարաին Ե (5) դանկ զարկք, Աքայոյ բերդին ընդ ներքսէ[216]. և յորժամ աջողցաւ դարձաւ յիւր աշխարհն ի ԺԳ (13) աւրն ի սեխտեմբրոն։ Ի Ը (8) ի հոգտեմբրոն եկն ի Ցաքայ պատրիարգ և լիկաթ Ֆրէր Թումաս տ Լընգին ի կարգէ Բրեջուրացն։

ՌՄՀԴ (1273) Գրիգոր պապն Հռոմայ արար ժողով ընդհանրական ի Լիոն քաղաք, յառջի աւրն ի մայիսն։ Սիր Աւլիվեր տը Դէրմ վախճանեցաւ ի Ցաքա։ Եւ ի սոյն ամի վախճանեցաւ ի Տրապաւլիս Պեմունդ բրինծն Անտիոքա, ի մարտի ԺԱ (11) աւրն. և եկաց բրինծ իր որդին Պեմունտն, որ եղև վերջի բրինծ յազգէն իւրում։

ՌՄՀԴ (1274) Ի մարտի ԻԶ (26) աւրն Պնտուխտար սուլտանն եմուտ անթիւ զաւրաւք յաշխարհն Հայոց, խլեց զՄսայկանգարայն և աւերեաց զամէն երկիրն՝ ի Մար[ա]շայ մինչև ի Կուռիկաւս. էսպան անթիւ քրիստոնէք և հրակէզ արար զքաղաքս և զգեաւղս[90]։

Ցայսմ ամի եկն ի Ցաքայ սիր Կիլամ տ Ռաւսիլունն, գըլխաւոր ըռէ տը Ֆրանցին ձիաւորացն, որ ի Ցաքայ էին։ Եւ Ճուլիան Սայիտոյ տէրն վախճանեցաւ ի Տրապաւլիս։

ՌՄՀԵ (1275) Յունվարի ԺԵ (15) աւրն վախճանեցաւ պապն Հռոմայ Գրիգորիոս || և եկաց յետ նորա Կլէմայնս Ե (5)-երրորդն, որ Գ (3) աւր միայն ապրեցաւ. և յետ նորա կացուցին պապ զԱդրիանոս։ Եւ ի ԺԸ (18) աւրն ի յունիսն սիր Հէռի, հայրն Կիպռաւսայ թագվորին, խեղդեցաւ ի ծովն մաւտ ի Սուր։ Եւ ի Կիպռաւս վախճանեցաւ դունթն Ճափուն սիր Ճադ տը Պլինն։ Ցայսմ ամի սիր Թումաս տը Սայնպըրդինն ի Ցաքայոյ ծախեց զիր դեղն, որ կոչէր Ֆագունների, Դամփլուն տանն, վասն որոյ մեծ վիրաւորութիւն եղև ընդ թագվորն և ընդ Դամփլն։ Եւ եա թագվորն փլցնել զԴամփլուն տունն ի Լիմիսոն։ Եւ ելաւ թագվորն ի Ցաքայոյ առանց սահմանելոյ պայլ ի Ցաքա և գնաց ի Սուր. բայց յետ ԽԵ (45) աւուր, աղաչանաւք Ոյսպեթլուն մայրստըռին և այլ աքայցեց, սահմանեց պայլ Աքայոյ յիր անձինն տեղն զԳալիան տը Պլին, Արսուֆին տէրն։

ՌՄՀԷ (1277) Ի յունիս Ը (8) աւրն եկն ի Ցաքայ Զ (6) ղալէ ըռէ Զառլին. և էր գլխաւոր նոցա դունթ Ըռաւճէլ տը Սայնըսվըրինն և տիրեցին Աքայոյ և վարեցին զԿիպռաւսայ թագվորին գործաւորքն և կոչեցաւ ըռէ Զառլն թագաւոր Երուսաղէմի։ Եւ յետ Դ (4) ամսոյ լիճ ճարտերն Աքայոյ այրին աւմաճ ըռէ

Ջաուլին։ Եւ վախճանեցաւ ի Ցաքայ Կիլամ Ըռաւսիլանն. և ի սեխտեմբեր ԺԶ (16) աւրն վախճանեցաւ պատրիարգն Երուսաղէմի ֆրէր Թումաս տը Լընթին։

ՌՄՀԸ (1278) Մարկրիտ ամուսին Պեմունտ բըընծին եկն ծովուն յայնղեհէն։ Եւ Պեմունտ բրինծն պսակվեցաւ ընդ ինք ի քաղաքն Տրապաւլիս։ Եւ ի սոյն ամի վախճանեցաւ մայստռն Ոսպէթլուն ֆրէր Ոյկ Ըռէվայլն և եղև մայստռ Ոսպեթլուն ֆրէր Նիկաւլլաւոնն։

ՌՄՀԹ (1279) Թագաւորն Կիպրոսի Ոյկն գնաց ի Սուր ԳԾԾ (350) ձիաւորով, վասն տիրելոյ Աքայոյ, այլ մայստռն Տամփլուն՝ ֆրէր Կիլամ տ Պիաճաւգն հակառակեցաւ նմա և ոչ եթող մտանել ի Ցաքա, այլ դարձաւ ի Կիպռաւս և էառ զՏամփլուն ապրանքն և վարեց զֆրէրքն։

ՌՄԶ (1280) Մայստռն Ոսպէթլուն գնաց ի Տրապաւլիս,
վասն հաշտեցնելոյ ‖ զբրինձն և զՏամփլցիք. և արար զհաշտու- 165 բ.
թիւն նոցա ի յուլիս Է (7) աւրն։ Եւ ի յեյն ի հոգտեմբերին Ոսպէթլցիք, որ ի Մարղապն կային, ծեծեցին զԿեպլն և առին բաղում աւար և դարձան. և ի գալն նոցա, հասան նոցա ՋԾ (600) հեծման շահանդակ և Ոսպէթլցիք խանգրեցին զնոսա և սպանին ի նոցանէ ԾԾ (150) Թուրք մերձ ի Մարախի, և ի Ցոսպէթըլցեց մեռաւ Ա (1) ֆրէր։

ՌՄԶԱ (1281) Ի փետրվարի ԺԸ (18) եկն Շամբուն հեծելն և պաշարեցին զՄարղապն[208] ԲՌ (2000) հեծման և ԴՌ (4000) հետևակ. և Ոսպէթլցիք, որ ի Մարղապն էին, պատերազմեցան ընդ նոսա և խանգրեցին զնոսա և կոտորեցին յանաւրինաց բաղումք ի հեծելէն և ի հետևկացն։

ՌՄԶԲ (1282) Մանկաւ Տամուր եղբայր Ապաղայ խանին ԼՌ (30000) Մուղլով և ԳՌ (3000) Վրացով և Հաւռմաց Ռ (1000) հեծելով և Հայոց ԲՌ (2000) հեծելով մտին յերկիրն Շամբուն և աւերեցին զաշխարհն մինչև ի դուռն Համսայ և անդ պատերազմեցան ընդ Ալֆի սուլտանն Մսրայ[209], Եւ խանգրեցին զսուլտանին զաւրքն և կոտորեցին ի նոցանէ անթիւ և շահեցան զսուլտանին խզէնայն և զախրուխն։ Այլ Մանկաւ Տամուրն վասն վատասրտութեան իւրոյ առանց իրիք պատճառի ի փախուստ դարձաւ. և յորժամ տեսին Մուղալ զաւրքն զդառնալ զգլխաւորին իւրեանց, թողին զպատերազմն և գնացին զհետ նորա։ Եւ գնացեալ անցին ընդ գետն Եփրատա և մտին յաշխարհն իւրեանց։ Եւ Սամաղարն ԲՌ (2000) հեծելով և Հայոց թագվորն իւր հեծելովն բաժնեցան ի Մանկաւ Տամուրէն և եկին դէպ ի Հաւռաւմք և ի Հայոց աշխարհն. և ի ճանապարհին հասեալ նոցա շահանդակ. և կորեան ի Հայոց զաւրացն բաղում մեծամեծ իշխանք և ի հեծելէն առաւել քանզ Ե (5) բաժինն։ Եւ թագաւորն զերծեալ եմուտ յաշխարհն իւր և Սամաղարն անցեալ ընդ երկիրն Հայոց գնաց ի Հաւռաւմք։

ՌՄԶԳ (1283) Թագաւորն Կիպրոսի եկն ի Սուր ԲԾԾ (250)

*ձիաւորով։ Եւ եկն ի Ցաքա ‖ պատրիարգ և լեկաթ, որում անուն 166 ա էր Եղիա։*

*ՌՄԼԴ (1284) Մեռաւ Սրոյ տէրն՝ սիր Ճուան տը Դուրունն. և յետ Խ (40) աւուր մեռաւ Պեմունտ որդի Թագաւորին Կիպրոսի. և յետ Խ (40) աւուր վախճանեցաւ սիր Անֆրէ տ Մունֆաւրդն, որ էր եղբայր Սրոյ տիրոջն։ Եւ ի սոյն ամի ի մարտ ամիսն մեռաւ Թագաւորն Կիպրոսի Ույկ տը Լըզինայն ի քաղաքն Սուր. և տարան զնա հանդերձ որդովն ի Կիպրաւս և Թաղեցաւ յաւագ եկեղեցին ի սուրբ Սոփի. և իւր որդին Պեմունտն Թաղեցաւ ի փրէրմնուրքն և եղև Թագաւոր Կիպրոսի Ճուանն իր որդին[210]։*

*ՌՄԼԵ (1285) Վախճանեցաւ Թագաւորն Կիպրոսի Ճուան տը Լըզինայն և եղև Թագաւոր իր եղբայրն Հէռի տ Լըզինայն[211]։*

*Սուլտանն Մսրայ Մէլէք Մնսուրն, որ կոչէր Ալֆի պաշարեաց զՄարղապն և էառ զնա ի Յոսպէթլէն[212]։*

*ՌՄԼԶ (1286) Հէռի Թագաւորն Կիպրոսի գնաց ի Ցաքայ ի ԻԵ (25) ի յունիսն և տիրեաց Աքայոյ և վարեաց զգործաւորքն ըռէ Զառլին և աքայցիք այրին իր աւմաճ և անտի գնաց ի Սուր։ Եւ Թագվեցաւ ի Թագաւորութիւնն Երուսաղէմի, յաւուր տաւնի սրբոյ Աստուածածնին ննջմանն, ձեռամբ Սրոյ արծվիսուցն։ Վախճանեցաւ պապն Հռոմայ[213] և եկաց պապ ի Հռոմ Ոնորիոս։ Եւ վախճանեցաւ Ֆիլիպ ըռէ տը Ֆրանցն. և եկաց յետ նորա Ֆիլիպն իր որդին։ Վախճանեցաւ Թագաւորն Ըռակունոց Փէռն և Թագաւորեաց որդի նորա Ալֆունսն։*

*ՌՄԼԷ (1287) Եղև պապ ի Հռոմ Նիկաւլայոս ի կարգէ Մնուրացն։ Եւ Սիկիլիոյ զալէքն խանգրեցին զըռէ Զառլին զալէքն և բռնեցին զբրինծն զըռէ Զառլին որդին և բազում իշխանք, որ ընդ նմա էին։ Եւ եկն ի Ցաքայ պատրիարգ և լեկաթ Երուսաղէմի փրէր Նիկաւլ ի կարգէ Բրէջուրացն։ ԺԹ (19) ի յունիսն եկն ի Ցաքայ Գունդէս տ Պլայզն ձիաւորաւք և արար անդ բազում արդիւնք և ետ ողորմութիւն աղքատաց։ Եւ սուլտանն Մսրայ Ալֆի Մէլէք Մնսուրն էառ զԼատիկն ի բըընձէն։*

*ՌՄԼԸ (1288) Վախճանեցաւ Գունդէս տը Պլայզն ի Ցաքա։ Եւ եկն յայսկոյս ծովու Լուսիան, դուստր բըընձին Անտիոքա, վասն առնելոյ զժառանգութիւն եղբաւրն, որ վախճանեալ էր։ Եւ Տրապաւլսցիք արարեալ էին զումին և ետուն ‖ Թոյլ մտա- 200 բ նել Լիւսիանին ի Տրապաւլիս, այլ եմուտ ի Նֆինն և անդ եկաց աւգնութեամբ և ձեռնտուութեամբ Ոսպեթլուն տաննւ*

*ՌՄԼԹ (1289) Վախճանեցաւ Թագաւորն Հայոց Լևոն և եկաց պարոն Հայոց անդրանիկ որդի նորա Հեթում[214]։ Եւ ի ԺԴ (14) աւրն ի մարտն Ալֆի սուլտանն Մսրայ կոչեցեալն Մէլէք Մնսուր պաշարեաց զՏրապաւլիս և կանգնեցոյց մեծամեծ բաբան Դ (4) և խարապուղրայք ԼԲ (32). և էր համար զաւրացն անաւրինաց հեծեալ ԽՌ (40000) և հետևակ ԳՃՌ (300000). և եկեալ ի Ցաքայոյ բազումք ի յաւգնութիւն քաղաքին Տրապաւլսոյ և եղբայր Թագաւորին Կիպրոսի Ամաուրին Ճ (100) ձիաւո-*

ի Քրիստոսէ

րով. և յետոյ եկեալ Լուսիանն և Ոսպեթլցիք ի Նֆին բերդէն և մտին յաւգնութիւն քաղաքին, այլ սոքա ամենեքեան ոչ կարացին զդէմ ունել անաւրինացն, զի նոքա ղանաղան մեքենայիւք և նաղմիւք առին զՏրապաւլիս յաւուր երեքշաբաթոջ ԻԵ (25) աւրն ի յապրիլն[215]. և ի սուր սուսերի մաշեցին զքրիստոնեայսն և բազումք դերեցին, այլ գլխաւորք և մեծամեծքն, որ անդ կային, զերծեալ նաւուք գնացին յԱքա և ի Կիպրոս։ Եւ Ծնուէզ ոՊ, որում անուն էր Պնէթ Զաքարի, կայր ի Տրապաւլիս Դ (4) ղալէով և բերդնաւով, և ազատեաց ի քրիստոնէիցն աւելի քանզ ԳՌ (3000) արք և կանայք և մանկտի և զամենեսեանն իւր ծախաւք և ըռաւճկաւք տարաւ ի Ֆամակուսան. և անտ արար բազում ողորմութիւն և ետ յընչից իւրոց աղքատ զերծելոցն մինչև ամենեքեան բաւականացան ապրել յաշխարհն Կիպրոսի։

ՌՄՂ (1290) Յաւուր Զատկին եկն ի Յաքա Ի (20) ղալէ, զոր պապն էր առաքել յաւգնութիւն Աքայոյ և էր գլխաւոր զալէայն վէսքն Տրապաւլսոյ։

Յայսմ ամի ոստակեցաւ սուլտանն Մսրա Մէլէք Մնսուր Ալֆին ԻԲ (22) ի նոյեմբրն[216] և եղև սուլտան Մսրա իր որդին Աշրաֆն։ Եւ ի սկիզբն սուլտ[ա]նութեան իւրոյ եսպան զՏուրընդայն, որ էր խղէնատար Մսրա, և ամիրայք յառաւել մեծամեծաց իւրոց ԺԴ (14)։

ՌՄՂԱ (1291) Ի յապրիլի Ե (5) աւրն Աշրաֆ սուլտանն Մսրա պաշարեաց զԱքա և պատերազմեցաւ բաբանաւք և նազմիւք մինչև էառ զքաղաքն յաւուր ուրբաթի ի մայիսի ԺԸ (18) աւրն[217]։ Եւ կոտորեցին զքրիստոնեայսն քաղաքին, բայց ի սակաւուց, որ զերծեալ նաւուք գնացին ի Կիպրոս զկնի թագաւորին Կիպրոսի, ‖ որ անդ պատահեցաւ։ Եւ յառնուլ քաղաքին սպա- 107 ա
նաւ մայստռն Դամփլուն ֆրէր Կիլամ տը Պիայճոյդն և մարաջաղգն Ոսպեթլուն ֆրէր Մահէ տը Գլէրմունթն, որ բազում քաջութիւն արարեալ վախճանեցաւ։ Եւ ի միւսում աւուրն, որք ի Սուր էին քրիստոնեայք, առանց պատերազմի թողին զքաղաքն և գնացին նաւուք իւրեանց ի Կիպրոս։ Եւ յետ սակաւ աւուրց թողին զՊերութ և զՍայիտէ և զԱնտըրտուզ և զՋաստէլ Բլրինն. և եղև կորուստ ամենայն Սէհլին և Դամփլցիք, որք եկեալ էին ի Կիպրոս, կացուցին իւրեանց մայստր զֆրէր Դիպաթ Կատտինն, որ էր մեծ քումանտուր Դամփլուն։

ՌՄՂԲ (1292) Վախճանեցաւ Նիկաւլայոս պապն Հռոմայ. յետ որոյ եկաց աթոռն առանց հայրապետի ամս Գ (3), վասն նախանձու և անհաւանութեան կարտնարացն։ Եւ ի սոյն ամի մեռաւ մայստռն Դամփլուն և եդին իւրեանց մայստր զֆրէր Ծագ տ Մաւլայն։ Եւ եկին ի Կիպրոս Ի (20) ղալէ, զոր պապն էր առաքել յաւգնութիւն ծովուն այսդեհիս, որոց էր գլխաւոր սիր Մանուիլ Զաքարին։

Յայսմ ամի եղև մոլորութի Զատկի և հրամանաւ կաթողի-

կոսին տէր Ստեփանոսի արարին ժողով ի քաղաքն Սիս եպիսկոպոսաց և վարդապետաց և հարանց վանականց. և հրամայեցին առնել Ըզատիկն՝ ըստ այլ քրիստոնէիցն յապրիլի Զ (6) աւրն[218] և այլք ի վանականց Կիլիկեցոց և ամենայն աշխարհն արևելից արարին Ըզատիկն ըստ Հայոց յապրիլի ԺԳ (13)։

Ի սոյն ամի սուլտանն Մսրա Աշրաֆն պաշարեաց անթիւ զաւրաւք զհայրապետանիստ դղեակն Հոռոմկլայն. և յետ Խ (40) ա ուր էառ զնա պատերազմաւ. և գերեաց զհայրապետն տէր Ստեփանոս և զսրբութիւնսն, որ անդ էին[219]։ Եւ տարեալ զնոյն հայրապետն ի Մսր և եդին ի բանդն Խահրէոյ[220] բերդին, որ և անդ վախճանեցաւ և թաղեցաւ ի նմին բանդի։ Եւ յետ սակաւ աւուրց ետուն և զԱպլճիսոյ Ծակքն ի սուլտանն։ Եւ պարոնն Հայոց Հեթում ետ ի սուլտանն Մսրայ զանմարտրնչելի դղեակն Պեհեսնի և արար հաշտութիւն, վասն որոյ խաղաղացաւ աշխարհն իւր ժամանակս ինչ։

ՌՄՂԳ (1293) Աշրաֆ սուլտանն Մսրայ սպանաւ յիւր ամի- 167 բ
րացն և զսպանաւղ նորա, որ կոչէր Պայտարայ, սպանին ծառայքն սուլտանին և կացուցին սուլտան զեղբայր Մէլէք Աշրաֆին, որ էր ԺԱ (11) տարոյ և կաղ ի մի ոտիցն[221],

Ցայսմ ամի վախճանեցաւ մայստռն Ոսպեթլուն ֆրէր Ճուան տ Վիլերն և եդին մայստռ Ոսպեթլուն զֆրէր Աւտրտուբինն։

ՌՄՂԴ (1294) Եղև պապ ի Հռոմ Սէլէստինոս, որ էր յաշխարհէ Բոյլին, ի քաղաքէն որ կոչի Սալմուն. և կոչէր անուն նորա ֆրէր Փէռ տ Մուռուն, այր առաքինի, միայնակեաց։ Սա կացեալ յաթոռ հայրապետութեանն ամիսս Զ (6). և ի սոյն ամի ել ի պապութենէն իւր կամաւ և ետ հրաման առնել այլ պապ, զոր կացուցին ի տեղի նորա պապ ի կարտնարացն զմի ոճն, որ կոչէր Պնէթ Կայդան և կոչեցաւ անուն նորա Պաւնաւֆանց։ Սա էր այր ժիր և գործունեայ։

Ցայսմ ամի Ճնուէզացն ԺԸ (18) ղալէ կռուցեան ի Ցայսս ընդ ԼԲ (32) ղալէ և ընդ դարիտ Վնէցիանացն և շահեցան ի նոցանէ ԻԴ (24) ընդ դարիտ և ընդ ղալէ։

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

*1. Բնագրում խորագիրը գրված է կարմիր թանաքով։*

*2. Հմմտ. Մարաբինոս Լեհացու ժամանակագրությունը, № 2037, էջ 80ա։*

*3. «Ամս Բ (2)» հատվածը բնագրում ավելացված է այլ ձեռագրով։*

*4. Բնագրում այս ամբողջ հատվածը գրված է 125ա էջի ներքևի լուսանցքում և համապատասխան նշանով ցույց է արված հաջորդական կարգը։*

*5. Մարաբինոս Լեհացին այդ մասին հետևյալն է գրում. «Սա յ գղեգլերն, այսինքն դնշանագրութիւնսն կարտինալացն բաժանեաց...» (№ 2037, էջ 24բ)։*

*6. Տես և հմմտ. Մ. Լեհացի, № 2037, էջ 24բ։*

*7. Այս եղելության մասին Մ. Լեհացին այսպես է գրում. «Ընդ սոյն Անդօնինոսի տէրութեանն ի Ցերիքով քաղաքի գտեալ եղև գիրք Ե (5), որոց շարագրողն, այսինքն արարողն նոցունց, ոչ երևի և ոչ գտանի եթէ ում է յարմարեալ...» (№ 2037, էջ 92ա)։*

*8. Իմա Տիբր։*

*9. Կարծում ենք պետք է լինի «Ե-երրորդ» (հինգերորդ), որովհետև ներքևում ՄԾԱ թվի տակ նշում է «Զ-երրորդ»։*

*10. «Թուրքացն» բառը կարծում ենք Հեթում Պատմիչի սխալն է, որովհետև այդ բառը երրորդ դարի համար չէր կարող գործածվել։ Ճիշտը նշում է Մ. Լեհացին. «Սա յ գնացեալ ի պատերազմ ընդ Ճերմանոսքն և ընդ Բրոզօղքն, որք են Բօլօնքն» (№ 2037, էջ 92բ)։*

*11. Տես վերևում էջ 29, ծանոթ. 20։ Սխալ է բնագրի այն վկայությունը, թե Փիլիպոսը թագավորել է 247 թ., և ապա, սրա կայսրության առաջին տարում (իրականում 244 թ.) լրացել է Հռոմի շինության առաջին հազարամյակը։ Փիլիպոսը իշխել է 244—249 թթ.։*

*12. Բնագրում «որ է Դէկոս» հատվածը սկզբում մոռացել են, իսկ հետո, տեղ չլինելու պատճառով, ավելացրել վերևի լուսանցքում։*

*13. Իմա Գոթացոց աշխարհը։ Մ. Լեհացին գրում է. «Սա յ ընդ Գոգացիսն ընդ Ցոյնս, ընդ Մակեդոնացիս և ընդ Ասիացիս կալեալ պատերազմ» (№ 2037, էջ 93ա)։*

*14. Խոսքը վերաբերում է Սասանյան Պարսկաստանի երկրորդ թագավոր Շապուհ I-ին։*

*15. Մ. Լեհացին ևս գրում է «Սա յ դետեգեաց և բաժանեաց դծխերն և դգերեգմանատեղիսն» (№ 2037, էջ 28ա)։*

*10. Իմա՝ քերականություն։ Համաձայն Մ. Լեհացու. «Ըստ այսմ ժամանակի Տօնագոս նուբբ և զուտ արուեստուորն քերականութեան և պարզողն քերդողարար, այր պայծառ և երևելի» (№ 2037, էջ 97ա)։*

*17. Խոսքը վերաբերում է Սասանյան Պարսկաստանի թագավոր Շապուհ II, Երկաբակեացին։*

*18. Մ. Լեհացու գրածը հավանաբար այս բառի թարգմանությունն է. «Վալէնդն Թարքմանի քաջ կամ աժէօք այր» (№ 2037, էջ 98ա)։*

*19. Ըստ Մ. Լեհացու ժողովը տեղի է ունեցել. «Ի քաղաքն Գարղաճինոյ, որ է՝ Գաղալօննս» (№ ?037, էջ 99բ)։*

*20. Հավանաբար նկատի ունի 410 թվի Հռոմի գրավումը Ալարիխի (Վեստգոթերի) կողմից։*

*21. Բնագրում թիվը ջնջված է և գրված՝ «ՋՃԼՋ»։*

*22. Խոսքը վերաբերում է Մերովինգների թագավոր Խլոդվիգին (481—511 թթ.) և նրա չորս որդիներին։*

23. Մ. Լեհացին այս մասին մի փոքր ընդարձակ է գրում, որ Հուստինիանոսը «Օրէնս բազումս և նոմոսս թագաւորական կարգեաց և եդ. և ի գիրս զնոսա շարագրեաց, որ և են իսկ երկու գիրք, այսինքն՝ գօնցիտէՖ և տիճէստիուՖ, որ թարգմանի գօնցիտէՖ՝ շնորհուկ, այսինքն՝ զոր ինչ և խնդրես յաղագս դատաստանի իր շնորհէ և տա քեզ, զի զամենայն անտ գտանես պարզետ, իսկ տիճէստիուՖ լսի հալողական կամ մարսեցնող, այսինքն՝ զի իբր հաւիճնով սաամոքն սրբի, նոյնպէս գրովքս այս ամենայն դատաստանք մարսին և զմայլեն զմարզն և ուղղեն առ ի չծանրանալ ումեք անձին» (№ 2037, էջ 102բ)։

24. Խոսքը հավանաբար վերաբերում է ֆրանսիական թագավոր Խլոտար I-ին (511—561 թթ.)։

25 և 26. Տես վերևում, էջ 29, ծանոթ. 29։

27. Տես վերևում, էջ 39, ծանոթ. 30։

28. Այս հատվածից դուրս է գալիս, որ Լևոն III պապը, պապ է կարգել (նշանակել) Պասքալիոսին։ Ավելի հավանական է Մ. Լեհացու հաղորդածը. «Սայ (Լևոն III-ը — Վ. Հ.) ի ձեռն պատրիկոսին Հռոմայ, այսինքն մարՖաւոր հոգաբարձու ի քաղաքին, եղև պապ» (№ 2037, էջ 41ա)։

29. Իմա՛ դուքս. այս ձևով հանդիպում ենք նաև հետագայում էլ։

30. Բնագրում «Ժ»-ի մոտ հետագայում ավելացրել են «Ա»։

31. Հավանաբար նկատի ունի Պավիան։

32. Իմա՛ Կառլոս Մեծ։

33. Խոսքը վերաբերում է 778 թ. Ռոնսեվալյան կիրճում տեղի ունեցած բասկերի և ֆրանսիացիների ճակատամարտին։ Պատմական այդ եղելությունները դարձան ֆրանսիական ժողովրդական էպոսի հիմքը։

34. Ավելի մանրամասն տես Մ. Լեհացու մոտ (№ 2037, էջ 111բ—112ա)։

35. Մ. Լեհացին որա մասին գրում է. «Սայ նախ կոչէր Մուռը դը Բօրք, որ է քնչիթ խողի» (№ 2037, էջ 45ա)։

36. Այս վկայությամբ հեղինակը հավանաբար նկատի ունի Օտտո I-ին, որը 962 թ. վերականգնեց Հռոմեական արևմտյան կայսրությունը։

37. Լևոն անունով պապերի հերթականությունը, որոնք հանել ենք հրատարակության բնագրից, խառնված է։

38. Իմա՛ Sainte-Angele:

39. Իմա՛ Կոնրատ։

40. Խոսքը վերաբերում է Անգլիայի Նորմանդական դինաստիայի հիմնադիր Վիլհելմ I Նվաճողին, որը 1066 թվի հոկտեմբերի 14-ին Հաստինգսի ճակատամարտից հետո նվաճեց Անգլիան։ Սակայն Վիլհելմ I-ի մահը ընդունված է նշել 1087 թվին։

41. Մանրամասնությունները տես Մ. Ուռհայեցի. «Ժամանակագրութիւն», Վաղարշապատ, 1898, էջ 255—268։ Համաձայն Բ. Կուգլերի Նիկիան խաչակիրները գրավել են 1097 թ. հունիսի երկրորդ կեսին („История крестовых походов" СПБ, 1895, էջ 40—43. մեջբերումներն այսուհետև կկատարենք այս գրքից, նշելով Կուգլեր)։

42. Անտիոքի գրավման վկայությունը ստույգ չէ (հմմտ. ՄԺ, 1, էջ 74)։ Համաձայն Կուգլերի խաչակիրները Անտիոք հասել են 1097 թ. հոկտեմբերի 21-ին (էջ 47), մինչդեռ Ֆ. Վիլկեն Անտիոքի պաշարումը հաշվում է հոկտեմբերի 18-ից („Geschichte der kreuzzüge", von Friedrich Wilken, Erster Teil, Leipzig, 1807, էջ 176, մանրամասնությունները տես շար.)։ Պաշարումը տևել է բավական երկար. Մ. Ուռհայեցին նշում է. «զամիսս տասն» (էջ 258), որի ընթացքում տեղի ունեցան համառ և արյունահեղ կռիվներ։ Այս կռիվների ընթացքում, ինչպես նշում է Մ. Ուռհայեցին. «...իշխանքն, որ կային բնակեալ ի Տօրոս լեառն, Կոստանդին որդին Ռուբինայ, և երկրորդ իշխանն Բազունի, և երրորդ իշխանն Օշինն, սոքա զամենայն կարիս կերակրոյ առաքէին առ զօրապետն Փռանգաց, նոյնպէս և վանորայքն Սև լերինն կերակրօք օգնէին նոցա,......» (էջ 250)։ Խաչակիրներն Անտիոքը գրավել են 1098 թ. հունիսի 3-ի լուսաբացին։

43. Խաչակիրները Երուսաղեմ հասել են 1099 թվի հունիսի 7-ին։ Անհապաղ հարձակումը և գրավումն անհաջող անցնելուց հետո, կարճ ժամանակով այն պաշարել են և հուլիսի 15-ին, ուրբաթ օրը գրավել (մանրամասնությունները տես Կուգլեր, էջ 62—66, Ֆ. Վիլկեն, նույն տեղ, էջ 279—295)։ Հեղինակը բնագրի «Կատուֆրէ տը Պուլոննն» ան-

վան տակ, նկատի ունի Գոթֆրիդ Բուլոնացուն (հմմտ. ՄԺ, 1, էջ 74, 90, ծանոթ. 7), որը 1099 թվի հուլիսի 22-ից եղել է «ազատագրված» Երուսաղեմի առաջին քրիստոնյա իշխողը։

44. Գոթֆրիդ Բուլոնացին մահացավ 1100 թվի հուլիսի 18-ին, ըստ ավանդության նրան իբր թունավորել է Կեսարիայի էմիրը։ Գոթֆրիդին հաջորդում է եղբայրը՝ Բալդուինը, որը օծվում է թագավոր 1100 թ. դեկտեմբերի 25-ին (մանրամասնությունները տես Կուգլեր, էջ 73—75)։

45. Իմա՝ Կեսարիա, Պաղեստինում, Յաֆֆայի և Հայֆֆայի միջև։ Կեսարիան Արսուֆի հետ խաչակիրները գրավել են 1101 թվի մայիսին (Կուգլեր, էջ 105)։

46. Հեղինակը նկատի ունի եգիպտացիների 1102 թվի արշավանքը, որի ժամանակ նրանք գրավեցին Ասկալոնը և այդտեղից փորձեցին հարվածել Երուսաղեմի լատինական թագավորությանը։ Սակայն, ի վերջո, Բալդուինը կարողանում է Ռամլեի մոտ (քաղաք Յաֆֆայի և Ասկալոնի միջև, Երուսաղեմից հյուսիս-արևմուտք) ետ շպրտել եգիպտացիներին։

47. Աքքան խաչակիրները գրավել են 1104 թ. մայիսի 26-ին (Կուգլեր, էջ 109, հմմտ. F Wilken „Geschichte der kreuzzüge". Zweiter Teil, Leipzig, 1813, էջ 193—196)։

48. Բնագրում «Նոր մարդոյ» ձևով. հմմտ. ՄԺ, 1, էջ 78, 93, ծանոթ. 40։

49. Ռոբերտ Նորմանդացու հայրենիք վերադառնալուց և եղբոր՝ Վիլհելմ II-ի մահից հետո, անգլիական թագավորական գահը ստանձնում է կրտսեր եղբայր Հենրիխը։ Երկու եղբայրների միջև գահի համար տեղի է ունենում պայքար, որի ժամանակ Ռոբերտը պարտվում է և բանտարկվում, ուր և մահանում է 1134 թ.։ Վկայությունը վերաբերում է այս դեպքերին։

50. Իմա Իբելին։

51. Խոսքը վերաբերում է ֆրանսիական թագավոր Ֆիլիպպ I-ին և Լուդովիկոս VI Հաստին։

52. Կուգլերը Տրապոլսի գրավումը նշում է 1109 թվի ամռանը (էջ 109), իսկ Վիլկեն՝ 1109 թվի հուլիսի 10-ին (նույն տեղ, էջ 210, գրավման մանրամասնությունները, էջ 197—210)։ Հմմտ. ՄԺ, 1, էջ 90, ծանոթ. 10։

53. Կուգլերը Բեյրութի գրավումը ընդունում է 1110 թ. մայիսի 17-ին (էջ 109), իսկ Վիլկեն՝ 1110 թ. ապրիլին (նույն տեղ, էջ 212), սակայն Իբն Ալաթիրը և ուրիշները նշում են 1109 թ. հուլիսի 30-ին (Ed. Dulaurier „Recueil des Historien Croisades". tome I[er], Paris, 1869, էջ 92, ծանոթ. 2)։

54. Իմա Սիդոն, Գուլորիեի կարծիքով խաչակիրներն այն գրավել են 1110 թ. հուլիսի 19-ին (նույն տեղ, էջ 90, ծանոթ. 1), հմմտ. Ֆ. Վիլկեն, նույն տեղ, էջ 213—222։

55. Խոսքը վերաբերում է Տիբերիա կամ Տիբերայիս քաղաքին, այժմ կոչվում է Դապրիե. գտնվում է Գալիլիայում (Պաղեստին), Գալիլիա ծովակի կամ Գեննեսարեթա լճի ափին։

56. Տես ՄԺ, 1, էջ 91, ծանոթ. 13։

57. Ըստ Կուգլերի, Բալդուին I-ը մահացել է 1118 թվի մարտին (էջ 112), իսկ նույն թվի ապրիլի 2-ին Եդեսիայի դրաֆ Բալդուինն օծվում է թագավոր, Բալդուին II անունով (նույն տեղ, էջ 113)։

58. Իմա Templarii, Տաճարական. այսպես կոչվեց օրդենի անդամների բնակության վայրը Սողոմոնի տաճարի շրջակայքում գտնվելու պատճառով։ Օրդենն հիմնադրվեց 1118 թվին, որի կանոնադրությունը հաստատվեց 1128 թվի Տուրի ժողովում։ Այս հատվածը բնագրում, ըստ երևույթին, ավելացվել է հետո։

59. Կուգլերի մոտ այս դեպքերը այլ ընթացքով են շարադրված. Մալաթիայի իշխող Բելեկ-իբն-Բեդրամը 1122 թ. վերջերին հարձակվում է խաչակիրների վրա և Սերուջի մոտ, Անտիոքի և Եդեսիայի միջև, գերում խաչակիրների զորավարներից Իոսցելինին իր շքախմբով։ Բալդուին II-ը մեծ բանակով շտապում է օգնության։ Սակայն Բելեկը ճակատամարտ տալուց խուսափում է. այնուհետև նա Տելլ-Բաշիրից հարձակվում է Բալդուին II-ի վրա 1123 թ. ապրիլին և գերում նրան։ Այսպիսով, ինչպես Իոսցելինը, այնպես էլ Բալդուին II-ը բանտարկվում են Խարբերդի ամրոցում։ Այս պարագաներում եգիպտացիք հարձակվում են խաչակիրների վրա։ Խաչակիրները դիմում են վենետիկցիներին, որոնց նավատորմը պաշարել էր Կորֆու կղզին։ Խաչակիրների և եգիպտացիների ճակատամարտը

տեղի է ունենում 1123 թ. հունիսին, Իբելինի մոտ, որտեղ եգիպտացիք պարտվում են (էջ 114—116)։ Առավել մանրամասն տես Ֆ. Վիլկեն, նույն տեղ, էջ 476—492։

60. Կուգլերի կարծիքով խաչակիրները Սուր=Տուր=Տյուրոս քաղաքը պաշարել են 1124 թ. փետրվարի 15-ից և գրավել՝ 1124 թ. հուլիսի 7-ին (էջ 116)։ Մանրամասն տես Ֆ. Վիլկեն, նույն տեղ, էջ 501—522։

61. Իմա օգոստոս։

62. Մ. Լեհացին նշում է Պյոտր, Լևոնի որդի, որը կարդինալների մի մասի կողմից ընտրվել էր հակաթոռ պապ Իննոսենթ II պապի (№ 2637, էջ 53բ)։

63. Բալդուին II-ը մահացել է 1131 թ. օգոստոսի 31-ին։ Նա արու զավակ չուներ, այդ պատճառով թագավոր դարձավ ավագ դստեր՝ Մելիզենդի ամուսին Ֆուլկոն, Անժուայի գրաֆը։ Բնագրի «մականուն ոԱւնճերձ»-ը կարծում ենք պետք է հասկանալ d'Anjoi:

64. Իմա Հենրի։

65. Տես ներքևում, ծանոթ. 92։

66. Իմա Լուդովիկոս VI կամ Հաստ։

67. Իմա Հովհան Կոմնեն Ծիրանածին։ Սույն վկայությունը ստույգ չէ։ Ինչպես հայտնի է, Հովհան Ծիրանածինը սպանվել է 1143 թվի ապրիլին, որսի ժամանակ, պատահմամբ վիրավորելով ինքն իրեն։ 1137 թ. Հովհան Ծիրանածինը արշավել է Կիլիկիա և այնուհետև պաշարել Անտիոքը (տես ներքևում, էջ 101), տես և համտ. Ս. Անեցի, էջ 130։

68. Այս ամբողջ հատվածը բնագրում գրված է նույն էջի ներքևի լուսանցքում, միևնույն ձեռագրով։ Հաջորդականությունը պահպանելու համար հատվածը տեղափոխեցինք։

69. Ֆուլկոյի մահվան մանրամասնությունները տես Կուգլերի մոտ, էջ 134։

70. Այս հատվածը բնագրում գրված է ներքևի լուսանցքում, բայց պայմանական նշանով ցույց է տրված իսկական տեղը։

71. Խոսքը վերաբերում է խաչակիրների երկրորդ արշավանքին, որը պատասխան էր 1144 թվի դեկտեմբերին Մուսուլի էմիր Իմադ-ադ-դին Զենկիի կողմից Եդեսիայի իշխանության գրավմանը։ Խաչակիրների երկրորդ արշավանքը սկսվեց 1147 թ. գարնանը։

72. Իմա Նեապոլ։

73. Իմա Պալերմո։

74. Խոսքը վերաբերում է գերմանական կայսր Օտտո IV-ին։ Այս անունը պատահում ենք նաև «Աւգ» ձևով։

75. Դամասկոսի պաշարումը տեղի է ունեցել 1148 թվի հուլիսին։ Այն պաշտպանում էր վեզիր Մուին-ադ-դին Անարը։ Տասնօրյա անհաջող պաշարումից հետո խաչակիրները թողել են այն։

76. Կուգլերի մոտ Ասկալոնի գրավումը նշված է 1153 թ. օգոստոսի 12-ին (էջ 169—170, մանրամասն տես F. Wilken „Geschichte der kreuzzüge" Dritter Teil. Sweite Abteilung. Leipzig 1819, էջ 19—27)։ Տես և համտ. ՄԺ, 1, էջ 75, 91, ծանոթ. 19։

77. Իմա Ֆրիդրիխ I Բարբարոսա։

78. Ինչպես հաղորդում են, Բալդուին III-ին թունավորել է Տրապոլիսի գրաֆի բժիշկը։ Բալդուին III-ը մահացել է 1162 թ. փետրվարի 10-ին (Կուգլեր, էջ 175)։

79. Իմա, Ամալրիխ, Բալդուին III-ի կրտսեր եղբայրը։

80. Համտ. ՄԺ, 1, էջ 76։ Սկանդարիայի (Ալեքսանդրիա) և Բելբայիսի համար կռիվներ գնացել են 1164 թ., բայց այն գրավել են 1167 թ. ամառը։ Բելբայիսը քաղաք է, գտնվում է Նեղոսի դելտայի արևելյան ճյուղերից մեկի՝ Արու Մենեզի ափին, Կահիրեից հյուսիս-արևելք։

81. Դամիետ, գտնվում է Նեղոսի դելտայի ճյուղերից մեկի վրա, Մենզալե լճի արևմտյան ափին։ Կուգլերն ընդունում է, որ Դամիետը խաչակիրները պաշարել են 1169 թ. ուշ աշնանը և թողել առանց նվաճել կարողանալու (էջ 181)։

82. Ըստ այսմ երկրաշարժը տեղի է ունեցել 1170 թվի դեկտեմբերի 27-ին։

83. Այս վկայությունը բնագրում գրված է ներքևի լուսանցքում, միաժամանակ պայմանական նշանով ցույց է տրված տեղը։ Ներսես Շնորհալու մահվան օրվա ստույգ հաշվումները տես, ՄԺ, 1, էջ 71, 92, ծանոթ. 24։ Բնագրի «ԺԴ» պետք է ուղղել «ԺՁ»։

84. Ամալրիխը մահացել է 1173 թ. հուլիսի 11-ին (Կուգլեր, էջ 183)։

85. Այս վկայությունը բնագրում գրված է ներքևի լուսանցքում, միաժամանակ

պայմանական նշանով ցույց է արված անզը։ Ճակատամարտը տեղի է ունեցել 1176 թ. սեպտեմբերին, Իկոնիայի հյուսիս-արևմտյան կողմում գտնվող Մյուրիոկեֆալոնում, այժմ ավերակ բերդ է։ Այստեղ Իզզ-ադ-դին Կլիճ Արսլան II-ը ջախջախեց Մանվել Կոմնենոս կայսեր բանակները։ Ճակատամարտի տարեթիվը Հեթում Բ-ի տարեգրության մեջ սխա կերպով նշված է 1180 թ. (ՄԺ, 1, էջ 76)։

86. Իմա Ֆիլիպպ II Ավգուստ, Կապետինգների դինաստիայից։

87. «Եւ Թագաւորեաց որդի նորա Ալէքսն» հատվածը բնագրում գրված է նեբքևի յուսանցքում։ Բյուզանդական կայսր Մանվելը մահացել է 1180 թվի սեպտեմբերի 24-ին։

88. Այս վկայության տարեթիվը սխալ է նշված։ Բալդուին IV-ը մահանում է 1184 թվի գարնանը, որին այնուհետև հաջորդում է Բալդուին փոքրը (V), որը մահանում է 1186 թվի աշնանը։ Երուսաղեմի թագավորությունը այնուհետև անցնում է Լուզինյաններին (Կուգլեր, էջ 201)։

89 և 90. Տես ծանոթ. 88։

91. Ամբողջ վկայությունն իր մանրամասնություններով զարմանալի կերպով համապատասխանում է իրականության (տես Կուգլեր, էջ 202—268, Ֆ. Վիլկեն, նույն տեղ, էջ 268—313). Ֆ. Վիլկեն հաստատում է մայիսի 1-ի (ուրբաթ օր, էջ 238), հուլիսի 4-ի (ուրբաթ օրը), ճակատամարտերի վայրը (Մարեֆքալլիա, Տիբերիայի և Զեֆորիայի միջև, էջ 250), Ասկալոնի սեպտեմբերի 4 ի գրավման (էջ 297—293) վկայությունները։ Երուսաղեմի գրավումն ակազ. Ուսպենսկին նշում է հոկտեմբերի 3-ին „История Византийской империи", т. III, М—Л., 1948, էջ 331—332, համա. Ֆ. Վիլկեն, նույն տեղ, էջ 311։ Երուսաղեմի պաշարման և գրավման մանրամասնությունները տես 299—313, ուր նշված է նաև օրը՝ շաբաթ, Мюллер, „История ислама" т. III, էջ 172, ՄԺ, 1, էջ 77, 92, ծանոթ. 29)։ Ներսես Լամբրոնացին այդ կռիվներին եղել է ականատես և գրի առել (ՄԺ, 1, էջ 92, ծանոթ. 28)։ Այս դեպքերն էլ առիթ տվին խաչակիրների երրորդ արշավանքին։

92. Տես և համա. Ս. Անեցի, էջ 143, Ն. Լամբրոնացու հիշատակարանը («Հ. Ամսօրեայ» 1894, էջ 19—20), Վ. Արևելցի, էջ 136, Մ. Լեհացի, № 2037, էջ 126բ, ՄԺ, 1, էջ 77. մինչդեռ Ալիշանի մեջբերած վկայությունը բոլորովին այլ բան է պատմում («Սիսուան», էջ 448), տես նաև F. Wilken „Geschichte der Kreuzzüge" Vierter Teil, Leipzig, 1826, էջ 139—140։

93. «Որ Թագաւորեաց ամս Թ (9)» հատվածը բնագրում, տողերի մեջ, ավելացված է հետո։

94. Իմա Ռիչարդ I Առյուծասիրտ։

95. Ակադ. Ուսպենսկին մանրամասն նկարագրում է Կիպրոսի պաշարումը և նվաճումը Ռիչարդ I-ի կողմից (նույն տեղ, էջ 334) նվաճումը նշելով 1191 թ. մայիսի 12-ին (առավել մանրամասն տես Ֆ. Վիլկեն, նույն տեղ, էջ 197—216)։

Մ. Լեհացին այսպես է գրում. «անցեալ գնաց զօրօքն մինչ ի Պտղոմիդեայ, որ է Աքքայ և պաշարեալ զքաղաքն մնայր Թագաւորացն գալոյ անդ. բայց Թագաւորքն անցեալ յայնկոյս ծովուն, հասին ի Կիպրոս և Ռիջարտ Թագաւորն Անկլիոյ խլեաց բռնի զկղզին Կիպրոսի յումեմն Հոռոմ իշխանէ, որ տիրէրն անդ և կոչէր տուկ, անուն նորին Կիրսագօ» (№ 2037, էջ 120բ)։

96. Ֆ. Վիլկեն (նույն տեղ, էջ 363) և Կուգլերը (էջ 252) Աքքայի նվաճումը դնում են 1191 թ. հուլիսի 12-ին, ուրբաթ Օրը։ Աքքայի, Կիպրոսի (տես ծանոթ. 95) և Ասկալոնի գրավման մասին հաղորդում է նաև 1192 թ. մի հիշատակարան. «...և ի ՈԽ (1191) Ընկլէզ Թագաւորն ել և առ զԿիպրոս կղզի և զԱքայ և զԱսխալան և սով եղև այն երկուտարիս խիստ» (ՄՏՄՑ, գործ № 23, էջ 26)։

97. Համա. ՄԺ, 1, էջ 77։ Ակադ. Ուսպենսկու կարծիքով Ռիչարդ I-ը կղզին զիջում է Գվիդոն Լուզինյանին (տես նույն տեղ, էջ 334—335)։

98. Պայմանագրի կնքումն իրականից մեկ տարով ուշ է նշված։ Իրականում դեպքերն այս ընթացքն են ունեցել՝ 1192 թ. օգոստոսի 5-ին Սալահդինը փորձեց գրավել Ցաֆֆան (Յոպպե), որտեղ գտնվում էր անգլիական թագավոր Ռիչարդ Առյուծասիրտը։ Ցաֆֆայի տակ, դաշտում և այնուհետև քաղաքում մղած մարտերը ավարտվեցին հաշտության բանակցություններով։ Այն կնքվեց 1192 թ. սեպտեմբերի 1-ին։ Պայմանագրի կնքման տարեթիվը ճիշտ է նշում Հեթում Բ-ն (ՄԺ, 1, էջ 77, 93, ծանոթ. 35)։ Պայմանագրի համաձայն Երուսաղեմը մնաց Սալահդինին։

99. Համա. Հեթում Բ-ի տարեգրությունը (ՄԺ, 1, էջ 77)։

100. Կուգլերի մոտ Ռիչարդի բանտից ազատվելը նշված է 1194 թ. փետրվարի 4-ին (էջ 266)։

101. Սալահդինը մահացել է 1193 թ. մարտի 4-ին։ Բնագրի «Սէֆըտինն»-ը Սալահդինի եղբայր Ադիլ-Սեյֆ-ադ-դին Աբու Բեկրն է, որը Հեթում Բ-ի մոտ հիշվում է «Ցետըլ» անունով, և որը իշխել է 1200—1218 թթ. (ՄԺ, 1, էջ 77, 93, ծանոթ. 37)։

102. Հանդիպում ենք նաև «սխտեր» ձևով. հավանաբար ֆր. Stere, ծավալի, դըրխավորապես, փայտի չափ է, հավասար մեկ խորանարդ մետրի։

103. Իմա Հենրիխ VI։

104. Հավանաբար Ապուլիա, գավառ Հարավային Իտալիայում։

105. Իմա Սիցիլիա։

106. Հեղինակը նկատի ունի խաչակիրների չորրորդ արշավանքը, որն իրականացավ 1197 թվին։

107. Խոսքը վերաբերում է գրաֆ Հենրիխ Շամպանիացուն, որը 1197 թ. սեպտեմբերի 10-ին հանկարծակի ընկնում է պատուհանից և մահանում։

108. Լևոն Ա-ի թագադրության տարեթվի մասին տես ՄԺ, 1, էջ 51, ծանոթ. 9, համտ. Ներքևում, էջ 180։

109. Բեյրութի գրավումը տեղի է ունեցել 1197 թ. հոկտեմբերի 25-ին (Կուգլեր, էջ 270), իսկ Իբն Ալաթիրը նշում է սեպտեմբերին (Ed. Dulaurır „Recueil des Hisloriens des Croisades", tome Ier, էջ 479, ծանոթ. 2)։

110. Հենրիխ VI-ը մահացել է 1198 թ. հոկտեմբերի 28-ին։

111. «Եւ մնացին առանց կայսեր ամս էչ» հատվածը, որը բնագրում ավելացված է հետո, կարծում ենք, վերաբերում է գերմանացիներին և բնագրում սխալ է նշված տեղը։

112. Ռիչարդ Առյուծասիրտը սպանվեց Շալյուզ ամրոցի տակ 1199 թ. ապրիլի 6-ին։

113. Իմա Հովհան Անհող։

114. Տես ներքևում էջ 180։ Աբուլֆեդան այդ մասին գրում է. «Հիջրի 600 թվին (10/IX 1203—28/VIII 1204 թթ.) հայոց Լևոն թագավորը պաշարեց Անտիոքը, Հալեբի իշխան Մելիք Զահերը շարժվեց և հասավ Հարիմ, այդ պատճառով Լևոնը թողեց Անտիոքն ու ետ գարձավ»։ (Հ. Նալբանդյան, Արաբական աղբյուրները Հայաստանի և հարևան երկրների մասին, հտ. I, (անտիպ), էջ 399)։

115. 1204 թ. մարտի սկզբներին Վենետիկի դուքսը և խաչակիրների ղեկավարներ Բոնիֆացիոս Մոնֆերրատցին ու Բալդուին Ֆլանդրացին պայմանագիր կնքեցին Բյուզանդական կայսրությունը գրավելու։ Տեղի ունեցավ երկու գրոհ՝ առաջինը ապրիլի 9-ին, երկրորդը ապրիլի 12-ին և գրավեցին Կ. Պոլիսը։ Մանրամասնությունները տես ակադեմիկ Ուսպենսկի „История Виз. империи", т. III, стр, 366—377, Կուգլեր, էջ 291—297, F. Wilken „Geschichte der Kreuzzüge" 5er Teil, Leipzig, 1829, էջ 281—300։

116. Կարծում ենք խոսքը վերաբերում է Ալեքսեյ Դուկա Մուրզուֆլին, Բյուզանդական կայսրության կառավարող տան հեռավոր ազգականներից մեկը, որի մահվան հանգամանքների մասին մեզ ոչինչ հայտնի չէ։

117. Խաչակիրների և Վենետիկի դուքսի Կ. Պոլիսը գրավելուց հետո (ծանոթ. 115), կայսր ընտրվեց Բալդուին Ֆլանդրացին 1204 թ. մայիսի 9-ին։ Բալդուինը դարձավ բյուզանդական կայսրների շարքում առաջին լատին կայսրը, իշխելով մինչև 1206 թիվը։

118. Ֆիլիպպ II Ավգուստը Նորմանդիան գրավել է 1202—1204 թթ. շրջանում։

119. Նկատի ունի ֆրանսիական թագավոր Ֆիլիպպ II Ավգուստի և գերմանական կայսր Օտտոն IV-ի կռիվները։

120. Տես և համտ. ՄԺ, 1, էջ 78, 93, ծանոթ. 41։

121. Տես և համտ., նույն տեղ, էջ 78, 93, ծանոթ. 42։

122. Իմա Ղիաս-ադ-դին Քայ Խոսրով I, Իզզ-ադ-դին Ղլիճ Արսլան II-ի որդին, Իկոնիայի սուլթան, իշխել է 1202—1210/1212 թթ., կամ 1192—1200 թթ. և 1204—1210 թվականներին (երկրորդ անգամ) ըստ Լեն-Պուլի, էջ 128։

123. Տես ՄԺ, 1, էջ 78, 93, ծանոթ. 44։ Աբուլֆեդան այս դեպքերի մասին գրում է. «Հիջրի 605 թ. (10/VII 1208—5/VII 1209 թթ.) Մարաշ եկավ Ղիաս-ադ-դին Քայ Խոսրովը, Կըլջ Արսլան Սելջուկի որդին, Ռումի երկրի տերը, հարձակվելու համար Լևոնի որդու երկիրը։ Մելիք Աղ Զահերը նրան օգնություն ուղարկեց և Քայ Խոսրովը մտավ Լևոնի որդու երկիրը, ավերեց ու գրավեց Ֆերկուս կոչված բերդը» (Հ. Նալբանդյան,

Արաբական աղբյուրները…, հտ. I (անտիպ), էջ 400։ Ձերկուսը նույն Բերզուս բերդն է, Խուրմա գետի ձախ ափին, Մարաշից հյուսիս։

124. Խոսքը վերաբերում է Նիկեական կայսրության հիմնադիր Թեոդոր Լասկարիսի և Գիյաս-ադ-դին Քայ Խոսրով I-ի պատերազմին (մանրամասնությունները տես акад. Успенский „История Виз. империи" т. III. отд. VIII, ՄԺ, 1, էջ 78, 93, ծանոթ. 43)։

125. Խոսքը հավանաբար վերաբերում է Գիյաս-ադ-դին Քայ Խոսրով I-ին, որին հաջորդել է Իզզ-ադ-դին Քայ-Քավուս I-ը, իշխելով 1210—1219 թթ.։

126. Տես և համտ. Ներքևում, էջ 180, ՄԺ, 1, էջ 78, 94, ծանոթ. 47։

127. Հեղինակը նկատի ունի իսպանական Ռեկոնկիստայի շրջանում 1212 թ. Լաս Նավաս դե Տոլոսա քաղաքի մոտ տեղի ունեցած նշանավոր ճակատամարտը, որտեղ իսպանական արաբները գլխովին ջախջախվեցին իսպանական և պորտուգալական միացյալ ուժերի կողմից։

128. Համա. ՄԺ, 1, էջ 79։ Նկատի ունի 1214 թ. հուլիսի 27-ի Բուվինի ճակատամարտը, որտեղ Ֆիլիպ II Ավգուստը գլխովին ջախջախեց Հոհան Անհողի և Օտտոն IV-ի միացյալ ուժերին։

129. Նկատի ունի Ֆիլիպ II Ավգուստի որդի Լուդովիկոսի (ապագա Լուդովիկոս VIII) 1214 թ. հուլիսի 2-ի Լարոշ-ո-Մուանի ճակատամարտը, որտեղ ջախջախվեց Հոհան Անհողը։

130. Խոսքը վերաբերում է Լատերանի XII տիեզերական ժողովին։ Տես և համա. ՄԺ, 1, էջ 79, 94, ծանոթ. 50։

131. Տես և համտ. Ներքևում էջ 180, ՄԺ, 1, էջ 79, 94, ծանոթ. 51։

132. Հեղինակը նկատի ունի Իզզ-ադ-դին Քայ Քավուս I-ի արշավանքը դեպի Կիլիկիա. տես և համտ. ՄԺ, 1, էջ 79, 94, ծանոթ. 52։

133. Իմա Անդրեյ II, որի կազմակերպած խաչակրաց արշավանքը տեղի է ունեցել 1217 թվին։

134. Մ. Լեհացին այդ մասին մի փոքր մանրամասն է գրում. տես ՄԺ, 1, էջ 94, ծանոթ. 54։ Մեր հեղինակը և Մ. Լեհացին այս բերդը չնայած տեղադրում են Թաբոր լեռան մոտերքում, սակայն Դուլորիեն հենվելով Մարինո Սանուտոյի վկայության վրա, այն տեղադրում է Կարմեղ լեռան հարավ-արեմտյան մասում, ծովափի մոտերքում (Recueil des Historiens des Croisades, tome 1er, էջ 484, ծանոթ. 1)։

135. Իմա Ալֆոնս IX Քարի (Bon), Կաստիլիայի թագավոր, վախճանվել է 1214 թվին։

136. Իմա Հուգո I-ը։

137. Լեոպոլ Ավստրիացու ղեկավարությամբ խաչակիրների արշավանքը Դեմիետտի վրա սկսվել է 1218 թ. մայիսի 29-ից, չկարողանալով գրավել առաջին հարձակման ժամանակ, խաչակիրները պաշարեցին այն և կարողացան գրավել 1219 թվի նոյեմբերի 5-ին. (մանրամասնությունները տես F. Wilken „Geschichte der kreuzzüge", 6er Teil, Leipzig, 1830, էջ 180—189, 341—350 և Կուգլեր, էջ 333—344) բայց երկու տարի հետո՝ 1221 թ. օգոստոսի 30-ին խաչակիրների և մամլուքների միջև պայմանագիր է կնքվում, ըստ որի խաչակիրները թողնում են Դեմիետտը։

138. Տես ծանոթ. 137.։

139. Համտ. ՄԺ, 1, էջ 79։ Ֆիլիպ II-ը մահացել է 1222 թ. և հաջորդել է որդին Լուդովիկոս VIII։

140. Համտ. ՄԺ, 1, էջ 79, Միխ. Ասորի «Ժամանակագրութիւն», Երուսաղէմ, 1871, էջ 515—516։ Այստեղ հետաքրքիր է Տարսոնի պաշարման տեղության մասին տվյալը։ Բարձրբերդը անառիկ բերդ է լեռների մեջ, Ջամանդի գետի հովտում, Սսից հյուսիս-արեմուտք, արաբները կոչում են Գերսպերդ։ Իսկ Գաբեռոնը (նաև Գաբառոն) գտնվում է Տարսոնի հյուսիս-արևելյան կողմում, մի քանի ժամվա ճանապարհի վրա։ Ալիշանն այն նույնացնում է Վերին Ջանտը գյուղից մի փոքր հեռու, Ջաղացաջրի (Տեկիրմե) գետի ձորեզրին, Քարաբլի վրա գտնվող Ջանտը Դալեսի բերդի հետ («Սիսուան», էջ 70)։

141. Այս հատվածը բնագրում դրված է 155ա էջի ներքևի լուսանցքում։ Կարծում ենք խոսքը վերաբերում է Իկոնիայի սուլթան Ալա-ադ-դին Քայ Քուբատ I-ին, որն իշխել է 1219—1236 թթ.։

142. Տես ծանոթ. 137։

143. Այս վկայությունը գրված է էջի ներքևի լուսանցքում միևնույն ձեռագրով։ Ժամանակագրական կարգը պահպանելու նպատակով այս, ինչպես և նույն էջի երեք այլ վկայությունները, որոնք հրատարակության բնագրում ցույց կտանք աստղանիշերով, տեղափոխեցինք բնագրի մեջ։

144. Իմա, Պաֆոս, քաղաք կղզու արևմտյան ափին։ Այս անունը Հեթում Բ-ի մոտ պահվել է «Աֆ» ձևով (ՄԺ, 1, էջ 80, 95, ծանոթ. 63)։

145. Կարծում ենք նկատի ունի Կիլիկյան Սելևկիան, Կալյուկադնոս գետի ստորին հոսանքում։

146. Անծանոթ վայր։

147. Կիլիկիայի արևմտյան մասում։

148. Արդյոք Փ. Ասիայի արևմտյան ափին գտնվող Ալեքսանդրիա Տրովա (կոչվում է նաև Սիկիա) քաղաքը չէ։

149. Անծանոթ վայր։

150. Իմա Տյուրոս։

151. Հմմտ. ՄԺ, 1։ էջ 40, 56, ծանոթ. 38, էջ 80։

152. Իմա Մոնտֆորտ (հմմտ. ՄԺ, 1, էջ 80) գտնվում է Հայֆֆայից և Կարմեղ լեռից հյուսիս-արևելք։ Դուլորիեի կարծիքով խոսքը վերաբերում է բերդի վերականգնըմանը (նույն տեղ, էջ 485)։

153. Իմա Լուդովիկոս IX։

154. Տես ՄԺ, 1, էջ 80, 95, ծանոթ. 65։

155. Տես ՄԺ, 1, էջ 80, 95, ծանոթ. 66։

156. Հեթում Բ-ի տարեգրության մեջ հիշված է «Գէմունդ խեղն» (ՄԺ, 1, էջ 80)։

157. Ծովային Կիլիկիայի հին բերդերից մեկը։ Ալիշանը հենվելով հայ մատենագիրների վրա, Դարպասկը տեղագրում է յՍև լեռան շրջակայքում, Պաղրասից հյուսիս, թեև Սանուտոն նշում է Սև լեռան ստորոտում, Պաղրասից հարավ, («Սիսուան», էջ 426)։ Դարպասկի մոտ 1237 թ. ամռանը Տաճարական Օրդենի ուժերը գլխովին ջախջախվեցին (Ֆ. Վիլկեն, նույն տեղ, էջ 559—560)։

158. Խոսքն արդյոք ֆրանսիական Ներքին Դոֆինե նահանգի Վալանս քաղաքին է վերաբերում։ Հեթում Բ-ի մոտ «Վալան» ձևով (ՄԺ, 1, էջ 80)։

159. Իմա Գազզա։ Այս վկայությունը չի վերաբերում 1239 թ. Նասիր Դաուգ Քարաքցու Երուսաղեմի վրա արշավելուն, որը ենթադրաբար նշել էինք Հեթում Բ-ի տարեգրության համապատասխան վկայության ծանոթագրության մեջ (ՄԺ, 1, էջ 95, ծանոթ. 67), այլ Նավարական թագավորի, Բուրգունդիայի հերցոգի և ուրիշների Եգիպտոսի արշավանքին։ Խաչակիրների մի մասի ճակատամարտը մամլուկների հետ տեղի ունեցավ Գազզայի մոտերքում 1239 թ. նոյեմբերի 13-ին։ Ճակատամարտում խաչակիրները չարաչար պարտվեցին և Մոնֆորտի գրաֆը գերվեց (Կուգլեր, էջ 369—370, Ֆ. Վիլկեն, նույն տեղ, էջ 588—589)։ Այս ժամանակ Եգիպտոսում իշխում էր Ադիլ II Սեյֆ-ադ-դին Աբուբեկրը (1238—1240 թթ. ըստ Լեն-Պուլի, էջ 60)։

160. Իմա գրաֆ Ռադուլֆ Սուասսոնցի, որը Սիրիա էր եկել Նավարայի թագավորի հետ։

161. Վերևում նշված (ծանոթ. 159) անհաջողությունից հետո խաչակիրների դեմ երկրորդ քայլը կատարեց Սիրիայի իշխան Նասիր Դաուդ Քարաքցին, 1239 թ. հանկարծակի արշավելով Երուսաղեմի վրա։ Այս դեպքերի ժամանակ Եգիպտոսը գրավում է Սալիխ Նեջմ-ադ-դին Էյուբը, որի դեմ ելնում է Բալբեկի իշխող Սալիխ Իսմայիլը, գրավելով Դամասկոսը (1240 թ. երկրորդ անգամ)։ Սա դաշն է կնքում ինչպես Հեմսի իշխող Իբրահիմի, այնպես էլ խաչակիրների հետ։ Նույն վկայությունը վերաբերում է Սալիխ Իսմայիլ Դամասկոսցու և խաչակիրների դաշինքին (տես Ֆ. Վիլկեն, նույն տեղ, էջ 597—606)։ Նշված վայրերն ընկած են Աքքա և Տյուրոս քաղաքներից արևելք։

162. Իմա գրաֆ Ռիչարդ, անգլիական Ռիչարդ Առյուծասիրտ թագավորի ազգականը։

163. Հաշտությունը կնքվել է 12۰1 թ. փետրվարին (տես Ֆ. Վիլկեն, նույն տեղ, էջ 615—616)։

164. Հեղինակը նկատի ունի Նասիր Դաուդ Քարաքցու և խաչակիրների դաշինքը, որն ուղղված էր Եգիպտոսում իշխող Սալիխ Նեջմ-ադ-դին Էյուբի (1240—1249 թթ., ըստ Լեն-Պուլի, էջ 60) դեմ։

165. Եգիպտոսի սուլթան Սալիխ Նեջմ-ադ-դին Էյուբը տեսնելով իր դեմ ստեղծված դաշնակցությունը (ծանոթ. 164) դիմում է Պարսկաստանում և Միջագետքում ապաստակող խորեզմցիների բանակին. Խորեզմցիների բանակը 1244 թ. գարնանը արշավում է Երուսաղեմ։ Ճակատամարտը տեղի է ունենում 1244 թ. հոկտեմբերի 18-ին, Գազզայի մոտ։ Բնագրում խոսքն այդ մասին է (մանրամասնությունները տես Կուգլեր, էջ 373—376, Ֆ. Վիլկեն, նույն տեղ, էջ 638—646)։

166. Հմմտ. ՄԺ, 1, էջ 81, Սմբատ Գունդստաբլ «Տարեգիրք», Փարիզ, 1859, էջ 124։

167. Նկատի ունի Սալիխ-Նեջմ-ադ-դին Էյուբին։

168. Իմա Լուդովիկոս IX։ Վերջինս, ըստ Կուգլերի Կիպրոս կղզին հասնում է սեպտեմբերի 17-ին (էջ 382—383)։

169. Բնագրի տեղեկությունները միանգամայն ստույգ են (հմմտ. Կուգլեր, էջ 384—385, F. Wilken, „Geschichte der Kreuzzüge", 7er Teil, Erste Abteilung, Leipzig, 1832, էջ 03—124)։

170. Ֆ. Վիլկենը (նույն տեղ էջ 126) և Կուգլերը (նույն տեղ, էջ 386) ընդունում են, որ Լուդովիկոս IX-ի արշավանքը Գեմիետա սկսել է նոյեմբերի 20-ին։

171. Ֆ. Վիլկենի (նույն տեղ, էջ 133) և Կուգլերի (էջ 187) համաձայն խաչակիրները հասնում են Մանսուր քաղաքի հանդեպ գտնվող Աշմում Թանա վայրը (համանուն ջրանցքի վրա)։

172. Կուգլերը նշում է, որ այդ անցումը տեղի է ունեցել աննշան կորուստներով (էջ 388)։ Հաջորդ դեպքերի մանրամասնությունները տես նույն տեղ, էջ 388—392, Ֆ. Վիլկեն, նույն տեղ, էջ 138—186։

173. Խոսքը վերաբերում է Սալիխ Նեջմ-ադ-դին Էյուբի որդու, Մուաղզամ Թուրանշահի սպանությանը, որին, իրոք, 1250 թ. մայիսի 2-ին սպանել է մամլուկների էմիր Բեյբարսը (Ֆ. Վիլկեն, նույն տեղ, էջ 232)։

174. Եգիպտոսի այս խառնակությունից (ծանոթ. 173) օգտվելով Հալեբի իշխան Նասիր Սալախ-ադ-դին Յուսուֆը գրավեց Դամասկոսը և շարժվեց հարավ՝ խաչակիրներին միանալու, Եգիպտոս շարժվելու համար, ուր իշխում էր Աշրաֆ Մուսան (1250—1252թթ.), բայց, իրականում, Լուդովիկոս IX ոչ թե արշավեց, այլ սպառնաց արշավել, եթե Մուսան չկատարի իր կամքը՝ ազատել գերի խաչակիրներին (Կուգլեր, էջ 394)։

175. Տես և հմմտ. ՄԺ, 1, էջ 81, 96, ծանոթ. 80։

176. Ուղիղ ձևը Մուռանդին. բերդ, Հերակլեա կամ Առակլի քաղաքի մոտերքում։

177. Հուլավուն Ալամութը գրավել է 1256 թ. դեկտեմբերի 15-ին (ՄԺ, 1, էջ 59, ծանոթ. 62)։

178. Այս ճակատամարտը Կուգլերի մոտ նշված է 1258 թ. հունիսի 24-ին։

179. Տես և հմմա. ՄԺ, 1, էջ 82, 96, ծանոթ. 84։

180. Իրականում 1259 թ.։

181. Իմա Մուզաֆֆար Սեյֆ-ադ-դին Կուտուզ։

182. Մոնղոլների և մամլուկների միջև ճակատամարտը տեղի է ունեցել 1260 թ. սեպտեմբերի 3-ին (Ֆ. Վիլկեն, նույն տեղ, էջ 416, Կուգլեր, էջ 404) Էյն-Ջալուտում, վայր հին Գալիլիայում, Թափոր լեռան ստորոտին։

183. Իմա Միխայիլ Պալեոլոգ (տես ՄԺ, 1, էջ 96, ծանոթ. 86)։

184. Տես ՄԺ, 1, էջ 82։

185. Ալիշանի կարծիքով Կոստանդին Պայլը մահացել է 1263 թ. փետրվարի 24-ին «Սիսուան», էջ 554, հմմտ. ՄԺ, 1, էջ 82, 96, ծանոթ. 87)։

186. Բնագրում այդպես, մեզ միայ անհասկանալի, գուցե պետք է լինի «բացեց» այսինքն դուռը բացեց, գրավեց, նվաճեց։

187. Տես և հմմտ. ՄԺ, 1, էջ 82, 96, ծանոթ. 88։

188. Իմա Ռուքն-ադ-դին Ղլիճ Արսլան IV, իշխել է 1257—1267 թթ.։

189. Բնագրում «և կալան զթագաւորն» հատվածը գրված է աջ լուսանցքում։

190. Բնագրում «ընդ լաժինմ ի իշխանք» ձևով, կարծում ենք պետք է բաժանջատել և վերջին բառն էլ ուղղագրել այսպես. «ընդ բաժին մի իշխանաց»։

191. Հավանաբար Բիրջիք քաղաքը (հին Ապամեան) Ուրֆայի և Մերդինի միջև։

192. Իմա Նոր տարվա Օրը՝ դեկտեմբերի 25-ը, կաթոլիկների հաշվով։

193. Ամսաթվի խնդությունը զարմանալի կերպով հաստատվում են Ֆ. Վիլկենի ավյալներով. („Geschichte der Kreuzzüge" 7er Teil, Zweite Abteilung, Leipzig, 1832, էջ

485—490)։ Սաֆեթը Տաճարական օրդենի բերդերից մեկն է, ընկած Տիբերիաս լճից հյուսիս-արևմուտք։

194. Խոսքը վերաբերում է մամլուկների զորքի հրամանատար Իզզ-ադ-դին Իդայինին։ Մանրամասնությունները տես ՄԺ, 1, էջ 07, ծանոթ. 94։

195. Տես ՄԺ, 1, էջ 83, 97, ծանոթ. 05։ Ալիշանը ճակատամարտը նշում է օգոստոսի 23-ին։ Աբուլֆեդան այս կռիվների մասին հետևյալն է գրում. «Նրանք (մամլուկները) ճամբա ելան Մելիք էլ Մանսուրի հրամանատարության տակ և հասան Սսի երկիրը նույն տարվա զուլկադա ամսում (4 օգոստոսի—2 սեպտեմբերի 1266 թ.)։ Մանրամասնությունները տես Հ. Նալբանդյան, Արաբական աղբյուրները... հտ. I (անտիպ), էջ 409։

196. Նկատի ունի Լուդովիկոս IX-ի կողմից կազմակերպված խաչակրաց ութերորդ արշավանքը։

197. Անտիոքի գրավման մասին մանրամասն տեղեկություններ գտնում ենք նաև Հեթում Պատմիչի հիշատակարանում (ԳԱ-ի «Տեղեկագիր», 1948 թ., № 10, էջ 72), ուր Անտիոքի նվաճումը նշվում է 1208 թվի Ծաղկազարդի շաբաթ օրը (հմմտ. ՄԺ, 1, էջ 44)։ Մ. Լեհացին հետևյալ մանրամասնություններն է գրում. «Սոյնս ՌՄԿԷ (1207) Պընդուխտար սուլտանն Եգիպտոսի եկն զօրօք ի Ճաֆն ի Զ(6) մարտի և էառ զքաղաքն տուրտուրթեամբ, զի սիրօվ մտեալ ի ներս և սուր բարձեալ տնօրէնքն կոտորեցին զքրիստոնեայս, բայց զայնոսիկ, որ ի բերդն էին եթող ամենայն ընչիւք իւրեանց ելանել և յղեաց խաղաղութեամբ յԱքայ...Եհտ այնորիկ ի նոյն ամին, նոյն սուլտանն անցեալ գնաց ի մեծն Անդիոք զեղեցիկն կոչեալ և հռչակաւոր ընդ տիեզերս. և անդ ոչ ոք ի քաղաքացեացն և ի պարոնացն դիմամարտեցաւ կամ կռուեցաւ, այլ էառ զնայ սուլտանն մայիս ԻԹ (29) օրն և սպանաւ անդ արս ԺԸՌ (18000), իսկ որք կենդանիս կալան և գերիս վարեցին եկեղեցիականս, կարգաւորս, արս, կանայս և տղայս առաւել քան զԺ և ԾՌ (150090)-ս, բայց յորոց ոչ թուեցան և էր շաբաթ օրն ծաղկազարդին» (№ 2037, էջ 124բ)։

Հեթում Պատմիչի հիշատակարանի և Մ. Լեհացու համաձայն Ծաղկազարդի շաբաթ օրը գրավել են Անտիոքը, բայց այդ օրը չի ընկնի ոչ մայիսի 29-ին (Մ. Լեհացի) և ոչ էլ 17-ին (Խրոնիկոն)։ Հեթում Պատմիչի հիշատակարանի հրատարակության ներածականում բնագրի «Ծաղկազարդը» մենք հասկացել և բացատրել էինք ոչ թե Հոգեգալստի տոնից, այլ Զատկից մեկ շաբաթ առաջ. ըստ այնմ ստացել էինք մարտի 31-ը, շաբաթ։ Բայց որովհետև գոյություն ունի երկու Ծաղկազարդ՝ մեկը Զատկից, իսկ մյուսը Հոգեգալստից, մեկ շաբաթ առաջ, ստանում ենք 50 օրվա տարբերություն։ Զնայած ոչ մի բնագրում էլ ասված չէ, թե Անտիոքի նվաճումը որ Ծաղկազարդին է կատարվել, առաջին, թե երկրորդ, բայց մեր բնագրի և Մ. Լեհացու մոտ հիշվում է մայիս ամիսը, նշանակում է նվաճումը կատարվել է երկրորդ Ծաղկազարդին։ Այս դեպքում էլ չենք ստանում ոչ մայիսի 17-ը (մեր բնագիրը) և ոչ էլ մայիսի 29-ը (Մ. Լեհացի)։ Բանն այն է, որ երկրորդ Ծաղկազարդի շաբաթը կլինի մայիսի 20-ին, սրան համապատասխան էլ մայիսի 27-ը, կիրակի, կլինի Հոգեգալստյան տոնը։ Ուրեմն, եթե ճիշտ է շաբաթը, ապա Անտիոքը գրավել են 1268 թ. մայիսի 20-ին, թեև Ֆ. Վիլկեն (նույն տեղ, էջ 521) և Կուգլերը (էջ 411) ընդունում են մայիսի 19-ը։

198. Աբուլֆեդան հաստատում է սույն վկայությունը, ավելացնելով որոշ մանրամասնություններ. «...Շավալ (14 հունիս—12 հուլիս 1268 թ.) ամսում հաշտություն կայացավ Մելիք Դահերի և Սսի տիրոջ Հեթումի միջև, այն հիման վրա, որ եթե Սսի տերը բերի Սոնկուր էլ Աշքարին թաթարների մոտից, որոնք նրան գերի էին տարել Հալեպի բերդից այն ժամանակ, երբ Հուլավուն տիրել էր այնտեղին, և բացի այդ հանձնի Բեհեսնին, Դարբսակը, Մարզբանը, Ռաբանը, Շիհէլ Հադիդը, սուլտանն էլ ազատ կարձակի իր որդի Լևոնին։ Ապա Սսի տերը ներկայացավ Աբաղային, թաթարների թագավորին, և նրանից խնդրեց Սոնկուր էլ Աշքարին։ Նա էլ հանձնեց նրան և Սոնկուր էլ Աշքարը վերադարձավ Մելիք Դահերի ծառայությանը և Դարբսակը, ինչպես և մյուս վայրերը, որոնք հիշեցինք, հանձնվեցին, բացի Բեհեսնեից։ Մելիք Դահերն էլ ազատ արձակեց Սսի տիրոջ Հեթումի որդուն՝ Լևոնին ու վերադարձրեց իր հորը (Հ. Նալբանդյան, Արաբական աղբյուրները... հտ. I, (անտիպ), էջ 410)։ Սոնկուր էլ Աշքարի մասին տես նաև Ներքևում, էջ 105։ Ռաշիդ-ադ-դինը խոսելով Հալեպի գրավման մասին, այս անձնավորության մասին դժբախտաբար ոչինչ չի հայտնում („Сборник Летописей“ т. III. М.—Л., 1946, էջ 49—50)։

199. Տես և հմմտ. ՄԺ, 1, էջ 83, 97, ծանոթ. 97։

200. Իմա Էգմորտ, Լուդովիկոս IX-ի զորքերի հավաքման վայրը, որտեղից ուղեվորվելու էին Սիրիա։

201. Լուդովիկոս IX-ը Էգմորտից դուրս է գալիս հունիսի 2-ին, մի քանի օր նավելուց հետո, Սարդինիայի մոտերքում, սկսվում է փոթորիկ. զորքը ստիպված իջևանում է Կալյարի նավահանգիստը, Սարդինիայի ծովափին։ Այստեղ էլ հրավիրում են ռազմական խորհուրդ և որոշում շարժվել ոչ թե Սիրիա, այլ Թունիս (Մանրամասնությունները տես Ֆ. Վիլկեն, նույն տեղ, էջ 539—552)։

202. Իմա Կարթագեն, որը գրավում են հուլիսի 19-ի և 20-ի ճակատամարտից հետո։ Տես և համա. Մ. Լեհացի, № 2037, էջ 124բ, ՄԺ, 1, էջ 83։

203. Տես ներքևում, էջ 167, ծանոթ. 148։

204. Իմա 1271 թ. հունվարի 6-ը։

205. Իմա Էվրեյա կղզին։

206. Այս մահափորձը կատարվել է Բեյբարսի դրդմամբ, 1272 թ. հունիսի 16-ին, (Ֆ. Վիլկեն, նույն տեղ, էջ 603)։ Համտ. Մ. Լեհացու վկայությունը, տես ՄԺ, 1, էջ 97, ծանոթ. 99։

207. Այս վկայության մեջ կարևոր է արշավանքի օրվա հիշատակումը։ Տես և համտ. ՄԺ, 1, էջ 84, 98, ծանոթ. 104։

208. Անաբիկ բերդ, գտնվում է Միջերկրականի ժայռոտ ափերին, Տրիպոլիից հեռու։ Այս վկայությամբ հեղինակը՝ նկատի ունի Սիրիայի էմիր Սոնկուր էլ Աշքարի և եգիպտական սուլթան Մանսուր Սեյֆ-ադ-դին Կալաունի (նաև Ալֆի) կռիվները, որի ժամանակ Սոնկուր էլ Աշքարին օգնեցին մոնղոլները և հայերը։ Կռիվները գնացին 1280 թվին։ Կալաունի ձեռնարկած դրոհը Մարգապի վրա Ֆ. Վիլկեն նշում է փետրվարին (նույն տեղ, էջ 669)։

209. Տես և համա. ՄԺ, 1, էջ 45, 61, ծանոթ. 91, էջ 84։ Ճակատամարտն ըստ Սանուտոյի եղել է Կալամելեի կողմերում, 1281 թվի հոկտեմբերի 29-ին (Ed. Dulaurier „Recueil des Historiens des Croisades", tome 1er, էջ 487, ծանոթ 3)։ Ֆ. Վիլկեն (նույն տեղ, էջ 667—668) ու Կուգլերը (էջ 424) ևս նշում են 1281 թ. աշնանը (ըստ Աբուլֆեդայի ռաջաբ ամսին, հոկտեմբերի 16-ից—նոյեմբերի 15), Հեմսի մոտ։ Սակայն ուրիշները Աբուլֆարաջին (տես Ֆ. Վելկենի մոտ, նույն տեղ, էջ 668, ծանոթ 47), Հեթում Պատմիչը (Պատմութիւն Թաթարաց, Վենետիկ, 1842, էջ 56) նշում է 1282 թ. աշնանը։ Տես նաև ներքևում, էջ 180)։

210. Հուգո Լուզինյանի մահը Կուգլերի մոտ նշված է 1284 թ. մարտի 26-ին (էջ 426), որին հաջորդում է ավագ որդին՝ Իոհանը։

211. Իոհանը մահանում է 1285 թ. մայիսի 20-ին, հաջորդում է եղբայրը՝ Հենրիի II-ը (Կուգլեր, էջ 426)։

212. Մանսուր Սեյֆ-ադ-դին Կալաունը, Մարգապ ամրոցը պաշարել է 1283 թվի ապրիլի 18-ից և գրավել մայիսի 25-ին (մանրամասնությունները տես Ֆ. Վիլկեն, նույն տեղ, էջ 688—692)։

213. Իմա Մարտինոս Չորրորդ։

214. Տես ներքևում, էջ 148, 169, ծանոթ. 174։

215. Տրապոլսի գրավման ժամանակի մասին սկզբնաղբյուրները մի փոքր հակասական են՝ Անանունը նշում է ապրիլի 17-ին (մյուս դեպքում 15-ին, տես ներքևում, էջ 148), Հեթում Պատմիչն ամսաթիվը չի տալիս (ԳԱ «Տեղեկագիր», 1948, № 10, էջ 72)։ Մ. Լեհացու ժամանակագրության շարունակողը գրում է. «Ընդ այնմ ժամանակին ՌՄՁԹ (1289) Ալֆի սոլտանն Եգիպտոսի, որ և Մէլէք Մանսուր կոչէր, եկն զօրօք բազում և պաշարեաց զՏրապօլիս քաղաք Սէհլին, և կռվեցաւ ի վերայ դուռըս Խ (40) յոյժ սաստկապէս, բայց ի միւս քաղաքէն, որ էր Աքայ, գնացին յօգնութիւն յամենայն դասուց քրիստոնէից, այսինքն՝ ի Գամբ[լ]ացոցն, յՈսպիթալացոցն, յԱքայու դուքսէն, Ջէնուացիք, Վէնէտիկք, Պիզացիք ևս և այլ բազումք եկն ի Կիպրոսէ և տէրն Սուրոյ Ամառի, եղբայր Թագաւորին Կիպրոսի, ԻԸ (28) խալէօվ և բազում ձիաւորօք, բայց ոչ կարացին ի դիմի կալ։ Այլ ի ԻԸ (28)-ն ապրիլի յերեքշաբաթի օր ի կէս օրն մտան զօրքն սուլտանին ուժով և առին զքաղաքն և սպանին անթիւք ի քրիստոնէիցն և ոմանք զերծան ընդ ծովն գնացեալք։ Եւ հրաման հանեալ բռնաւորին այն սուլտանին և զամենայն պարիսպն քաղաքին և զամրոցսն, որ էին ի նմայ, ի հիմանէ քարայյատակ արարին» (№ 2038, էջ 125բ)։ Արաբ մի այլ պատմիչ՝ Աբուլ Մեհասի Տաղրիբերդին Տրապոլսի գրավումը նշում

է ևս երեքշաբթի Հիջրի 688 թ. ռաբի ախար ամսի 4-ին («Երևելի աստղեր», հա. 7, էջ 321. 1038, Կահիրե, արաբերեն)։ 1289 թ. ռաբի ախար ամիսը սկսվում է ապրիլի 23-ին, շաբաթ օրը, այստեղից էլ ռաբի ախար ամսի 4-ը կհամապատասխանի 1289 թ. ապրիլի 20-ին երեքշաբթի։ Հեթում Պատմիչի, Մ. Լեհացու ժամանակագրության շարունակողի և Աբուլ Մեհասի Տաղրիբերդի մոտ նշված է օրը՝ երեքշաբթի, եթե դա հաստատ է, նշանակում է գրավումը տեղի է ունեցել ոչ ապրիլի 17-ին (Անանուն), ոչ ապրիլի 25-ին (Խրոնիկոն), և ոչ էլ ապրիլի 28-ին (Մ. Լեհացի), այլ ապրիլի 26-ին, որովհետև հենց այդ օրն էլ երեքշաբթի է։ Ֆ. Վիլկենի (նույն տեղ, էջ 705), ինչպես և Կուգլերի (էջ 428) կարծիքով Տրապոլսի գրավումը տեղի է ունեցել 1289 թ. ապրիլի 27-ին։

210. Կուգլերը նշում է նոյեմբերի 10-ը (էջ 431), իսկ Ֆ. Վիլկեն նոյեմբերի 11-ին (նույն տեղ, էջ 733)։

217. Այս վկայությունը ստույգ է, որովհետև 1291 թ. մայիսի 18-ը իրոք ուրբաթ է, բացի այդ, այս տեղեկությունը հաստատում են Հեթում Պատմիչը (ԳԱ-ի «Տեղեկագիր», 1948 թ., № 10, էջ 67, 72), և Մ. Լեհացու շարունակողը. վերջինս գրում է. «Արդ՝ Աշրաֆ սուլտանս այս չար, յառաջին ամին իշխողութեանն իւրում ՌՄՂԱ (1291) եկն մեծ և անթիւ զօրօք և զինուք և հնարիւք ի վերայ քաղաքին Աքայոյ և առժամայն ընդ ղալն քանդեցին և աւերեցին զամենայն շէնսն, որ էին շուրջ առ քաղաքօվն և զամենայն ծառսն, զայգիսն և զբուրաստանսն կոտորեցին և տակախիլ արարին և եղին բաղում բաբանս և ձգէին անդեգար զքարսն, իսկ քաղաքացիքն յոյժ քաջապէս կռուէին իբր Գ (4) շաբաթս։ Եկն և թագաւորն Կիպրոսի զօրօքն իւր և իշխանօքն յօգնութիւն, ......և քանզի էին ի քաղաքն Աքայոյ ղանազան պարոնութիւնք մինն պատճառաւ միւսոյն թուլանայր և վասն նախանձու միւսոյն ոչ կռուէին։ Այլ ի ԺԸ (18) օրն մայիսոյ յուրբաթոջ ի Գ (3) ժամն մինչ ամենեքեան ի հաց էին գնացեալ, ըստ սովորութեան Ֆռանկաց, մտան Տաճիքն ուժով ընդ պարիսպն և կոտորեցին անխնայ զամենայն հասակ անթիւ յոյժ։ Սակայն, մեծամեծքն քաղաքին նայև բաղում ժողովուրդք կանամբք և տղայօք փախեալ մտին ի յամրոցսն Գամբլուն, որ էր ի մէջ քաղաքին, որ և եղեն անդ զաւուրս Ժ (10) և քաջապէս կռվէին։ Բայց սոլտանն ետ նազմել զնոյն բուրջին, զառաջին կողմ, ուր էր դուռն և անկաւ այն կողմն յերկիր. և իբրև անկաւ Տաճկնին բռնութեամբ ի ներս մտան, որ և ի մտանելն Տաճկնոյն, պատերազմեցան քրիստոնայքն և սպանին ի զօրուն սուլտանին ԲՌ և ԵՃ (2500) և ապայ յաղթեցին անօրէնքն և եգեալ ձեռն սպանին զարսն զամենայն, որք էին յամրոցին այն, այլ զկանայս և զտղայսն գերեցին։ Այլ թագաւորն Կիպրոսի նայև ամենայն իշխանքն և բաղում անձինք եկեղեցականաց և աշխարհականաց, յառաջին օրն ի նաւերն դերծեալք գնացին ի Կիպրոս։ ...Արդ՝ ի նմին օրն յորում առաւ Աքայ ամենայն քրիստոնեայքն Սէլին միջաբեկեցան։ Եւ ի միում աւուր ամենայն բնակիչքն Սուրոյ, Սայիտոյ, Բէրիթոյ, Անդառատշոյ և Ջաստէր Բէլէկրինին առանց յոսոխի և պատերազմի մտեալք ի նաւս փախեան ի Կիպրոս, որ ի նոյն աւուրն արդ բարձաւ քրիստոնեութիւնն...» (№ 2037, էջ 125բ—126ա)։ Աքքայի պաշարման և նվաճման տեղեկությունները մանրամասն տես Փ. Վիլկեն, նույն տեղ, էջ 735—758, հմմտ. Անանուն (տես ներքևում, է 149)։

218. Բնագրում երկու—երեք բառ քերված է։

219. Հռոմկլայի գրավումը տեղի է ունեցել 1292 թ. հունիսի 28-ին (տես ԳԱ «Տեղեկագիր», 1948, № 10, էջ 67—68, 73, ՄԺ, 1, էջ 99, ծանոթ. 120։

Աբուլֆեդան մասնակից լինելով Հռոմկլայի պաշարմանը, որպես ականատեսի, գրում է. «... այնտեղից (Համաթից) սուլթանը (Մելիք Աշրաֆը) գնաց դեպի Հալեպ, այնտեղից էլ ուղղվեց դեպի Հռոմկլա և պաշարեց այն նույն տարվա (1292 թ.) Ջումադա ալ-ախար ամսի առաջին տասնօրյակին (20—29 մայիսի)։ Այդ բերդը Եփրատի մոտ էր և մեծապես ամրացված։ Նրա դիմաց նա հաստատեց քարանետ մեքենաներ և այդ պաշարումը շատ ավելի խիստ եղավ, քան բոլոր պաշարումները, որոնց մասին վկայում են ականատեսները։ Համաթցիները հաստատվեցին մի սարի գագաթի վրա, որը ձգվում էր դեպի բերդը՝ արևելյան կողմից և մենք ականատես եղանք այնտեղից բնակիչների վիճակին, իրենց երթևեկին, շարժումներին, իրենց վարքին և փախուստին, երբ ջարդն սկսվեց։ Բերդը սրի ուժով գրավվեց շաբաթ օրը նույն տարվա ռաջաբ ամսի 11-ին (28 հունիս 1292 թ.)։ Բնակիչներն սպանվեցին և նրանց երեխաները հափշտակվեցին։ Այնտեղ էր ապաստանած կաթողիկոսը, հայերի խալիֆան, որ բնակվում էր բերդում, այնտեղ էին ապաստանել նաև փախստականները։ Համաթցիները քարանետ մեքենաներ զետեղեցին սարի գագաթին, որը ձգված էր դեպի բերդը, և սուլթանից հրաման եկավ Համաթի իշխանին, որպեսզի մե-

քննաներով նրանց վրա արձակի (քարեր), և երբ առանց դադարի ռմբակոծեցին, նրանք հաշտություն խնդրեցին սուլթանից և նրանց խնդրանքը ընդունվեց այն պայմանով, որ իրենց կյանքը կպահպանվի միայն գերի հանձնվելու պարագայում։ Նրանք համաձայնեցին և գերի վերցվեցին, կաթողիկոսը և բոլոր նրանք, որոնք սակավ թվով մնում էին միջնաբերդում, մինչև վերջին մարդը» (Հ. Նալբանդյան, Արաբական աղբյուրները..., հա. I (անտիպ), էջ 412—413)։ Իսկ մի այլ ժամանակակցի՝ գրիչ Բարսեղի, հիշատակարանը ևս զուրկ չէ հետաքրքրությունից, բերում ենք մեզ հետաքրքրող մասը. «Եւ եղև սկիզբն գրելոյ սորա յայնմ ամի, յորժամ եկն անաւրէն սուլտանն Եգիպտոսի բազում զաւրաւք և անթիւ հեծելաւք ի վերա անառիկ գղեկին, և հայրապետական աթոռոյն Հռոմկլային. և պաշարեաց զնա բազում պատնիշաւք և բազում հեծելաւք և հետևակաւք, և ըռըմբաքար կանկնեաց ի նմա թուով երեսուն և հինգ ընդ մեծ և ընդ փոքր։ Եւ ծեծէին զպարիսպ բերդին քարիւ և ի ներքս ի բերդն ձգէին քարինս մեծամեծս և փոքունս. և ձգէին նետս ի նոսա և սպանանէին զմարդ և զանասունս։ Եւ էր ի մեծ վտանգի և ի նեղութեան և ի տարակուսի քաղաքն այն, յանաւրէն ազգէն Հագարացոց։ Եւ ոչ ոք մտանէր և ելանէր առ նոսա, զի յամենայն կողմանց պաշարեալ էին զքաղաքն զայն, և ոչ ուստեք հասանէր աւգնական նոցա։ Այլ միայն առ բարձրեալն Աստուած աղաղակէին, գոչէին, արտասուէին, արք և կանայք, ծերք և տղայք, երիտասարդք և կուսանք, թերևս ողորմեսցի մարդասէրն Աստուած ......Եւ մատնեաց զհոյակապ, և զհռչակաւոր, զանառիկ զղեակն զԿլայն և զաթոռն հայրապետութեան ի ձեռս անաւրէն զոռողին և բազմագլուխ վիշապին, արքային Եգիպտացոց. և արար սպանումն և գերութիւն մեծ և աւեր սաստիկ, և զբազումս ի սուր սուսերի մաշեցին, և ոչ եղև համար և թիւ գերելոցն և կոտորելոցն, և ով ոք բաւականիցէ պատմել զեկեղեցեաց աւերումն, զսուրբ սեղանոց կործանումն և զանաւթոց և զսպասուց սրբութեանց տաճարաց Աստուծոյ զափշտակութիւն, զսպանումն քահանայից, զգերութիւնն սարկաւագաց, զխայտառականս կուսանաց, զանարգանս ամուսնացելոցն, զի ոչ ակն առնուին յալեաց ծերոց, և ոչ խնայէին ի մանկութիւն երիտասարդաց և ոչ ողորմեցան արդար տղայոց, այլ ի սուր և ի մահ և ի գերութիւն մատնեցան. և ի վերա այսորիկ հրով այրեցին զքաղաքն։ Եւ զհայրապետն մեր զտէր Ստեփանոս հանդերձ եպիսկոպոսաւք և քահանաիւք, և սարկաւագաւք, և բազում ժողովրդովք արամբք, կանամբք, և մանկտովք, ի գերութիւն վարեցին յաշխարհն Եգիպտացոցս» (№ 2588, էջ 443ա—444ա, հմմտ. № 4211, էջ 527բ և շար.)։ Տես նաև ներքևում, էջ 181։

220. Իմա կահրբե։

221. Տես և հմմա. ՄԺ, 1, էջ 86, 99, ծանոթ. 121։

III

## ՀԵԹՈՒՄ ՊԱՏՄԻՉԻ ԱԶԳԱԲԱՆԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ (XIII Դ.)

*Մատենադարանի № 1898 ձեռագրում «Պատմութիւն՝ խրոնիկոնին» հետևում են երեք մանր բնագրեր.*

*Ա. Պատմութիւն ազգին Ռովբինանց, թէ որպէս տիրեցին Կիլիկիո (էջ 168ա—172ա)[1]։*

*Բ և Գ. Ազգաբանութիւն թագաւորացն Երուսաղէմի և թագաւորացն Կիպրոսի (էջ 172ա—174բ)։*

*Դ. Ազգաբանութիւն բրընձնոյն Անտիոքա (էջ 174բ—175բ)[2]։*

*Ա. Բնագիրն սկսվում է Կիլիկիայում հայկական իշխանության հիմնադիր Ռուբենի հանդես գալուց և վերջանում Հեթում Բ-ի թագավորությամբ, ավելի ճիշտ, հեղինակն ազգաբանական այս ճյուղագրությունը կազմել է 1293 թվին, որովհետև նա գիտե Հեթում Բ-ի ավագ քրոջ՝ Զաբելի ամուսնությունը, որը տեղի է ունեցել 1293 թվին[3], մյուս քրոջ՝ Ռիթայի ամուսնության, որը տեղի է ունեցել 1294 թ.[4], ինչպես այդ, այնպես էլ հաջորդ տարիների դեպքերի մասին չի խոսում։*

*Երկրորդ բնագրի առաջին մասը (Բ) վերաբերում է Երուսաղեմի լատինական պետության թագավորներին, սկսելով խաչակիրների կողմից 1099 թ. Երուսաղեմի գրավմամբ և ավարտելով XIII դարի առաջին կեսին վերաբերող տեղեկություններով։ Երկրորդ մասը (Գ) սկսվում է Կիպրոսի իշխանության հիմնադրման վկայությամբ (մոտավորապես XII դարի 90-ական թվականներին) և վերջանում Լևոն Բ թագավորի թոռան, Թորոսի որդու՝ Լևոնի ծննդյան վկայությամբ (վերջինս ծնվել է 1289 թվին)[5] հիշատակելով նաև Հենրիխ II-ի թագավորության և 1293 թ. մի դեպքի մասին։*

*Վերջապես Դ բնագիրը սկսվում է Անտիոքի իշխանության հաստատման (XI դարի 90-ական թվականների վերջին) և վերջանում XII դարի 50-ական թվականների վկայությամբ։*

*Թե ով է եղել այս բնագրերի հեղինակը, որոշակի ցուցում չունենք, բայց փաստերի ուշադիր քննությունը այդ հարցը պարզելու համար միանգամայն բավարար հնարավորություններ է տալիս։*

---

1 *Տես Ս. Անեցու ժամանակագրության հավելվածը, էջ 204—212։*

2 *Վերջին երկու բնագիրը տես* „Zeitschrift für armenische philologie", 1901, 1er Heft. *էջ 177—185։*

3 *ՄԺ, 1, էջ 86։*

4 *ՄԺ, 1, էջ 87։*

5 *ՄԺ, 1, էջ 86։*

Վերջին բնագրում (Դ) Անտիոքի իշխանների ազգաբանությունը թվելիս, հեղինակը Ռայմոնդ III-ի մասին գրում է. «Այս Ռեմունտս էառ կին զԱլիծ դուստր Ռովբէն Լէոնցոյն, որպէս վերոյ յիշեցաք» (էջ 109)[1]։ Եվ իսկապես, մատնացույց արված տեղեկությունը, առավել ընդարձակ ձևով գտնում ենք առաջին, Ռուբինյանց ազգի պատմության, բնագրում, որտեղ կարդում ենք. «Իսկ զերկուսին դստերսն Ռովբէնի եղբաւր իւրոյ (Լևոն Ա թագավոր) կարգեաց այսպէս՝ զԱլիծն ետ յամուսնութիւն Ռեմունտ բրընձին Անտիոքայ, յորմէ ծնաւ որդի մի Ռովբէն անուն, ...«(էջ 103, ընդգծումը մերն է—Վ. Հ.)։ Այսպիսով, ինչպես հիմա է պարզվում, վերևում նշված երեք բնագրի հեղինակն էլ եղել է միևնույն անձնավորությունը։ Բայց ով։ Ալիշանը «Սիսուան»-ի հավելվածում գրում է. «Մինչդեռ ի տպագրել էին յետին բանք յուսոյ իմոյ, (յառաջին աւուրս ամսեան յունիսի, 1885), եհաս ի ձեռս իմ համառօտ պատմութիւն Ռուբինեանց՝ գործ Հեթմոյ տեառն Կոռիկոսի. յորում գրէ և զայս բան. «Արար պատերազմունս (խոսքը Լևոն Ա թագաւորի մասին է—Վ. Հ.) մեծամեծս, որպէս գտանի ի լիապատում դիրս Պատմութեան նորա»...[2] (ընդգծումը մերն է—Վ. Հ.)։ Թեև Ալիշանը Հեթում Պատմիչի այդ աշխատության ստույգ խորագիրը չի բերում, այլ նշում է լոկ բնագրի բովանդակությունը, դժվար չէ հետևեցնել, որ խոսքը վերաբերում է ոչ թե «Համառօտ պատմութիւն Ռուբինեան իշխանաց»[3], այլ վերոբերեալ «Պատմութիւն ազգին Ռովբինանց, թէ որպէս տիրեցին Կիլիկիոյ» բնագրին, որովհետև Ալիշանի մեջբերած խոսքերը գտնում ենք վերջինիս մեջ (էջ 103)։

Ինչպես տեսնում ենք, Ա բնագիրը Ալիշանը իրավամբ վերագրել է Կոռիկոսի իշխան Հեթում Պատմիչին, թեև հայտնի չէ, թե այդ ենթադրության համար ինչն է նրան հիմք ծառայել, բայց կնշենք այդ եզրակացությունը հաստատող փաստերը՝ նախ Կիպրոսի թագավորների բաժնում հեղինակը գրում է. «Կի եղև թագաւոր Երուսաղէմի ընդ իւր կնոջն դենձաց Սպիլին, որպէս ի վերոյ յիշեցաք» (էջ 107)։ Այս ակնարկությամբ կարծում ենք հեղինակը նկատի ունի ոչ թե Երուսաղեմի թագավորների բաժնի «եկաց Ը-երրորդ թագաւոր Երուսաղէմի Կի տ՝ Լըզինայն այրն վերոասացեալ Սպլին» հատվածը, այլ Հեթում Պատմիչի Պատմութիւն խրոնիկոնին՝ «1186 մեռաւ թագաւորն Երուսաղէմի Պաղտին Փոքրն և եկաց ի թագաւորութիւնն Ը-երրորդ մայր նորա Սպիլ թագուհին և իր հայրգիրն Կի աը Լըզինայն» (էջ 59) հատվածը, որովհետև վերևում բերված և այս հատվածների ընդգծված մասերը ավելի մոտ են իրար։ Երկրորդ, Ռուբինյանց իշխանների և թագավորների պատմությունը վերջանում է Հեթում Բ-ի թագավորության շրջանով, ասել է թե իր, Հեթում Պատմիչի ժամանակաշրջանով։ Երրորդ՝ քննության ենթակա բնագրերում և «Պատմութիւն խրոնիկոնին»-ի մեջ առկա են անձնանունների (օրինակ՝ Գունդաւֆրէ, Պաղտին, Մելիսանթ, Ֆուք, Ամառի և այլն) և ոճական (օրինակ, եկաց երկրորդ թագաւոր, դուսք և այլն) նույնությունը։

Այսպիսով, Հեթում Պատմիչը հանդես է գալիս վերևում նշված երեք բնագրերի հեղինակ, որը սերվում էր Հեթումյանների դինաստիայից։ Նա

---

1 Տես այս հատորի էջերը։

2 էջ 549։

3 Այս մասին տես Ներքևում, էջ 97—99։

արքայատոր՝ Կոստանդին պայլի թոռն էր։ Ազգակցական այս կապերն ապահովեցին Հեթում Պատմիչի քաղաքական դիրքը և նրա գործունեությունն ընդհանրապես։ Սակայն նա պետական և քաղաքական գործիչ լինելուց բացի իր ժամանակի՝ XIII դարի ոչ անհայտ մատենագիրներից էր։ Հեթում Պատմիչի գրչին պատկանում են մի քանի աշխատություններ՝ «Պատմութիւն Թաթարաց»-ը[1] և ազգաբանական այս գործերը, իսկ ֆրանսերեն աղբյուրներից քաղելով կազմեց համեմատաբար մի ընդարձակ ժամանակագրություն՝ «Պատմութիւն խրոնիկոնին» խորագրով[2]։ Ինչպես վերջինիս նյութի ընտրության փաստը, այնպես էլ ազգաբանական այս աշխատությունները հնարավորություն են տալիս մեզ պարզելու հեղինակի պատմագիտական հայացքները։ Նա կարևոր է համարել շարադրել թագավորական կամ ֆեոդալական առանձին տների ազգաբանությունը, որովհետև, ինչպես կարծում է նա, պատմության կերտողները հանդիսանում են թագավորները և իշխանները։ Հասկանալի է որ նման, թեկուզ ստուգապատում աշխատությունները երկրի տնտեսական, քաղաքական և կուլտուրական կյանքը ճանաչելու համար շատ չնչին կարևորություն ունեն։

Առաջարկվող երեք բնագրերը պետք է դիտել որպես արդյունք տեական այն հարաբերությունների, որ Կիլիկիայի Հայկական պետականության ներկայացուցիչները ունեցան խաչակիրների հետ, հենց սկզբից շփման մեջ մտնելով և օգնելով նրանց[3] և ապա նրանց հիմնադրած պետություններին, իսկ ավելի ուշ նրանց հետ ունենալով նաև խնամիական կապեր։

Վերևում նշված վերջին երկու բնագրի աղբյուրների մասին որոշակի բան ասելը դժվար է, թեև հավանական է ենթադրել, որ Հեթում Պատմիչն անշուշտ օգտագործել է 1296 թվին կազմած «Պատմութիւն խրոնիկոն»-ը, գուցե և այլ աշխատություններ ևս, ու կազմել Երուսաղեմի, Կիպրոսի և Անտիոքի թագավորների ու իշխանների ազգաբանությունը։

Կիլիկիայի հայկական իշխանների ու թագավորների պատմության համար Հեթում Պատմիչը, ամենայն հավանականությամբ, ծանոթ է եղել և մասամբ օգտագործել Վ. Րաբունու ոտանավոր պատմությունը, որը երևում է թեկուզ մի երկու համեմատությամբ՝

Հեթում Պատմիչ

1. էջ 101 «...յաւուր միում գէպ եղև կայսերն գնալ ի բաղանիս եմոյծ ընդ իւր իբր գմաւտակա և զսպասաւոր զՌովբէն որդին Լևոնի, իսկ Ռովբէն, վասն սաստիկ ուժեղութեանն իւրոյ մատուցեալ կալաւ զգուռն մի, որ էր լի ջրով, վերոյց ի տեղոջէ իւրմէ և տարեալ եդ առաջի կայսերն, ընդ որ զարմացաւ կայսրն և ամենայն տեսողքն»[4]։

Վահրամ Րաբունի

1. էջ 109․ «Որ և յաւուր՝ միում մտեալ,
Ի բաղանիսն՝ լոգացեալ․
Եւ զՀեոն՝ անդէն կոչեալ,
Իւրով որդւովքն՝ և մեծարեալ։
Ցորում Ռուբէնն՝ արիացեալ,
Եւ հրաշալի՝ գործըս ցուցեալ.
Զի արքայի՝ սպասաւորեալ,
Եւ մեծարել՝ զնա կամեցեալ։

[1] Վենետիկ, 1842 թ.։ Այս հրատարակության մեջ է մտել մի ժամանակագրություն Հեթում Պատմիչի անունով, սակայն, ինչպես արդեն ցույց ենք ավել, այդ ժամանակագրության հեղինակը Հեթում Բ-ն է (ՄԺ, 1, էջ 69—70)։

[2] Տես վերևում, էջ 37—80։

[3] Г. Г. Микаелян, История Киликийского армянского государства, Ереван, 1952, էջ 90—93։

[4] Տես ներկա հրատարակության էջերը։

Նա զաւաղան՝ մի ջրով լցեալ,
Եւ ամբաղոյն՝ անդէն պնդեալ.
Զայն քաջապէս՝ ի վեր առեալ,
Եւ առաջի՝ կայսերն եդեալ
Ընդ որ ահսօղքըն՝ զարմացեալ»։[1]

2. էջ 101։ «Եւ յետ փոքր ինչ ժամանակի, դէպ եղև, կայսերն գալ ի յաշխարհն Կիլիկեցոց բազում զաւրաւք։ Եւ մինչ բանակեալ կայր ի դաշտին Անարզաբոյ յաւուր միոջ կամեցաւ յորս ելանել և յորսալն եհատ նետ մի ի կապարճուցն դեղուն, զի ձգեսցէ զհետ երէոյ և իսկոյն խոցեալ ի նետէն իւրմէ վախճանեցաւ, զոր հանեալ զփորոտի նորա թաղեցին մերձ յԱնաւարզա ի տեղի մի և շինեցին եկեղեցի ի վերայ, որ մինչև յայսաւր կոչի անուն տեղոյն Փաղրգիկ»։

2. էջ 201. «Զկնի ամաց՝ ինչ հոլովեալ,
Կայսր զօրօք՝ բազմօք շարժեալ.
Ի յօգնութիւն՝ բրինձին դիմեալ,
Որ ի Տաճկաց՝ էր յոյժ նեղեալ։
Գերփեռուժէն՝ արքայն եկեալ,
ՅԱնարզաբա՝ բանակ առեալ.
Անդ ի զբաղում՝ որսոց ելեալ,
Յիւրոցն դեղեալ՝ նետէ խոցեալ.
Եւ ի տեղւոջն՝ վախճանեալ,
. . . . . . . . . .
Զփորոտիսն՝ արդէն թաղեալ,
Եւ ի վերայ՝ շինուած կազմեալ.
Որ մինչև ցայսօր՝ անուանեալ,
Եւ Փաղրգիկ՝ տեղին կոչեալ»։

Բացի սրանից Հեթում Պատմիչն օգտագործած կլիներ նաև այլ աշխատություններ և ընտանեկան զրույցներ։

Հեթում Պատմիչի «Պատմութիւն ազգին Ռուբինանց...» աշխատությունից բացի, նման մի պատմություն գտնվում է նաև Մատենադարանի № 979 Ճաշոցի 471ա—477ա էջերում։ Պատմա-ազգաբանական այս բնագիրն առանձին գործ չէ, այլ կազմում է 1286 թ. գրված այդ նշանավոր ձեռագրի հիշատակարանի[2] հիմնական բովանդակությունը։ Հիշատակարանի հենց սկզբից իմանում ենք, որ Ճաշոցը ընդօրինակվել է Հեթում թագաժառանգի (ապագա Հեթում Բ) պատվերով։ Ազգաբանությանը նախորդող հետևյալ հատվածը՝ «Զայս խրախճանութիւն հոգևոր և անմահական փարթամութիւնս ստացաւ նախայիշատակեալ բարեսէր պարոնս մեր Հեթում, որ է շառաւեղ բարեշնորհ բղխեալ յարմատոյ թագաւորութեան Թորգոմեան սեռի և Ասքանազանս տոհմի, որ յայտնաբանեալ լինի զայս ձև աւրինակիս» (էջ 471ա և բ) մեզ ենթադրել է տալիս, որ գրիչը ցանկացել է իր պատվիրատուի՝ Հեթում արքայազնի ազգաբանությունը և նրանց համառոտ պատմությունը ևս գրել։

Այս բնագրի տեղեկությունները զարմանալի կերպով համընկնում են Վահրամ Րաբունու ոտանավոր պատմության վկայություններին։ Կարծում ենք, որ այս հիշատակարանը նույնությամբ երկրորդված է Վ. Րաբունու չափածո պատմությունից[3]։

---

[1] Տես «Վահրամայ Րաբունւոյ ոտանաւոր պատմութիւն Ռուբենեանց», Փարիզ, 1859։

[2] Հիշատակարանը հրատարակվել է նախ «Արարատ», 1870, էջ 353—300, 382—380, ապա Ս. Անեցու ժամանակագրության հավելվածում՝ էջ 212—223, «Համառօտ պատմութիւն Ռուբինեան իշխանաց» խորագրով։

[3] Այդ ցույց կտանք երկու բնագրից համապատասխան հատվածները դեմ առ դեմ դնելով.

Հիշատակարան

1. էջ 473ա «...․․․ տեսի յանուրջս, զի այր մի տայր յիս նկանակ մի հացի և ձուկն ի վերայ...»

Վ. Րաբունի

1. էջ 200 «Տեսի ասէ՝ յանուրջս եկեալ,
Այր մի ատէն՝ փառազարդեալ.
Ինձ նկանակ՝ հացի տուեալ,
Յորոյ վերայ՝ ձուկն էր եդեալ»։

Այդ պատճառով, ինչպես վերոհիշյալ, այնպես էլ մի այլ հիշատակա-

---

2. էջ 473ա «... զորոյ (Թորոսի) զյեղանակ զալստեանն ի Կոստանդինուպօլսէ և զառնելոյն Կիլիկիա, այլ և այլ օրինակաւ պատմեն գիրքն»։

2. էջ 201 «Եւ առ Քրիստոս՝ վերակոչեալ.
Ցայնժամ և կայսրըն՝ գթացեալ,
Եւ ի բանտէ՝ զԹորոս հանեալ.
. . . . . . . . . . . .
Զոր է յոլովք՝ են պատմագրեալ»։

3. էջ 474ա «Զի էր այր բարեպաշտ և ողորմած, մեծախորհուրդ և առատամիտ, վարժեալ հին և նոր օրինաւք Աստուծոյ, տեղեակ գոլով և ամենայն իմաստասիրական արհեստից. զորմէ ասեն հոգի մարգարէութեան ունել, որ և գրագում դժուարալոյծ բանս մեկնեալ, որ գտանի այժմ առ մեզ»։

3. էջ 209. «Բարեաց գործովք՝ բարգաւաճեալ,
Եւ հաւատով՝ պայծառացեալ.
Աստուածային՝ գրովք վարժեալ,
Եւ յիմաստից՝ արուեստ մտեալ։
Ասեն հոգի՝ սա ընկալեալ,
Մարգարէի՝ հաւասարեալ,
Որով դժուար՝ բանըս լուծեալ.
Որ գտանի՝ այժմս գրեալ»։

4. էջ 475ա «Եւ ելից խաղաղութեամբ զաշխարհ և բարութեամբ իբրև զդրախտ պարարեալ։ Ամուսնացոյց զդուստր եղբաւր իւրոյ յԱնտիոք. և ապա առեալ զԱնտիոք եա նմա և որդւոյ իւրոյ այնմ, որ բրինձ Ռուբէն կոչեցաւ։ Եառ զԱրասուս և զԳագրաս, տիրեաց և Լամբրունին»։

4. էջ 215 «Խաղաղութեամբ՝ զաշխարհ լցեալ,
Իբրև զդրախտ՝ պտղաւորեալ։
Զմեծն Անտիոք՝ յինքն գրաւեալ,
Եղբօր դստերն՝ իւրոյ տուեալ.
Այն որ զՌուբէն՝ եղև ծնեալ,
Որ և բրինձն՝ կոչեցեալ։
ԸզԱրասուս՝ զաւառն առեալ,
Եւ Գագրսայ՝ զզեկին տիրեալ.
Իմաստութեամբ՝ հնարաւորեալ,
Եւ զԼամբրոն՝ յինքն կալեալ»։

Ամբողջ նյութի ընթացքից կարելի է բերել այսպիսի բազմաթիվ հատվածներ ու օրինակներ։ Հիշատակարանում ընդգրկած նյութն իր ծավալի տեսակետից ծածկում է Վ. Բաբունու ոտանավոր պատմությանը, կարծես վերջինիս վրա ձևած լինի առաջինը, երկուսն էլ սկսվում են Գագիկ Բ-ի պանդխտությամբ և վերջանում Լևոն Բ թագավորի շրջանով՝ երբ վերջինս դեռ կենդանի էր։ Շատ նման է նաև բառապաշարը։ Երկու բնագրերի այս նմանությունը ժամանակին նկատել էր հիշատակարանի հրատարակիչը («Արարատ», 1870, էջ 383, ծանոթ. 20) և այդ փաստը նրան մղել է զանազան խորհրդածությունների՝ մերթ նույնացնելով հեղինակներին, մերթ նրանց համարելով ընկերներ և այլն։ Երկու բնագրերի աղերսի հարցը լուծելու համար կարևոր նշանակություն ունի այն խնդիրը, թե Վ. Բաբունին երբ է շարադրել և ավարտել իր ոտանավոր պատմությունը (ինչպես արդեն գիտենք Ճաշոցի հիշատակարանը գրվել է 1286 թվին), որի մասին, դժբախտաբար, որոշակի վկայություն չունենք, թեև կարելի է հաստատ նշել մոտավոր տարեները։ Վ. Բաբունին իր պատմության վերջին էջերից մեկում, ըստ ավագության, հիշում է Լևոն Բ թագավորի երեք որդիներին միայն՝ Հեթումին, Թորոսին և Սմբատին (էջ 236)։ Վերջինս ծնվել է 1276 թվին (ՄԺ, 1, էջ 84)։ Դրանից անմիջապես հետո նա նկարագրում է եգիպտացիների արշավանքը, որը դարձյալ վերաբերում է 1276 թ.։ Վ. Բաբունին չգիտե ոչ միայն Լևոն Բ թագավորի կնոջ՝ Կիռաննայի մահը (էջ 236), որը տեղի է ունեցել 1285 թ. օգոստոսին, այլև Լևոն Բ-ի մյուս որդիների ծնունդը՝ Կոստանդինի՝ 1277 թ. (ՄԺ, 1, էջ 84), Ներսեսի՝ 1270 թ. (ՄԺ, 1, էջ 84) և այլն։ Այս հանգամանքը մեզ ենթադրել է տալիս, որ Վ. Բաբունին իր ոտանավոր պատմությունը շարադրել է 1276—1277 թթ., այսինքն Ճաշոցի ընդօրինակությունից մոտավորապես 10 տարի առաջ։ Հետևաբար, սխալված չենք լինի, եթե պնդենք, որ Ճաշոցի հիշատակարանի տեղեկությունները վերցված են Վ. Բաբունու ոտանավոր պատմությունից։

քանում[1] գտնվող Ռուբինյանների զուտ ազգաբանությունը, որը խիստ համառոտ է և նոր բան չասող, չզետեղեցինք սույն հատորում։

«Պատմութիւն ազգին Ռովբինանց, թէ որպէս տիրեցին Կիլիկիո» քնագրի մի տարբերակը գտնվում է Մատենադարանի № 3965 ձեռագրի 88ա—91ա էջերում, որի տարընթերցվածքները նշեցինք տողատակում։

---

[1] № 912, էջ 99ա—102ա, հրատարակված է նախապես «Արարատ»-ում, 1878 թ., էջ 95—100, ապա Ս. Անեցու ժամանակագրության հավելվածում, էջ 234—248։

III

ա

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԱԶԳԻՆ ՌՈՎԲԻՆԱՆՑ, ԹԷ ՈՐՊԷՍ ՏԻՐԵՑԻՆ ԿԻԼԻԿԻՈ[1] 168 ա

Ա. Ռովբէն մեծն ազգական ոմն և իշխան թագաւորին Հայոց Գագկա։ Յետ մահուանն Գագկա թագաւորին եկեալ յերկիրն Կաւսիտառոյ անդ բնակեցաւ և անաի եկեալ ի դեղն Կաւրմաւզաւլաւ և կացեալ անդ մինչև ի վախճան իւր, թողեալ որդի իւր զԿոստանդին։

Բ. Յետ մահուան Ռովբինի, Կոստանդին որդի նորա եմուտ ի նահանգս Կիլիկեցոց և տիրեաց Վահկային և այնմ լեռնակողմանցն և ապա վախճանեալ թաղեցաւ ի Կաստաղաւնն, թողեալ Բ (2) որդիս՝ զԹորոս և զԼևոն[2]։

Գ. Թորոս որդի Կոստանդեա յետ մահուան հաւրն իւրոյ կալաւ զիշխանութիւն նորա։ Սա վրէժխնդիր եղեալ մահուանն Գագկա, յորդոցն Մանտալէի և էառ զամրոցս նոցա զկոչեցեալն Կենդռաւսկաւի և զնոսա մահացոյց չարաչար մահուամբ[3]։ Յետ որոյ զաւրացեալ ի վերայ ազգին Յունաց, աիրեաց բազում գաւառաց, էառ և զԱնարզաբա և շինեաց անդ տաճար և կացոյց ի տաճարին զպատկեր սրբոյ Աստուածածնին, զոր բերեալ էր ի Կենդռաւսկաւոյ։ Այս Թորոս շինեաց զաստուածաբնակ ուխտսն զԹրազարկն և զՄաշկևորն և ապա վախճանեալ թաղեցաւ ի Թրազարկն[4]։ Մնացեալ իւր որդի մի Կոստանդին անուն, զոր ամպարիշտք ոմանք կալեալ մահացու դեղաւք մեռուցին զնա։

Դ. Լևոն որդի Կոստանդեա և եղբայր վերոյասացեալ Թորոսին ‖ 168 բ յետ մահուան եղբաւր իւրոյ Թորոսի էառ զիշխանութիւն նորա. և այնչափ զաւրացեալ մինչև տիրեաց մայրաքաղաքացն Կիլիկիոյ Մսսայ և Տարսոնի։ Սորա եղեն որդիք Դ (4)՝ Թորոս, Ստեփանէ, Մլեհ և Ռովբէն։ Իսկ կայսն Յունաց Պաւրփիրաւէնն հալաւժան եկն յաշխարհն Կիլիկիոյ և կալաւ զԼևոն և զերկուս որդիսն իւր՝ զԹորոս և զՌովբէն. և տարեալ զնոսա կապանաւք ի Կոստանդինուպաւլիս[5]։ Իսկ Ստեփանէ և Մլեհն զերծեալք գնացին յՈւռհա առ քեռին իւրեանց։ Եւ յետ ամաց ինչ

1 Կիլիկիոյ։ 3 Գակկայ։ 4 Կոռիտառոյ, Կորմօղաւլաւ։ 5 որդին։ 6 Կոստանդինէ։ 8 նահանգս։ 9 վաղճանեալ, Կաստաղօնն։ 10 երկու փ|ս. Բ։ 11 հօրն։ 13 յորդւոցն։ 14 Կենդռօսկաւի։ 15 զօրացեալ։ 10 զԱնարզաբայ։ 18 Կենդռօսկաւոյ։ 19 վաղճանեալ։ 21 դեղօք։ 22 որդին։ 23 եղբօր։ 24 զօրացեալ։ 25 Դ չիք։ 26 Ստեփանէ, Պօրֆիրաւէնն։ 27 Հալօժանն։ 29 կապանօք, Կ. Պօլիս, Ստեփաննէ։ 30 յՈւրհայ։

կայսրն քաղցրացեալ նոցա էհան ի բանտէն զԼեւոն որդովքն. և էին պատուով ի պաղատն արքունի. մինչ յաւուր միում դէպ եղև կայսերն գնալ ի րաղանիս եմոյծ ընդ իւր իբր զմաւտակա և զսպասաւոր զՌովբէն որդին Լեւոնի. իսկ Ռովբէն վասն սաստիկ ուժեղութեանն իւրոյ մատուցեալ կալաւ զդուռն մի, որ էր լի ջրով, վերոյց ի անդոջէ իւրմէ և տարեալ եդ առաջի կայսերն, ընդ որ զարմացաւ կայսրն և ամենայն տեսողքն[6]։ Ապա յետ աւուրց ինչ ամբաստանեցին առ կայսրն զՌովբէն և եառուն կուրացուցանել զաչսն, յետ որոյ վախճանեցաւ։ Եւ դարձեալ կալան զԼեւոն և զԹորոս որդին իւր և եդին ի բանտի։ Եւ մինչ կային ի բանտին տեսիլ ետես Թորոս և պատմեաց հաւրն իւրոյ՝ էթէ «Տեսանէի յանուրջս այր մի փառազարդեալ, որ ունէր ի ձեռինն նկանակ հացի և ձուկն մի և տայր ինձ, և դու հայր խնդրէիր ի հացէն և ի ձկանէն, այլ ոչ կերակրէիր ի նմանէ[7]»։ Եւ Լեւոն խնդութեամբ մեկնէր զերազ որդոյն այսպէս՝ էթէ «Որդեակ իմ տալոց է Աստուած զհայրենի աշխարհն մեր դարձեալ ի ձեռս քո, բայց ես ոչ ժամանեմ տեսանել զայն»։ Եւ յետ սակաւ ինչ աւուրց եհաս վախճան Լեւոնի ի բանտի անտ և փոխեցաւ առ Քրիստոս։ Իսկ կայսրն գթացեալ եհան զԹորոս ի բանտէն։ Եւ յետ փոքր ինչ ժամանակի, դէպ եղև, կայսերն գալ ի յաշխարհն Կիլիկեցոց բազում զաւրաւք։ Եւ մինչ բանակեալ || կայր ի դաշտին Անաբզաբոյ 105ա յաւուր միոջ կամեցաւ յորս ելանել. և յորսալն եհան նետ մի ի կապարճուցն գեղուն, զի ձգեսցէ զհետ երէոյ և իսկոյն խոցեալ ի նետէն իւրմէ վախճանեցաւ[8]. զոր հանեալ զփորոտի նորա թաղեցին մերձ յԱնաւարզա ի տեղի մի և շինեցին եկեղեցի ի վերայ, որ մինչև յայսաւր կոչի անուն տեղոյն Քաղրդիկ։ Եւ զմարմին կայսերն տարեալ զաւրքն նորա զկնի իւրեանց ի Կոստանդինուպաւլիս։ Իսկ Թորոսն որդի Լեւոնի մնաց յայնժամ ի Կիլիկիայ և ոչ գնաց զկնի զաւրաց կայսերն, այլ գնացեալ ի սահմանս Վահկային և դեաւզ մի իբրև զաւտարական ոք, ոչ յայտնեալ զինքն ումեք, բայց միայն քահանայի միոյ հայոյ, զի ծանոյց նմա, թէ որդի է Լեւոնի։ Եւ էրէցն այն իմաստութեամբ ծածկեաց զխորհուրդս նորա, զի մի ճշասեսցի առէ ի Յունաց, վասն որոյ եդ զնա հովիւ ոչխարաց իւրոց մինչև անցին աւուրք բազում. և առ սակաւ սակաւ յայտնեաց զգալն Թորոսի հաւատարմաց ումանց, որք միաբանեալ հնարիւ մեծաւ առին զՎահկայն ի Յունաց։

Ե. Եւ տիրեաց Թորոս Վահկային և անտի զաւրացեալ էառ զբազում գաւառս։ Իսկ յետ մահուան Պաւրֆիրաւէն կայսերն եկաց կայսր ի Կոստանդինուպաւլիս Մանուիլ որդի նորին։ Եւ այս Մանուիլ կայսր ժողովեաց բազում զաւրս և եկն ի Կիլիկիայ, վասն

1 բանդէն։ 2 պալատն։ 3 և եմոյծ, զմօտակա։ 9 վաղճանեցաւ։ 10 բանդի։ 11 հօրն, եթէ։ 13 հայր իմ։ 15 որդւոյն, եթէ։ 10 ձեռքս։ 18 վաղճան։ 21 զօրօք։ 24 վաղճանեցաւ։ 25 յԱնաւարզայ։ 26 ցայսօր։ 27 զօրքն։ 28 Կ. Պօլիս։ 29 զօրաց։ 30 գիւղ, զօտարական։ 34 իւրոյ, անձին։ 38 զօրացեալ։ 39 Պօրֆիրաւէն։ 40 Կ. Պօլիս։ 41 զօրս.

գնալոյ յաւգնութիւն ազգին Ֆռանգաց[9], որ Յերուսաղէմ. և լուաւ
անտ զգործսն Թորոսի, զոր գործեալ էր ընդ Յոյնսն մախացեալ
ընդ նմա յոյժ, զաւրս արձակեաց ընդ ամենայն լեռնակողմանսն,
վասն ըմբռնելոյ զԹորոս։ Եւ Թորոս ամրացեալ կայր ի Բարձր-
բերդ և ժողովեալ կային առ նա բազում զաւրք հետևակաց, որք
պնտեալ ի կապանսն բազումք ճխասեցին ի զաւրաց կայսերն և
զոմանս ի մեծամեծաց նորա կապեալ տարան առ Թորոս։ Եւ
կայսրն իբրև լուաւ զնոյն քաջութիւն Թորոսի առաքեաց առ նա
և կոչեաց գալ հաշտութեամբ || ի հնազանդութիւն նմա միջնոր- 169բ
դութեամբ բըընձին Անտիոքա։ Եւ Թորոս գնաց առաջի կայսերն
յորմէ ընկալաւ պատիւ և մեծարանք յոյժ, բայց զԱնաւարզայ
խնդրեաց ի նմանէ կայսրն և էառ. և զայլ երկիրն պարգևեաց
Թորոսի մշտընջենաւոր և ամրացոյց արքունական սիգեղիւ։ Եւ
անտի գնաց կայսրն յԱնտիոք և Թորոս զկնի նորա և յորժամ
դարձան յԱնտիոքա կամելով կայսերն գնալ ի Կոստանդինու-
պաւլիս Թորոս ոչ գնաց զկնի նորա, այլ խոյս ետ և գնաց ի
Վահկայն։ Եւ յետ երթալոյ կայսերն յաշխարհ իւր էջ դարձեալ
Թորոս ի Վահկայէն և էառ զԱնաւարզա և զՄսիս։ Եւ մինչ կայր
ի Մսիս դուքսն Յունաց[10], որ էր ի Տարսոն ժողովեաց ըզաւրս
Յունացն և կոչեաց ընդ իւր զտէրն Լամբրունին[11] և զնաթա-
նիլեանք[12], որ էին տէրք Ասկուռոյ[13] և այնմ լեռնակողմանցն,
զնոսա զամենեսեան գումարեաց և եկն ի վերայ Թորոսի ի Մսիս։
Իսկ Թորոս ի գիշերի գաղտ պատառեաց զպարիսպ քաղաքին և
ելեալ պատերազմեցաւ ընդ զաւրս Յունաց և անթիւս կոտորեաց
ի նոցանէ, և զմնացեալսն փախստական արար. և կալաւ զԱւշին
տէրն Լամբրունին և էառ բազում գանձ ի նմանէ և ապա ազա-
տեաց զնա[14]։ Յետ որոյ փեսայացոյց զորդի նորա զՀեթում ի
դուստր իւր Ռիթա[15]։ Եւ յետ աւուրց ինչ Թորոսի առեալ զաւրս
գնաց ի վերայ Տարսոնի և էառ զնա[16], և յայնմհետէ տիրեաց
ամենայն Կիլիկիոյ՝ էառ և յաշխարհէն Իսավրիոյ մասն ինչ։ Իսկ
Թորոսի հասեալ վախճան թաղեցաւ ի Թրազարկն[17]։ Եւ Ստեփանէ
եղբայր իւր ոչ ժամանեաց տիրել աշխարհին Կիլիկիոյ յետ մա-
հուան եղբաւրն, քանզի յառաջագոյն կալան զնա իշխանք Յոյնք
ի սահմանս Համուսին, և յեռացեալ պղինձ եդեալ խաշեցին զնա,
և յետոյ տարեալ զմարմինն թաղեցին յԱրքակաղնին[18]։ Եւ Թո-
րոսի մնացեալ որդի մի Լևոն[19], զոր վստահացեալ էր Թորոս յա-
ներն իւր Թումաս, որ էր յԱնտիոքա, նոյնպէս || և յանձին 170ա
արարեալ էր նմա զպայլութիւն աշխարհին։ Իսկ միւս եղբայրն
Թորոսի Մլեհն փախուցեալ կայր առ սուլտանն Հալպա զաւուրս
բազումս։ Եւ յորժամ լուաւ զմահ եղբարցն եկն յաշխարհն Կի-
լիկիոյ, աւգնականութեամբ սուլտանին Հալպա[20], կամեցաւ տի-

1 յօգնութիւն, ֆռանկաց։ 3 զօրս։ 5 զօրք։ 6 զօրաց։ 10 բրնձին, Անտիոքա։ 13 մշտնջենաւոր։ 15 Կ. Պոլիս։ 18 զԱնաւարզայ։ 19 դուքսն, զզօրս։ 20 Լամբրոնին։ 21 և չիք։ 24 զօրս։ 25 զՕշին։ 26 Լամբրոնին։ 28 Ռիթայ, զօրս։ 31 վաղճան, Ստեփաննէ։ 33 եղբօրն։ 35 յԱրքայկաղնին։ 36 Լևոն անուն, էր չիք։ 37 յԱնտիոքայ։ 38 եղբայրն։ 41 օգնականութեամբ։

րել աշխարհին և ոչ կարաց, այլ դարձաւ անդրէն ի Հալպ։ Եւ միւս անգամ դարձեալ խնդրեց ի սուլտանէն զաւրս բազումս։ Եւ շարժեցաւ գալ ի վերայ քրիստոնէիցն աւերել զաշխարհն և ուգնականութեամբ անաւրինացն տիրել երկրին։ Այլ իշխանքն Հայոց յորժամ լուան ղդալն նորա առաքեցին առ նա, զի սիրով եկեալ տիրեսցէ աշխարհին և մի ինչ վնասեսցէ քրիստոնէից ղաւրքն անաւրինաց։ Եւ նա լուեալ զայն դարձոյց ըզաւրսն սուլտանին մեծաւ շնորհակալութեամբ։

Ձ. Եւ Մլեհն եկեալ տիրեաց աշխարհին։ Իսկ պայլն Թումաս երկուցեալ ի նմանէ փախուցեալ գնաց յԱնտիոք և զԹորոսի որդին կալան ամպարիշտ ոմանք և սպանին։ Այս Մլեհ էր այր չարասիրտ յոյժ և բազում աղտեղի գործաւք լցեալ, վասն որոյ սպանաւ ի զաւրաց իւրոց ի մէջ քաղաքին Սիսոյ[21]։ Այլ Ստեփանէի մնացեալ էին Բ (2) որդիք՝ Ռովբէն և Լևոն, որք սնեալ կային առ քեռին իւրեանց Բակուրան, տէրն Պապեռաւնին։ Եւ յորժամ սպանաւ Մլեհն իշխանքն և ղաւրքն Հայոց յղեցեալ բերին անտի զՌովբէն որդի Ստեփանէի և կացուցին պարոն Հայոց։

Է. Եւ տիրեաց աշխարհին Կիլիկիոյ Ռովբէն որդի Ստեփանէի, այր բարեբարոյ և իմաստուն և առատ յոյժ։ Սա էառ իւր կին յազգէն Ֆռանգաց զՋապէլ, դուստր Հանֆրէ տը Դուրունին[22] և ծնան նմա դստերս երկուս՝ Ալիծ և Ֆիլիպ[23]։ Իսկ ի հասանել վախճանին Ռովբինայ[24], կացոյց յաթոռն զեղբայր իւր զԼևոն, յանձնարարեալ նմա զերկոսին դստերսն իւր և ինքն վախճանեալ թաղեցաւ ի Թրազարկն։

Ա/Ը. Յետ մահուան Ռովբէնի տիրեաց աշխարհին Կիլիկիոյ 170 բ
Լևոն եղբայր իւր, որ Ը (8)-երորդ իշխող էր յազգէն Ռովբինանց և եղև առաջին թագաւոր Հայոց ի Կիլիկիայ, որ և քաջութեամբ և իմաստութեամբ տիրեաց հայրենի աշխարհին և այլ բազում գաւառաց և աշխարհին Իսավրիոյ. շինեաց և բազում դղեակս և ամրոցս ի պէտս պահպանութեան աշխարհին իւրոյ։ Արար և պատերազմունս մեծամեծս, որպէս գտանի ի լիապատում գիրս պատմութեան նորա[25]։ Իսկ զերկոսին դստերսն Ռովբէնի եղբաւր իւրոյ կարգեաց այսպէս՝ զԱլիծն ետ յամուսնութիւն Ռեմունտ բրընձին Անտիոքայ[26], յորմէ ծնաւ որդի մի Ռովբէն անուն, զոր կոչէին բրինձ Ռովբէն։ Այս բրինձ Ռովբէն առ իւր կին զՀէլուիզ դուստր Հեմրի թագաւորին Կիպրոսի. և ծնան նմա դստերս երկուս՝ Էսչիւ և Մարիա։ Էսչիւն մեռաւ առանց կարգելոյ և Մաբիայն եղև կին Ֆիլիպ տ Մընֆաւրդին, որ տիրէր Սրոյ։ Եւ միւս դուստրն Ռովբինի Ֆիլիպն եղև կին թագաւորին Յունաց Լաշքարէ[27], և ծնաւ որդի մի Կոստանդին անուն, այլ ոչ ժամանեալ ի մեծութիւն վախճանեցաւ փոքր։ Եվ յետ ամաց ինչ տիրելոյ Լևոնի աշխարհին Կիլիկիոյ առաքեցաւ նմա յընքբուրէն

2 խնդրեաց, զօրս։ 4 օգնականութեամբ անօրինացն։ 7 զօրքն անօրինանց, զօրսն։ 11 անբարիշտք։ 12 գործօք։ 13 զօրաց։ 14 Ստեփանէի։ 16 զօրքն։ 17 Ստեփանէի։ 18 Ստեփանէի. 20 ֆրանկաց։ 25 մահուանն։ 26 եղբօր։ 34 բրնձին, Ռովբին։ 37 մնաց փխ. մեռաւ։ 38 Մընֆօրդին։ 39 Ռովբենի։

Ալամնաց և ի կայսերն Յունաց Թագս Թագաւորութեան. և նա
ընկալեալ ուծաւ ի մայրաքաղաքն Տարսուս Թագաւոր ազգիս Հա-
յոց, որ եղև առաջին Թագաւոր յաշխարհն Կիլիկիոյ։ Եւ էառ իւր
կին զՍպիլ դուստր Հեմրի Թագաւորին Կիպրոսի[28]. և ծնաւ դուստր
մի Զապել անուն։ Եւ յետ ամաց ինչ վախճանեցաւ Թագաւորն
Լևոն բարիոք խոստովանութեամբ և Թաղեցաւ ի քաղաքն Սիս և
մասն ինչ ի նմանէ Թաղեցաւ ի վանքն Ակներ, զոր ինքն էր
շինեալ։ Իսկ յետ մահուան Թագաւորին Լևոնի եկաց պայլ աշ-
խարհին Ատան, տէրն Մանիաւնին, որ յետ աւուրց ինչ սպանաւ
ի Հաշիշեցն ի քաղաքն Սիս։ Եւ եղև պայլ Կոստանդին գունդ-
գուստապլն, ‖ որ էր քեռորդի Թագաւորին Լևոնի և տէր Բարձր- 171 ա
բերդոյ և Պապեռաւնին։ Իսկ յաւուրս սորա բրինձ Ռովբէնն ել-
եալ յԱնտիոքայ գնաց ի Կուռիկաւս և տարեալ ընդ իւր զմայրն
իւր ետ ի կնութիւն Վահրամ մարաջախտուն և նա ամուսնացաւ
ընդ նա։ Եւ զաւրինաւք ամուսինն իւր վարեալ առաքեաց առ
եղբայր նորա Լևոն տէր Բերդկանն և Մաւխրստին։ Իսկ բրինձ
Ռովբէնն և Վահրամ մարաջախդն եկեալ ի Տարսուս առեալ ընդ
իւրեանս զիշխանսն, որ անդ կային՝ զՄաւլևոնցիք, և զԱպլհա-
սնանք և զայլսն. և եկեալ նոքաւք տիրեցին Ատանոյ. և անտի
ելեալ երթային ի Մսիս, վստահացեալ ի զաւրս իւրեանց համա-
րէին տիրել ամենայն աշխարհին և արտաքս ընկենուլ զԶապէլ
դուստր Թագաւորին Լևոնի ի սեպհական աթոռոյ հաւրն նորա,
այլ Աստուած ոչ ետ Թոյլ կատարել զչարութիւն կամաց իւրեանց,
հանդէպ ելեալ նոցա պայլն Հայոց Կոստանդին սակաւ զաւրաւք,
և պատերազմեցաւ ընդ նոսա մերձ ի Մսիս, և շնորհաւքն Աս-
տուծոյ յաղթեաց նոցա[29]։ Իսկ բրինձ Ռովբէնն և այլ իշխանքն
փախուցեալ գնացին ի Տարսուս և անտ ամրացան։ Եւ պայլն
զհետ եկեալ զաւրաւք պաշարեաց զնոսա. և յետ բազում աւուրց
էառ զքաղաքն Տարսուս, և կալաւ զբրինձ Ռովբէնն և զիշխանս
նոցա և եդին ի բանտի, որ և անտ վախճանեցան։ Եւ անտի
գնացեալ ի Կուռիկաւս առին զնա և զայլ ապստամբեալ ամ-
րոցսն շուրջանակի։ Իսկ յետ այս ինչ գործելոց խորհուրդ արա-
րեալ իշխանքն Հայոց ամուսնացուցին զԶապէլ, դուստրն Թա-
գաւորին Լևոնի, ընդ Ֆիլիպ, որդի Կոյր բրընձին։

[Բ]/Թ. Եւ Ֆիլիպն ուծաւ Թագաւոր երկրորդ ի քաղաքն Տար-
սուս և ամենեքեան մտերմութեամբ ծառայէին նմա։ Իսկ նա
խորհուրդ չար եդեալ ի մտի իւրում, հրամանաւ հաւրն իւրոյ և
Թելադրութեամբ ամենայն անտիոքացեաց և դամփլցեց, զի զե-
կեղեցիսն Հայոց և ‖ զիշխանսն զամենեսին ի սպառ ջնջեսցեն, 171 բ
և Ֆռանկք կացուսցեն ի տեղի նոցա, զոր լուեալ ոչ կարացին
տանել այնպիսի ամպարըշտութեանն, այլ յաւուր միում մինչ
կային ի Թիլն բերդ, Ճաւֆրի, տէրն Սարվանդիքարին և պռաւ-
քսիմոսն Տրդատ կալան զնա և անտի տարեալ եդին ի բանտի

1 Ալամանաց։ 2 օծաւ։ 6 ի չիք։ 12 սրա։ 15 զօրինօք։ 19 նոքօք։ 20 զօրս։ 22 հօրն։ 24 զօրօք։ 25 շնորհօքն։ 28 զօրօք։ 31 ապստամբեալ։ 23 դուսար։ 35 օծաւ։ 37 հօրն։ 41 ամբարըշտութեանն։

յանաուիկն Բարձրբերդ և անդ վախճանեցաւ[30]. Իսկ յետ այս ինչ գործելոց ամուսնացուցին զԹագուհին Զապէլ ընդ Հեթում, որդի Կոստանդեայ պայլուն Հայոց, և աւծին զնա թագաւոր մեծաւ խնդութեամբ ի մայրաքաղաքն Տարսուս։

Գ/Ժ. Եկաց երրորդ թագաւոր Հայոց ամենագովելին Հեթում, որ առաւելեաց բարութեամբ քան զամենայն թագաւորս. և եա նմա Աստուած կրկին շնորհս նորոգելոյ և աճեցուցանելոյ զթագաւորութիւնս Հայոց. Եւ ծնան նմա որդիս երիս՝ Լևոն, Թորոս, Ռովբէն, և դստերս Ե (5) Սպիլ, Ֆիմի, Ռիթա, Զապէլ, Մարիայ։ Սորա փոքր որդին Ռովբէն վախճանեցաւ մատաղ տիաւք և Թորոսն սպանաւ ի ղաւրացն Մսրա ի կապանն Մառոյ[31], յորում աւուր և զանդրանիկ եղբայր նորա Լևոն կալանաւոր աքեալ տարան ի Մսր, զոր յետ երկուց ամաց դնեաց զնա[32] հայր նորա ի ծառայութենէն Մսրայ՝ և ետ դին սուլտանին զբերդն Դարպսակ և զՄնղուր Աշխարն[33], որ էր խուշտաշ սուլտանին և կայր ընդ ծառայութեամբ Թաթրուն, զոր խան Ապաղայն շնորհեաց զնա թագաւորին Հեթմոյ, վասն թափման որդոյ նորա։ Իսկ Սպիլ դուստր սորա եղև կին Պեմունտ բրընձին Անտիոքայ և գունթին Տրապաւլսոյ. Ֆիմին եղև կին Ճուլիան Սայիտոյ տիրոջն. Ռիթայն եղև կին Կոստանդին Սարվանտիքարին տիրոջն. Զապէլն մեռաւ անկարգ. և Մարիայն եղև կին Կի տը Պլնին։ Եւ ի հասանել վախճանի թագաւորին Հեթմոյ առ եզր Պար || ասխս գե- 173 ա
տոյ, որ կոչի Ակներ. նախ կրաւնաւորեցաւ և կոչեցաւ անուն նորա Մակար և ապա հանգեաւ[34] և թաղեցաւ ի Թրազարկն։ Յետ որոյ եկաց յաթոռ նորա անդրանիկ որդին նորա Լևոն։

Դ/ԺԱ. Լևոն որդի Հեթմոյ եկաց չորրորդ թագաւոր Հայոց և աւծաւ ի քաղաքն Տարսուս յաւուր Յայտնութեան տեառն[35]։ Սա էառ կին զԿեռան՝ դուստր Հեթմոյ, տեառն Լամբրունին. և ծնան նմա որդիք Է (7)՝ Հեթում, Թորոս, Սմբատ, Կոստանդին, Ներսէս, Աւշին, Ռովբէն, և դստերս Գ (3)՝ Զապէլ, Ռիթա, Թեֆանոյ[36]։ Սա վախճանեցաւ ի քաղաքն Սիս և թաղեցաւ ի Թրազարկն[37]։ Յետ որոյ տիրեաց աշխարհին Կիլիկիոյ անդրանիկ որդին նորա Հեթում։ Եւ Թորոս եղբայր սորա էառ կին զՄարկրիա՝ դուստր Ոյկ տ Լըզինայ, թագաւորին Կիպրոսի. և ծնաւ նմա որդի մի Լևոն անուն։ Իսկ առաջին քոյր սոցա Զապէլ եղև կին Ամառի, Սըրոյ տիրոջն և որդոյ թագաւորին Կիպրոսի, վերոյասացել Ոյկ տ Լըզինին։

Ք և Գ

## ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ ԹԱԳԱՒՈՐԱՑՆ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ԵՎ ԹԱԳԱՒՈՐԱՑՆ ԿԻՊՐՈՍԻ[38]

Սուրբ քաղաքն Երուսաղէմ թափուեցաւ յանաւրինաց և եղև քրիստոնէից յաւուր ուրբաթի, յուլիս ամսոյ ԺԵ (15)

3 ածին։ 10 տիօք։ 11 զօրացն։ 12 արարեալ։ 13 Մսրր։ 15 զՄնղուրաշխարհն։ 19 Տրապօլսոյ։ 19—20-րդ տողը՝ Ռիթայն...տիրոջն չիք։ 23 կրօնաւորեցաւ։ 27 օծաւ։ 29 Ներսես։ 30 Թեփանոյ։ 32 որդի։

ւարն ի Թուականին Քրիստոսի ՌՂԹ (1099)[39], Եւ ընտրեցին քրիստոնէքն Թագաւոր Երուսաղէմի զԳաւնդաւֆրէ տը Պոյլունն, որ էր տուկ գաւառին, որ կոչէր Լաւռայն. այլ սա ոչ կամեցաւ Թագ շալկել և մեռաւ անժառանգ[40]։

Ա. Յետ մահուան Գաւնդաւֆրէ տը Պոյլունին պսակեցաւ առաջին Թագաւոր Երուսաղէմի Պաղտինն[41] իր աղբայրն և սա մեռաւ անժառանգ։ 172 բ.

Բ. Եկաց երկրորդ Թագաւոր Երուսաղէմի Պաղտին տը Պուրգն[42] կարևոր սոցա։ Սա էառ կին հայ իշխանի մի, որում անուն էր պարոն Գաբրիէլ, որ տիրէր Մելիտինոյ. և անուն կնոջն Մաւրֆիա. և եղեն նորա դստերք Դ (4), որ են անուանք նոցա՝ Մելիսանթ, Ալիծ, Հաւտիարա, Ծաւրէ։ Մելիսանթն եղև կին Ֆուքին, որ էր գունդ Անճոին[43]. Ալիծն եղև կին բըընձին Անտիոքայ[44]. Հաւտիարտն եղև կին գունդին Տրապաւլսոյ[45]. Ծաւրէն եղև հաւատվոր և վասն իւր շինեցաւ վանքն, որ կոչի սուրբ Լազար Բեթանիոյ։

Գ. Յետ մահուան Թագաւորին Պաղտնի եկաց երրորդ Թագաւոր Երուսաղէմի Ֆուքն իւր փեսայն, որ ամուսնացեալ էր ընդ Մելիսանթ դուստր նորա, և եղեն նոցա Բ (2) որդիք՝ Պաղաին և Ամառի[46]։ Այս Թագաւոր Ֆուքս ի դոյրն Աքայոյ կուվարէր լապըստակ մի և ձին ղոլաւմ անցաւ և եսպան զինք[47]։

Դ. Եկաց չորրորդ Թագաւոր Երուսաղէմի Պաղտին որդի Ֆուքին և եղբայր նորա Ամառին եղև գունդ Ծաֆուն։ Այս Պաղտին Թագաւորս յղրկեց ի Կոստանդինուպաւլիս վանց կին առնելոյ և ետուն նմա կին զԹաւտաւոն ի յազգէ Մանուիլ կայսերն և չեղև նոցա ժառանգ, յետ որո մեռաւ Թագաւորն Պաղտին[48]։

Ե. Եկաց Ե(5)-երորդ Թագաւոր Երուսաղէմի Ամառի[49] եղբայր Պաղտնին, բայց զսա ոչ կամեցաւ Թագել պատրիարգն Երուսաղէմի, մինչև բաժնեցաւ ի յիր ամուսնոյն, որ էր դուստր Ծաւսլնին Ուռհայոյ գունդին, վասն ազգակցութեանն, որ ի մէջ նոցա. բայց յառաջ ծնեալ էր ի նոցանէ որդի մի, որում անուն էր Պաղտին և դուստր մի, որում անուն էր Սպիլ։ Այս Թագաւոր Ամառի յետ բաժանելոյ ի կնոջէն իւրմէ Աննիզէ էառ իւր կին զՄարիայ, ազգականն Մանուիլ կայսեր. և եղև նոցա դուստր մի ‖ Զապէլ 173 ա անուն։

Զ. Յետ մահուան Թագաւորին Ամառէ[50] եկաց Զ(6)-երորդ Թագաւոր Երուսաղէմի Պաղտինն, որ դոյդի եղև. և Սպիլ, քոյր սորա. եղև կին մարգիզ տ Մունֆէռանթին։ Եւ եղև նոցա որդի մի Պաղտին անուն, որ եղև տղայ Թագաւորն։ Յետ մահուան մարգիզին իւր կինն Սպիլն ամուսնացաւ ընդ Կի տ Լըզինայն[51]։ Եւ Զապէլ դուստրն Թագաւորին Ամառէ ծնեալն ի Մարիամայ Թագուհոյն ամուսնացաւ ընդ Հանֆրէ տը Դուրունն։

Է. Յետ մահուան Պաղտին Գաւդոյն եկաց Է(7)-երրորդ Թագաւոր Երուսաղէմի Պաղտին[52], որդի մարգիզին, ծնեալն ի Սպիլէն, որ էր քոյր Թագաւորին Պաղտնի. և սա մեռաւ փոքր։

Ը. Եկաց Ը(8)-երրորդ Թագաւոր Երուսաղէմի Կի տ Լըզինայն

այրն վերոյասացեալ Սպլին։ Յաւուրս սորա եղև կորուստն Երուսաղէմի և փրկչական խաչին[53]. և յետոյ ի աղարն Աքայոյ[54]։ Մեռաւ Ապիլ՝Թագուհին Երուսաղէմի։ Եւ եղև Թագուհի Զապէլ, քոյրն իւր, դուստր Մարիայ Թագուհոյն, որ էր կին Հանֆրէ տը Դուրոնին, և պսակվեցաւ ընդ Քուռաթ մարգիզ տ Մունֆռանթն. և եղև նոցա դուստր մի Մարիայ անուն։ Զայս մարգիզ Քուռաթս Հաշիշիքն սպանին. և կին նորա Զապէլ Թագուհին պսակվեցաւ ընդ գունդ Հէռի տ Զայնրայնն և ծնաւ ի նմանէ Բ (2) դուստր՝ զԱլիծն և զՖիլիպն։ Ալիծն եղև կին Թագաւորին Կիպրոսի Կի տ Լըղինին և Ֆիլիպն եղև կին Էրադ տը Պրէնին։ Գունդը Հեռին ընկաւ ի պատուհանն ի վայր ի բերդն Աքայոյ և մեռաւ[55]։ Եւ Զապէլ Թագուհին իւր կինն պսակվեցաւ ընդ Հեմրի Թագաւորն Կիպրոսի և ծնաւ ի նմանէ դուստր Բ (2)՝ զՍպիլն և զՄէլիսանթն։ Սպիլն եղև կին Թագաւորին Հայոց Լևոնի[56] և Մէլիսանթն եղև կին Կոյր բըընձին[57]։ Եւ յետ մահուան Զապէլ Թագուհոյն ամուսնացուցին զՄարիայ, դուստր նորա, որ ծնեալ էր ի մարգիզէն, ընդ Ճուան տը Պրայնն. և այս եղև ըռէ Ճուանն || Աքայու։ Սոցա 173 բ եղև դուստր մի Զապէլ անուն, որ եղև կին ընըրուր Ֆըտըրկին[58], յորմէ ծնաւ որդի մի Քուռաթ անուն և այս եղև ըռէ Քուռաթն[59] հայր Քուռատնին։

## ԹԱԳԱՒՈՐՔ ԿԻՊՐՈՍԻ[60]

Ա. Երկու ձիաւոր եկին ծովուն ի յայնդիհէն, որ էին եղբարք Ճաւֆրէ տ Լըղինին, որ էր գունդ տ Լամարջ. անուն միոյն Կի և միւսոյն՝ Հեմրի։ Կի եղև Թագաւոր Երուսաղէմի ընդ իւր կնոջն զեհաց Սպիլին, որպէս ի վերոյ յիշեցաք։ Յորժամ Ըռիջարդ Թագաւորն Ընկլիզաց էառ զԿիպրոս ի Յունաց. նա՝ այս Կի Թագաւորս գնեց զկղզին ի նմանէ և եղև Թագաւոր Կիպրոսի[61]։ Սա մեռաւ անժառանգ։

Բ. Յետ մահուան Կի Թագաւորին Կիպրոսի եկաց երկրորդ Թագաւոր Կիպրոսի Հեմրի իւր աղբայրն և էառ կին զԸսչիւ, դուստր Պազտին տը Պլնին, որ էր տէր Ըռամլէու. և ծնաւ նորա որդի մի Ոյկ անուն և դուստր Բ (2), անուն միոյն Պուրկոյն և միւսոյն՝ Հէլուիզ։ Եւ յետոյ պսակուեցաւ ընդ Զապէլ Թագուհին, և ծնաւ ի նմանէ դուստր Բ (2)՝ զՍպիլն և զՄելիսանթն։ Պուրկոյնն եղև կին Կախթեր տ Մունպէլիարտին, և եղև նոցա դուստր մի Ըսչիւ, որ եղև կին Պալիան տը Պլնին՝ Պերութայ տէրոջն։ Հէլուիզն եղև կին բրինձ Խովբինայ[62], Սպիլն եղև կին Լևոն Թագաւորին Հայոց[63], Մելիսանթն եղև կին Կոյր բըընձին[64]։

Գ. Յետ մահուան Թագաւորին Հեմրի եկաց երրորդ Թագաւոր Կիպրոսի իւր որդին Ոյկն։ Սա էառ կին զԱլիծ դուստր գունդը Հեռի տը Զայնբայնին, որ ծնեալ էր ի Զապէլ Թագուհոյն. և եղև նորա որդի մի Հեռի անուն և դուստր Բ (2), անուն միոյն Մարիայ և միւսոյն՝ Զապէլ։ Մարիայն եղև կին Կախթեր գունդ

## № 2151 ՏԱՐԲԵՐԱԿԻ ՇԱՐՈՒՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

*Ի թվին ՊՁՁ (1437) նստի Ջիհանշա խանն ի Թաւրէզ[206]. 172բ և առնու զաւրօք զտուն Արաղայ ի Ջաղաթաէն[207] մինչ ի Ցարի[208] և ի Սրօա[209], և գնաց մինչ ի դուռն Հրեայ, խաարեց և ոչ կարաց ելանել անդի, զի Ջաղաթան խաարեաց զինքն։ Եւ որդի Ջիհանշաին՝ Փիր-Պուտախ իմիրզան գնաց զաւրօք և զաւրսն իւր ձգեալ ի ճանապարհն և Ռ (1000) մարդով հասաւ առ հայրն իւր և ելօ համբօն, թէ ՃՌ (100000)-օ հասօ և փելով էառ զհայրն իւր[210] և եկին յաշխարհն իւրեանց։ ‖ Եւ Փիր-Պուտախն գնաց Թադաւորել Պաղ- 173ա տատայ, զիւրեանց էր, և հայրն հակառակեցօ ի հետ որդոյն, և գնաց բաղում զօրօք ի վերայ որդուն և խաարեց Բ (2) ամ և բաղում հնարիւք նաղմով և այլ բանիւ և ոչ կարաց առնուլ, յետո կամօ երաց զդուռն քաղաքին և սուտ երդմամբ սպանին եղբայրքն իւր զինքն և բարձօ ի կենաց[211]։*

*Ի ՋԱ (1452) երեկ Ջիհանշան ի Ցեզընկան և խաարեաց Գ (3) ամիս և էառ, և ոչ Թալանեաց։ Եւ առաքեաց զդլխօոր ոմն, անուն Թարխան-աւղլի, ի վերայ ազդին Պայխուրաց, որ էր պարոն Հասան պէկն. և խաարեաց զԱմիթ և ոչ ինչ կարաց առնուլ և կոտորեցաւ ի Հասան պակէն և յետս դարձօ։ Եւ յետ Գ (3) ամաց դարձեալ առաքէ Ջիհանշան զնա բաղում զաւրօք ի վերայ Հասան պակին, և խաարեաց զԱմիթ. և Հասան պակն ժողովէ ԴՌ (4000) մարդ, զի այլ ոչ ունէր և կռվեցօ և յաղթեաց և ըմպանեաց զԹարխան-օղլին և եսպան, և անչափ ոսկի, և արծաթ, և ձի, և ջորի, և մալ առին անասելի[212]։*

*Ի ՋԺԲ (1463)-ն գնաց Հասան պակն յերկիրն Ղարաման[213] մինչև ի Սև ծովն, ոչ չարութեամբ այլ սիրով, զի ազգականք էին և զնոցա Թշնամեաց տեղն աւերեաց և բաղում օարաւ դարձօ յաշխարհն իւր։*

*Ի ՋԺԴ (1465) խաարեաց Հասան պակն զԽարբերդ, որ էր Տուլղադրցուն և ճորով չկարաց առնուլ, զի եկն Մելիք Ասլանն բաղում զօրօք մինչ ի Ջրեզերն Մելտենու և զօրքն խային եղեն և յետ դարձօ և Հասանպակն եԹող ԲՌ (2000) հոգի ի վերայ բերԹին և ինքն բաղում զօրաւք գնաց զհետ Մելիք Ասլանին մինչև ի Ցապլուստան[214] և անդի մէջ անկան և սէր արարին. և գնեց զԽարբերդ ի ԺԲՌ (12000) փլորի։*

*Ի ՋԺԷ (1468) երեկ Ջիհանշան ի վերայ Հասան պակին և հասեալ մինչ ի Ջապղջուր ‖ և Հասան պակն էառ զառաջքն ի հեռուստ բարձր լերամբ և նայելի տեղին, որ կոչի Սանճախ. և 173բ զօրսն առաքեաց դէպ Աղջախալան և ինքն ԲՌ (2000) պարաւնօք*

եկաց անդ աւուրս Գ (3) յուտել և ի խմել. զի վաղիւն հասանե զօրացն և ելանել Եզնկան և անդի գալ ի վերայ Հասանպակին։ Եւ Հասան պակն իմացեալ զչար խորհուրդ նորա ԺՌ (10000)-օ բոլորեց զծիհանշան և եղև կռիւ, և բռնեցին զծիհանշան Բ (2) որդովն և սպանին ի միում աւուր ԳՌ (3000) հոգի՝ պարոնայք և իշխանք, աղատք և ռամիկք և զառ և զթալանն, զոր արաբին ո՞վ կարէ ասել։ Եւ ժամանակն այն ձմեռնամտին էր[216]։ Եւ ոչ կարաց գնալ Հասան պակն յարևելք, ապա գարուն ել Հասան պակն ԼՌ (30000)-աւ և գնաց մինչ ի դաշտն Խօու և էառ ռամենայն խաղաղութեամբ և սիրով։ Եւ գայ որդի Ծիհանշին Ալի պակն ընդդէմ նորա ՃՌ (100000) մարդով ի Մարանդ և դիմամարտի և կոտրվի և փաղչի, և Հասան պակն առն[ու] զզօրս նորա և զքսիպն և մտանէ ի Թօրէզ[216]։ Եւ յայնմ տարոջ ելանէ Պուտայիտ[217] խանն ի Հրէս և գայ անթիւ զաւրօք և յղէ առ Հասան խանն, թէ ի Թաւրիզու այլ ի վեր մի գար, զի Թաւրէզ այլ իմ է։ Եւ գնաց Հասան պակն ընդդէմ նորա յաղթեաց նմա և կոտորեաց զզօրս նորա և ըմպռնեաց զՊուսախտ խանն և սպան զնա և էառ անչափ մալ և խզինայ և շատ քաղաք մինչ ի Սարգ և ի Սրօայ և ոք այլ հարկատու լինին նմա։

Եւ ի ՋԻԲ (1473)[218] առաքէ Ուզուն Հասան ՀՌ (70000) մարդ ի ձեռն Ամիր պակին. և գնացեալ մինչ ի Թօխաթ էզարկ և աւերեաց զքաղաքն, թալանեաց և գերեաց[219]։ Եւ շարժի Հասան պակն բազում զօրօք և երթա իջանէ ի Շամ և առնու զՄելտենի և ոչ թալանեաց. և գնացեալ ի վերայ Պիրայ[220] և խսարեաց Դ (4) ամիս, փլոյց և նազմեաց և ոչ կար[ա]ց ‖ առնուլ, երեկ և ընդդէմ 174 ա հեծել Շամայ և նստաւ ի Ջրեզերն ընդդէմ նորա և ոչ եղև հաշտութիւն։ Եւ խոնդքարն Ըստըմ[պ]օլու ել ԴՃՌ (300000)-օ և եկն ի վերայ Հասան պակին։ Եւ Հասան պակն գնաց ընդդէմ նորա և յաղթահարեցօ և մին որդին սպանօ և ինքն փախստեա գնաց ի Թաւրէզ[221]։ Եւ զորդին իւր զպարոնն Միջագետաց զՄահմատ պակն, զի էր քաջ պատերազմող, որ մականուն Ուղուրլու ասեին, ի սոյն ամի իջեալ առ եղբայրն իւր, մաւտ ի Մաղսուտ պակն ի Պաղտատ, և միաբանեցան երկուքն և Մահմատ պակն գնաց ելաւ ի Շիրազ, զի տէրն Շիրազու եղբայր էր նորա[222]։ Սուլթան Խալիլն առ հայրն իւր եկեալ էր և բարկացեալ Հասան պակն և առաքէ բազում զաւրս ի վերայ Մահմատ պակին ի Շիրազ և փախուցին անտի և Ապայինտուր իմիրզան երեր փախստեայ մինչև ի Խարբերդ և նայ անցօ ի Շամատունն և գնաց մինչ ի Հալապ և սուլտանն Մսրայ ետ նմա բազում ինչս և կացեալ մինչ ի գարուն և ել անտի և գնաց ի Հոռոմք, զի Հոռոմաց տէրն կոչեաց սիրով և առաքեաց նմա բազում գանձս և ետ զՍևաստ։ Եւ դարձեալ կոչեցեալ ի նմանէ և նայ գնաց ի Ստըմպօլ և նայ ետ նմա ձիս և ջորիս և գանձս և ծառայս և եկեալ ի Սևաստ[223]։

Ի ՋԻԶ (1477) ել Եզնկան և խարէութեամբ սպանաւ ի մայրգրոջէն՝ ի Սալչուկ խաթունէն, զի էր խիստ կախարդ, ի ձեռն Պայինտուրին մեռաւ, և եղև սուք ատոց և ամենայն ոք զնա ողբաց[224]։

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Բնագրում խորագիրը գրված է կարմիր թանաքով։

2. Սկսած խորագրից մինչև այստեղ, բնագրում, գրված է կարմիր թանաքով։

3. Բնագրի 229բ էջի վերևի լուսանցքում, կարմիր թանաքով, գրված է. «Թիւ Ադամայ»։

4. Բնագրում «վերվսաին» ձևով։

5. Բնագրի ձախ լուսանցքում գրված են թվեր, որոնք անիմաստ են թվում, որովհետև մի մասը դուրս է գնացել կազմողի դանակին։

6. Հեղինակը թվում է միայն երեքի անունը, սա Վ. Արևելցի («Մեծին Վարդանայ Բարձրբերդեցւոյ պատմութիւն տիեզերական», Մոսկվա, 1861, էջ 49). որտեղ «Դասպար»-ի փոխարեն նշված է «Դասպար»։

7. Բնագրում գրիչն այնուհետև ավելացրել է. «Աւետիս յիշեայ և ծնօղացս ողորմի տայ, որ եմ անարժան ծառայ»։

8. Բնագրի 230ա էջի վերևի լուսանցքում, կարմիր թանաքով, գրված է. «Վասն Թիւ ի համարն»։

9. Ազգերից մեկի անունը բաց է թողած։ Վ. Արևելցին նշում է. «Մարաց և Պարսից, Հայոց և Քուշանաց» (էջ 44), նույնը տես և № 6617 տարբերակում։

10. Բնագրի 230բ էջի վերևի լուսանցքում, կարմիր թանաքով, գրված է. «Վասն Լուսաւորչին, թէ որ ազգէ էր»։

11. Գր. Լուսավորչի մասին այս տեղեկությունը նախապես տե՛ս Մ. Խորենացու («Պատմութիւն Հայոց», II, Ձ, հրատ. Մ. Աբեղյան, Ս. Հարությունյան, Տփղիս, 1913), Զ. Գլակի (Յ. Մամիկոնեան, Պատմութիւն Տարօնոյ, հրա. Աշ. Աբրահամյան, Երևան, 1941, էջ 72) և ապա Վ. Արևելցու մոտ (էջ 53)։

12. № 3425 տարբերակը սկսվում է այստեղից, իսկ նախորդ տեղեկությունները պակասում են բնագրից թերթեր ընկնելու պատճառով։ № 3425 ձեռագրում սկզբի այս թերթերը սխալմամբ դրվել են երկրորդ մամուլի մեջ (տես 11ա—20բ էջերը)։

13. Տե՛ս Վ. Արևելցի, էջ 81։

14. Բնագրի ձախ լուսանցքում նշված է. «Բ՜ՃԽԷ»։

15. Բնագրի 231բ էջի վերևի լուսանցքում, կարմիր թանաքով, գրված է. «Պատճառ դնելոյն Հայոց Թուին»։

16. Հուլիան տոմարի և հայոց թվականության հարաբերությունը սխալ է նշված։ Շարժական տոմարի դեպքում, որևէ եղելության ստույգ ժամանակը որոշելու համար, հայոց թվականին պետք է ավելացնել 551 և անհրաժեշտ 1—6 ամսվա տարբերությունը, (մանրամասն տե՛ս Էդ. Դյուլորիե, Recherches sur la chronologie armenienne, t. 1er, Paris, 1859)։ Նման ճշտումներ տես ներքևում էջ 372, ծանոթ. 199, էջ 376, ծանոթ. 266։

17. Կարծում ենք պետք է լինի. «Սասանայ», ինչպես № 6617 բնագրում է։ Մահմետի մասին եղած հաղորդումները տե՛ս և հմմտ. Վ. Արևելցի, էջ 88։

18. Ձեռագրի 232բ էջի վերևի լուսանցքում, կարմիր թանաքով, գրված է. «Յայտնելն Մահմատայ»։

19. Գրիչը բնագրում մեծ մասամբ բաց է թողել «ո» տառը. փոխանակ գրելու «նըւաղեալ», «ծնեալ», «տիրեաց» և այլն, գրում է. «նուաղալ», «ծնալ», «տիրաց»։ Հրատարակության բնագրում այդ ձևով էլ տալիս ենք։

20. Կարելի է կարդալ նաև «դարագ»։

21. Այս հարցի մասին մանրամասն տես Ուխտանեսի «Պատմութիւն Հայոց»-ի (1871, Վաղարշապատ) երկրորդ հատվածը։

22. Իմա Կյուրիոն։

23. Բնագրի 232բ էջի ձախ լուսանցքում, կարմիր թանաքով, գրված է. «[Բ]աժանին Վրաց ազգին», իսկ 233ա էջի վերևի լուսանցքում՝ «Վասն Վրաց բաժանին Հայոց»։

24. Մանրամասն տե՛ս Վ. Արևելցի, էջ 81, հմմտ. Ուխտանես, Բ, գլուխ Ա։

25. Այժմյան Շապին Գարա-հիսարը։ 1632 թ. ընդօրինակած ձեռագրի հիշատակարանում այսպես էլ գրված է. «...Գրեցի զսա ի քաղաքն Կողոնիայ, որ այժմ ասի Ղարայհիսար...» (№ 8380, էջ 264բ)։

26. Այն վայրը, որտեղ 66 թ. (ն. մ. թ.) Պոմպեոսը պարտության մատնեց Միհրդատին։ Ակադ. Հ. Մանանդյանը Նիկոպոլիսը տեղադրում է «Գայլ գետից դեպի հարավ, Էնդերեսից մոտ 10 կմ. հեռավորության վրա գտնվող այժմյան Պյուրկի մոտ,...»։ («Տիգրան Բ և Հռոմը», Երևան, 1940, էջ 177. տե՛ս նաև էջ 180)։ Նիկոպոլիսը կոչվել է նաև Ախշար կամ Աշշար (տե՛ս ներքևում, ծանոթ. 197)։

27. Ուխտանեսի (Բ, էջ 5) և Վ. Արևելցու (էջ 82) մոտ «Զուտառիմ» ձևով, որը նույնպես տեղադրված է Նիկոպոլսի մոտերքում. «և են երկոքեան յեզր Գայլ գետոյ» (Ուխտանես, Բ, էջ 5)։

28. Տե՛ս Վ. Արևելցի, էջ 82։

29. Ցուրտավը Գանձակը չէ։ Բնագրի այդ սխալը ձեռագրի ընդօրինակությունների հետևանք է։ Այդ անվանման սկզբնական ձևը հանդիպում ենք Ուխտանեսի մոտ. «Առա իմացեալ զայն եպիսկոպոսին Մովսեսի, որ ի Ցուրտաւ, որ այժմ կոչի Գաչէնք...» (Բ, էջ 6, 50)։ Վ. Արևելցու մոտ վերջին անունը հանդիպում ենք «Գանձէնք» ձևով (էջ 82). Կարծում ենք, հենց այս ձևն էլ մեր բնագրում դարձել է Գանձակ կամ Գանծակ։ Պատմական Ցուրտավը գտնվում է Վրացական ՍՍՌ-ի Մարնեուլի շրջանում և նույնանում է Խրամի խառնման մոտերքում, Մաշավերա (պատմական Գաչենա, վրացերեն Գաչիանի) գետի վրա գտնվող այժմյան Արուխլո գյուղի հետ, մոտավորապես մեկ կիլոմետր արևմուտք Կայագիր գյուղից։

Պրոֆ. Մելիքսեթ-բեկը Ցուրտավը տեղադրում է Ախթալայի մոտերքում (տե՛ս Меликсет-Беков Л. М. — „К вопросу о местоположении Цуртава“ (Известия Кавказского отдела императорского русского географического общества, том XXIV, № 3-й, Тифлис, 1916, стр. 341—345).

Սակայն ավելի ճիշտ և մանրամասն տես նույնի «Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին», (Երևան, 1934), հա. Ա., էջ 12—15։

30. Բնագրում «Կողոլիոյ» ձևով։

31. Նամակները մանրամասն տե՛ս Ուխտանես, Բ, էջ 24—34։

32. Իմա Շահվարադ, տես վերևում, էջ 29, ծանոթ 29։

33. Տե՛ս և հմմտ. Վ. Արևելցի, էջ 85—86։

34. Հավանաբար նկատի ունի 336 թ. աշնանը Ցարմուկ գետի և կամ Կաղիսխայի ճակատամարտը, ուր արաբները ջախջախեցին բյուզանդական և պարսկական բանակներին։

35. Տե՛ս և հմմտ. Ասողիկ, էջ 98, Մժ, 1, էջ 255, 259, ծանոթ. 4։

36. Վասպուրականի գավառներից մեկը, նաև քաղաք, այժմ կոչվում է Բաշկալե և ընկած է Աղբակ գետի աջափնյա վտակներից մեկի վրա։ Բնագրի այս վկայությունը սխալ է և հակասում է պատմական փաստերին (տե՛ս Սեբեոս, էջ 101, Ստ. Օրբելյան, էջ 118 և այլն)։ Ճիշտ է № 2174 բնագրի տվյալը՝ «Եա նմա զաղտք» (տե՛ս նաև Վ. Արևելցի, էջ 86), որովհետև գրաբարում «աղտք» նշանակում է աղի տեղ, աղի հանքավայր։ Կարծում ենք բնագրի «զԱղբաք»-ը առաջ է եկել «զաղտք» բառի սխալ ընդօրինակությունից։

37. Այսինքն 630-ական թվերից մինչև 720-ական թվերը՝ մինչև 726 թվի Մանազկերտի ժողովը, որտեղ դատապարտեցին և հալածեցին քաղկեդոնականների (երկաբնակների) ուսմունքը։ Եվ իրոք, Եզրից մինչև Հ. Օձնեցին եղել են վեց կաթողիկոսներ։

38. Տե՛ս Ասողիկ, էջ 127, Կ. Գանձակեցի, էջ 62 և ուրիշներ։

39. Տե՛ս Վ. Արևելցի, էջ 100։

40. Բնագրում «իշխաց» ձևով։

41. Բնագրի 235ա էջի վերին լուսանցքում գրված է «Ժողովն սուրբ Յոհաննու Օձնեցոյն»։

42. Իմա Հոհան Օձնեցին։

43. Բնագրի այս բառը սխալ է, որովհետև վերևի տարբերակում դրա փոխարեն կարդում ենք «երկս իրս», որը համապատասխանում է նախադասության իմաստին։

44. Բնագրի այս վկայությունը, որը, ինչպես տեսնում ենք, ցույց է տալիս, թե հեղինակը ժամանակակից է հիշյալ դեպքերին, կասկածանքով ենք վերագրում ժամանակագրության հեղինակին։ Վերոհիշյալ դեպքերին, մեր պատմիչներից, այս կամ այն կերպ, թեև անդրադառնում են Հ. Դրասխանակերտցին (էջ 100—104), Ասողիկը (էջ 102—104) և Վ. Արևելցին (էջ 100), սակայն սրանցից և ոչ մեկը չունի Հ. Օձնեցու երեք պահանջները և նշված դեպքերը։ Սույն տեղեկությունը, բացառությամբ վերջին՝ «զոր այժմ ի մերում ժամանակիս բաղում գիրս բերեն ի թաղաւորութէնէն և զաւնեն զանձս թագեալս» հատվածի, գտնում ենք Կ. Գանձակեցու մոտ, բերում ենք մեր հետաքրքրող մասը․ «Եւ ասէ (Օմար խալիֆան—Վ. Հ.) ցսուրբն (Հ. Օձնեցուն—Վ. Հ.)․ խնդրեա զինչ և կամիս, և արարից քեզ. ասէ հայրապետն. երիս իրս խնդրեմ ի քէն, որ քեզ դիւրին է տալ։ Առաջինն այս․ ի քրիստոնէից զոք մի բռնադատեսցես թողուլ զհաւատս իւր, այլ յիւրաքանչիւր կամս թողցես․ և երկրորդ՝ զպատուիթիւն եկեղեցւոյ ընդ հարկաւ մի գնիցես, և ի սարկաւագաց և ի քահանայից մի ինչ առնուցուս․ և երրորդ՝ ուր և իցեն քրիստոնեայք ի տէրութեան քում, համարձակութեամբ պաշտեսցեն զպաշտօնս իւրեանց․ զայս գրով տուր մեզ․ և ամենայն ազգ իմ ծառայեսցեն քեզ։ Եւ վաղվաղակի հրամայեաց գիր գրել ըստ խնդրոյ նորա, և կնքեաց մատանեաւ իւրով, և ետ նմա պատիւս բազումս և զումարեաց զօրս բազումս ընդ նմա, և առաքեաց մեծաւ պատուով յաշխարհս Հայոց։ Եւ նորա եկեալ հալածեաց զամենայն Յոյնս՝ որք էին յաշխարհին Հայոց, եթէ վերակացուք, եթէ զինուորք. և նոցա փախուցեալք այնքան շտապով, մինչև զգանձս ևս անգամ ոչ ժամանել տանել ընդ իւրեանս այլ ասաէն յաշխարհիս թաղեալք, և զհանդամանս տեղւոյն գրով ընդ իւրեանս տարեալ» (էջ 64—65)։ Մենք ենթադրում էինք, թե վերևում նշված բացակա հատվածը ևս պատկանում է Կ. Գանձակեցու գրչին. այդ նպատակով ստուգեցինք Մատենադարանի Կ. Գանձակեցու պատմության հնագույն ձեռագրերը, դժբախտաբար վերջիններս չհաստատեցին մեր ենթադրությունը (տես №№ 1399, էջ 109, 4584, էջ 331ա, և բ, 1486, էջ 16ա, 1518, էջ 193բ)։ Այստեղ ևս գտանք հրատարակության վերևում բերված ընդարձակ հատվածը նույնությամբ։ Մնում է ենթադրել, որ Կ. Գանձակեցու մոտ բացակա հատվածը հեղինակը վերցրել է մեկ ուրիշ հեղինակից և կամ ինքն է ավելացրել բնագրին, որովհետև մեր հեղինակն էլ համարյա ժամանակակից է կամ ժամանակով շատ մոտ Կ. Գանձակեցուն։

45. Աշոտ Ա-ի թագավոր հռչակման՝ Բագրատունիների դինաստիայի հիմնադրման ժամանակի ճշտումը չափազանց կարևոր խնդիր է։ Սկզբնաղբյուրների հակասական տեղեկությունների պատճառով այդ հարցը մինչև հիմա էլ հաստատ չի լուծված և հանդիսանում է վեճի առարկա։ Ուսումնասիրողների մի մասն այն ընդունում է 835 թ. (տե՛ս Մ. Չամչյան, Պատմութիւն Հայոց, հտ. Բ, էջ 703, H. Dagbaschian, Gründung des Bagratidenreiches durch Aschot Bagratuni, Berlin, 1893, էջ 71, ծանոթ. 2, A. Akulian, Einverleibung armenischer Territorien durch Byzanz im XI. Jahrhundert, Gruningen, 1912, էջ 11—12, Մ. Օրմանյան, Ազգապատում, էջ 992 և ուրիշներ), իսկ մյուս մասը՝ 886թ. կամ 887 թ. (տես A. Ter-Mikelian, Die armenische Kirche in ihren Beziehungen zur byzantinischen, Leipzig, 1892, էջ 75—76, Ed. Dulaurier, Recherches sur la chronologie arménienne, t. 1er, paris, 1859, էջ 269, M. Chazarian, Armenien unter der arabischen Herrschaft bis zur Entstehung des Bagratidenreiches, Marburg, 1903, էջ 54, J. Markwart. Südarmenien und die Tigrisquellen, «Հանդէս Ամսօրեայ», 1915, էջ 131—132, 1920, էջ 106, K. Mlaker, Zur chronologie Asots I. «Հանդէս Ամսօրեայ», 1927, էջ 883. Ռ. Տաամէր, Ժամանակագրութիւն հայաստանի ոստիկաններու առաջին Աբբասեանց օրով, Վիեննա, 1933, էջ 101—102, Լեո, Հայոց պատմություն, հտ. 2-րդ, Երևան, 1947 թ., էջ 522 և ուրիշներ)։ Վերջիններս կասկածանքով են վերաբերվել և քննադատության են ենթարկել ժամանակակից պատմիչ Հ. Դրասխանակերտցու տեղեկությունները։ Սակայն նոր փաստերը ստիպում են մեզ առաջ քաշել այդ հարցը, վերանայել վերջին տասնամյակներում հանդես եկած ուսումնասիրությունների այդ հարցին նվիրված թեզերը։

Մեր որոնումների ժամանակ, Մատենադարանի ձեռագիր ավետարաններից մեկում (№ 3711), որը XIV դարի ընդօրինակություն է, մեզ հանդիպեց ձեռագրի հնագույն ընդօրինակության երեք հիշատակարան, ժամանակակցի կողմից գրված, որոնք նոր լույս են սփռում քննության ենթակա հարցի վրա։ Հիշատակարանի գրիչ Գրիգոր Մաշկևորն ամսաթվի ճշտությամբ հայտնում է Աշոտ Ա. Բագրատունու թագավոր հռչակվելու օրը։ Թեև այդ հիշատակարանը, ինչպես պարզեցինք հետագայում, սրանից ավելի քան քառասուն տարի առաջ հրատարակված է եղել («Արարատ», 1910, էջ 623), սակայն ուշ ժամանակների

հետազոտողները (Մարկվարտ, Մլակեր, Լեո և այլն) այդ տվյալները մատնել են անուշադրության: Բերում ենք այդ հիշատակարաններն ամբողջությամբ:

ա. էջ 10ր «Գրի ձեռամբ Գրիգոր վարդապետին Քաջբերունոյ ի թվին ԳԾԼԳ տրէ ամսոյ Է (7) ի սուրբ անապատին Լմայ ի սկիզբն աւետարանիս ի յանուն Սքանչելագործութեան»:

բ. էջ 92ա «Մեղապարտ գրիչ Գրիգոր վարդապետ Բաջբերունոյ թվին ԳԾԼԳ տրէ ամսոյ Ի (20)»:

գ. էջ 159ր «Դունցաւ ի սկիզբն թագաւորութեան Բագրատունեաց Աշոտոյ, ձեռամբ անարժան Գրիգոր Մաշկևորի ի ժամանակս հայրապետութեան Գէորգա կաթողիկոսին, որ օծեաց զԱշոտ թագաւոր Հայոց ի թվին մերում ԳԾԼԳ և քաղոց ամսոյ Ժ (10), ի անուն սրբոյն Սքանչելագործին վանիցն»: (Ձեռագրի 103ա էջի ներքևում մնացել է դարձեալ սկզբնական հիշատակարանից մի հատված. «տրէի Լ (30) ըսկիզբն քաղոցի»):

Ընդունելով, որ Հայոց 333 թվի նավասարդի մեկը շարժական տոմարի հաշվով սկըսվում է 884 թ. ապրիլի 19-ին (Ed. Dulaurier, Recherches sur la chronologie armenienne t. Ier, էջ 385), ապա մեզ հետաքրքրող հիշատակարաններում տրված հայկական տոմարը վեր է ածվում Հուլյան տոմարի հետևյալ հաշվումներին, տրե ամիսը կհամապատասխանի հուլիսի 18-ից—օգոստոսի 16-ին, իսկ քաղոց ամիսը՝ օգոստոսի 17-ից—սեպտեմբերի 15-ին: Այստեղից էլ հայկական տոմարի 333 թվի (ա) տրե ամսի 7-ը համապատասխանում է 884 թ. հուլիսի 24-ին, (բ) տրե ամսի 20-ը՝ Օգոստոսի 6-ին, (գ) քաղոց ամսի 10-ը՝ օգոստոսի 26-ին: Ուրեմն համաձայն Գրիգոր Մաշկևորի՝ Աշոտ Ա-ի թագավոր հռչակվելը տեղի է ունեցել 884 թ. օգոստոսի 26-ին, իսկ այդ օրը չորեքշաբթի է:

Սակայն, ինչպես հայտնի է, ի թիվս այլ եկեղեցիների, հայկական եկեղեցին ևս ի պատիվ Քրիստոսի մատնության, չորեքշաբթի օրը սուգ հայտարարելով արգելում է պատարագը: Նշանակում է հավաստի չէ՞ մեզ հետաքրքրող հիշատակարանի տվյալը: Սկզբնաղբյուրների լռության պատճառով մեզ համար այդ մանրամասնությունները (և ոչ միայն մանրամասնությունները) մթության քողով են պատած, թեև Հ. Դրասխանակերտցու այդ մասին եղած ակնարկը մասամբ կարող է բարձրացնել մթության այդ քողը: Վերջինս Աշոտ Ա-ի թագադրության արարողության մասին գրում է. «Կոչեցաւ ապա և անդ մեծ հայրապետն Գէորգ և զհոգևոր օրհնութեանցն գովութիւնս աստուածայինս ի վերայ կատարեալ փոխանակ օծման սրուակի իւղոյն պսակեն զնա թագաւոր ի վերայ Ասքանազեան ազինս» (էջ 139, նախապես ենթադրելով, որ կարող է ընդգծված բառերից մեկն ու մեկը աղճատված լինել, ստուգեցինք Հ. Դրասխանակերտցու պատմության Մատենադարանում պահվող 17 ձեռագիր ընդօրինակությունների համապատասխան հատվածները, որոնք, բոլորն էլ առանց բացառության, համապատասխանում են վերևում մեջ բերվածին): Մ. Օրմանյանը հենվելով Հ. Դրասխանակերտցու վերոհիշյալ վկայության վրա, իրավամբ գրում է. «Գործածուած արարողութեանց մասին Պատմաբանին խօսքերէն այնպէս կերևի. թէ լոկ աղօթք և օրհնութիւն կատարուած է և ոչ օծում,...և բացայայտ կերպով օծում տեղի ունեցած չըլլալուն կ'ակնարկէ» («Ազգապատում», էջ 991—992):

Թե ինչու են այդպես վարվել, դժվար է ստույգ բան ասել, քանի որ փաստերի սակավության պատճառով մտքի դեգերումների ասպարեզն այստեղ ընդարձակ է: Համենայն դեպս Հ. Դրասխանակերտցու վերևում նշված ցուցումից հետո դժվար է կասկածել, Գրիգոր Մաշկևորի այս տեղեկությունների և կամ դրանց աղավաղված լինելու վրա: Հենց այդ պատճառով էլ հայոց ՑԼԳ-ն փորձ չարինք կարդալ՝ ՑԼԴ (ընդունելով վերջին տառերի սովորական շփոթման հնարավորությունը), որի դեպքում 885 թ. օգոստոսի 26-ը կլինի հինգշաբթի: Թեև կարող էր Աշոտ Ա-ի թագավոր հռչակումը լինել նաև 885 թ.: Պատմական նշանակություն ունեցող այդպիսի մի մեծ եղելության համար, թե ինչու են ընտրել տարվա սովորական օրերից մեկը, հաստատ բան ասելը առայժմս դժվար է. գուցե այդպես են վարվել, որպեսզի հենց այդ օրը նշեն դարերի ընթացքում կորած հայ ինքնուրույն պետականության վերականգնման փաստը: Նշանակում է Աշոտ Ա-ն դե-յուրե թագավոր հռչակվել է 834 թ. օգոստոսի 26-ին:

Այս տարեթիվն ընդունելու համար մենք ունենք այլ կռվաններ ևս: Առաջարկվող ժամանակագրության № 6617 տարբերակը, ինչպես նաև XVII դարի մի ժամանակագրություն (ՄԺ, 1, էջ 256), որի վկայությունը, սակայն, ժամանակին ուշադրության չէինք արժանացրել (ՄԺ, 1, էջ 260, ծանոթ. 10), նույնպես նշում են Հայոց 333 թվականը: Ըստ երևույթին, ինչպես հիմա է պարզվում, վերջին երկու տեղեկությունները ևս, որոնք

*հանված են, անտարակույս, հնագույն ու հավաստի աղբյուրներից, Աշոտ Ա-ի թագավոր հռչակումը պարզորեն նշում են Հուլյան տոմարի 884 թվին։ Հիմք ընդունելով Հայոց ՑԼԳ (333) թվականը, հավանական է ենթադրել, որ Կ. Դանձակեցու (էջ 75), Ստեփանոս Օրբելյանի (էջ 175) ՑԼԴ (334) թվին Աշոտ Ա-ի թագավոր օծման վկայությունները գրչագրական շփոթի արդյունք են, և սակայն հնարավոր է, որ վերջիններս էլ նման մի սխալից են օգտվել, ընդունելով, որ ՑԼԴ-ն հեշտությամբ կարող էր դառնալ ՑԼԴ, ինչպես նշեցինք վերևում։*

*884 թ. Աշոտ Ա-ի թագավոր հռչակվելու այս նոր վկայությունը վերականգնում է դեպքերին ժամանակակից պատմիչ՝ Հ. Դրասխանակերտցու մեզ հետաքրքրող հարցի մասին թողած վկայությունների հավաստիությունը. նախ Աշոտ Ա թագավորի հետ բյուզանդական կայսր Բասիլիոս I-ը կարող էր դաշինք կնքել, ինչպես նշում է Հ. Դրասխանակերտցին (էջ 140), կամ թագ ուղարկել, ինչպես նշում են ավելի ուշ շրջանի պատմիչները, որովհետև վերջինս մահացել է 886 թ. մարտի 11-ին (ըստ Էդ. Դյուլորեի,* Recherches sur la chronologie arménienne, t. I[er], *էջ 269, ոմանք էլ նշում են 886 թ. օգոստոսի 29-ը, տես* H. Dagbaschian, Grundung des Bagratidenreiches durch Aschot Bagratuni, *էջ 71, ծանոթ 2, ըստ որի Հ. Դրասխանակերտցին իբր թե Բասիլիոս I-ին շփոթել է նրա որդի և հաջորդ Լևոնի հետ), երկրորդ ստույգ է նաև Հ. Դրասխանակերտցու մյուս վկայությունը, թե խալիֆի կողմից Աշոտ Ա-ին թագ և թագավորական զգեստներ բերել է Իսա իբն աշ Շայխ իբն Սալիլ աշ Շեյբանին, որովհետև, ինչպես վերջին ուսումնասիրություններն են ցույց տալիս, նա մահացել է հեջրեի 269 թ., այսինքն Հուլյան տոմարի 21/VII 882 թ.—10/VII 883 թ.* („И. Орбели, Синхронистические таблицы" Л., *1940, էջ 58, Յասմէր, Ժամանակագրութիւն Հայաստանի ոստիկաններու..., էջ 106). և ոչ թե անպայման 882 թվին, ինչպես սխալմամբ կարծում են ոմանք։ Ի դեպ, անհրաժեշտ է նշել նաև այն, որ Իսա իբն Շայխը թագավորական նվերները բերել է ոչ թե հանդեսների ժամանակ, այլ մինչ այդ, ավելի վաղ, ինչպես երևում է Հ. Դրասխանակերտցու վկայությունից (էջ 138—139)։*

*Եթե ընդունենք Գրիգոր Մաշկևորի տեղեկությունները, այն դեպքում, ինչպես վարվենք, այս հարցի մասին մյուս մատենագիրների թողած տեղեկությունների հետ։ Ինչպես հայտնի է, Ասողիկը և Վ. Արևելցին այդ եղելությունը նշում են Հայոց ՅԼԶ թվականին։ Այստեղ կարևորը Ասողիկի վկայությունն է։ Իսկ սա մեզ հետաքրքրող դեպքերից ժամանակով հեռու էր 90—100 տարի և կարող էր սխալվել, ինչպես հաճախ այդպիսի (1—2 տարվա) անճշտությունների հանդիպում ենք նրա մոտ։ Բայց դրանից, Ասողիկն այդ վկայությամբ ինքն իրեն հակասում է։ Նա գրում է, որ հայ պետականության նորոգումը եղել է Աշոտ Ա-ի ձեռքով «յաւուրս Վասլի Յունաց թագաւորին և կամակցութեամբ նորին յՅԼԶ մերոյ... ամք ՊՁԸ...» (էջ 157)։ Եթե իրոք Բասիլիոս I-ի ժամանակ և կամակցությամբ է Աշոտ Ա-ն թագավոր հռչակվել, ապա այդ պիտի լիներ մինչև 886 թիվը, նշանակում է, Ասողիկի տված Հայոց ՅԼԶ (887) թվականը սխալ է, իսկ եթե հաստատ է Հայոց ՅԼԶ (887) թվականը նշանակում է Աշոտ Ա-ի թագավոր հռչակումը տեղի է ունեցել Բասիլիոս I-ի մահից՝ 886 թ. հետո, հետևապես Ասողիկի վկայության առաջին մասը ստույգ չէ։*

*Սակայն ուսումնասիրողները մեծ մասամբ նկատի են ունեցել այլ կռվաններ. օրինակ՝ Մարկվարտը և Մլակերը իրենց եզրակացությունների հիմքում դրել են Թ. Արծրունու տեղեկությունները։ Վերջինս (III, Ի) Վասպուրականի իշխան Դերենիկի սպանության հանգամանքների մասին խոսելիս Աշոտ Ա-ին հիշում է թագավոր, իսկ Դերենիկի սպանությունն էլ Մարկվարտը հավանականությամբ նշում է 887 թ. («Հանդէս Ամսօրեայ», 1915, էջ 132)։ Այնուհետև Մարկվարտը և նրան հետևելով Մլակերը բառացի գրում են.* „Bei diese Gelegenheit *(Դերենիկի սպանությունը Վ. Հ.)* erhält Ašot bei Tohmas zum erstenmal den Königstitel" *նույն տեղում, 1915, էջ 139),* „Derselbe hat richtig erkannt, daß Ašot bei Tohma Arcruni erst nach der Ermordung des Grigor Derenik, Fürsten von Vaspurakan den Königstitel erhält" *(նույն տեղում, 1927, էջ 883)։ Մլակերը Աշոտ Ա-ի թագավորությունը նշում է 887/888—890/891 թթ. (նույն տեղում, 1927, էջ 886, հմմտ. Մարկվարտ, նույն տեղում, 1920, էջ 106, որտեղ Աշոտ Ա-ի մահը նշում է 890 թ., իսկ թագավորությունը 3 տարի, գտնելով, որ Թ. Արծրունու այն վկայությունը, թե Աշոտ Ա-ն թագավորել է Դ (4) տարի, պետք է ուղղել Գ (3) տարի)։ Սակայն հարցն այն է, որ Թ. Արծրունին վերոհիշյալ գլխում երբ նկարագրում է Դերենիկի սպանու-*

թյունը և սպանության նախորդող դեպքերը, Աշոտ Բագրատունուն երեք անգամ հիշում է իշխանաց իշխան (էջ 357, 361, 365), երեք անգամ՝ ուղղակի Աշոտ (էջ 359, 362, 363), և երկու անգամ՝ թագավոր (էջ 368, 369)։ Եվ եթե Դերենիկի սպանության ժամանակ Թ. Արծրունու կողմից Աշոտ Ա-ն առաջին անգամ հիշվում է թագավորական տիտղոսով, ապա ինչքան հավաստի է Մարկվարտի և Մլակերի եզրակացությունը, թե դրանից առաջ Աշոտ Ա-ն թագավոր չէր կարող լինել և Աշոտ Ա-ի թագավորության սկիզբը, նրանց կարծիքով, պետք է հաշվել անպայման 887 թ.։

Բայց, սխալվում է Մարկվարտը և նրան հետևելով Մլակերը, երբ Դերենիկի սպանությունը նշում են 887 թ. ուշ աշնանը («Հանդէս Ամսօրեայ», 1915, էջ 132, 1920, էջ 106, 1927, էջ 883)։ Թ. Արծրունին նշում է, որ Դերենիկի սպանության ժամանակ նրա որդիներից Աշոտը 9 տարեկան էր, Գագիկը՝ 7, Գուրգենը՝ 5 (էջ 308)։ Միաժամանակ նույն հեղինակը՝ մի այլ տեղ հաղորդում է, որ Դերենիկի որդիներից Աշոտը ծնվել է Հայոց 326 թ., իսկ Գագիկը՝ 328 թվին (էջ 352), նշանակում է Դերենիկը սպանվել է հայոց 335 թ. (326+9, 328+7)։ Իսկ հայոց 335 թ. համընկնում է 19/IV 886 թ.— 18/IV. 887 թ. (Ed. Dulaurier, Recherches sur la chrondogie armenienne, t. Ier էջ 383)։ Եվ որովհետև Դերենիկը «ել գնաց...ի ծուաշ գաւառ ձմերել յաւանին Մառական» (էջ 364, հմմտ. «Պատմութիւն Շապհոյ Բագրատունւոյ», հրատ. Գ. Տեր-Մկրտչյան և Մեսրոպ եպիսկոպոս, Էջմիածին, 1921, էջ 69), այսինքն ուշ աշնանը, ինչպես ենթադրել է Մարկվարտը, և այդ ժամանակ էլ սպանվել, ապա այդ կարող է լինել միայն 886 թվի ուշ աշնանը, քանի որ հայոց 335 թ. վերջին եզրը հասնում է 887 թ. գարնան սկզբները։ Սակայն, Թ. Արծրունու մի այլ վկայությամբ Դերենիկի սպանությունը պետք է եղած լինի 885 թ. ուշ աշնանը։ Այսպես, վերևում նշեցինք, որ ըստ Թ. Արծրունու, Դերենիկի ավագ որդին՝ Աշոտը ծնվել է հայոց 326 թ., սակայն մի այլ տեղ, նա, հակասելով իր իսկ ցուցմունքին, նույն Աշոտի ծննդյան մասին այլ թիվ է տալիս. «Սորա (Աշոտի) ամք ձգեալ լինին յՅԻԵ թուականէն Հայոց. լեալ ամաց ԻԹ՝ փոխի յաշխարհէս յամսեանն արեգ, որ օր Դ էր ամսոյն յաւուր երկուշաբաթւոջ ի յիններորդ ժամու...» (էջ 399)։ Այս ամբողջից վերցնում ենք վկայության սկզբի մասը, ըստ որի Աշոտը ծնվել է հայոց 325 թվին և որովհետև հոր՝ Դերենիկի սպանության ժամանակ Աշոտը 9 տարեկան էր, նշանակում է սպանությունը տեղի է ունեցել հայոց 334 թ., այսինքն 885 թ. ուշ աշնանը։ Ինչպես տեսնում ենք, Մարկվարտը Դերենիկի սպանությունը 887 թ. կասկածանքով է նշում, իսկ ուրիշները (Մլակեր, Լեո) այդ վկայակոչում են որպես անառարկելի ճշմարտություն։ Սակայն, ինչպես վերևում ցույց տվինք, իր՝ Թ. Արծրունու վկայությամբ, այդ սպանությունը մի դեպքում տեղի է ունեցել 886 թ., մի այլ դեպքում՝ 885 թ.։ Հետևապես, Մարկվարտի օգտագործած Թ. Արծրունու վկայությունը չպետք է վերցնել անառարկելի, քանի որ նա, ինչպես տեսանք, հակասում է ինքն իրեն*։

Հենց վերջերս պատմագիտական մի աշխատության մեջ Աշոտ Ա-ի թագավորության ժամանակի մասին առաջ է քաշվել հետաքրքիր տեսակետ։ Աշխատության հեղինակ պատմական գիտ. թեկնածու Բ. Ն. Առաքելյանը Շիրակավանի ժողովը նշելով 869 թ. („Гарни", I, էջ 85) գրում է. „Нам кажется, что основной задачей Ширакаванского собора, созванного, как свидетельствуют источники, Ашотом Багратуни в своей резиденции, было провозглашение Ашота царем Армении... *Воцарение Ашота Багратуни в дни Ширакаванского собора подтверждается также другими* сведениями...", նույն տեղում, էջ 86 (ընդգծումը մերն է—Վ. Հ.)։ Այստեղ հեղինակը նկատի ունի Սյունյաց Մա-

* Այս կապակցությամբ անհրաժեշտ ենք համարում նշել նաև հետևյալը. Թ. Արծրունու առանձին վկայությունները ոչ միայն երբեմն հակասում են իրար, ինչպես ցույց տվինք վերևում, այլև չեն հաստատվում նրա պատմության շարունակողի տվյալներով. օրինակ, ըստ Թ. Արծրունու Աշոտ Ա-ի դուստր Սոֆին, իր ամուսնու՝ Դերենիկի սպանությունից հետո «կեցեալ... զտարի մի և զամիսս Ը՝ յաւելաւ առ հարս իւր...» (էջ 369), մինչդեռ Թ. Արծրունու պատմության շարունակողի (Անանուն) համաձայն Սոֆին մահացել է իր ամուսնու սպանությունից յոթ ամիս հետո (էջ 432, հմմտ. նաև այս երկուսի տվյալները Աշոտ Ա-ի մահվան մասին, էջ 370 և 432)։ Ինչպես դժվար չէ նկատել, Թ. Արծրունու տվյալների նկատմամբ նորից առաջանում է կասկածանք, հետևապես չի կարելի մի հեղինակի վկայությունը, առանց ուրիշ աղբյուրներով ստուգելու, վստահելի համարել, ինչպես վարվում են Մարկվարտը, Մլակերը և ուրիշները ու այն ներկայացնել ճշմարտության որոշակի եզրեր ունեցող մի իրողություն։

րիամ իշխանուհու Սեանի 874 թ. և Աշոտ Ա-ի կնոջ Կատրանիդեի 879 թ. արձանագրությունները, որոնցից առաջինում Աշոտ Ա-ն հիշվում է թագավոր, իսկ երկրորդում Կատրանիդեն՝ թագուհի: Եվ ապա ընկ. Բ. Առաքելյանը եզրափակում է. „... в 886 г. оно (армянское царство—В. А.) было признано не только арабским халифатом, но и Византией. Таким образом армянское царство было фактически восстановлено в 869 г., но признано соседними державами лишь в 885 году, когда арабский халиф Абул-Аббас Ахмед Эл-Мутамид и византийский император Василий I послали корону Ашоту I...“ (Նույն տեղում, էջ 87):

Ընկ. Բ. Ն. Առաքելյանի այն տեսակետը, թե Աշոտ Ա-ն դե-ֆակտո թագավոր է եղել ավելի վաղ և հետագայում միայն դե-յուրե հռչակվել թագավոր, միանգամայն ճիշտ միտք է: Սակայն կուզենայինք նշել, որ Աշոտ Ա-ն դե-ֆակտո թագավոր եղել է ոչ թե 869 թվից, ինչպես կարծում է հեղինակը, այլ ավելի վաղ: Ընկ. Բ. Ն. Առաքելյանի վերևում շարադրված դրույթներից կվերցնենք երեքը՝ Շիրակավանի ժողովն արդյոք 869 թվին է տեղի ունեցել, Շիրակավանի ժողովն արդյոք խնդիր է ունեցել Աշոտ Ա-ին թագավոր հռչակելու, վերջին այս դրույթն արդյոք հաստատում են վերևում հիշված 874 և 879 թվերի արձանագրությունները:

Նախ առանց փաստերի և հիմնավորման է նշվում Շիրակավանի ժողովը 869 թ.: Միայն այսպիսի մի վկայություն տալիս է այդ դեպքերից չորս դար հետո ապրող Վ. Արևելցին (էջ 112), որի տեղեկությունները հակասում են պատմական փաստերին: Ինչպես հայտնի է, Կ. Պոլսի պատրիարք Փոտի հատուկ նամակն ուղղված իշխանաց իշխան Աշոտին, վերաբերում էր հունական և հայկական եկեղեցիների դավանաբանական միության խնդրին: Այդ հարցի քննության համար հրավիրվեց Շիրակավանի ժողովը, որը, ինչպես ենթադրում է Մ. Օրմանյանը, Աշոտի անունով մերժեց այդ առաջարկը: Ամբողջ հարցն այն է, որ Փոտի նամակը, Շիրակավանի ժողովը և Աշոտի պատասխանը պետք է լինեին մինչև 867 թ., որովհետև Փոտը Կ. Պոլսի պատրիարքության աթոռից հեռացվեց 867 թ. և կրկին հաստատվեց իր պաշտոնում 877 թվին, երբ հայոց կաթողիկոս և Շիրակավանի ժողովի նախագահ Զաքարիա Ձագեցին մահացած էր: Այսպիսով, սխալ կկատարենք, եթե Շիրակավանի ժողովը դնենք 869 կամ 867 թվերին: Մատենագրական մի վկայությամբ Շիրակավանի ժողովը տեղի է ունեցել 862 թվին: Վենետիկի Մխիթարյան մատենադարանի ձեռագրերից մեկը կոչվում է. «Հաւաքումն բանից նախնեաց», որի առաջին փաստաթուղթը վերնագրված է. «Թուղթ Փոտայ պատրիարքի Յունաց՝ առ Զաքարիա կաթողիկոս Հայոց»: Այս նամակի վերջում նշված է հետևյալ հիշատակարանը. «Յերեք հարիւր ԺԱ թուականութեանն Հայոց առաքեաց Փոտ Կոստանդնուպօլսոյ հայրապետն զՎահան Նիկիոյ արքեպիսկոպոսն ի Հայս առ Զաքարիա Հայոց Մեծաց կաթողիկոս, որ արար ժողով ի Շիրակուան՝ եպիսկոպոսաց բազմաց և կրօնաւորաց՝ առաջի Աշոտոյ Հայոց սպարապետին, քանզի անդ նստէր ի բանակի ազատագունդ զօրօք իւրովք, զոր գումարեալ էր վասն հիւսիսական կողմանց ապստամբութեանն...» (ԲՑՎ, Բ, էջ 1069—1070): Միևնույն ժողովածուի երկրորդ փաստաթղթում, որը վերաբերում է Շիրակավանի ժողովի որոշումներին, երկրորդ անգամ ժողովի տարեթիվը նշվում է 862 թ. (Նույն տեղում, էջ 1070): Այս թիվն է ընդունում նաև XVIII դ. մի ժամանակագիր (տես ՄԺ, 1, էջ 338): Սույն հարցին անդրադարձող ուսումնասիրողները ևս ընդունել են 862 թ. կամ IX դ. 60-ական թվականների սկզբներին (Աբել Մխիթարյանց, Պատմութիւն ժողովոց Հայաստանեայց եկեղեցւոյ, Վաղարշապատ, 1874, էջ 101, Ф. М. Россейкин, Первое правление Фотия патриарха Константинопольского, «Արարատ», 1917, էջ 810, ակադ. Հ. Մանանդյան «Խորենացու առեղծվածի լուծումը», Երևան, 1934, էջ 150 և ուրիշներ):

Այսպիսով, առկա եղած փաստերը առայժմ հաստատում են, որ Շիրակավանի ժողովը տեղի է ունեցել ոչ թե 869, այլ 862 թվին:

Թեև Շիրակավանի ժողովի և նրա որոշումների մասին եղած տեղեկությունները ժլատ են, սակայն մի բան հաստատ է, որ այդ ժողովը զբաղվել է միայն դավանաբանական հարցերով: Մի ժողով, որին մասնակցել են միայն «եպիսկոպոսաց բազմաց և կրօնաւորաց» հազիվ թե թագավոր հռչակելու իրավասություն ունենար:

Վերևում նշված «Հաւաքումն բանից նախնեաց» ձեռագրի երկրորդ փաստաթուղթը կոչվում է. «Պատճէն ժողովոյն Շիրակվանի հանդերձ հաւատոյ դաւանութեամբ», որի վերջում գրված է. «Վերջ պատճէնի ժողովոյն Շիրակվանու, որ գումարեցաւ յաղագս քննութեան հաւատոց առ Զաքարիա կաթուղիկոսիւ՝ յամի տեառն 862» (ԲՑՎ, Բ, էջ 1070):

Վ. Արևելցին ակնարկում է և հաստատում, որ այս ժողովը դավանաբանական հարցով զբաղվել (էջ 112)։

Այսպիսով, այն տեսակետը, թե Շիրակավանում հրավիրված ժողովի հիմնական խնդիրն է եղել Աշոտ Բագրատունուն Հայաստանի թագավոր հռչակելը, չի հաստատվում սկզբնաղբյուրների տվյալներով։

Շիրակավանի ժողովի օրերին Աշոտ Բագրատունու թագադրությունը հաստատող վկայությունների շարքում, ընդ. Բ. Առաքելյանը հիշում է 874 և 879 թվերի արձանագրությունները, սակայն վերջիններիս վկայություններն այդ դրույթի հաստատման համար իզուր են օգտագործված, որովհետև դրանք Շիրակավանի ժողովի և նրա առաջ դրված խնդիրների մասին ոչինչ չեն հաղորդում և բոլորովին այլ բովանդակություն ունեն։ Նյութական կուլտուրայի այս երկու հուշարձաններից առաջինում, Սյունյաց Մարիամ իշխանուհու 874 թ. արձանագրության մեջ, Աշոտ Բագրատունին թագավոր է հիշվում ընդ. Կ. Ղաֆադարյանի ընթերցման մեջ (տես «Հայկական գրի սկզբնական տեսակները», Երևան, 1939, էջ 68), մինչդեռ պրոֆ. Լ. Մելիքսեթ-Բեկի ընթերցման բնագրում Աշոտ Բագրատունին հիշվում է լոկ Աշոտ, առանց «թագավոր» տիտղոսի (Л. Меликсет-Беков, Новооткрытая надпись на Севане от 874 г. [см. сборник „Памяти акад. Н. Я. Марра", Москва – Ленинград, 1939, էջ 413])։

Այս արձանագրությունը բերում է նաև Ստ. Օրբելյանը իր Պատմության մեջ, որտեղ Աշոտը հիշված է նույնպես իշխանաց իշխան (էջ 174)։

Իսկ երկրորդ արձանագրության մեջ (879 թ.) Աշոտ Ա-ի կինը* իրեն կոչում է Հայոց թագուհի։ Քանի որ IX դարի 70-ական թվերի երկու արձանագրության մեջ առկա են նման վկայություններ, ուստի ընդ. Բ. Առաքելյանը ենթադրում է, թե Աշոտ Ա-ն պետք է թագավոր հռչակված լիներ Շիրակավանի ժողովում։ Սակայն այս երկու արձանագրությունների, մանավորապես երկրորդի նշանակությունը, չպետք է գերագնահատել և կարծել, որ եթե Կատրանիդեն 879 թ. իրեն կոչել է Հայոց թագուհի, նշանակում է Աշոտը մինչև այդ (հատկապես Շիրակավանի ժողովում) հռչակվել է թագավոր։ Կարծում ենք, տարօրինակ բան չի ստացվի, եթե արձանագրություններից մեզ առաջարկած հետևությունը չհանենք, այսինքն մի մեծ իշխանի կինը իրեն կարող էր թագուհի կոչել, թեև ամուսինը կարող էր թագավոր չլինել. օրինակ, հայտնի փաստ է, որ Իվանե Զաքարյանը թագավոր չի եղել, սակայն նրա կինը, Խոշակը Շիրակավանի 1228 և 1231 թվերի արձանագրությունների մեջ իրեն հիշում է «Վրաց և Հայոց թագուհի» (Կ. Կոստանյանց, Վիմական տարեգիր, ՍՊԲ, 1913, էջ 71, 74)։ Թեև այս արձանագրությունները ոչ մեկին հիմք չեն տալ Իվանեին վրաց և հայոց, կամ լոկ հայոց թագավոր համարելու։

Կարող էր պատահել, որ Աշոտ Ա-ն թագավոր չհռչակված, նրա կինն արձանագրության մեջ իրեն հիշեր թագուհի։ Այո, կարող էր, որովհետև, թագուհի կարող էր կոչվել ոչ միայն թագավորի կինը, այլև քույրը, աղջիկը, այդպիսի բազմաթիվ փաստեր ունենք վիմագիր արձանագրություններում։ Հնարավոր է, որ Կատրանիդեն թագավորական ընտանիքից սերվելու պատճառով, որի մանրամասնությունները առայժմ չգիտենք, իրեն կոչել է թագուհի։ Երկրորդ՝ 862 թվին Աշոտ Բագրատունին դառնալով իշխանաց իշխան, հայ նախարարների մեջ դառնում է առաջինը և երկրի փաստական տերը։ Այդ պաշտոնն ստանձնելուց հետո, Աշոտ Բագրատունու իրավական և քաղաքական ֆունկցիաների մասին ահա թե ինչ է գրում նրան ժամանակակից պատմիչ Հ. Դրասխանակերտցին. «Ապա ոստիկան ոմն ի Հայս առաքեալ, որ Ալի Արմանի անուանիւր՝ ըստ հրամանի ամիրապետին իշխան իշխանացս Հայոց զնա կացուցանէր, բազում զգեստիւք և արքունական պատուով ճոխացուցեալ ի նա հաւատալով զսակս Հայոց և զամենայն բեկար արքունի։ Եւ այսպէս պատուականագոյն և առաջին նա գտեալ եղև քան զամենայն նախարարութիւնս Հայոց. և

* Ի դէպ, այս արձանագրության մեջ չի ասվում, թե Կատրանիդեն իրոք Աշոտ Ա-ի կինն է, մինչդեռ ուրիշները, օրինակ՝ Մարկվարտի «Բագրատունեաց ծագումը» աշխատության թարգմանիչ Հապոզյանը, որի աղբյուրը մեզ անհայտ է, Աշոտ Ա-ի կնոջ անունը նշում է Խոսրովիդուխտ (Մարկվարտ, Բագրատունեաց ծագումը, Վիեննա, 1915, էջ ԺԵ)։ Ենթադրում ենք նաև, որ այս արձանագրության թվականը սխալ է, և այն պետք է կարդալ ՅԽԸ փոխանակ ՅԻԸ, այն դեպքում կստանանք ոչ թե 879, այլ 899 թ. հետևապես արձանագրության մեջ հիշված Կատրանիդե թագուհին կլինի ոչ թե Աշոտ Ա-ի կինը, այլ Սմբատ Ա-ի։

ամենեքեան զաշխնո ընդ նմա գնէին՝ որպէս արդարև ընդ թագաւորական զարմի։ Այլև ի մտի ամենեցուն եղեալ, զի թէ դէպ ինչ պիտոյից գացի՝ նաև ի տոհմ իւր արժանի լիցին մատչել ի թագաւորութեան ցեղս զնոսա որոշել յայլոց նախարարութեան ցեղից» (էջ 133)։

Իսկ Վ. Արևելցին Աշոտ Բագրատունու մասին ոչ առանց հիմքի գրում է. «Ի չէր ինչ պակաս բայց ի թագէ...» (117)։

Ըստ երևույթին, այս հանգամանքը նկատի ունենալով էլ, հայոց կաթողիկոսների մի ցանկում, կազմված 997 թվին, հեղինակն Աշոտ Ա-ի թագավորությունը նշում է 864 թվից, դրա տակ հասկանալով նրա իշխանաց իշխան դառնալը (№ 7615, էջ 218ա)*։

Վերոհիշյալ վկայությունները, ինչպես տեսնում ենք, ցույց են տալիս Աշոտ Բագրատունու դերը որպես չթագադրված թագավորի՝ հայոց նախարարների մեջ։ Հենց այս հանգամանքն էլ, ըստ երևույթին, նկատի է ունեցել նրա կինը և 879 թ. արձանագրության մեջ իրեն կոչել թագուհի։

Այս կապակցությամբ չպետք է մոռանալ լեզվի պահպանողական լինելու ընդունակությունը։ Աշոտ Ա-ն երկու տասնյակ տարիներից ավել Հայաստանում եղավ իշխանաց իշխան, այդ պատճառով էլ նույնիսկ թագավոր դառնալուց հետո էլ նրան հիշում են այդ տիտղոսով։ Օրինակ. Մուսուլի իշխող Հարիբը Սմբատ Ա-ին դիմում է. «...Առ Սըմպատ որդի Աշոտոյ իշխանին Հայոց» ձևով (Շ. Բագրատունի, էջ 72)։ Մեր կարծիքով, դրանով պետք է բացատրել ինչպես Ղազարյան Ավետարանի 887 թ. հիշատակարանում «յիշխանութեանն Աշոտի իշխանաց իշխանի» (Մոսկվա, 1899, էջ Գ) հիշատակման ձևը, այնպես էլ Թ. Արծրունու պատմության վերևում նշված գլխում (III, Ի) Աշոտ Ա-ին և իշխանաց իշխան (3 անգամ), և ուղղակի Աշոտ (նույնքան անգամ), և թագավոր (2 անգամ) միաժամանակ հիշելը։

Այսպիսով, վերևում ողջ շարադրածից հանգում ենք հետևյալին՝ Աշոտ Բագրատունին 862 թվից հանդիսացել է Հայաստանի ամենախոշոր ֆեոդալը և ունեցել է երկրի կառավարման փաստական իշխանություն, իսկ թագավոր հռչակվելու իրավաբանական ակտը տեղի է ունեցել 884 թ. օգոստոսի 26-ին, իսկ այնուհետև հարևան երկրներն Աշոտ Ա-ին ճանաչել են որպես թագավոր։ Հետևապես, 884 թվականն էլ պետք է ընդունել որպես Բագրատունիների դինաստիայի հիմնադրման և Աշոտ Ա-ի թագավորության սկիզբ։

46. Եթե խոսքը վերաբերում է Տարոնի իշխան Բագարատ Բագրատունուն, ապա նա իշխանաց իշխան նշանակվեց հոր՝ Աշոտ Մսակերի մահից (826 թ.) հետո և մահացավ 851 թվին F. Justi „Iranisches Namenbuch", Marburg, 1895, էջ 58, 417), հետևապես սրան չի կարող վերաբերվել այս տեղեկությունը։ Իսկ եթե այն վերաբերում է Բագրատունիների դինաստիայի հիմնադրմանը և «Բագարատայ» բառը թյուրիմացություն պետք է համարել, որը և ավելի հավանական է, ապա Արշակունիների անկումից (428 կամ 429) մինչև Բագրատունիների հանդես գալու 434 տարվա ընդմիջումը կհամապատասխանի 862/863 թվերին, երբ Աշոտ Ա-ը նշանակվեց իշխանաց իշխան և ապա դարձավ թագավոր։ Նշանակում է, մեր հեղինակը Աշոտ Ա-ի իշխանաց իշխան դառնալը համարում է Բագրատունիների, որպես դինաստիայի հանդես գալու սկիզբ, որը և ճիշտ է, որովհետև սկսած 862—863 թթ. Աշոտ Ա-ը դառնալով իշխանաց իշխան, կատարում էր թագավորական ֆունկցիաներ (այս մասին տես վերևում, ծանոթ. 45, Б. Аракелян. Гарни, результаты раскопок 1949—1950, էջ 85)։

47. Գրչագրական սովորական սխալ, պետք է լինի «Ե» (5)։

48. Սմբատ Ա-ի սպանությունն իրականից նշված է մեկ տարի շուտ։ Սրա նահատակությունը Հայսմավուրքում դրված է 914 թ. ապրիլի 16-ին (№ 4618, թերթ 378, իսկ մի այլ խմբագրությամբ՝ նույն թվականի մայիսի 8-ին, 1834 թ. Օրթագյուղ, էջ 206—207)։

Բնագրի այն վկայությունը, թե Սմբատ Ա-ի սպանությունից հետո Յուսուֆը, որպես նրա հաջորդ, հայոց թագավոր է կարգել Գագիկ Արծրունուն, միտումնավոր է։ Այդ

---

[1] Ի դեպ, մի շարք մատենագիրներ 862 թ. էլ ընդունում են որպես Բագրատունիների իշխանության (իմա Հայոց թագավորությունը վերականգնելու) սկիզբ. օրինակ, Ս. Անեցի, էջ 95, Կ. Գանձակեցի, էջ 75, Մխ. Այրիվանեցի, էջ 55, տես վերևում, էջ 129, նաև Հովհ. Ավետարանի Գրիգոր Տաթևացու լուծմունքի մեջ, № 1394, էջ 5բ և այլն։ Սրանք բոլորն էլ Արշակունիների անկումից (428 թ.) մինչև Բագրատունիների թագավորության հաստատումն ընդունում են 434 տարի, այսինքն 428+434=862։

կարծիքը պատկանում է Արծրունյաց տոհմի պատմիչ Թ. Արծրունուն։ Վերջինս նշելով Հայաստանում Յուսուֆի զորքերի կատարած ասպատակությունները և Սմբատ Ա-ի Կապույտ բերդում պաշարված Թալը, ավելացնում է. «զկնի սակաւ աւուրց ըմբռնէ զնա իբրև զանզօր աղայ։ Եւ տեսեալ եթէ ոչ ոք է, որ կարողանայ տիրել և ունել զաշխարհս Հայոց, բայց միայն Գագիկ... թագաւորեցուցանէ զնա ի վերայ ամենայն Հայոց» (էջ 466 և շար.)։ Իրականում, Գագիկ Արծրունին թագավոր դարձավ ոչ թե Սմբատ Ա-ի մահից հետո, այլ 908 թ., ոչ թե ամբողջ Հայաստանի, այլ միայն Վասպուրականի։

49. Տես և համմտ. Վ. Արևելցի, էջ 122. մանրամասն՝ Ասողիկ, էջ 187, Կ. Գանձակեցի, էջ 82։ Սմբատ Բ-ն, ինչպես հաղորդում է ժամանակակից պատմիչ Ասողիկը, իշխանության գլուխ անցել է 977 թ. Աշոտ Գ-ի մահվան օրը (էջ 187, Վ. Արևելցի, էջ 122)։

50. Տես Ասողիկ, էջ 255։

51. Տես Վ. Արևելցի, էջ 123։

52. Բնագրում «Թագաւորի» ձևով։

53. Վ. Արևելցին նշում է չորսի անունը (էջ 126)։

54. Տես Ա. Լաստիվերացի, Պատմութիւն, 1901, Վենետիկ, էջ 21—22, առավել մանրամասն՝ Մ. Ուռհայեցի, էջ 46—49։

55. № 2174 բնագրում այս հատվածի ժամանակագրական հաջորդականությունը խախտված է, մանրամասն տես Մ. Ուռհայեցի, էջ 97—98։

56. Համմ. Մ. Ուռհայեցի, էջ 53։ Վերջինս մի այլ տեղ (էջ 52) արևի խավարումը նշում է հայոց ՆՀԱ (1022) թվի հոկտեմբերին։ Սակայն, ինչպես աստղաբաշխական տվյալներն են ցույց տալիս, ոչ 1022 թ. հոկտեմբերին և ոչ էլ 1029 թ. հոկտեմբերի 5-ին արևի խավարում տեղի չի ունեցել։ Համաձայն պրոֆ. Օպպոլցերի 1022 թ. արևը խավարել է փետրվարի 3-ին և հուլիսի 31-ին, իսկ 1029 թ.՝ մարտի 17-ին և սեպտեմբերի 10-ին (Canon der Finsternisse, էջ 212, 214)։ Այս կապակցությամբ, դեպքերին ժամանակակից և ականատես պատմիչ Ա. Լաստիվերացին ուշագրավ և մանրամասն հետևյալ տեղեկությունն է հաղորդում. «ի սորա (Միխայիլի—Վ. Հ.) ի սկզբան թագաւորութեանն խաւարեցաւ արեգակն յամսեանն արաց, յաւուրն ուրբաթու ի դառնալ աւուրն, էր և թուականիս մերոյ չորեք հարիւր ութսուն և երկու ամ։... որ եղև իսկ յաւուրս մեր... զոր տեսաք աչօք մերովք...» (էջ 38)։ Դյուլորիեի տվյալների համաձայն, արաց ամիսը 1033 թ. կընկնի օգոստոսի 10-ից մինչև սեպտեմբերի 9-ը (որովհետև հայոց 482 թ. նավասարդի 1-ը կընկնի 1033 թ. մարտի 13-ին „Recherches sur la chronologie armenienne“ t. Ier, էջ 386)։ 1033 թ. օգոստոսին ուրբաթը կլինի ամսի 3-ին, 10-ին, 17-ին, 24-ին և 31-ին։ Սակայն, ինչպես պրոֆ. Օպպոլցերն է ցույց տալիս, 1033 թվի և մոտակա տարիներում (1031—1039 թթ.) օգոստոս ամսին արևը չի խավարել, իսկ 1033 թ. այն տեղի է ունեցել հունվարի 4-ին, հունիսի 29-ին և դեկտեմբերի 24-ին (նույն տեղ, էջ 214)։ Այսպիսով, ինչպես հաշտեցնենք ականատես Ա. Լաստիվերտցու վկայությունը, մաթեմատիկական ստույգ հաշվումների հետ։ Բանն այն է, որ 1033 թ. հունիսի 29-ը ևս ուրբաթ է, թեև այդ ամիսը և օրը Դյուլորիեի համաձայն չի մտնում հայոց 482 թ. արաց ամսի մեջ, բայց կարծում ենք, որ Ա. Լաստիվերացին, ամենայն հավանականությամբ, իր վկայության մեջ նկատի է ունեցել 1033 թ. հունիսի 29-ը։ Եթե ճիշտ է սա, նշանակում է Դյուլորիեի տված շարժական տոմարի հաշվումների սկզբունքից բացի, մեր նախնիները, ինչպես, օրինակ՝ Ա. Լաստիվերտցին, տոմարական հաշվումների ինչ որ մի այլ, առայժմ մեզ անհայտ սկզբունք էլ են գործածել, ըստ որի էլ 1033 թ. հունիսն ընկել է հայոց 482 թ. արաց ամսի մեջ, մինչդեռ մեզ հայտնի հաշվումներով այդպես չի ստացվում։

Նախորդ հեղինակներից վերցնելով Մխ. Այրիվանեցին («Պատմութիւն Հայոց», Մոսկվա, 1860, էջ 58) 1031—1041 թթ. արանքում գրում է. «արեգակն խաւարեցաւ ի քաղոց 18 յուրբաթու ի միջօրէի...» համաձայն շարժական տոմարի քաղոց 13-ը 1031 թ. կընկնի հուլիսի 24-ին, 1032—1035 թթ.՝ հուլիսի 23-ին, 1036—1039 թթ.՝ հուլիսի 22-ին, իսկ 1040—1041 թթ.՝ հուլիսի 21-ին։ Թեև պրոֆ. Օպպոլցերի հաշվումները վերոհիշյալ և ոչ մի օրում արևի խավարում չեն նշում (նույն տեղ, էջ 214) և այդ օրերից և ոչ մեկն էլ ուրբաթ չէ։ Այստեղ ևս մի ինչ որ անճշտություն կա։

57. Երկու տարբերակում էլ «Գուգիկ» ձևով։ Նշված տարեթիվը սխալ է, պետք է լինի ՆՂ (1041) թիվ։ Ժամանակակցի հիշատակարանը տես Ալիշան—«Շիրակ», Վենետիկ, 1881, էջ 50, համմտ. Մ. Ուռհայեցի, էջ 84)։

58. Բնագրում «կառուած» ձևով։

59. Իմա՝ Դիոգեն Ռոմանոս, բյուզանդական կայսր։

60. Բնակավայրեր Կապադովկիայի Կեսարիայից մի փոքր արևելք։ Այս երկու գավառների տեղադրման մասին մանրամասն տես Ա. Ալպոյաճեան «Պատմութիւն հայ Կեսարիոյ», հա. Ա, Գահիրէ, 1937, էջ 428—433։

61. Բնագրի 237ր էջի վերին լուսանցքում, կարմիր թանաքով, գրված է. «Վրդովումն Հայոց աշխարհի»։

62. Ուսումնասիրողների մեծ մասն այս վայրը նույնացնում է Կեսարիայի հարավում, Սարոս գետի մեջ թափվող Զամանթի վտակի եզերքին գտնվող Սամանդըայի հետ (մանրամասն տես նույն տեղ, էջ 424—428)։

63. Մ. Ուռհայեցին այն կոչում է բերդ (էջ 468) Լիկանդոնի մոտերքում, Երրորդ Հայքում (մանրամասն տես նույն տեղ, էջ 419—421)։

64. Ա. Ալպոյաճյանի կարծիքով Ամասիա անունը գրչագրական սխալ է և պետք է լինի Ավարա կամ Ամարա (նույն տեղ, էջ 435), իսկ վերջինս գտնվում է Եփրատի ճյուղերից մեկի՝ Թոքման-սուի և Գալըգլը-սուի միացման վայրում (նույն տեղ, էջ 421)։

65. Ենթադրաբար ընդունում են Կապադովկիայի Կոմանան, Հաճընի և Կոկիսոնի (Կեոք-սու) հյուսիսային կողմը (մանրամասն տես նույն տեղ, էջ 434—435)։

66. Բագրատունիների դինաստիայի վերացման տարեթիվը մեր պատմիչները տարբեր են հասկանում և նշում, օրինակ՝ Սմբատը այն համարում է 1043 թիվը, երբ բյուզանդացիք Գագիկ Բ-ի ժամանակ գրավեցին Անին (էջ 63), Մ. Ուռհայեցին այդ բանի համար նկատի ունի Գագիդ Բ-ի սպանությունը՝ 1079 թ. (էջ 226), իսկ Ա. Անեցին՝ 1065 թ. սելջուկների կողմից Անիի գրավումը (էջ 112)։ Մեր հեղինակն ըստ երևույթին հետևել է Ս. Անեցուն։

67. Բագրատունիների վերջին թագավորը Գագիկ Բ-ն է։

68. Բնագրում «և դարձեալ եկն»-ը կրկնված է։

69. Իմա, Շամշոյլաէ (ճիշտը՝ Սամշվիլդե) Վրացական ՍՍՌ-ում Խրամ գետի ձախափնյա վտակներից մեկի վրա, Դմանիսից մոտավորապես 26 կիլոմետր արևելք։

70. Ս. Անեցու հաղորդման համաձայն (էջ 112) Անին գրավել են 1065 թ. օգոստոսի 16-ին, երկուշաբթի օրը։ Տես Մծ, 1, էջ 29, ծանոթ. 19։

71. Իմա խաչակիրների առաջին արշավանքը։

72. Բնագրում «յայնո» ձևով։

73. Իկոնիայի սուլթան Ղլիճ — Արսլան Գավուդի (1092—1107 թթ.) անվան աղավաղումն է։

74. Նույնությամբ տես Վ. Արևելցի, էջ 148։ Այս վկայությունը № 2151 բնագրում գրված է ՆՄ թվականի ներքո։

75. Սխալ է նշված տարեթիվը. տես և համմ. մյուս տարբերակները։

76. Շահի Արմեններին վերաբերող ամբողջ հատվածը տես Վ. Արևելցի, էջ 162։ «Շահի-Արմէնն տիրեաց ի Պարս» նախադասությամբ, կարծում ենք, հեղինակը նկատի ունի Նասիր-ադ-դին Սուկման II-ի նախորդների նվաճումները։ Վերջինս հանդիսանում էր Սուկման ալ Կուտբիի թոռը, ինչպես ճիշտ նշում է Վ. Արևելցին (էջ 162)։

77. Իրականում Շահի-Արմեն Նասիր-ադ-դին Սուկման II-ը, ինչպես հաղորդում է Իբն Ալաթիրը, ամուսնացած էր Էլդիգուզի տիրոջ Սալտուխ բեն Ալիի քրոջ՝ Շահբանուարի հետ։ Այդ պատճառով, երբ 1161 թ. Սալտուխի և վրացիների միջև կռիվ տեղի ունեցավ և նրա բանակը վերջիններիցս ջախջախվեց ու ինքն էլ գերվեց, Սուկման II-ը միջնորդեց և հոխ նվերներ ուղարկելով վրաց թագավոր Գիորգի III-ին գերությունից ազատեց Սալտուխին («Թարիխ էլ Քամել», հտ. 11, Կահիրե, 1891, էջ 125—126, արաբ.)։

78. Խոսքը վերաբերում է Գանձակի աթաբեկ Շեմս-ադ-դին Էլդիգուզին (1136—1172 թվերին)։ Էլդիգուզին վերաբերող այս վկայությունը ստույգ չէ։ Վերջինս հանդիսանում էր ոչ թե Զահիր-ադ-դին Իբրահիմ Շահ-Արմենի աթաբեկը և ժամանակակիցը, այլ սոսկ ժամանակակիցը, սրա որդի Նասիր-ադ-դին Սուկման II-ի։

79. Այս վկայությունը սխալ է, որովհետև Նասիր Սալահ-ադ-դին Յուսուֆը (Սալահդինը) մահացել էր 1193 թ. մարտի 4-ին։ Ուստի բնագրի «ՋԺԽԵ»-ն պետք է ուղղել «ՋԺԻԵ», ինչպես № 2174 բնագրում է, այդ սխալն ընդունելով «Ի» և «Խ» տառերի շփոթության արդյունք։

80. Նույնությամբ տես Վ. Արևելցի, էջ 171։

81. Բնագրում երկու տառ պակասում է, նկատի ունենալով № 6617 տարբերակի

տեղեկությունը, այդ բառը Թերևս կարող ենք կարդալ «Սեհ(արե)պ», Թեև № 3425 տարբերակում պարզ գրված է «Սեհպս»։

82. Տես Վ. Արևելցի, էջ 176—177։

83. Տես ՄԺ, 1, էջ 37, 51, ծանոթ. 9։

84. № 3423 տարբերակն այստեղից պակասում է, մի քանի Թերթեր կորչելու պատճառով (տես ձեռագիրը, էջ 29բ)։

85. Տես և համա. Վ. Արևելցի. էջ 181, Կ. Գանձակեցի, էջ 154։ Վերջինիցս օգտվելով Զաքարիա Սարկավագը ևս հաղորդում է այդ մասին («Պատմագրութիւն», հտ. 3, Վաղարշապատ, 1870, էջ 11)։ Զաքարյանների տոհմի մասին տես Ա. Շահնազարյանի հոդվածը («Շողակաթ», Վաղարշապատ, 1913, էջ 66—83)։

86. Բացառությամբ Խլաթի գրավումից, Թացած վկայությունները նույնությամբ տես Վ. Արևելցի, էջ 181։ Խլաթի գրավման սույն վկայությունը կասկածելի է և դժվար է ասել, թե հեղինակը ումից է օգտվել։ Զաքարյաններն այն նվաճելու փորձ կատարեցին ավելի ուշ, XIII դարի առաջին տասնամյակում, օրինակ՝ Ստեփանոս Տարեգիրը նշում է 1209 թ. (ՄԺ, 1, էջ 38)։

87. Կարսի գրավման տարեթիվը ևս սխալ է, պետք է լինի ՈԾԵ (1206), տես Վ. Արևելցի (էջ 181), Ստեփանոս Տարեգիր (ՄԺ, 1, էջ 37)։

88. Նույնությամբ տես Վ. Արևելցի, էջ 181 182։

89. Պետք է լինի «Ե (5) ամաց», տես Վ. Արևելցի, էջ 183, № 6617-ի համապատասխան հատվածը։

90. Տես Վ. Արևելցի, էջ 183—184։

91. Վ. Արևելցու մոտ (էջ 186) «Կոտմտն» ձևով։ Տես և համա. ՄԺ, 1, էջ 37, 52, ծանոթ. 14։

92. Մանրամասն տես Կ. Գանձակեցի, էջ 192—194։

93. Տես Վ. Արևելցի, էջ 189։

94. Տես և համա. Կ. Գանձակեցի, էջ 190—192, Վ. Արևելցի, էջ 186։ № 2174 տարբերակից մի քանի Թերթ կորչելու պատճառով, բնագրում միտքն ընդհատվում է մինչև Հեթում Ա-ի 1254 թվի առաքելությունը Բաթու ղանի մոտ։

95. Բնագրի «[դեր]եզմանէն» բառից սկսած № 2174 ձեռագրի կորած հատվածը պահվել է № 3425 տարբերակում, այդ պատճառով հրատարակության բնագրում, որի հիմքը կազմում է № 2174 ձեռագիրը, լրացրինք № 3425 տարբերակով։

96. Տես Վ. Արևելցի, էջ 187—188։

97. Լեռ և դաշտ, գտնվում է պատմական Գուգարքի Կողբոփոր գավառում, հիմա ընկնում է Նոյեմբերյանի շրջանում։

98. Բնագրում «ի կաւ» ձևով, միտքն անիմաստ էր Թնում, ուստի ուղղեցինք ըստ № 0817 տարբերակի։

99. Իմա Ալա-ադ-դին Քայ-Քուբադ I (1219—1236 թթ.), Իկոնիայի սուլթան։

100. Խոսքը վերաբերում է Միջագետքում և Գամասկոսում իշխող Էյուբյանների ներկայացուցիչ Աշրաֆ Մուզաֆֆար ադ դին Մուսային։

101. Քամիլ Մուհամմեդ, Աշրաֆ Մուսայի (ծանոթ. 100) եղբայրը, իշխել է Եգիպտոսում 1218 -1238 թթ., Գամասկոսում՝ 1237—1238 թվերին (Լեն-Պուլ, էջ 60)։

102. Այս ամբողջ հատվածը տես Վ. Արևելցի, էջ 188—189։

103. Բնագրում «դքար» ձևով, ուղղեցինք ըստ № 3425 տարբերակի։

104. Ստեփանոս Տարեգրի հաղորդմամբ Ջալալեդինը Խլաթի վրա արշավել է երկու անգամ. նախ՝ 1226 թ. և 49-օրյա պաշարումից հետո Թողել է այն, և ապա 1230 թվին, որի ժամանակ էլ գրավել է այն (ՄԺ, 1, էջ 40, 57, ծանոթ. 39, 43)։ Սակայն մեր Մատենադարանի № 6196 Ճառընտիրի գրիչը, ժամանակակից այդ դեպքերին, ահա թե ինչ է գրում. «Ցայսմ ամի (1227 թ.—Վ. Հ.) Խորազմ շահն բազում զաւրաւ եւարեաց և անմարդ արար և անթիւ զաւրաւք պաշարեաց զԽլաթ և ունի ի մեծ նեղութիւն [որ և առ ի նոյն ամի]» (էջ 202բ)։ Անկյունավոր փակագծերում եղած վկայությունը գրված է բնագրի նույն էջի ներքևի լուսանցքում, միևնույն ձեռագրով։

105. Տես վերևում, ծանոթ. 99։

106. Տես ՄԺ, 1, էջ 39, 55, ծանոթ. 29։ 1215 թվին ընդօրինակված մի Ճառընտիրում ժամանակակցի մեկն ավելացրել է. «Ի թուիս ՈԿԸ (1219) մեռաւ թագաւորն Հայոց Լեոն...» (№ 947, էջ 161բ)։

107. Խոսքը, հավանաբար, վերաբերում է Իկոնիայի սուլթան Ալա-ադ-դին Քայ-Քուբադ I-ին։

108. Հմմտ. Վ. Արևելցի, էջ 180։ Գանձակի գրավման մասին տես նաև ՄԺ, 1, էջ 26, 30, ծանոթ. 30, էջ 40։

109. Տես Կ. Գանձակեցի, էջ 222։

110. Տես Վ. Արևելցի, էջ 189։

111. Տարբերակներից № 2151-ը ունի «Ի Սոխնոցն կոտորումն արար» ձևը. եթե ճիշտ է այս, նշանակում է «Սոխնոց»-ը պետք է լինի Երզնկայի շրջակայքի վայրերից մեկի անունը, իսկ եթե ճիշտ է մյուս երկու բնագրերի «ի սոխկոտոր» ձևը, ապա գրատակ, մեր կարծիքով, անկասկած, պետք է հասկանալ սոխի նման կոտորել, ջարդել, ժողովրդական դարձվածքը և ոչ թե այն նույնացնել Կոտոր կամ Կոտեր գավառի հետ, ինչպես վարվում են Անանունի հրատարակիչները, էջ 34, ծանոթ. 36։

112. Հմմտ. ՄԺ, 1, էջ 41։ Տես Վ. Արևելցի, էջ 193։

113. Տես Վ. Արևելցի, էջ 193։

114. Տես և հմմտ. Կ. Գանձակեցի, էջ 270։

115. Տես Վ. Արևելցի, էջ 194։

116. Տես Վ. Արևելցի, էջ 194, ՄԺ, 1, էջ 42, 58, ծանոթ. 58։

117. Բնագրում «Եւ ազգն» կրկնված է։

118. Տես Վ. Արևելցի, էջ 194—195։

119. Տես Կ. Գանձակեցի, էջ 306։ Այս մասին Կ. Գանձակեցին գրում է. «Աչօք մերոչ տեսաք, բայց բաղումք էին՝ որ հաւատարմացուցանէին, թէ ականատես լեալ եմք»։

120. Տես Վ. Արևելցի, էջ 195։

121. Տես Վ. Արևելցի, էջ 195, առավել մանրամասն Կ. Գանձակեցի, էջ 297—299։ Բնագիրն այս հատվածից հետո դարձյալ պահվել է № 2174 ձեռագրում և այն բերում ենք համաձայն վերջինիս։

122. Տես Վ. Արևելցի, էջ 195, առավել մանրամասն՝ Կ. Գանձակեցի, էջ 350—357։

123. Տես Վ. Արևելցի, էջ 195։

124. Խոսքը վերաբերում է Իկոնիայի սուլթան Իզզ-ադ-դին Քայ-Քավուզ II-ին (1245—1257 թթ., ըստ Լեն-Պուլի, էջ 128)։

125. Ալայան գտնվում է Սիր Ատանի աշխարհում (Ծովային Կիլիկիայի արևմտյան մասում), հնում կոչվել է Կոռակեսիոն։

126. Տես Վ. Արևելցի, էջ 195—196։ Ստեփանոս Տարեգիրը ևս այս դեպքը դնում է 1255—1256 թթ. (ՄԺ, 1, էջ 42, 43)։ Հուլավուն Ալամութը գրավել է 1256 թ. դեկտեմբերի 15-ին (տես ՄԺ, 1, էջ 59, ծանոթ. 62)։

127. Տես Վ. Արևելցի, էջ 196։

128. Սխալ է, պետք է լինի «Ղատա խանն», ինչպես մյուս երկու տարբերակներն են նշում։

129. Հմմտ. մյուս տարբերակը, ՄԺ, 1, էջ 43, 59, ծանոթ. 04։

130. Տես Վ. Արևելցի, էջ 197։

131. Դեպքերը շարադրված են Վ. Արևելցու պատմածին համապատասխան (էջ 197)։

132. Այստեղ Վ. Արևելցու վկայությունները պատմվում են երրորդ դեմքով. հմմտ. էջ 197—198։

133. Տես Վ. Արևելցի, էջ 200։

134. Այս, ինչպես և այլ վկայություններին (հատկապես № 6617 տարբերակում) երբեմն ավելացված է Կ. Գանձակեցու համապատասխան տեղեկությունները (հմմտ. էջ 377)։

135. Բնագրում «Փիթպուղան» ձևով։

136. Տես Վ. Արևելցի, էջ 199, հմմտ. ՄԺ, 1, էջ 82, 96, ծանոթ. 85։

137. Տես Վ. Արևելցի, էջ 201։

138. Տես Վ. Արևելցի, էջ 201—202։

139. Մանրամասն տես Վ. Արևելցի, էջ 204—209։

140. Բնագրում «մեծարեաց» և «Ցայսմ ամի» բառերի միջև կրկնված է անիմաստ մի նախադասություն. «Ցայսմ ամի առաքեաց առ Հուլաւուն, զոր յոյժ մեծարեաց»։ Սխալ է նաև մյուս տեղեկությունը, իրականում Գեսպինային կնության է ուզել Հուլավուի որդի Աբաղան, տես Կ. Գանձակեցի, էջ 382, ուր տարեթիվը նշված է 1265 թ.։

141. Այսինքն 1264 թ. հուլիսի 28-ին։

142. Ռաշիդ-ադ-դինի համաձայն, Հուլավուն մահացել է 1265 թ. փետրվարի 8-ին („Сборник Летописей", т. III, М-Л, 1946, էջ 62)։

143. Տե՛ս Վ. Աբեղյանի, էջ 213—214, հմմտ. Մժ, 1, էջ 97, ծանոթ. 94—95, վերևում, էջ 73, 90, ծանոթ. 195։ 1267 թ. ընդօրինակված, Տոնապատճառի հիշատակարանում կարդում ենք. «գրեցաւ... ի շրջագայութեան ամանակաց թուաբերութեան հայկականս ազին տաւմարի յարաբարդեալ ամաց չորեքտասան յիսնեկաց հանդերձ առաջին կատարեալ թուով վեցեկեաւ ընդ տասնեկի շարամանելոյ, ի բռնակալութեան կողմանըն արևելից բաժնին Ասիոյ ի վերայ յոլովից տիրեալ ազգաց խուժադուժ և բարբարոս ազգին Նետողաց, ընդ որոց դրաւեալ ծառայութեամբ ծանրագոյն լծոյ հարկապահանջութեան ես առաւել տունս Հայոց,... յորում ժամանակի վարէր զառաջնորդութիւն Թագաւորութեանն Կիլիկիոյ Հեթում բարեպաշտ, որ էր և նա մտեալ ընդ վերասացեալս հարկաւ։ Այլ Ն[աև] բռնադատէ զիս աստանաւր Թախիծ սրտիս յողորմելիս յամել պատմութիւն, զի յանցելում ամի Ներդրութեան այսր մատենի յաղագս ծովացեալ մեղաց մերոց սուլտանն Մըսրայ բազմաձեռն զաւրու պատրաստութեամբ մահմետական սպայիւ եբր ի ցասմանէ Աստուծոյ ածեալ [ի մուսա] յերկիրն Կիլիկիոյ, որում ոչ կարացեալ դդէմ ունել զաւրքն Հայոց. անդէն վաղվաղակի Թիկունս դարձուցեալ, պարտեալ, յաղթեալ, լքեալ, վայրավատնեալ, ցրուեալ լինէին ուրանուր. երկու որդիք Թագաւորին ձերբակալ եղեալ Թշնամեացն ի բուռն անկանէին, կրսերոյն սրախողող եղեալ, զերեցն գերի վարէին. և ընդ ցրուել զաւրացն զի և Թագաւորն ես ոչ եղև պատահեալ յերկրին. այնուհետև առանց կասկածի եղեալ բազում նախճիրս և ոճիրս արարեալ, հրդեհեալ գյոլովս ի քաղաքաց և գաւանս Նոցին և տապալեալ զեկեղեցիս և զգիրս սուրբս հրոյ մատնեալ ընդ որս և զարքայանիստ քաղաքն Սիս՝ զեղեցկաշէն ապարանաւք և մեծափառ եկեղեցեաւն սրբոյն Սոփեաւ հրձիք արարեալ, զի բազումս ի սուր սուսերի մաշեալ և զես բազումս գերի վարեալ հանդէրձ յոլով աւարաւ ...(№ 3082, էջ 476. ա և բ)։ Նման մի վշտալի հիշատակարան էլ այդ մասին թողել է Հեթում Ա-ի եղբայր Հովհաննես եպիսկոպոսը (№ 4243, էջ 222բ)։

144. Հմմտ. Մժ, 1, էջ 43։

145. Սրա կաթողիկոս դառնալու ստույգ ժամանակի մասին տե՛ս 1268 թվին ընդօրինակված Աստվածաշնչի հիշատակարանում, որտեղ կարդում ենք. «...գրեցաւ... ի դիտապետութեանն տեառն Յակոբայ, որ յայսմ ամի կարգեցաւ առաջնորդ... յամսեանն փետըրվար, որ աւր ԺԲ (12) էր»։ (№ 287, էջ 287ա և բ)։

146. Տե՛ս և հմմտ. Մժ 1, էջ 44, 60, ծանոթ. 76։

147. Խոսքը վերաբերում է Մառիի 1266 թվի ճակատամարտին (տե՛ս վերևում, ծանոթ. 143)։ Այստեղ տարեթիվը երկու տարով ուշ է նշված։ Գուցե այդ եղել է «ե» և «է» տառերի շփոթության արդյունք՝ «ՉԺԵ»-ի փոխարեն գրել են «ՉԺԷ»։

148. Խրոնիկոնը (վերևում, էջ 75) նշում է միայն ամիսը՝ 1270 թ. հոկտեմբեր։ Մի հիշատակարանի համաձայն, Հեթում Ա-ն մահացել է 1270 թ. հոկտեմբերի 25-ին (Գ. Սրվանձտյան, Թորոս աղբար, մասն Բ, Կ. Պոլիս, 1885, էջ 372—383), իսկ Հեթում Բ-ի վկայությամբ (տե՛ս ներքևում, էջ 511)՝ 1270 թ.։ Վերևում բերված աղբյուրները թեև ամսաթիվը տարբեր են նշում, բայց միաբերան ասում են 1270 թ. (հմմտ. Մժ, 1, էջ 44, ինչպես մեզ հաղորդեց պատմ. գիտ. թեկն. Հակոբ Նալբանդյանը, արաբ հեղինակներից այս դեպքը Մաքրիզին նշում է 1270 թ. սեպտեմբերի 9-ին, Նովեյրին՝ հեջրեի 669 թ. II թշրի 18-ին, 1270 թ. նոյեմբեր)։ Հետևապես կամայական է և անհամոզեցուցիչ Ն. Ակինյանի պնդումը, թե Հեթում Ա-ն վախճանվել է 1269 թ. հոկտեմբերի 29, երեքշաբթի օրը («Հանդէս Ամսօրեայ», 1948, № 3—6, էջ 278)։ Եթե հաստատ է երեքշաբթի օրը, ապա հավաստի է Անանուն Սեբաստացու վկայությունը, որովհետև 1270 թ. հոկտեմբերի 28-ն իրոք երեքշաբթի է։ Հետաքրքիրն այն է, սակայն, որ առանձին հիշատակարաններում, օրինակ՝ Կիլիկիայի Վանկունք անապատում 1271 թ. ընդօրինակած Ավետարանում Հեթում Ա-ն հիշվում է թագավոր (№ 199, էջ 433բ)։ Թեև նույն վայրում 1271 թ. ընդօրինակած մի այլ ձեռագրի հիշատակարանում թագավորի անունը չի հիշվում ընդհանրապես (№ 5518, էջ 184ա), իսկ մի երրորդ հիշատակագրության մեջ կարդում ենք. «Յամի Չի (1271) յայսմ աւուր՝ որ է չորեքշաբթի... արքայն Հեթում փոխեցաւ առ Քրիստոս՝ կրոնաւորական վարուք...» (ՍՎՑ, Բ, էջ 235)։

Այս տողերը շարվում էին, երբ ծանոթացանք Ակինյանի մի նոր հոդվածին, որտեղ

մերժելով վերոհիշյալ իր հոդվածի գրությունները, նա գտնում է, որ Հեթում Ա-ն իրոք մահացել է 1270 թ. հոկտեմբերի 28-ին (տես «Հանդես Ամսօրյա», 1952 թ., էջ 468—472)։

149. Հմմտ. ՄԺ, 1, էջ 44, 60, ծանոթ. 77։ Բնագրի «Պարախ» կամ «Փարախ» անվամբ (ինչպես Ստեփանոս Տարեգրի մոտ է) հեղինակը նկատի ունի Չաղաթայի որդի Բորակին, որը Խորասանում Աբաղայի դեմ պարտվեց 1279 թվին։ Մանրամասնությունները տես Ռաշիդ-ադ-դին (էջ 69—81)։

150. № 6617 տարբերակն այստեղ ավարտվում է։

151. Խոսքը վերաբերում է Վ. Արևելցուն, որի մահը Ստեփանոս Տարեգիրը նշում է 1270 թվին (տես ՄԺ, 1, էջ 44)։

152. Հմմտ. ՄԺ, 1, էջ 44, ՍՅՎ, 1, էջ 427։

153. Հմմտ. ՄԺ, 1, էջ 44, 61, ծանոթ. 83։ Այս արշավանքի մասին հետաքրքիր տեղեկություններ են պահվել Մատենադարանի № 7534 ձեռագրի հիշատակարանում, ըստ որի, Բեյբարսի արշավանքը կատարվել է 1275 թ. մարտին. այնտեղ կարդում ենք. «Արդ՝ եղև գրեալ սորա յայսմ ամի, որ է Հայոց Թուականն ՉԻԴ (1275), կոր կարճ ի կարճոյ ճշգիւ և համառօտ յիշել պարտ է գդառնաբեր ժամանակս ի վերայ երկրիս Կիլիկեցւոց, յամսեանս մարտի, որ աւր Ի և Ե (25) էր յերկուշաբթի, գոռոզն փարաւոն, արբանեակն սատանայի, առեալ զառաջնորդն իւր զԲելիար ամենայն դաւրաւքն իւրովք ի յաւգնութիւն իւր և զաւրաց իւր և ամենայն հնազանդելոց նորա, զաւրաժողով արարեալ զամենայն երկիրն Եգիպտացւոց ի մեծէ մինչև փոքունս, մինչ զրեթէ Ժ (10) բիւր էր զաւրք նորա. և եկեալ յերկիրս Կիլիկեցւոց և գտեալ անպատրաստ զամենեսան... և հրեշտակութիւն առաքէին (հայերը — Վ. Հ.) ի խաղաղութիւն և կամ տալ հարկս, զի մի եկեալ գերեսցէ զամենեսեան։ Եւ նա յանկարծակի որպէս գնուր ցոլացեալ ի վերայ ամենեցուն ցիր և ցան արար զնոսա. և զամենայն քաղաքս և զգեաւղս՝ զդաշտայինս և զլեռնայինս հրկեզ արար և զարս և զկանայս ի Ի (20) ամենից ի վեր ի սուր սուսերի մաշեաց և զաղայսն առ ոտս երիվարացն արկեալ, զի արորեսցին որպէս զմարախ անթիւ բազմութեամբ. և զաղջկունս և զմանկունս գերի տարեալ յաշխարհն իւր և կացեալ յերկիրս Կիլիկեցւոց կաւուրս երեսուն անսասան և անհոգ. և ոչ ոք ել ընդդէմ նորայ. և ոչ մի և ոչ միաց ը սահմանացն զաշտ[այն]ոց, ոչ մեծ և ոչ փոքր, որ ոչ ըմբռնեցաւ ի ձեռս նորա ամենայն ստացուածովք իւրեանց և միայն երկիրս այս աւերակ յամենայնի զատ ի քարանձաւաց և յամրոցաց աշտարակաց...» (էջ 273բ—274ա)։ Տես և հմմտ. վերևում, էջ 76։

Նման մի հետաքրքիր հիշատակարան էլ գտնվում է Վենետիկի ձեռագրերի ցուցակում (ՍՎՑ, 1, էջ 426—427), որտեղ հիշվում են նաև Սմբատ Գունդստաբլի մահվան հանգամանքները։

154. Հմմտ. ՄԺ, 1, էջ 44։ Այս դեպքերը պետք է եղած լինեն 1276 թվի փետրվարի 16-ի և մարտի 27-ի միջոցում։ Ամենայն հավանականությամբ 1276 թ. մարտի 4-ին, հինգշաբթի օրը։

155. Ուղիղ ձևը Ալպիսթան, քաղաք Ջահան գավառում, Մարաշից հյուսիս—արևելք, Ջահան գետի վտակներից մեկի՝ Սոգյութլու—սուից 3—4 կիլոմետր հարավ։

156. Հմմտ. ՄԺ, 1, էջ 44, 45, 61, ծանոթ. 81։

157. Հմմտ. ՄԺ, 1, էջ 45, 61, ծանոթ. 90։ Խոսքը վերաբերում է Տրապիզոնի թագավոր Մանվել I-ի որդի Գեորգի I-ին, որը թագավորել է 1266—1280 թթ.։

158. Հմմտ. ՄԺ, 1, էջ 45։

159. Լեն-Պուլի համաձայն 1277 թ. (էջ 62), իսկ Ռաշիդ-ադ-դինի՝ 1278 թ. ապրիլմայիս ամիսներին (էջ 89)։ Հմմտ. ՄԺ, 1, էջ 45։

160. Այս լեռը հրատարակիչները, իրավամբ, նույնացնում են Քայքուլի—Կանդառ լեռների հետ, (էջ 35, ծանոթ. 43) այժմյան Ղուկասյանի շրջանում։

161. Նշված դեպքերը տեղի են ունեցել 1281 թ., հմմտ. ՄԺ, 1, էջ 45, 61, ծանոթ. 91։ Ռաշիդ-ադ-դինի համաձայն ճակատամարտը տեղի է ունեցել 1281 թվին սեպտեմբերի 29-ին, Համմայի և Հեմսի միջև (էջ 96—97)։

162. Հմմտ. ՄԺ, 1, էջ 45, 62, ծանոթ. 93։ Աբաղայի թունավորվելու տեղեկությունը ստույգ չէ. սրա մահվան հանգամանքները տես Ռաշիդ-ադ-դին, էջ 97։ «Սահիբ Տիւանին» ասելով նկատի ունի Շամս-ադ-դին Մուհամմեդ Ջուվեյնինին։

163. Այս դեպքերն առավել մանրամասն հաղորդում է Ստեփանոս Տարեգիրը (տես ՄԺ, 1, էջ 45—46)։

164. Խոսքը վերաբերում է Իկոնիայի սուլթան Ղիաս-ադ-դին Քայ Խոսրով III-ին, Ռուկն-ադ-դին Ղլիճ-Արսլան IV-ի որդուն։

165. Իմա Իկոնիայի սուլթան Ղիաս-ադ-դին Մասուդ II, ըստ Լեն-Պուլի իշխել է 1283—1296 թթ. (էջ 128)։

166. Մանրամասն տես ՄԺ, 1, էջ 46—47, Ռաշիդ-ադ-դին, էջ 103—111։

167. Ահմադ—Թակուդարն սպանվում է 1284 թ. օգոստոսի 10-ի գիշերը (տես ՄԺ, 1, էջ 62, ծանոթ. 105)։

168. Բնագրում գրված է «զան», ապա «զ» տառի վերևում, տողամեջ գրված է «խ», պահեցինք վերջին ձևը։

169. Բնագրում «զՂայնդրաթայն» ձևով, այնուհետև այդ անվան «զզայն» մասը հատուկ նշանով սխալ է համարվել և աջ լուսանցքում ավելացվել «զզաւն»։ Հետևելով գրչին, ուղղեցինք։

170. Տես ծանոթ. 168։

171. Հրատարակիչները սխալ են կատարում, երբ բնագրի այս պարզ ցուցումին հակառակ գրում են. «Լևոնի այցելությունն Արղուն ղանին տեղի է ունեցել 1287 թվին իր մահից քիչ առաջ (էջ 35, ծանոթ. 44)։ Այս շրջանի պատմիչներից ոչ ոք չի հաղորդում Լևոնի այս առաքելության մասին, եթե չհաշվենք 1285 թվի հիշատակարանի մի վկայությունը. «...յայսմ ամի փոխեցաւ (Կեռան թագուհին—Վ. Հ.) առ Քրիստոս, յորժամ արքայ նորին, տէրս մեր ճանապարհորդեալ էր յարևելս ի դուռն խանին Արղունի» (Մ. Անեցու ժամանակագրության հավելված, էջ 242, տես նաև «Արարատ», 1878 թ., էջ 100)։ Բայց որովհետև գիտենք, որ Կեռան թագուհին մահացել է 1285 թ. օգոստոսին (ՄԺ, 1, էջ 85, 105) նշանակում է, այդ ուղևորությունը տեղի է ունեցել մինչև 1285 թ. օգոստոսը, իսկ նրա վերադարձը՝ դրանից հետո։ Տես և հմմտ. ներքևում, էջ 191, ծանոթ. 25։ Մ. Անեցու ժամանակագրության շարունակողի տեղեկությունն այս մասին նույնպես սխալ է, էջ 163։

172. Հավանաբար նկատի ունի Իկոնիայի սուլթան Ղիաս-ադ-դին Մասուդ II-ին (տես ծանոթ. 165)։

173. № 2151 տարբերակն այստեղ վերջանում է և ապա սկսվում XV դարին վերաբերող հատվածը, վերջինս տալիս ենք №№ 2174 և 3425 տարբերակներն ավարտելուց հետո։

174. Ստեփանոս Տարեգիրը և Հեթում Բ-ն Լևոն Բ թագավորի մահը նշում են Հայոց ՉԼԷ թվին (ՄԺ, 1, էջ 48, 85), իսկ վերջին հեղինակը ավելացնում է փետրվարի 6-ին։ Անշարժ տոմարի դեպքում կստանանք 1289 թ. փետրվարի 6, իսկ շարժականի դեպքում՝ 1288 թ. փետրվարի 6։ Սրանցից որն է ստույգ։ Այս հարցը ճշտելուն մեզ օգնում է 1290 թվի ընդօրինակված մի Ավետարանի հիշատակարանը, այնտեղ կարդում ենք. «...և Բ (2) ամաւ յառաջ տէրն իմ և խնամողն... և աստուածասէր թագաւորն Հայոց հանգեաւ ի Քրիստոս ՉԼԷ յամսեանն փետրուարի Զ (6) յաւուր շաբաթու...» (№ 5736, էջ 313ա)։ Շարժական տոմարի դեպքում միայն 1288 թ. փետրվարի 6-ը կլինի շաբաթ, նշանակում է Հայոց ՉԼԷ-ն համապատասխանում է 1288 թ. այստեղից, Հեթում Բ-ն իր Տարեգրության մեջ հետևել է շարժական տոմարին, երկրորդ՝ սխալվում են այն պատմաբանները, որոնք այս եղելությունը նշում են 1289 թ. փետրվարի 6-ին (ՄԺ, 1, էջ 64, ծանոթ. 122)։

175. Ջառա (նաև Ջարա), գյուղ Սեբաստիայից արևելք։

176. Հմմտ. ՄԺ, 1, էջ 48—49, 64, ծանոթ. 119։

177. Տես վերևում, էջ 78—79, 91, ծանոթ. 215։

178. Ըստ Ռաշիդ-ադ-դինի Արղունը մահացել է 1291 թ. մարտի 10-ին, շաբաթ օրը, Աղվանքի Բաղչէ վայրում (էջ 127)։ Նա ոչինչ չի հաղորդում Արղունի թունավորման մասին, թեև գրում է, որ Արղունի հիվանդության ժամանակ էմիրներից ոմանք դավադրություն կազմակերպեցին (էջ 126—127)։ «Զջհուտ Սահիպ տիւանն» ասելով նկատի ունի Սա՛դ-ադ-դովլեյին։

179. Տես վերևում, էջ 79, 92, ծանոթ. 217։

180. Տես վերևում, էջ 80, 92, ծանոթ. 219։

181. Հմմտ. ՄԺ, 1, էջ 86։ Նաև «Բեհեսն»-ի ձևով, գյուղաքաղաք համանուն գավառի մեջ, Մալաթիայի մոտերքում (պատմական Երրորդ Հայքում)։ Արաբները կոչել են Գեյթ Հասան։

182. Բայդու ղանին վերաբերող ժամանակագրական այս տեղեկությունները հաստատում է նաև Ռաշիդ-ադ-դինը (էջ 137, 165), ըստ որի Բայդուն իր նախորդ Քեյխաթուին սպանում է 1295 թ. մարտի 24-ին, իսկ ինքն էլ սպանվում նույն թվի հոկտեմբերի 4-ին՝ իշխելով վեց ամիս մի քանի օր։

183. Այս երկու անձնավորություններն էլ հիշվում են Ռաշիդ-ադ-դինի մոտ, առաջինը որպես հրամանատար (էմիր), իսկ երկրորդին նա կոչում է «մեծ շեյխ Սադր-ադ-դին Իբրահիմ» (էջ 163)։

184. Մոնղոլների իշխող կլիկը Ղազանի գլխավորությամբ մուսուլմանություն ընդունել է 1295 թվի փետրվարի կեսերին (Ռաշիդ-ադ-դին, էջ 164)։ Սրանից հետո է, որ սկսվում է հալածանքը քրիստոնեական եկեղեցիների և քրիստոնյաների դեմ (հմմտ. ՄԺ, 1, էջ 87, 106, 108, ծանոթ. 23, էջ 120, 124, ծանոթ. 52, ԼՑՎ, էջ 119—121)։

185. Արդյոք Ջուչի կասարի թոռ Արսլան Օղլին է (Ռաշիդ-ադ-դին, էջ 167)։

186. Սուկեյ, սրան կոչում են թագաժառանգ (նույն տեղ, էջ 167)։

187. Տողաչար, որին Ղազանը նշանակեց Իկոնիայի մոնղոլ զորքերի հրամանատար։

188. Տես նաև Հեթում Բ-ի մոտ (ՄԺ, 1, էջ 87), իսկ ավելի մանրամասն՝ Ռաշիդ-ադ-դին, էջ 171։ Բնագրի «Գալթաւին» անունով, կարծում ենք, հեղինակը նկատի ունի Բալատուին, Իկոնիայի մոնղոլ սատրապը։

189. Բնագրում այս բառը փչացած է, պարզ երևում է կաւ, հաջորդ տառի մնացորդից կարելի է ենթադրել, որ պետք է լինի «ք», այսպիսով կստանանք «կաւք» բառը (հմմտ. № 3425 տարբերակի հետ)։ Տեղը անհայտ է։ Հեթում Բ-ի տարեգրության մեջ վայրը և դեպքերը այլ կերպ է տրված. «և փախոյց յԱշրաֆի որդին ի յանլի ջրոյ կղզի մի» (ՄԺ, 1, էջ 87)։

190. Հմմտ. ՄԺ, 1, էջ 87։

191. 1297 թվի Բալատուի սպանությունից հետո Ղազանը, ինչպես հաղորդում է Ռաշիդ-ադ-դինը, Իկոնիայի մոնղոլական զորքերի գլխավոր հրամանատար նշանակեց Սուլամիշին, իսկ մյուսներին՝ Բայանջարին, Բուչկուրին և Դոկուզ-Տիմուրին հրամանատարներ։

192. № 2174 տարբերակում բնագիրն այստեղ ընդհատվում է, թերթեր ընկնելու պատճառով։ Շարունակությունը բերում ենք ըստ № 3425 տարբերակի։ Սմբատ թագավորի այս ուղևորության մասին, հայկական այլ մատենագրերից մեզ ոչինչ հայտնի չէ։

193. Տես ներքևում, էջ 183։ Այս դեպքերի մասին բերում ենք 1307 թվի մի հետաքրքիր հիշատակարան. «...Եւ գրեցաւ սա յաշխարհի Կիլիկեցւոց, զԱրիստակէս գրեցի ի լեառն Տորոսի յանապատիս, որ կոչի Արմէն, ...առ ոտս սուրբ և երջանիկ վերատեսչին Գէորգեայ յաւրինակէ նորին ի թուին ՉԽԶ (1297, սխալմամբ մեքենագրված է ՉԻԶ) ի չար ժամանակին, յորժամ Սմբատն թագաւորեաց և ըմբռնեց զանդրանիկ եղբայրն իւր զՀեթում յորմէ զպարոնութիւն ընկալ[աւ]. և եդ ի բանդի ի Մոլովանն և զԹորոս՝ ի Բարձրբերդ։ Յետ Է (7) ամսոյ զՀեթումին աչուին եհան և զԹորոսն խեղդամահ արարեալ սպան։ Ապա միւս եղբայրն Կոստանդին զաւրաժողով արարեալ գնաց ի վերայ Սըմբատայ և փախուցեալ զնա, գլխաւորք աշխարհին բերին առ նա. և նա ետ զնա յարգելանս ի դղեակն իւր կոչեցեալ Կապան և յետոյ փոխեցին յայլ տեղի։ Կալեալ զպարոնութիւն և հանեալ զաւագ եղբայրն ի բանտէն կապանացն և աղաչեաց առնուլ զպարոնութիւն իւր և նա ոչ առ յանձն։ Եւ կացեալ Կոստանդին ի պարոնութեան ամիսս Ժ (10) և ապա դարձեալ Հեթումն ըմբռնեց զԿոստանդին և ետ յարգելանսն ի Սիս և անտի ի Բարձրբերդ Ե (5) ամիս։ Եւ ապա զկնի այնորիկ գնա և զՍմբատն առաքեաց ի Կ. Պաւլիս յաքսորս. և ինքն կալեալ զպարոնութիւն ամենայն և ապա ի թուիս ՉԾԵ (1306) եդ յաթոռն զեղբօրորդին իւր Թորոսի զԼևոն մանուկ տիաւք և ածին զնա թագաւոր Հայոց ի վերայ Կիլիկիոյ ի տաւնի ս. Առաքելոցն ի յուլիս Լ (30)։ Յորում ժամանակի գրեցի...» (ՄՏՄՑ գործ № 2, էջ 236)։ Հմմտ. ՄԺ, 1, էջ 106, 108, ծանոթ. 24—20։ Ի միջի այլոց Կոստանդինին Գանդին ձևով մի քանի անգամ հիշում է նաև Աբուլֆեդան, մի տեղ էլ ավելացնելով «դահը Թաց Դանդինին, որը կոչվում էր նաև Կոստանդին» (տես Հ. Նալբանդյան, Արաբական աղբյուրները Հայաստանի և հարևան երկրների մասին (անտիպ), հտ. I, էջ 415, 410, 418)։

194. Ռաշիդ-ադ-դինը խոսելով Սուլամիշի, Ակոալի և այլոց ապստամբության մասին, լռում է Սեբաստիայի բնակիչների անհնազանդության և կռիվների մասին։

195. Սեբաստիայում տեղի ունեցած կռիվները գնացել են 1299 թվին, ըստ այդմ մարտի 8-ը կլինի մեծ պասի առաջին կիրակին։

196. 1299 թվի ավագ ուրբաթը կլինի ապրիլի 17-ին, որովհետև այդ տարվա Զատիկը կընկնի ապրիլի 19-ին։ Եվ իրոք, Սեբաստիայի պաշարումը, որը սկսվել է մարտի 8-ից, տևել է 40 օր, մինչև ապրիլի 17-ը։

197. Ռաշիդ-ադ-դինը ևս հիշում է, որ ճակատամարտը տեղի է ունեցել Երզնկայի մոտերքում, Ախշար դաշտում, 1299 թ. ապրիլի 27-ին (էջ 181)։ Սակայն Ախշարը, որը պատմական Նիկոպոլիսն է, Երզնկայից գտնվում է մոտավորապես 150 կիլոմետր հյուսիսարևմուտք։ Ախշարի մասին 1223 թ. մի հիշատակարանում կարդում ենք. «Գրեցաւ... ի գաւառիս Հայոց Նիկոպաւլիս, որ և Ախշար յորջորջի և մականուն Մելիտոյ ի քաղաքն որ կոչի Խաւմ...» (ՍՎՑ, 1, էջ 423)։

198. Մամլուկների Բահրի դինաստիայից՝ Մանսուր Հուսամ-ադ-դին Լաջին, իշխել է 1296—1299 թթ.։

199. Տեղեկությունը ստույգ չէ, խոսքը վերաբերում է Իկոնիայի սուլթան Ալա-ադ-դին Քայ-Քուբադ III-ին, որը իշխել է 1296—1300 թթ. (ըստ Լեն-Պուլի, էջ 128)։

200. Այսինքն 1298 թ. դեկտեմբերի կեսերին։

201. Տես վերևում, ծանոթ. 193։

202. Խոսքը վերաբերում է Սուլամիշի երկրորդ ճակատամարտին, որը տեղի ունեցավ 1290 թ. մայիսի 1-ին, կիրակի օրը (Ռաշիդ-ադ-դին, էջ 181)։

203. Մանրամասն տես նույն տեղը, էջ 182—188. ըստ որի Սիրիա արշավելու համար Ղազանը Թավրիզից դուրս է եկել 1299 թ. հոկտեմբերի 10-ին։

204. Տես նույն տեղը, էջ 186—187։ Բնագրում հիշված անձնավորությունները Ղազանի զորավարներն են։

205. № 3425 տարբերակում էլ բնագիրն ընդհատվում է այստեղ։

206. Ջհանշահն իշխանության գլուխ է անցնում 1435 թվին. տես ՄԺ, 1, էջ 174. ծանոթ. 5։ 1436 թվին (սխալմամբ գրված է 1438 թ.) Արծկե քաղաքում ընդօրինակված Ճաշոցի հիշատակարանում դրիչը Ջահանշահի իշխանություն ստանձնելը հիշում է որպես անցած եղելություն, նա գրում է. «Գրեցաւ... ի դառն և չար ժամանակիս, յորում եկն ազգն Բաւլղարից Թաղաւորութեան Շահռուխին և փախոյց զՍքանդարն. և հեծեալն Շահռուխին եկն ի վերայ ամրոցին Շամիրամայ, որ է բերդն Վանայ, զի եղբայրն Սքանդարին Ջհանշահուն և նա էլ ի բերդ[էն] և գնաց առ Շահռուխն և նա ներեաց զսա և ետ զԹախտն Թամանովս և գնաց։ Եւ Սքանդարն դարձաւ և փախոյց զեղբայրն և նստաւ ի Թախտն։ Եւ Յաց ի պարոնացն Ջհանշին մին անիծեալ Փիրալի անուն ի բերդն Ամկու և հանապազ ելանէր ի բերդէն և գայր ի վերայ երկրիս Արճշայ և Արծկայ. չարչարէն զոմանս, ասպանանէր և զոմանց զտղայսն գերի առնէր. և ծնողքն աղէխորով սրտիւ այրվէին և օգնել ոչ կարէին, անմեղ դառանցն իւրեանց։ Եւ առաւել կսկիծ տեսաք, որ մին տանուտէր և Գ (3) տղայ և Բ (2) կին ի մին տանէն հանել ոչ կարաց և անօրէնքն զտունն և զնոսա անդ այրեցին, որպէս քաջ նահատակ...» (ՄՏՄՑ, գործ № 23, էջ 81)։

207. Տես ՄԺ, 1, էջ 174, ծանոթ։ 6։

208. Տես նույն տեղը, էջ 174, ծանոթ. 7։

209. Տես նույն տեղը, էջ 174, ծանոթ. 8։

210. Բնագրում «և ելօ համբօն... էառ զհայրն իւրօ հատվածը դրված է ներքևի լուսանցքում։

211. Տես նույն տեղը, էջ 174, ծանոթ. 9։

212. Տես նույն տեղը, էջ 168, 174, ծանոթ. 10։

213. Կարամանիա (Ղարաման, Լարանդա), Փոքր Ասիայում, Իկոնիայից հարավ-արևելք։

214. Տես վերևում, ծանոթ. 155։

215. Այս կռիվները վերաբերում են Ջահանշահի և Ուզուն Հասանի 1467 թվի ուշ աշնանը, Ճապաղջրի մոտ տեղի ունեցած ճակատամարտին։ Այդ մասին տես ներքևում, էջ 218 և ՄԺ, 1, էջ 168, 175, ծանոթ. 14։

Այս կապակցությամբ որոշ հետաքրքրություն է ներկայացնում նաև Մատենադարանի № 7757 Ավետարանի հիշատակարանը, ուստեղ ճակատամարտը նշված է դարձյալ սխալմամբ 1468 թ.։ Բերում ենք այդ հատվածը. «Արդ՝ գրեցաւ... ի թվին Հայոց Ջ և ԺԷ ի դառն և ի դժւար ժամանակի, զի յայսմ ամի էլ Ջհանշայ դանն ի քաղաքէն շահաստանայ, որ է Թաւրէզ, բազում հէնիւ և զաւրաւք և կամէր երթալ ի վերայ քաղաքին Ամթայ և այլ ի վայր մինչ ի Դամասկոս. և ի յերթալն ի ճանապարհին բազումք դողային ի յահէ սորայ, զի այս Ջհանշայս բազում գաւառաց և քաղաքաց տիրէր և ունէր զսայ ևս զիշխանութիւն Պարսից աշխարհին մինչ ի Հրէ և բոլոր տանն Խորասանայ։ Եւ արևելք և արևմուտք ի յահէ սրոյ սորայ դողային. և Յսամ թէ հիւսուս և հարաւ ի հարկապահան-

ցութիւն էր սոքայ. և էր քրիստոնէից աւգնական։ ...Արդ՝ ի չուել ճանապարհի սորա բազում գաւառք աւերեցան և բնակիչք գաւառացն փախչէին ի յայրս և ի ծերպս վիմաց սովալլուկ մեռանէին։ Եւ եկեալ եհաս ի գաւառն Տարաւնոյ ի դաշտն Մշոյ. և անդ բազում աւերս արարին զաւրքն նորա. զի բազում էին և անհամար և ոչ ճանաչէին զաստուած, և ասէին, թէ «Ի՞նչ է քրիստոնեայն, և քրիստոնէին աչք և բերան կայ»։ Եւ դիմեցին ի վանքն Ղազարու և զլուսաւորն խորովեցին ի կրակն և նահատակեցին և անցին գնացին։ Եւ ի ճանապարհին իջավանեցան և զաւրքն ի յիւրմէն ի բաց արձակեաց և անահ և անկասկած գոլով ի թշնամեաց, ասելով, թէ «Ոչ ոք է ի վերայ երկրի, որ կարէ կալ առաջի իմ և սուր քարշել ի յերեսս իմ»։ Զօր ազդ արարեալ թշնամեացն դիմեցին ի վերայ նորա և առին յաւարի զինչսն և զնա սպանին և զորդիս նորա։ Եւ ի սպանմանէ սորա բազում աւերք եղեն յամենայն տեղիս, ես առաւել ի յերկիրս Հայոց. և բազում եկեղեցիք աւերեցան և բազում քրիստոնեայք սրով և սովով մեռան և ոչ ոք կարէ գրով արկանել և պատմել՝ զոր եղև ի վերայ երկրի։ Եւ թանգութիւն եղև յամենայն տեղիս և զկապիճ հացն ճի (120) թանկայ գնեցաք և զսուրբ Աւետարանս գրեցաք...» (էջ 329ա—330ա)։

216. Տե՛ս ՄԺ, 1, էջ 108, 173, ծանոթ. 15։

217. Պետք է լինի Բուսայիդ (Աբու-Սեյիդ), Լենկ Թեմուրի թոռը, տե՛ս նույն տեղ էջ 175, ծանոթ. 10։

218. Բնագրում սխալմամբ «ՋԾԲ», ուղղեցինք «ՋԻԲ»։

219. Ավելի մանրամասն հաղորդում է Կատերինո Զենոն («Ուղեգրություններ», հատ. Ա, Երևան, 1932, էջ 165)։ Տե՛ս ՄԺ, 1, էջ 168։

220. Եթե ճիշտ է անվան այս ձևը (Բիր, Բիրջիկ), ապա խոսքը վերաբերում է հին Ապամեա քաղաքին, Մերդինի և Ուրֆայի միջև, հմմտ. ՄԺ, 1, էջ 168։

221. Խոսքը վերաբերում է Ուզուն Հասանի և օսմանյան Թուրքիայի սուլթան Մուհամմեդ II-ի միջև 1473 թվին տեղի ունեցած կռիվներին (տե՛ս ՄԺ, 1, էջ 176, ծանոթ. 21)։ Այս կռիվների մասին հետաքրքիր տեղեկություններ է հաղորդում մի Ավետարանի հիշատակարանը. «Գրեցաւ... ի թվին Հայոց ՋԻԲ (1473) ի դառն և ի նեղ ժամանակիս ի ղանութեան Ուզուն Հասանին, որ այսմ ամի ապստամբեաց ի Քրդստան, էառ զԲաղէշ և զԽլաթ և զՄուշ և զԲօհտանք և բազում արեանհեղութիւն արարեալ և աւար առեալ զազգ Տաճկաց և գնաց յերկիրն Հոռոմոց. և ի դէմ ելեալ սուլտանն Մսրայ և ղանն Ռումայ խոնդքար եւթն հարիւր հազար հեծելօք. և յելանել արևուն մինչև ի մուտս արևուն պատերազմեցան և յերկու կողմանցն ԻՌ (20.000) այր սպանաւ. և երկու կողմանքն փախըստական եղեալ։ Եւ բնակեցաւ ղանն Հասան ի Դաւրէժ...»։ (ՄՏՄՑ, գործ № 45, էջ 304)։

222. Հեղինակն ակնարկում է Ուզուն Հասանի որդի Ուգուրլու Մուհամմեդի 1473—74 թվերին հոր դեմ կազմակերպած ապստամբությունը, որի մասին հաղորդում են նաև Ջ. Բարբարոն, Ա. Կոնտարինի և Ջ. Անջիոլելլոն («Ուղեգրություններ», հա. 1-ին, էջ 188, 229—230, 265—266)։

223. Այս հետաքրքիր տեղեկությունը բացակայում է մեր կողմից հրատարակված մյուս տարբերակում (տե՛ս ՄԺ, 1, էջ 169)։

224. Տե՛ս և հմմտ. ՄԺ, 1, էջ 169, 176, ծանոթ. 23։

V

## ՆԵՐՍԵՍ ՊԱԼԻԵՆՑԻ ԺԱՄԱՆԱԿԱԳՐԱԿԱՆ ՀԱՏՎԱԾՆԵՐԸ (XIV Դ.)

Սույն ժամանակագրական հատվածները գտնվում են Մարտինոս Լեհացու ժամանակագրության հայերեն թարգմանության բնագրի տարբեր մասերում (տե՛ս Մատենադարանի հետևյալ ձեռագրերը՝ №№ 2037, էջ 1ա, 1421 թ., 2038, էջ 2ա, 1654 թ., 7841, էջ 1ա, XVII դ. 60-ական թթ., 3079, էջ 1ա, մինչև 1693 թիվը և հետո, 4347, էջ 1ա, 1701 թ.)[1]։ XIV դարի հայ ունիթորների նշանավոր ներկայացուցիչներից մեկը՝ Ներսես Պալիենցը, 1347—62 թվերին[2], Ավինիոնում, Մարտինոս Լեհացու Հռոմի կայսրների և պապերի ժամանակագրությունը լատիներենից հայերեն թարգմանելիս, ժամանակով իրեն մոտ, կամ ժամանակակից մի շարք տեղեկություններ մտցրել է թարգմանության բնագրի մեջ[3] և այդ մասին գրել նաև հիշատակարանում. «...զքարճմաճեալս յոմանս տեղիս ի մի եդեալ և կարգաւորեալ սրբաքերելով[4] գրել սկսանիմ ըստ կարգի. Նաև ի մտի եդեալ եմ, զի որքան և կարացից և գտից զպատմութիւնս Հայկազեանց և հայրապետացն և զթագաւորացն Հայոց գրել իսկ եթէ ի շարս գրոցն և եթէ ի վերջսն, որպէս և դիպեսցի թէ կարացից գտանել»[5]։

Եվ իսկապես, Մ. Լեհացու ժամանակագրության հայ թարգմանության բնագրում գտնում ենք ոչ միայն թարգմանչի կողմից կատարված մի շարք ավելացումներ, այլև թարգմանության վերջում, Մ. Լեհացու օրինակով կազմած, հայկական թագավորների և կաթողիկոսների, խիստ համառոտ ցանկեր[6], որոնց մասին կխոսվի ներքևում։

Վերևում նշված ձեռագրերից ամենից հնագույնի՝ № 2037 ժողովածուի մեջ զբաղեցնող բնագրի մանրազնին ուսումնասիրությունից հետո, առանձնացրեցինք և հրատարակության համար հիմք ընդունեցինք այն բոլոր հատվածները, որոնք, մեր կարծիքով, պատկանում են Ներսես Պա-

---

1 Երկու ձեռագրում գտնվում են այս ժամանակագրության միայն առանձին հատվածները՝ №№ 6554, էջ 51ա—62բ, 2248, էջ 223ա—226բ։

2 Այս տեղեկությունը նա գրել է թարգմանության բնագրի մեջ (տես ներքևում, էջ 179), թեև մեջբերված հիշատակարանում նա գրում է, որ թարգմանությունն սկսել է 1348 թ. (№ 3079, էջ 1ա)։

3 Հայագետներն այս բանը շատ վաղուց էին նկատել (տես Մ. Չամչյան, «Պատմութիւն Հայոց», հտ. Գ, էջ 346, Գ. Զարբհանալյան, Պատմութիւն հայ հին դպրութեան, Բ, Վենետիկ, 1878, էջ 161, Ալիշան, Հայապատում, Ա, էջ 122)։

4 № 2038 տարբերակում «սրբագրելով», էջ 1բ։

5 № 3079, էջ 1ա, տես նաև №№ 2038, էջ 1բ, 4347, էջ 1ա։ Գ. Զարբհանալյան, Պատմութիւն հայերէն դպրութեան, Բ, էջ 160—161։

6 № 2037, էջ 131ա, 134ա, հմմտ. մյուս տարբերակները։

լիենցի հեղինակությանը։ Այս ավելացումները վերաբերում են դերաղանցապես Կիլիկիայի հայկական թագավորության պատմության առանձին դեպքերին, հայկական մատենագրությանը և այլն։ Միայն զարմանալի է, որ Ալիշանը գրում է, թե Ն. Պալիենցը Մ. Լեհացու ժամանակագրության թարգմանության բնագրում ավելացրել է «...ըստ տեղւոյն խառնելով ի կողմանէ Հայոց կրօնական յիշատակներ»[1]։

Ն. Պալիենցի այս տեղեկություններից բավական հետաքրքիր են 1292 թվի եգիպտական զորքերի կողմից Հռոմկլայի գրավման նկարագրության, 1290-ական թվականների Հեթումյան դինաստիայի գահակալական պայքարի, ապա 1300 թվի (հեղինակը սխալմամբ նշում է 1302 թիվ), եգիպտացիների դեմ, հայ-մոնղոլական զորքերի մղած կռիվների, 1321 թվի Այասի գրավման տեղեկությունները և այլն։ Վկայությունների մեջ թեև գտնում ենք առանձին անճշտություններ, սակայն սխալված կլինենք, եթե դրանք համարենք ընդհանրապես սխալ և չփոթ, ինչպես միտումնավոր կերպով վարվում է Ա. Տեր-Միքելյանը[2]։

Ն. Պալիենցի հեղինակությանը պատկանող այս հատվածների իսկության վրա հիմք չունենք կասկածելու, թեև մի քանի տեղեկություններ, որոնք գրված են Մ. Լեհացուց հետո[3], ասենք Աքքայի, Տրապոլսի գրավման և այլ տեղեկությունները, որևէ կերպ չկարողացանք համոզված ձևով վերագրել Ն. Պալիենցին։ Հնարավոր է, որ սրանք էլ նա է ավելացրել, բայց ավելի հավանական է, որ մինչև Ն. Պալիենցի թարգմանությունը, մեկ ուրիշը շարունակել է Մ. Լեհացու ժամանակագրությունը։ Այդ պատճառով էլ վերոհիշյալ մի քանի տեղեկությունները թեև Ն. Պալիենցի անունով մյուս հատվածների նման չհրատարակեցինք, բայց նրանցից հետաքրքիրները՝ դրեցինք համապատասխան ծանոթագրություններում։[4]

Հայագիտության մեջ ընդունված է Մ. Լեհացու ժամանակագրության Ն. Պալիենցու թարգմանությունը դնել 1348 թվին[5]։ Սակայն փաստերն այլ բան են ասում։ Ն. Պալիենցի մեզ արդեն հայտնի հիշատակարանում կա այսպիսի մի ցուցում՝ «Արդ եղև թարգմանութիւն գրոցս ի բազում տեղիս և ի գաւառս, յայլ և յայլ ժամանակս...»[6]։ Նշանակում է, թարգմանությունը տևել է բավական երկար։ Եվ իրոք, բնագրի այլ տեղեկությունները հաստատում են այդ իրողությունը. օրինակ, IX դարի սովի և մահտարաժամի Մ. Լեհացու վկայությունը թարգմանելուց հետո, Ն. Պալիենցն ավելացնում է. «Որպէս և է յամիս յայսմիկ, յորում գիրքս թարգմանեցաւ, յամի տեառն ՌՉՃԶ (1347)...», և ապա մի այլ տեղ ավելացնում, որ այդ մահտարաժամը «ընդ յամենայն կղզիս շրջեցաւ զերեք ամս»[7]. ուրեմն թարգմանության աշ-

[1] «Հայապատում», Ա, էջ 122։ Կրոնական հարցերի մասին Ն. Պալիենցն ունի առանձին, մի քանի էջանոց աշխատություններ, օրինակ՝ Սոսի և Ադամայի կրոնական ժողովների մասին և այլն (№ 2037, էջ 130ա—142բ, 147ա և շար.)։

[2] Տես նրա հոդվածները «Արարատ», 1893, էջ 412—418, 507—523, «Լումայ», 1901, Ա., էջ 290)։

[3] Մ. Լեհացին իր ժամանակագրությունը հասցնում է մինչև 1277 թիվը։

[4] Տես վերևում, էջ 91, ծանոթ. 215, էջ 92, ծանոթ. 217։

[5] Մ. Չամչեան, Պատմութիւն Հայոց, հա. Գ, էջ 346, Գ. Զարբհանալյան, Պատմութիւն հայ հին դպրութեան, Բ, էջ 100, տես նաև վերևում, էջ 173, ծանոթ. 2։

[6] № 3079, էջ 1ա։

[7] Տե՛ս ներքևում, էջ 177։

խտտանքները, որը դեռ ավարտված չէր, հասել է մինչև 1350 թիվը։ Պատարագի մեկնության հայերեն թարգմանության մասին խոսելիս, թարգմանիչն ավելացնում է, որ թարգմանությունը կատարել է Թադեոս Կաֆայեցին. իսկ ուրիշ տվյալներից մեզ հայտնի է, որ Թ. Կաֆայեցին այդ աշխատությունը թարգմանել է 1354 թվին[1]։ Վերջապես, 1347 թվի սովի կապակցությամբ թարգմանիչը գրում է. «Եւ այս յիրաւի եղև, քանզի յամի տեառն ՌՑԺԱ (1361) եղև երկրորդ մահաարաժամն ի յուլիս ամսոյ մինչև ի յունվարն»[2]։ Այս բոլոր փաստերը հաստատում են, որ թարգմանությունն սկսվել է 1347 թվին և ընդմիջումներով ավարտվել 1362 թվին։

Ն. Պալիենցի այս հատվածներն առաջին անգամ չէ, որ հրատարակվում են։ Դրանցից մի քանիսը միայն, այն էլ կրճատումներով, Մ. Չամչյանը հրատարակել է «Պատմութիւն Հայոց»-ի Գ հատորի ծանոթագրություններում[3], իսկ Ալիշանը՝ միայն երկու ընդարձակ հատված[4]։

Ներկա հրատարակությունն ընդգրկում է Ն. Պալիենցին պատկանող բոլոր հատվածները, որոնք համեմատվել են մեր ձեռքի տակ գտնված մյուս տարբերակների հետ և կարևոր ուղղումները նշվել տողատակ, իսկ գրչագրական տարընթերցվածները, օրինակ՝ «դրդող» թե «դրդօղ», «նուիրակ», թե «նւրակ», «գրգրող», թե «գոգորող», «լիկաթ», թե «լիկատ» զանց ենք առել։ Հրատարակվող հատվածների իմաստը հասկանալի լինելու համար Մ. Լնհացու ժամանակագրության բնագրից երբեմն վերցրել ենք առանձին հատվածներ, և նշել կլոր փակագծերում, իսկ ձեռագրի էջերը փտած և մաշված լինելու պատճառով, բնագրի վերջին մասի բազմաթիվ բառերը, անկյունավոր փակագծերում, վերականգնել ենք № 7841 ձեռագրի տարբերակի օգնությամբ։

---

1 Տես ներքևում, էջ 190, ծանոթ. 3։

2 Տե՛ս ներքևում, էջ 177։ Հնարավոր է, որ Ն. Պալիենցը այս վկայությունը ավելացրած լինի հետագայում, թարգմանության համապատասխան վկայությանը։

3 էջ 372—378, 383—384, 387—389։

4 «Հայապատում», Բ, էջ 521—524, 532—533։

V

Ի Փոքր Հայք, որ է Կիլիկիա մերձ առ դղեակն Հարունի 17 բ
կոչեալ, է ջուր ջերմկի, յոյժ օգտակար ամենայն ցաւոց. բայց որ ոք գնա անտ և մտէ ի ջուրն՝ յառաջին օրն կորուսանէ զլոյս աչացն և մնա կոյր զաւուրս երիս և ապա զկնի Գ (3) աւուրն վերստին առնու զլոյս աչացն և այսպէս բժշկի յամենայն ցաւէ։ Դարձեալ ի նոյն Կիլիկեա մերձ Անարզաբոյ ի դեա[ւ]ղն Ծուռակի կոչեալ, անտ մերձ է ծովակ փոքր, յորում ծովակ էթէ ձի կամ այլ անասուն մտէ ի ջուրն, նոյն ժամայն կըճղակն կորզեալ անկանի, նաև ագին և բաշն ընդ ամենայն մազին կորղ[ի], բայց եթէ ըմբէն ի ջրոյն այն անասունք ոչ վնասին[1]։

— o —

[Արար ևս սա[2] զգիրքն մեկնութեան սրբո պատարագին գեր ⁻⁻ բ
ի վերո մտաց և հրաշալի մեկնիչ և երկնահանգէտ միտս մեկնչի], զոր մեկնութիւն պատարագի թարգմանեալ է ի հայկական գիր սրբազան եպիսկոպոսն Կաֆային աէր Թադէոս[3]։

— o —

Ընդ այոմ իսկ ժամանակի[4] խանն Թաքթարացն, որ յարևելս 31 ա
ի Դաշվրէժ նստի, որ կոչէր Հուլայուն, և էառ զքաղաքն Պալտաք[5] ի Տաճկացն. և զի այն էր աթոռն խալիֆաին, որ է վերնագոյն առաջնորդն մահմուտականացն, զոր ըմբռնեալ խանն այն Հուլաուն զխալիֆայն շուն, ի բանդի չարաչար մահուամբ սատակեաց։ Եւ ապա հետևաբար նոյն Հուլաու խանն էառ զԱլամօթն[6] դղեակ և կոտորեաց ի սպառ զհաշիշիքն, որք անդ էին դարանեալ բնակելով։ Եւ ապա իսկ զկնի այնմ յամն երրորդ էառ բռնութեամբ զքաղաքն Հալապ ի Սիւրիա ի Տաճկացն։ Գոյր և ընդ նոյն խանին դրդօղ և գոգռօղ ի վերայ Տաճկացն ի ջնջումն, թագաւորն Հայոց Հէթում և կաթօլիկոսն Կոստընդին, կարծեմ Բարձրբերդացին է։

— o —

Այս Կլէմէնս[7] ի սոյն ամի (1342) առաքեաց ի Հայս ի Կիլի- 75 բ
կեայ վասն միաչբանութեան և ուղղութեան հաւատո և խորհրդոց եկեղեցո և վասն բերելո զազգն Հայոց ի հնազանդութիւն և ի միութիւն եկեղեցո, առաքեալ լիկատս և նուիրակս զերևելի արսն զԱնդոն եպիսկոպոսն Կայեթոյ, վարդապետ աստուածային տառիցն և զՋոհաննէս, ընտրեալն յեպիսկոպոսութիւն Գօրօնին, վար-

*դալեա սիվիլական և քաղաքական օրինացն և դէկրէթալացն*, որ էր արքեպիսկոպոս Բիղանին. որք գնացեալք առնել միաբանութիւն. և խոստացան Հայք առնել զամենայն, զոր կամիցի եկեղեցին։ Բայց պապն ոչ կամեցաւ փող տալ առժամայն ի յօգնութիւն և ի փրկութիւն Հայոց, այլ խոստացաւ, զի յորժամ դարձցին ի միաբանութիւն սուրբ եկեղեցոյ, յայն ժամ յամենայն ամի տալ ԺԲՌ (12000) ֆլօրի և Ռ (1000) հոգի ձիաւոր, վասն օգնութեան Հայոց։*

— • —

*Յամի տեառն ՌՅԽԷ (1347) և պապութեան սորա[8] յամին* 79ա *Է (7), խրատն հասարակաց մարդկան և ցասումն սաստիք յԱստուծոյ հասանէր ընդ յամենայն յաշխարհս մահն յանկարծահաս, որ սկսեալ եղև յարևելից՝ ի Հնդկաց և եկն կարգաւ մինչև յարևմուտս, ի ծագաց երկրի մինչև ի ծագս, ընդ յամենայն կղզիս շրջեցաւ զերեք ամս[9]. և կարծի ևս յոմանց, եթէ դեռևս կայ ցասումն այն յաշխարհի։ Այլ ևս երկիւղալից, զի ասի յոմանց և կասկածի, եթէ դարձեալ գայցէ ընդ յերկիր յօրինակ այզէկթոզին** դառնալ ճռայքաղութեամբ ի վերա։ Եւ այս յիրաւի եղև, քանզի յամի տեառն ՌՅԿԱ (1361) եղև երկրորդ մահտարաժամն ի յուլիս ամսոյ մինչև ի յունվարն[10]։ Արդ՝ մինչ այս լինէր և ամենեքեան յանկարծամահ*** մեռանէին միապէս ընդ յամենայն երկիր****, վասն զի առաջին ցաւն լինէր, զի արիւն ձգէին ի բերանոյն և ի նոյն օրն մեռանէին։ Եւ նախ մեռանէին սոյն ցաւօվս աղքատքն և յետ Բ (2)-ց ամսոց***** կամ աւելի մեծամեծքն։ Եւ երկրորդ ցաւն էր այտուցն և ելունդն. և ելանէր յաճուկն, զոր խիարակ կոչեն, կամ ելանէր յանթն և կամ ի սիրտն ընդ ներսէ և վաղվաղակի յԲ (2) օրն մեռանէր։ Լինէր ևս զի ի խիարակէն, յորժամ կտրէին, զերծանէր ոք որ և բաղումք ապրեցան. բայց որք յանթսն հանին ելունդ ոչ ապրեցան։ Իսկ հարուածքն յոմանս տեղիս մնայր բաղում ամիսս, իսկ յոմանս տեղիս սակաւ։ Սակայն յիշխանաց****** և յազնուականաց, ի թագաւորաց և կամ ի տէրանց յաշխարհաց ոչ ոք մեռաւ։ Լինէր և այս ի տեառնէ Աստուծոյ շնորհ, զի եթէ սաստեաց ոչ ի սպառ կորոյս, քանզի թէպէտ մեռանէին յանկարծ, այլ հոգով ոչ կորընչէին, զի ամենեքեան իբր իմանային զցաւս յանձինս առժամայն զղջմամբ խոստովանէին և մեծ մասն զհաղորդութիւն սուրբ մարմնոյն Քրիստոսի ընդունէին և այնպէս ամենեքեան փրկեալ հոգով ելանէին******* յաշխարհէ։ Որ և պապս Կլէմէնս, որ յիրաւի գթած, թէպէտ և ոչ յընթանուր[1] յաշխարհի, սակայն*

* *Որոշ ընագրերում այս բառը բացակայում է (№ 3079, էջ 222ա)։*

** № 3079, էջ 222ա, Այզէբողին։

*** Ձ․ 3070, էջ 222ա, յանկարծակահաս։

**** Միապէս ընդ յամենայն երկիր չկա № 3079 տարբերակում։

***** № 3079 տարբերակ, էջ 222ա ամս։

****** Նույն տարբերակում ի տէրանց ի․ խանաց։

******* Նույն տարբերակում զնային։

մասնաւորաբար նախ ի տեղին ուր ինքն էրն բնակութեամբ և յամենայն գաւառս և ի քաղաքս և ի Թէմս, որք մի անգամ հայցեցինն ամենեցուն յանկարծամահ* մեռելոցն, որք զղջմամբ արձակումն հայցէին։ Զլիակատարն Թողութիւն մեղացն և տանջանացն ընդ արձակեալ շնորհեաց, որո շնորհիւ Թողութեանն ամենայն հոգիքն ազատեցան անընդմիջաբար և յարքայութիւնն երկնից գնացին։ Որ և ի հաստատութիւն և ի ստուգութիւն այսմիկ փրկագործութեան բազում յա[յ]տնութիւնք և տեսիլք երևեցան կենդանեացն և պատմեցին և ստուգեցին այնպէս գոլ, զի ամենայն հոգիքն փրկէին, որք Թողութեան տեառն պապին արժանացան և ամենեքեան առժամայն առանց պատիժ յարքայութիւնն երկնից հասանէին։ Այլև Թէ որպէս կենդանիքն վաբէին առ հիւանդացեալսն և որպէս առ մեռեալսն ասասցուք։ Եւ այս ընդ** յամենայն տեղիս, քանզի ոչ ի տալ հաղորդութեանն և ոչ Թաղմանն ևս զանկակ հարկանէին և այս յիրաւի, զի մի հիւանդքն ահարեկ լինէին։ Եւ ապա զկնի սակաւ աւուրց լինէր, զի ոչ պաշտելով և ոչ կղէրիկոսօք տանէին զգիսն, այլ աշխարհականքն և զքաղաքականսն և զփարԹամսն ԺԵ (15) ի շարն, մի խաչիւ առաջի և մի քահանա կամ ոչ բնաւ տանէին ի Թաղումն։ Իսկ զաղքատսն զԽ (40)-նն և աւելի ևս ի մի վիհ դնէին և զհողն ի վերայ ածէին։ Եւ սոյնպէս մեռան մարդ և անասունք ևս։ Եւ բազում չէնք, աւանք և դղեակք ամբնակք մնացին և դաշտք, մարգունք, անդք և այգիք խոպան և ամայի եղեն......։

Ընդ սորին տեառն Կլէմէնթոսիս քահանապետութեամբն Գ 76 բ
(3) ամին եղև սպանեալ սրով յիւրայնոցն Թագաւորն Հայոց Կիտօն[11] և եղբայրն նորա*** Պէմունդ գունդն Կօսիկոսու։

— ○ —

Արդ[12] զայս ևս ինձէն տեսայ՝ գրող գրոցս, Ներսէսս, զի ի 84 բ
դուրգո Հռոմ ի յողորմութիւն պապոյն, Բայնիօթն կոչեալ կին մի սովեալ իբր յագեցաւ կերակրով, զի սովեալ էր****, առժամայն մեռաւ ի յամին տեառն ՌՅԽԶ (1346) ի մարտոյ ԻԳ (23) օրն։

— ○ —

Ընդ այնմ ժամանակի, ի Փոքր Հայք, սրբազոյն հովիւն Հա- 99 ա
յոց՝ աէր Ներսէս, Թոռն երանելոյն Գրիգորի Լուսաւորչին, վասն քարոզութեան օրինացն Աստուծոյ յեկեղեցւոջ իւր, ի Պապ Թագաւորէ Հայոց, դեղ մահու խառնեալ ի բաժակն տեառն, զոր սուրբն արբեալ հանգեաւ[13]։

— ○ —

---

* № 3079 տարբերակում յանկարծակահաս։

** Նույն տեղում, ընդ չկա։

*** Եղբայրն Նորա չկա № 3079։

**** զի սովեալ էր, չկա Նույն տեղում։

Սոյն Թէոդոսս ի Մեծ Հայք, յարեւելս, ի Կարին գաւառն 100 ա
շինեաց զմայրաքաղաքն մեծ զԱրզրումն և կոչեաց յանուն իւր Փոքր Թէօդօպօլիս, յամի ծննդեանն տեառն Նխ (440)։

— o —

Արդ՝ իբր զսոյն գիրքս[14] ես Ներսէս Պալիանէնց թարգմա- 112 ա
նէի ի քուրդս Հռոմայ և զայս իսկ հիացական իրս գրէի, պատմեցաւ յումեմնէ իմաստնոյ և յարհիեպիսկոպոսէ և յայլոց պատուաւորաց արանց, զի յաւուրս մեր և մերձ առ մեօք պատահեցաւ, զի մինչ նաւորդք գնային ընդ ծովն, և գոլով ի մէջ ծովուն, յաւուր միում խռովեալ ծովն յուզէր և երկինքն մթնացեալ մրրկէր, զոր տեսեալ նաւորդքն ծանեան ստուգապէս եթէ ի ցամաք ի հարուածք կարկտի լինին։ Եւ մինչ զայս քննէին եկն յերկնից քար մի, չափ հաւանո միոջ, իբր նուկիս Ծ (50) կամ աւելի և երկոքին ծայրքն սուր և զարկեալ ի վերայ նաւին կոտրեալ ծակեաց զվեր առաստաղ նաւին*, և էանց ի ներս և մնաց անդ։ Բա[յ]ց էր քարն այն սպիտակ, որպէս պաղ, որ և զամենայն տեսութիւն պաղի ունէր, այլ կարծր և պինդ այնչափ մինչզի ասեն, որք տեսինն, եթէ ամենևին ոչ եղև գտեալ պօղովատ այնպէս ամրագոյն։

— o —

[Ի սորին Գառլոսիս աւուրսն սով սաստիկ ընդ յամենայն 113 ա
Իտալիայ լինէր], որպէս և է յամիս յայսմիկ, յորում գիրքս թարգմանեցաւ, յամի տեառն ՌՅԽէ (1347), է սով սաստիկ տարածեալ ի վերայ երկրի[15] և ոչ թէ միայն ի Վինունս[16] իսկ, այլ յամենայն կողմանս Ֆռանկաց։

— o —

[Ընդ սորին[17] ես Հեռիգոսի Երրորդի] Ռօպէնցիք, որք էին 117 բ
յազգէ և յարմատոյ թագաւորացն Հայոց, մտին ի Կիլիկեայ և առին զբերդն Վահկայն, որ էրն Կոստանդին, որդի Ռօբէնին, ազգական Գագիկ թագաւորին և աստից ի հետ սկսան Հայերն տիրել Կիլիկոյ, որ եղև այս ի թւին Հայոց ԵՇ և ԽՁ (1097), իսկ Քրիստոսի թւին Ռճէ (1107)[18]։

— o —

[Եւ ապայ յետ Գ (3) ամի[19] առաւ Աքա և զկնի մի՝ Տրա- 118 ա
պօլիս. և զկնի հետևաբար ամենայն երկիրն սուրբ, որպէս ցուցանի լիայպէս ի գիրքն բասաճին], այլ ես և գտանես զայս ի գաւազան[ագիր]քն** պարոն Հէթմո տեառն Կօռիկոսոյ, զոր գրեմք ի յետո գրոցս[20]։

— o —

---

* Որոշ տարբերակում կոտորեալ ծակեաց զվեր առաստաղ նաւին չիք:
** Մյուս տարբերակներում գաւազանագիրքն։

Ընդ այսմ իսկ ժամանակի Թագաւորն, որ է կայսրն Յունաց 119 բ Պօրփիրօժէնն ելեալ զօրօք ի Կիլիկեայ էառ զնայ ի Հայերոյն բոնի, և զպարոն Լևոն, որ տիրէր երկրին, Բ (2) որդօքն կալեալ տարաւ ի Կոստանդնուպօլիս և եդ ի բանդի։ Եւ յայս լինէր ի Թւի Հայոց ՇՁՁ և Քրիստոսի Թւին ՌՃԼԷ (1137)[21]։ Արդ՝ Հայոց պարոնն Լևոն անդ ի բանդին մեռանէր, իսկ որդին նորա՝ Թորոսն ազատեալ ի բանդէն զկնի Է (7) ամաց դարձեալ ի Կիլիկեայ եկեալ և զՎահկային բերդն դարձեալ առեալ աւազակութեամբ. և անդի ի դաշտն, զԱնարզաբոյ բերդն առեալ։ Դարձեալ տիրեաց Կիլիկոյ և նորոգեցաւ տէրութիւնն Հայոց ի Կիլիկեայ։

— o —

...Արքեպիսկոպոսն Մաւէնցիոյ, որ Մակունդինն է կարծեմ, 122 բ կամօք եկեղեցոյն Հռոմայ և հրամանաւ վերոյ ասացեալ կայսերս եկեալ ի Կիլիկեայ ի քաղաքն Տարսոն, յեկեղեցի սրբոյն Սօփիայ, Թաղեալ շքեղապէս և օրհնեալ օծեաց ի Թագաւոր Հայոց զպարոն Լեոն, որ էր պարոն Հայոց և տէր Կիլիկոյ, լեալ նախ ամս Ժ (10) և Թագեալ կոչեցաւ Լէօ յամի տեառն ՌՃՂԹ (1199)[22]։ Որ և տւաւ նմա ի կայսերէն ունել նշան և նշանակ ըստ անուանն իւր առիւծ, զոր տանին ևս, և սովորին Թագաւորքն Հայոց մինչև ցայսօր, զի նախնի Թագաւորքն Հայոց՝ յարևելս արծուայնշան էին, որպէս և պատմութիւնքն Հայոց ցուցանէ։ Այս Լևոն Թագաւոր Հայոց, ի Զ (6) ամն իւրոյ Թագաւորութեանն, էառ բռնի զքաղաքս Անդիոք մեծն մինչև ի տունն Դամբլուն, որ էր մեծ բաժինն քաղաքին և կալաւ Գ (3) օր, և ապա Թողեալ դարձաւ[23]։ Իսկ Թ (9) ամի Թագաւորութեանն իւրո սոյն Լևոնս էանց ի կղզին Կիպրոս և էառ իւր ի կնութիւն զքոյրն Թագաւորին Կիպրոսի և Երուսաղէմայ ոէ Ուկին զՍիպիլն[24]։ Այլ և ԻԱ (21) ամի իւրոյ Թագաւորութեանն սոյն Լևոնս էառ դաւօվ ի գիշերի զնոյն Անդիոք մեծն և կացոյց անդ բրինձ զՌօբէն զԹոռն եղբօրն իւրոյ[25]։

— o —

Ընդ այսմ իսկ ժամանակի՝ ՌՄՁԲ (1282), հայ Թւին ՉԼԱ, պարոն 125 ա ոմն ի Թաթարացն, անուն Մանկօ Դամուր, իջեալ զօրօք ի Շամբն, որ է Ասուրիայ. և ճակատեալ ընդ սուլտանին Մսրայ՝ ընդ Ալֆին, մերձ դրանն Հէմսոյ քաղաքին և յաղթեաց Թաթարն, որ և ասի, Թէ վարեաց զսուլտանն ի փախուստ զաւուրս Ը (8)*։ Եւ կոտորեաց ի նոցանէ Թաթարն աւելի քան զԾՌ (50,000) այրս։ Եւ ապայ զօրք սուլտանին պնդեալք դարձան յետս և շրջեցին զզօրս Թաթարին, զի դարձան ի փախուստ, որ և յայնմ փախստին սպանան ի Մուղալ զօրուն իբր ԼՌ (30000), իսկ ի զօրացն քրիստոնեայ, այսինքն է Թագաւորին Հայոց, որք էին ընդ Թաթարսն համազոյգ, սպանան ի նոցանէ արս ԲՌ (2000)[26],

---

* 3079, Լ (30) օր։

Ընդ այսմ իսկ ժամանակս՝ յամս տեառն ՌՄՂԲ (1292) և ի 126 ա թվի[ն] Հայոց ՉԽԱ (1292) ասացեալ սուլտանն Եգիպտոսի Աշրաֆն զկնի առմանն և աւերմանն Աքայոյ և զկնի իբր ջնջեաց ամենևին զքրիստոնէից իշխանութիւն և զանունն ևս ի սուրբ երկրէն և ի Սէհլէն։ Ապայ այնուհետև յարձակէր վիշապն այն չար ի վերայ ազգին Հայոց. և եկեալ զօրօք գայր ի Միջագետս մերձ ի սինօռն Ուռհայոյ քաղաքին և եկեալ պաշարէր զհայրապետական դղեակն Հայոց, որ կոչէր կլայ Հոռոմական, ուր էր կաթողիկոսանիստ Հայոց լեալ ի բազում ժամանակաց։ Եւ պաշարեալ զայն սուլտանին խիստ և պնդայգոյն կռվօվ, իբր այլ ոչ կարէին պահել քրիստոնայքն, քանզի յղեալ էր անդ Թագաւորն Հայոց զքեռին իւր զպարոն Ռէմունդն բազում ընտիր մարդօվք, զոր Տաճկնին ոչ կարացել էին առնուլ զրազում ամս կըռվօվ, այլ բարանօքն փլուցին զամենայն պարիսպն և նաղմեցին և եկին ի մէջ բերդին ծակն* և յատակէ շրջել ուզէին։ Իսկ իբրև տեսին, որք ի ներս էին, եթէ ի վաղիւն կամին դնել զհուրն և շրջել զբերդն, ուզեցին ամանաթ, այսինքն է վստահութիւն, գնալ յոտս նոցա։ Սակայն սօլտանն ոչ ընկալաւ զհայցուածս նոցա, վասն զի նախ ինքն բազում անգամ ասացեալ էր, եթէ «Տուք զբերդս և ես թողում զձեզ զամենեսեան ընչիւք գնալ»։ Իբր այլ ինչ ոչ ճար գտանէին || ի վաղիւն կաթօլիկոսն Հայոց տէր Ստեփանոս, մականուն Հռոմաեցի, որ էր ի բերդն, ագեցաւ զգեստն իւր 126 բ հայրապետական, նոյնպէս և ամենայն եպիսկոպոսունքն և երիցունք ընդ նմա և խաչիւքն և ամենայն կահիւ սրբութեանն գնացին յոտս սուլտանին, զոր իբր ետես չար բռնաւորն այն եթուք, ասեն, ի վերայ կաթողիկոսին, ասելով, թէ «Ջայդ յառաջի օրն ընդէ՞ր ոչ արարէր»։ Բայց այնչափ արար վասն այնմ գնալոյն, զի հրաման եհան զոչ ոք սպանանել։ Արդ՝ սոյն կերպիւ էառ նոյն սուլտանն յայնմ աւուր զՀռոմկլայն[27] և զկաթողիկոսն և զամենայն բազմութիւն քրիստոնէից աւելի քան ԼՌ (30000) ոգիս գերիս տարան ի Մսր ի բանդ և ի ծառայութիւն։ Այլ իբրև տարաւ զայն ամենայն ի Բաբելոն գոռոզն այն երկրորդ Բաղդասարն։ Ահա յաջն հայրական գրէր ընդդէմ նորա ևս, զի անկաւ մահ ի նոցա և մեռանէին ամենքեան, զոր զգուշացուցին նմա առաջնորդքն իւր և գիտնականքն, եթէ վասն քրիստոնէից առաջնորդին գերութեանն լինին այս հարուածք։ Եւ կոչեալ սուլտանին զկաթողիկոսն ասաց. «Ընտրեայ քեզ զոր կամիս արս Ի (20) և առ քեզ զմեծ և զփառաւոր սրբութիւնն քո, զոր ունէիր ի ձեռինդ, մինչ իջեր ի բերդէն քո և գնայ վաղվաղակի յերկրէս իմոյ, քանզի հաւատամ, եթէ անցցէ մահս յերկրէս իմմէ»։ Եւ կաթողիկոսն էառ զաջն սուրբ Գրիգորոյ և ետ սուլտանն արս ընդ նոսա և ծախս. զի բերին զնոսա ի Հայս[28]։ Նաև եղև իսկ, զի ընդ ելանելն կաթողիկոսին և աջոյն սրբոյ դադարեաց մահն ի նմին աւուր։

* № 3079 տարբերակում բնդ ծակն։

Բայց նախքան զայս մինչ սուլտանն ի վերայ Հռոմկլային էր, զրերգ մի, Հայոց թագաւորին, Ապըլճէս[29] անուն ետուն ի Տաճկնին տուր տալով։ Եւ թագաւորն Հայոց ետ կամաւ զանառիկ դղեակն Բէհէսն սուլտանին ի գինս, որպէսզի զկաթողիկոսն թողուցու[30]։ Եւ կաթողիկոսն թողեալ էր, որպէս վերոյ ասի և ոչ գիտէին։ Իսկ իբրև եկն ի Հայք նոյն կաթողիկոսն, վասն զի աշխատեալ էր և խոցեալ յոգի, յետ սակաւուց յաՑն այն մեռանէր։ Եւ եղին իւրեանց կաթողիկոս զտէր Գրիգոր Տուրքերիցանց, յորմէ բազում ուղղափառութիւնք սկսեալ եղեն ի Հայերն[31]։

Արդ՝ յամին այն, որում առին Տաճկնին զՀռոմկլայն և գերեցին զկաթողիկոսն Հայ[ոց], նախքան զառնուլն, այսինքն յամի տեառն ՌՄՂԲ (1292) եղեն մոլորեալ ի Ջատկէն Ասորիքն, Նեստորք և Հայք, զի չուզէին ի Նեստորացն յետ Յետլ։ Այլ և թագաւորն Հայոց արար նախ ժողով և եղիտ զնոսա մոլորեալս և սաստիւ հրամայեաց նոցա ոչ առնել Ջատիկ ծուռ, բայց ոչ կամեցան Յեալ ընդ քրիստոնայքն, այլ յօժարեցան դասիլ ի Նեստորիտքն հայր իւրեանց զնոսա կոչելով, ասելով. «Զինչ իմ հայրն է արել և ես»։

Արդ՝ որովհետև ձգեցաւ պատմութիւնս առ ազգն Հայոց, ասասցուք և սակաւ ինչ, զոր ի նոցանէն և առ նոքօք գործեցաւ։

Արդ՝ զկնի մոլորութեանն նոցաի Ջաակէն յամին հետագայ, թագաւորն նոցա Հէթում, որ ոչ էր երբեք լծեալ ընդ կին, այլ թագաւոր էր զկնի մահու հօրն իւր Լևոնի Բ-ին զամս Ե (5)[32] և ունէր ևս կենդանի եղբարս Է (7) և քոյրս Գ (3)[33]։ Սոյն թագաւորս զասացեալ իւր թագաւորութիւնն, զի ոչ երբեք էառ թագ արքայական, զտէրութիւնն տայր յեղբայրն իւր Թօրոս[34], որ էր ծնընդեամբ երկրորդ զկնի իւր, որ և այս Թօրոս առեալ էր ի կնութիւն զքոյր թագաւորին Կիպրոսի Ե (5) ամաւ յառաջ[35]։ Զոր թագաւորն Հէթում տայր ի նոյն Թօրոսն զպարոնութիւնն և ինքն լինէր կարգաւոր ի կարգէ սրրոյն Ֆրանցիսկոսի և կոչէր եղբայր Ջոհաննէս[36]։ Եւ իբրև անցին սակաւ աւուրք ի նոյն ամին, նոյն եղբայր Հէթում Յոհանեսն ամուսնացուցեալ զքոյրն իւր Զապլուն, որ էր նախածին քան զամենայն Է (7) եղբարքն, ընդ եղբայրն Կիպրոսի թագաւորին՝ Ամառի, տէրն Սուրոյ[37]։ Եւ լինէր զի իբր եկն Ամառին ի Հայք պսակիլ ընդ կինն իւր, որպէս և Թօրոսն վերոյ ասացեալ գնացեալ էր ի Կիպրոս։ Սոյն փեսայս թագաւորին Հայոց իբր գայր ինքն և այլք բազումք ի Հայք, Հայ և Ֆռանկ եկեղեցիականք միջնորդեալ որ և դրդուեալ և շարժեալ արարին։ Զի նոյն Ջոհաննէս Մնուրն[38] թողոյր զկրօնաւորութիւնն || և դարձեալ առնոյր զիւր թագաւորութիւնն ի նոյն 127 ամին[39]։

Իսկ զկնի ամի միոյ սոյն թագաւորս Հայոց Հէթում ամուսնացոյց զքոյրն իւր՝ Ռիթայ անուն ընդ Միխայէլ կայսերն Կոստանդն[ու]պօլսի. և իբրև եկին Հօռոմքն տանիլ նայ, յղեաց զԲ (2) քոյրսն իւր, այս է զասացեալ Ռիթայն և զԹէֆանօն, զի զմինն հարսնացուսցեն կայսերն և զմիւսն ինքն կայսրն պատշաճապէս

ղուղեացէ այլոյ Թագաւորի, որպէս կամի. որ տարեալ զՌիթայն հոռոմացուցին և անուանեցին Մարիայ և եղև կայսրուհի[40]։

Իսկ զկնի այսմ, իբր անցանէր ամ մի, դարձեալ Հէթում այն տայր զթագաւորութիւնն յիւր եղբայրն ի Թորոսն ասացեալ և ինքն դարձեալ կրօնաւորէր[41]։

Եւ զկնի ամի միոյ մեռանէր կին Թորոսին։

Եւ Հէթում կրօնաւորն և Թորոսն տային զթագաւորութիւնն յեղբայրն իւրեանց Սմպատն և ինքեանք գնացին ի Կոստանդնուպոլիս[42]։ Իսկ Սմպատն առնու թագ և օրհնութիւն և թագաւորեաց ամս Գ (3)[43], Եւ կացեալք նոքա ի դուրս՝ իբր թէ ամ մի դարձան և կամէին Թաթարօվ ձգել զՍումպատն և առնուլ զպարոնութիւնն և նայ նախիմա եղեալ, կալաւ զնոսա և եդ ի բանդի։ Եւ զըգութեամբ չար իշխանաց հրամայաց սպանանել զԲ (2) եղբայրն իւր։ Այլ որ գնաց սպանանել զԹորոսն եւ լարիւ խեղդել զնայ, իսկ որ գնաց սպանանել զՀէթումն, զի ոչ էին ի մի տեղի, ոչ եսպան, այլ կուրացոյց զաչսն[44]։ Իբր այս լինէր, չորրորդ եղբայրն Կոստանդինն յարեաւ ի վերայ և եկեալ ի Սիսոյ քաղաքն զօրօք. մերձ քաղաքին կռուեցան հայերն ընդ իրարս ի մարգն Սիսոյ, ուր բազումք եղբարք զեղբարք սպանին և աղգականք զմիմեանս, վասն անճանաչողութեանն, զի առաւօտ էր։ Եւ այսպէս Կոստանդինն առեալ զպարոնութիւնն Հայոց կալեալ զՍմպատն և գտեալ զՀէթումն կենդանի ողջացոյց զմի ակն և ինքն թագաւորեաց ամիսս Թ (9)[45]։ Յետ այսց ամենայնի դարձեալ ի չարաց ի ոմանց, մանաւանդ եթէ յիւրմէ իսկ, գրգի նոյն Հէթումն կրօնաւոր և յառնէ ի վերայ Կոստանդին և ձգէ զնայ ի թագաւորութենէն և դարձեալ ինքն լինի թագաւոր։ Եւ զՍմպատն, որ երբեմն թագաւոր[էր], զի կալեալ էր զնայ Կոստանդինն, և զնոյնն զԿոստանդինն առաքեաց յաքսորս ի Կոստանդնուպօլիս առ փեսայն իւրեանց։ Այս ամենայն վճարեցաւ ի Զ (6) կամ Է (7) տարին։

— ० —

Ընդ այնմ ժամանակին յամս տեառն ՌՅԲ (1302) և Թվին 127 բ Հայոց ՉԾԱ (1302) ի վերոյ ասացեալ թագաւորէն Հայոց՝ Հէթմոյ, որ և էր ի կարգէ Մնուրացն[46], եղև գրդեալ և թպրեալ մանաւանդ եթէ աղաչեալ իսկ խանն Թաթարաց արևելեան՝ Խազանն և իջեալ ՃԾՌ (150000)-օք* Թաթարօվ յերկիրն սուլտանին Մսրայ[47], որ էր ընդ այն ժամանակն Մէլիք Նասրն[48], և էր հասակաւ տղայ, ամաց ԺԴ (14)։ Եւ հասեալ Խազանին մինչ ի Դամասկոս առին զնայ։ Բայց զոր տեղիս, որ առնուին ոչ աւերէին և ոչ զմարդիքն սպանանէին. որ և ի նոյն թագաւորէն Հայոց եղև աղաչեալ զնոյն խանն այրել հրօվ զԴամասկոս. ասէր խանն, եթէ «Մեղք մեծ է զայսպիսի գեղեցիկ շինուած այրել, այլ ետու զսայ որդոյն իմոյ և պահեսցի վասն նորա»[49]։ Իսկ սուլտանն զօրաժողօվ եղեալ գայր մերձ Դամասկոսի իբր ֆարսանկս Ը (8) և անդ

* Մյուս տարբերակներում Նճ (50,000)։

ի տեղի ամուր յոյժ, որ էր բլուրք քարայժայռս, անդ իջանէր[50]։ Որո խանն զօրօքն եկեալ ընդդէմ ճակատեցան յայնմ տեղոջ[51], Եւ ոչ կարաց սուլտանն զընդդէմ ունել Մուղալին փախեան, զոր կոտորեցին անթիւ զՏաճկնին և առին զաւար նոցա և զամենայն իջևանք նոցա։ Իսկ սուլտանն արամբք իբր Ժ (10) յուղտ ճամաղիքս հեծեալ փախեաւ ի Մոր։ Եւ Թաղաւորն Հայոց, քանզի էր զօրօք արամբք ԺՌ (10000)-օք ընդ Մուղալին, անձամբ իսկ միայն ԴՌ (4000)-օք արամբք, որք կարացին սրաձիս գտանիլ, ընտրեցան զկնի Թագաւորին և զհետմտին սուլտանին և վարեաց նոյն Թագաւորն զսուլտանն զաւուրս Զ (6) մինչ ի տեղին կոչեալ Տոյլ, յոր է ի յաւաղն, մօտ ի Մար, Դ (4) [աւուր] ճանապարհ գնացողացն ըստ ուսհմանին[52]։

Իսկ ի տեղոյն ուր Թագաւորն զհետմտաւ սուլտանին և ուր դարձաւ, է ճանապարհ ԺԱ (11) աւուր, զի Դ (4) օրն գնաց. և լինէր, զի ուր իջևանէր սուլտանն յիջևան, ի վաղիւն Թագաւորն հասանէր*, զի գնայր առաջի Թագաւորին իբրև մլոնս, որ է միլ Ժ (10) կամ ԺԲ (1~)։ Այլ իբրև գնաց Թագաւորն մինչ ի նոյն տեղին Տոլի կոչեցեալն, զի մօտ էր Թահրէր[53] և ինքն էր միայն՝ երկեաւ, թէ ըմբռնեսցի կամ ոչ ընտրեսցէ դառնալ ընդ աւազն։ Անդ ի տեղին այն, Թագաւորն Հայոց Հէթում, նշան եդ ի դուռն նոյն իջևանայ տանն, նայեւ ի նոյն բարունտկն, այսինքն է ի Տոլին, որ է ի մէջ բակին, եհար թրօքն և հետս արար ի դուշակ և ի նշան, եթէ Թագաւորն Հայոց վարեաց մինչև աստ, զսուլտանն և ոչ կարաց հասանել։ Այլև գրեաց եւ ի յորմն, եթէ շատ է ինձ այս, զի մինչև յայստեղի եկի հսկաբար և բուռն զօրութեամբ, զոր ոչ ոք ի նախնեացն իմ, նայև ոչ բնաւ ոք քրիստոնեա զօրութեամբ և վարելով մինչ աստ եկեալ է այսմ ճանապարհաւս։ Եւ զայս առնելով ապա դարձաւ Թագաւորն, որ նշան և զարկք թրի՛ նորա կան մինչև ցայսօր անդ ի յիշատակ իւրին։ Եւ քանզի ի վերո զհանգամանս կռվոյն ոչ յիշեցաք, այժմ սակաւ ինչ ի մէջ բերցուք։ Արդ՝ լինէր զի իբր ճակատէին յօրն այն, Տաճիկքն արարեալ էին իբր մարդիքս թաղքեայս և սգեցուցեալ իրս փայլունս, զի յարեգակէն փայլէին և եդեալ էին զայն ի վերայ ուղտուց իբրև ԺՌ (10000)**, ‖ Եւ զամենայն 128ա ուղտսն ի շարն կանկնեցուցեալ և ինքեանց զօրն ամենայն յետոյ ուղտուցն ի ծածկոյթըս կային։ Իսկ Մուղալ զօրքն ոչ ինչ հնարս ունելով կայր իբրև ոչխար առաջի նոցա։ Եւ իբր խմբեցաւ պատերազմն հայէին զօրքն Բ (2)*** առ իրեարս և ոչ մարտընչէին։ Արդ՝ վասն զի Մուղալնին, որ է Թաթարնին, ոչ ինչ այլ ունէին զէնս, բայց միայն նետ, վասն այն Տաճիկքն մտային, զ[ի] ձգեսցեն զնետս իւրեանց և հարցեն զթաղքեայ մարդիքն, որք ի վերայ ուղտուցն և ինքեանք յետոյ անվնաս մնասցեն. և իբր նոքա դատարկանային ի նետից, ինքեանք յարձակեսցին ի վե-

* № 3079 ձեռագրում զի Դ (4) օրն գնաց... ի վաղիւն թագաւորն հասանէր չկա։
** №№ 2038, 3079 ձեռագրերում ԾՌ (50,000):
*** № 3079 ձեռագրում Բ (2) կողմանց:

*րայ նոցա սրով և կոտորեսցեն զամենայն։ Զոր և արարին այնպէս, քանզի մինչ ոչ որն ի նոցանէ յարձակէր ի կռիւ Տաճկնին եաուն հլաննել ի յինքեանցն արանց Ե (5) կամ Զ (6) Ռ (1000)-ս, ընդիրս արանց, որպէսզի պատճառ լիցի Թաթարացն նետելոյ և արձակեցան այնոքիկ արքն զմիրք[51] ի վերայ Թաթրնոյն։ Եւ իսկոյն հրաման հանէր խանն թագաւորին Հայոց, իւրովքն դիմել ընդ յառաջնահեծեալսն այն Տաճկացն, որք հսկապէս իսկ թագաւորն իւրով քրիստոնեայ զօրօքն, որք էին իբր թէ ԳՌ (3000) հեծեալս իբր առի[ւ]ծս դիմեալ ի վերայ անօրինացն, զնշան սրբոյ խաչին առաջի տանելով, կոտորեցին զվեց Ռ (1000)-ն այն զՏաճիկսն, զի ոչ զե[ր]ծան ԵՃ (500)։ Իսկ ի քրիստոնէիցն ոչ մեռան, բայց միայն Ի (20). և այն վասն երիվարացն, զի քարուտ էր տեղին և երիվարացն գործել ոչ կարէին, այլ անկանէին։ Եւ իբրև այս գործէր Մուղալն ամենայն ի նետել սկսանէր։ Եւ ընդ դառնալն Հայերուն ի տեղին իւրեանց, որ է աջոյ կողմն զօրուն և Մուղալն ևս իբր թէ դադարկացեալք ի նետից թիկունս դարձուցին և զփախուստ գնային։ Ցայնժամ արին այն, զմիր թագաւորն Հայոց արշաւեաց առ խանն Ղաղան, զի էր ի վրանն իւր բազմեալ և գուսանքն առաջի նորա հարկանէին և մտեալ թագաւորին ասէ. «Տէր իմ խան, ծաղր և նախատինք եղեր ամենայն երկրի»։ Նայ պատասխանեաց. «Զի՞նչ եղև, վասն որո ասեսդ»: ասէ թագաւորն. «Զօրքն զփախուստ առին և գնան»։ Իսկոյն խանն ի դուրս վազեալ ետես, զի թիկունս էր դարձեալ ամենայն զօրն իւր և գնային։ Ցայնժամ գոչեաց բարձրաձայն խանն՝ ճահ, որ լսի՝ այս է։ Եւ հրաման եհան, եթէ «Ամենայն ոք ի զօրաց իմոց, ոչ առնէ զոր ես առնեմ՝ մեռցի»։ Եւ, ըստ օրինի Մուղալին, վճիռ այն՝ բերանոյ ի բերան լու եղև յամենայն զօրսն։ Եւ խանն ի սրտմտութենէն զգտակն, որ էր ի գլուխ իւր, էզարկ ի գետին։ Եւ ի ծունկս անկեալ Գ (3) նետս նետեաց ընդդէմ Տաճկացն. որ ի նոյն քթթելականն հրամանն սաստկութեան զօրացաւ և ամենեքեան Թաթարանին ի ծունկս անկեալ սկսան իւրաքանչիւր զիւր Գ (3) նետն նետել։ Եւ լինէր զի յայնմ ժամէն, որ էր աւուրն իբրև ժամ Գ (3) և մինչև ցինն ժամն ծածկեցաւ օթն և իբր ի շքի կային ներքո մարդիքն ի թանձրութենէ նետիցն, որ գնայր ընդ օդն։ Եւ յայնմհետէ ի նոյն հարուածոց նետիցն ապա յաղթեալ մանաւանդ եթէ կոտորեալ զօրն Տաճկաց զփախուստ կալան, որպէս վէրո գրի։ Բայց թագաւորն Հայոց դարձեալ ի վարելոյ զսուլտանն և եկն յԵրուսաղէմ և եդիտ զամենայն անօրէնքն փախեալ և սպանեալք ևս ի Թաթարացն, որ նախքան զնայ էին եկեալ։ Եւ մտեալ յԵրուսաղէմ ժողովեաց բազում քրիստոնայս, որք թաքեալք է[ի]ն, ծակս վասն երկեղին և կացեալ անդ աւուրս ԺԵ (15), տօնս մեծայնհանդէսս և պաշտօնս քրիստոնէականս, մանաւանդ թէ տօնախմբութիւնս պատարագաց ետ կատարել ի սուրբ անդիսն Երուսաղէմի։ Եւ գնացեալ յամենայն ուխտատեղիսն սուրբ, մխիթարեցաւ հոգով, որ մինչ էր յԵրուսաղէմ, հրաման և սիգեղ գայր նմա ի խանէն՝ զԵրու-*

սաղէմ քաղաքն սուրբ, իւրով կողմամբքն, նմա ի տուրս և ի տուացուածս տալով[55]. և ապա դարձաւ ի Դամասկոս առ Խազանն և ձմերեցին անդ ի Դամասկոս։ Իսկ խանն թողոյր պահապանս Դամասկոսի և այլ գաւառին հազարապետ[56] մի իւր հազարօքն և ինքեանք ելեալ գնային յաշխարհն իւրեանց[57]։ Եւ եղև մինչ անցին աւուրս Ժ (10) և հեռացաւ խանն, յարեան Տաճիկքն ամենայն, որ էին յերկրին, զի ղոչ ոք էին սպանեալ Մուղալքն, եթէ մեր են այժմ պարիկոսք, որք յարեան ի վերայ և կալեալ զամենայն Թաթրնին մերկացուցին և արտաքսեցին[58]. և յարուցին դարձեալ զպարոնն Դամասկոսի ‖ որ էրն ի սուլտանէն կարգեալ։ 128 ր Արդ՝ իբրև զայս լուեալ խանն բարկացաւ յոյժ։ Իսկ թագաւորն Հայոց ելեալ ի գաւառէն իւրմէ առժամայն սրընթաց Գ (3) արամբք և զԽ (40) աւուր ճանապարհն ԺԱ (11) օր ընթացաւ և բողոքեալ առաջի խանին, զօձիսն պատառեալ ասէր[59]. Ո՞չ այդ բանք են զոր ես ասէի, թէ ջնջեա զՏաճիկսն ամենայն և դու ոչ կամեցար. արդ այժմ յազգէ ազգ նախատինք եղև քեզ և զի արդ կարես տէր կոչել զքեզ, զի հալածական և խաբեալ ես ի յոչինչ ազգէն Տաճկացս և այլ այսպէսի բանս բազումս ասէր նմա։ Որոյ խանն երդուեալ ի գլուխն իւր զի ի ձմեռն, որ գայցէ, առցէ զվրէժն ամենայն ի սոլտանէն։ Որ և պատուէր տայր թագաւորին Հայոց պատրաստել զինքն գնալ անդ դարձեալ։ Եւ դարձաւ թագաւորն յաշխարհն իւր և պատրաստեաց զինքն փարթամ և ընտիր զօրօք հեծողաց ձիաւորաց, մահմէզաւոր ԴՌ (4000), հետևազաց Ռ (1000)[60], չարխողաց[61] ԴՃ (400), և այլոց արուեստաւորաց բազում, վասն բերդիցն առնելոյ. քանզի էր սահմանեալ ի խանէն կարգաւ ի մուտն սկսեալ զամենայն բերդ և ամրոց առնուլ և քակել և ապայ յառաջ գնալ։ Իսկ ամենայն արք, զօրս ընդ իւր տարաւ թագաւորն Հայոց, յայնժամ էին ԺԸՌ (18000)։ Այլ իբրև եկն ժամանակ գնալոյն մանաւանդ, թէ զամենայն ամառն զայն սօլտանն գանձիւք կաշառեաց զամենայն մերձաւորս[ն] և զխորհրդակիցսն խանին և ասացին նմա և ետուն թուղիր, եթէ՝ երկիրն շող է և վատ օդ և բազում կայ ջեռս, մի գնացսես անձամբ, այլ յղեայ զայլ ոք. և հաւանեցուցին զխանն։ Իսկ նայ կարգեաց ի տեղի իւր, գլուխ զօրուն զերկրորդն թագաւորութեանն իւր Խութլուշահ կոչեալ պարոնն։ Եւ Խութլուշահն առեալ միայն ՂՌ (90000)[62] Թաթար, գայր հասանէր ի Դամասկոս։ Եւ վաղվաղակի Տաճկնին թողին ի նայ զքաղաքն, ըստ առաջին կերպին։ Իսկ թագաւորն Հայոց գայր, յիւրն գաւառէն ըստ վերոյ ասացեալ կերպին, իւրօվքն հանդերձ, որք և առացին*, եթէ սօլտանն եւս եհաս ի նոյն տեղին առաջնո կռւոյն։ Եւ ելեալք ի միւս օրն ի Դամասկոսէ հասեալ ի տեղին և իջին դարձեալ ընդդէմ միմեանց։ Զօրքն զերիս աւուրս ոչ պատերազմեցան ընաւ։ Իսկ թագաւորն ստիպէր միշտ զպարոն Թաթարացն յուղել պատերազմ և նայ թուլանայր, վասն զի, որպէս ասի յոմանց, եթէ՝ Թ (9) բեռն ոսկի էր առեալ ի սուլտանէն ոչ կռուել, զոր և արար իսկ։ Զի յաւուրն Դ (4) իբր սակաւ մի շարժեցին

* Բնագրում որք և ասացին կրկնված է։

Տաճիկքն կուիւ առժամայն զօրն Թաթարին զփախ դարձաւ և ելեալք անդի ամենեքեան դարձան ի Դամասկոս և իբրև հասին ոչ մտին անդ, այլ արտաքոյ գնացեալ փախչէին և Հայերն զկնի. զի ոչ իշխէին ի սուլթանէն թողուլ զընկերութիւն Թաթարին։ Իսկ Տաճիկքն, որպէս և են տրայիտուրք[63], դաւ պեղծ գործեալ էին, քանզի թողեալ էին զԲ (2) գետսն Դամասկոսի ի վերայ դաշտին մեծի, որ է իբր թէ ճանապարհ աւուրց Բ (2) յարևելից կողմն Դամասկոսի, ընդ որ էր ճանապարհ Թաթարին, զի այլուր անհնար էր գնալն, քան ընդ այն։ Եւ նոցա թողեալ զջուրն ի վերայ այնմ դաշտին և խմորեալ զամենայն ի ցեխ և ի տիղմ դարձուցեալ ի յոր մօրատ անկեալ ամենայն զօրն Թաթարին և Հայոցն ևս խրեցան և ոչ կարացին ելանել[64]։ Եւ այնպէս ամենեքեան անդ սատակեցան, ոչ զերծեալ ի Թաթարացն Դ (4) կամ ԵՌ (5000), իսկ ի Հայերուն ոչ եկին ի տուն ԵՃ (500)։ Դարձեալ այլ իմն չարագոյն պատահէրն, զի որք ի վերայ մեռեալ մարմնոցն մարդկան ի ձիոց հազիւ միւսոյն ի միւսն անցանելով ի խառախն զերծանէին ի տղմոյն զկնի աւուրց։ Եւ գային առ ափն գետոյն Եփրատայ, զի ընդ այն էին անցանելոց, գտան զգետն անչափ յորդոր* և ոչ կարէին անցանել[65], բազումքն անդ խեղդէին։ Այլ և ոմանք Թաթարք տկօք կամ ցախեա իբր թէ նաւս շինէին և կապէին ի բազում ձիս զայն և անցանէին ի միւս ճզոյ գետոյն ի միւսն և այնպէս ‖ զերեք կամ զԴ (4) օր ադայ թէ 129 ա կարէին անցանել. լինէր ապայ զի մնացեալ Թաթարն, զմնացեալ Հայերն այնպէս անցուցանէր, .եթէ տային ինչս վարձս, որ և պատահեաց ևս զի բազումք անցեալք յայնկոյս գետոյն, ոչ կարէին ելանել, զի ջուրն մղէր զնոսա և հանէր ի փուլս և յապառաժ տեղիս։ զի ոչ կարէին ի վեր ելանել, որ և բազումք ի նոյն փլատակերն ի սովու մեռան, և այլ զշուն[ս] և զձիս և զմարդ[ս], զոր գէշն ջուրն բերէր, քաշէին և ուտէին։ Ասի ևս, եթէ ոչ երևէր եզրն Եփրատայ, այնչափ էր տարածեալ։ Արդ՝ թագաւորն Հայոց զերծեալ այսպէսի նեղութեամբ գնաց բողոք ի խանն ի վերայ այնչափ նեղութեանցն և** աղէտին գործելոյ[66],. ընդ որոյ վիշտ ասեն, եթէ ելաց խանն ևս։ Եւ երդուաւ հաստատութեամբ, զի ի յառաջակա ձմեռն անձամբ իջցէ յԵգիպտոս. որ և հրաման եհան, դի յամենայն զօրքն իւր իւրաքանչիւր Ժ (10)-էն Է (7) հեծանէին ընդ նմա, որ և ասեն եթէ լեալ էր. զի եթէ հեծեալ էին այն ամենայն լինէր թօվմանս ԺԴ (14), որ է ամեն թուման ԿՌ (60000) այր։ Իսկ սուլտանին լուեալ զայն բազում և անթիւս ոսկի յղեաց շրջակայիցն խանին, զի մի թողացուսցեն այնմ իրին լինիլ և եթէ այն լինիցի անցեալ ջնջի ամենայն տաճկութիւնն։ Զոր առեալ պարոնացն Թաթարին զգանձն բազում խօսէին յականջս խանին մնացուցանել զգնալն իւր. և նայ ոչ առնոյր յանձն։ Իսկ ի միջոցի աստ բարի խանն այն Ղազան ետ բազում տուրս պարգևս և սիգեղս և ազատութիւնս և հարկայ-

* Մյուս տարբերակներում զի զայր դարիւ և դարիւ փխ. անչափ յորդոր:
** Մյուս տարբերակներում նեղութեանցն և չկա։

պահանջութիւնս ես յիւր երկրէն յամենայն ամի Հայոց Թագաւորին ընդ կորստեան և զենին նորա և ասէ. «Գնայ ի տուն քո և ուրախ լեր, զի ես ձեռամբս առից զվրէժ քո ի Տաճկաստանացն»։ Իրր և մերձեցաւ ժամանակ գնալոյ խանին ի վերայ սուլտանայ և տեսին իշխանքն իւր, Թէ ոչ կարէին դարձուցանել զնայ, զի մի գնասցէ, գեղ մահու ետուն նմա և ելաւ ի կենացս։ Եւ ասի իսկ, եԹէ կին նորա, զոր առաւել սիրէր, գեղեաց զնայ և մեռաւ[67] և ամենայն խորհուրդ խափանեցաւ և ջան Թագաւորին Հայոց։

—o—

Ընդ այսմ իսկ ժամանակիս ՌՅԷ (1307) և Հայոց Թվին 129ա ՉԾԶ 1307) Նուէմբեր ԺԷ (17) սպանաւ վերոյ ասացեալ պարոնս Հայոց ՀէԹում և դեռաբոյս Թագաւորն Հայոց Լևոն,[68] եղբօրորդի Թորոսին, զոր սայ ՀէԹումս Թագաւորեցուցեալ էր ընդ իւր դեռ ևս Գ(3) ամ էր[69]։ Սոքա երկոքինն և այլ ևս պարոնայք իւրեանց սպանան ընդ սոսա ի Թագաւորութիւնն իւրեանց Կիլիկեայ ի ստորոտն կամ Թէ ի գեօղն Անաւարզա դղեկին յանօրէն պարոնէն Թաթարայ ի Բիլարղուէն։ Իսկ յեռոյ եղբայր Թագաւորիս ՀէԹմոյ Ալինախ անուն գնաց ի խանն ի դանգատ և ետ սպանանել զնոյն Բիլարղուն դատաստանաւ[70]։

—o—

Ընդ այն ժամանակն բռնակալութեանն Պավարին և յամս 144բ տեառն ՌՅԻԱ (1321) անօրէն բռնաւորն Թաթար Տամուրտաշն[71], որ էր պարոն Հռոմաց երկրին, զկնի մահուանն բարեպաշտ Թագաւորին Հայոց Օշնի, որ փոխեցաւ յաստեացս և եԹող զորդին իւր զԼեոն[72] տղայ ամաց. և զի իշխանքն Թագաւորեսցեն՝ մինչ տղայն ի հասակ գայցէր։ Յորում ժամանակի ասացեալ Դամուրտաշն բազում հեծելօք, աւելի քան ԼՌ (30000) և բազում հետեւակօք, այսինքն ամենայն օրդուին իւր, ակամայ և բռնուԹեամբ ի յաշխարհն Հայոց ի Կիլիկեա մտաւ և բազում աւերս արար, սպանութիւն և աւար. և բազում ջան եդ եԹէ ամրոց ինչ կարիցէրն առնուլ, բայց ոչ կարաց։ Այլ և ի նոյն Հայերոյն Թաթարնին բազում պակասութիւն և կորուստ ի յոմանս յանցս և ի կիրճս ընկալան. և եԹէ ոչ էր լեալ, զի ասէր Դամուրղաշն, եԹէ «Ի սիրելաբար և ի տեսութիւն եմ եկեալ». և վասն այն զի երկընչէին Հայերն յայտնի ճխասել Թաթարնոյն, ապայ Թէ ոչ զամենայն կոտորեալ էին և սպառեալ։ Եւ իբր ել Դամուրդաշն ի Հայոց ի ձմերայնոյ գոլօվ, ի գարունն մերձակայ, ապրիլ Ի (20), զօրքն սուլտանին ԽՌ (40000) հեծեալս և այլ անչափ հետևակս եկին ի նոյն երկիրն Հայոց. և եկեալ ի քաղաքն Էգիոյ, որ է Այաս։ Յերկրորդ օրն, յոր տօնի սրբոյն Գէորգայ, ԻԳ (23) ապրիլի, առին զմինային[73] բերդն, զի ծօվս ցամաքեցաւ և ի ներս գնաց. և Տաճկնին ի ծօվէն եկին և կտրեցին զճանապարհն, որ ի ներսի բերդն, [և ի ծ]օվն ոք չկարէր գնալ. և գերեցին անդ

[անթիւ] անձինք և անբաւ աւար առին [և ապա ն]ստան սղարելով ի վերայ ներսի բերդի[ն։ Եդին բ]աբան և զամենայն ի փուլ ածին և զամենայն [դրունսն]. և զբէչքայ[74] քաղաքին բերեալ կամ[ուրջ կապ]եցին ընդ ծովն ի ներս, մինչ եկին [մերձ պար]իսպի բերդին և նետախոբով առնէ[ին զմարդ]իքն, որ քայլէին ի դրանն կողմն [դղեկին, ո]րով յամենայն կողմանց սաստկաց[աւ մարտ]ն։ Այլև Թագւորն Կիպրոսի առաք[եաց խա]լէս Թ (9) յօգնութիւն քրիստոնէից[ն, որք կոր]ըստեան եղեն պատճառ, քան փրկու[թեան, քա]նզի զամենայն ոք, որք փախչէին ի բերդ[էն ընդու]նէին և առնուին և զամենայն ինչս [ks որ լինէր], զի ոչ ոք մնաց ի բերդն ի ք[ազաքաց]եացն, այլ իւրեանց ընչիւքն գնացին ի [խալեքն]։ Իբր այս լինէր ի գիշերի հուր [արկին ի բ]երդն և թողեալ ի բաց գնացի[ն ընդ ծո]վն։ Այսպէս կորեաւ Այաս երկոքին [ըհրդո]վն իւր, գերեալ ի Տաճկացն։ [Զայս աղ]էտ կսկծանաց իբր լուաւ պապն [Ջոհան]էս առաքեաց ԼՌ (30000) ֆլօրինս ոսկոյ, զի զ[արձեալ շին]եսցեն զբերդն Այասոյ, որ և առ[եալ զայ]ն Հայոց։ Եւ բազում յոյժ յաւելին [ի վերայ և շ]ինեցին ղբերղսն զայնոսիկ առ[աւել յոյ]ժ ամրայգոյն և բարձրագոյն։ Եւ [եկաց ի]բր ամս ԺԶ (16) և ապա ի ժամանակս սոյն Պ[ավարի]ս[75] և պապութեանն Բէնէդիքթոսի, [դարձեալ եկին] Տաճիկքն մեծաւ սաստիւ, զի [զամենայն Հայք սպան]ասցէն, որ երկուցեալ Հայերուն, [կամ]աւ ետուն զԱյաս և զայլ ամենայն բեր[դս և զե]րկիրն, որ յիւրեանց կողմէ Ջահու[ն գետ]ուն, զոր առեալ ունին մինչև [ցայսօր] նոյն մահմետականքն։

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Բնագրում «Յաղագս հիացականացն որք ի կողմանս դոն Իմպէանիո կղզոյն» վերնագրի տակ նշված է նաև վերոբերյալ հատվածը, հնարավոր է, որ դա Ն. Պալյենցին չի պատկանում, բայց որովհետև վերաբերում է Կիլիկիային, նպատակահարմար գտանք հրատարակել։

2. Խոսքը Ինովկենտիոս IV պապի մասին է։

3. Կաֆայի եպիսկոպոս Թադեոսի կողմից պատարագի մեկնությունը թարգմանվել է 1354 թվին։ Այդ մասին մեզ հաղորդում է ժամանակակից գրիչ Թորոս Ալվրցին. «Կատարեցաւ գիրքս այսմիկ գործոյս յամի մարդեղութեան տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ՌՅՃԼԳ (1334) || | յամսեանն | || թարգմանեցաւ գիրքս, որ կոչի մեկնութիւն պատարագին ձեռամբ Թադէոսին եպիսկոպոս Կաֆային, ի կարգէ Քարոզողացն։ Եւ գրեցաւ ձեռամբ արուգ և փցուն գրչի Թորոսի արեգի Ալվրցոյն ի յամին նոյնումն տեառն մերոյ և Փրկչին ՌՅՃ և Դ (1354) յամսեանն աւգոստոսի ԺԱԳ (13), աւարտեցաւ գիրքս ի քաղաքիս, որ կոչի Պիղ...» (ՏծԿՄՎ, էջ 7, հմմտ. Ալիշան «Այրարատ», էջ 545, ՀԶՀ, էջ 407—408, № 4065, էջ 157ր)։ Ալիշանի կարծիքով Թադեոս Կաֆայեցին մահացել է 1357 թվին (նույն տեղ, էջ 545)։

4. Բնագրում նկարագրված է 1260 թվի դեպքերը։

5. Իմա՝ Բաղդադ։

6. Ալամութ բերդ, տե՛ս ՄԺ, 1, էջ 59, ծանոթ. 62, վերևում, էջ 89, ծանոթ. 177։

7. Իմա՝ Կլեմենս VI պապը։

8. Տես նախորդ ծանոթ.։

9. Տես և հմմտ. ներքևում էջ 513։ Մի այլ հիշատակագիր, Ղրիմից, 1349 թվին նշում է, որ մահտարաժամը տևելով 15 ամիս, դեռ շարունակվում է. «Այլ գոյ բան յիշելոյ և յոյժ զարհուրելի, զի մինչև ցայժմս ԺԵ (15) ամիս է, որ անպատմելի և անթուելի մեռան տարաժամ մահուամբ, սկսեալ յարևելից՝ հիւսիսական կողմամբք մինչև աստ, և գնաց մինչև յարեմուտս, զոր ոչ ոք կարէ ընդ գրով արկանել, զի վասն մեղաց մերոց եկն ի վերայ ամենայն աշխարհի, և դեռևս մինչև ցայսաւր, և ոչ ոք է, որ անցուցանել կարէ զբարկութիւնս եկեալ...» (ՀԶՀ, էջ 358)։ Թե այս համաճարակը եկել է Հայաստան, աղբյուրները ոչինչ չեն հաղորդում, միայն 1347 թվի մի հիշատակարանում կարդում ենք. «Ի Ցեղընկան եկի խաղաղութեամբ և եղև մահտարաժամ,...» (ՀԶՀ, էջ 333)։

10. Այսինքն մինչև 1362 թվի հունվարը. տես և հմմտ. ներքևում, էջ 513։

11. Գվիտոն Լուզինյան, լատինամոլության համար 1344 թ. հայերը սպանեցին։

12. Բնագրում Մ. Լեհացին նկարագրում է Տիտոսի կողմից Երուսաղեմի պաշարման, գրավման և հաջորդող սովի պատմությունը, որին Ն. Պալյենցն ավելացնում է վերոհիշյալ հատվածը։

13. Այս հատվածի նախորդող մասում Մ. Լեհացին խոսում է հռոմեական կայսր Թեոդորոս առաջինի և նրան ժամանակակից մարդկանց ու դեպքերի մասին։ Ներսես Պարթևի մահը տեղի է ունեցել 373 թվին։ Վաղուց ապացուցված է, որ Ներսեսը թունավորման հետևանքով չի մահացել (մանրամասն տես Ա. Գարագաշյան «Քննական պատմութիւն Հայոց», մասն Գ, Թիֆլիս, 1895, էջ 144—145)։ Դեպքը պատմվում է ըստ Փ. Բուզանդի։

14. Բնագրում Մ. Լեհացին պատմում է, թե ինչպես Լուդովիկոս I-ի թագավորության ժամանակ (810—835 թթ.) մեկ անգամ կարկուտի հետ ընկնում է մի մեծ քար, այնուհետև Ն. Պալյենցն ավելացնում է սույն հատվածը։

15. Տես վերևում, էջ 177, 190, ծանոթ. 9, ներքևում, էջ 513։

16. Իմա Ավինիոն, քաղաք հարավ-արևելյան Ֆրանսիայում։

17. Խոսքը Հենրիկոս III-ի մասին է։

18. Եթե ստույգ է հեղինակի գրած մեր թվականության 1107 թիվը, ապա «Հայոց ՇԾԾԶ» պետք է ուղղել «ՇԾՄԶ», թեև երկուսն էլ ստույգ չեն։ Ռուբենի իշխան հռչակվելը սովորաբար նշվում է 1080 թ. (Ալիշան «Սիսուան», էջ 44, ՄԺ, 1, էջ 74)։

10. Այսինքն՝ 1090 թ.։

20. Ն. Պալյանը նկատի ունի Հեթում Պատմիչի անունով հայտնի ժամանակագրությունը, որը, վերևում նշված մի քանի ձեռագրերում, իբրք, հաջորդում է Մ. Լեհացու Գավազանագրքի հայ թարգմանությանը (№ 2037, էջ 140ա—146բ և այլն)։ Սակայն, ինչպես արդեն ցույց ենք տվել, այդ ժամանակագրությունը պատկանում է ոչ թե Հեթում Պատմիչին, այլ Հեթում Բ թագավորին (ՄԺ, է, էջ 6[illegible]—[illegible])։ Ն. Պալյանը, ըստ երևույթին, իր ժամանակակից Ստեփաննոս քահանայի նման շփոթության մեջ է, (ՄԺ, 1, էջ 68)։

21. Որոշ տարբերակներում «ՌԾԼԵ» (№№ 2037, 3079, 2038)։ Ստույգը 1137 թիվն է (հմմտ. ՄԺ, 1, էջ 75, 91, ծանոթ. 15)։ Գրիգոր Երեցը այդ արշավանքը նշում է հայոց 586 թվին. «Իր յաւուրսն յամառնային, յամիսն յուլիսոյ») „Recueil des Historiens des Croisades" t. Ier, էջ 152)։

22. Այս վկայությունը թեև հաստատում է Ալիշանի («Սիսուան», էջ 469—470) և Մ. Օրմանյանի («Ազգապատում», էջ 1515) հաշվումները, սակայն Ա. Տեր-Միքելյանը դրանք սխալ է համարում (Ս. Անեցի, էջ 286, ծանոթ. 73)։

23. Տես վերևում, էջ 61, 83, ծանոթ. 114։

24. Տես և հմմա. էջ 62։

25. Վկայությունն ստույգ չէ, Լևոն Ա-ն Անտիոքը գրավել է 1216 թ. «յամսեանն փետրուարի ԺԴ (14) Տեառնընդառաջին...» (Ալիշան, «Սիսուան», էջ 502, ծանոթ. 2, ՄԺ, 1, էջ 79, 94, ծանոթ. 51)։

26. Տես վերևում, էջ 147-148։

27. Հռոմկլա-ի սույն գրավման մասին ժամանակակիցների պատմածը տես վերևում, էջ 92, ծանոթ. 219)։

28. Այսպես է գրում նաև Մինաս Համթեցին. («Ազգաբանութիւն Հայոց», 1870, Վաղարշապատ, էջ 46), ուրիշ աղբյուրներ հաղորդում են, որ Ստեփանոս կաթողիկոսը մահացել է գերության մեջ (Ս. Անեցի, էջ 153, Ստ. Օրբելյան, էջ 444, 503, տե՛ս վերևում, էջ 80)։

Վերջին հեղինակների ասածը հաստատում է մի այլ ժամանակակից, որը հաղորդում է այդ տարիներին վերաբերող ուշագրավ այլ տեղեկություններ։ Դժբախտաբար, մեզ հետաքրքրող հիշատակարանը թերի է.

«...կատարեցի...ւետարանս ես Թորոս ի սուրբ և ի գերահռչակ ուխտս Դրազարկ ՋԽ (1291) թուականիս, ի թագաւորութեանս բարեպաշտ և աստուածասէր արքային Հայոց Հեթմոյ, որդւոյ Լևոնի. ի դառն և ի դժնդակ ժամանակիս, որ էր հալածումն քրիստոնէից, զոր յայսմ ամի քանդեալ աւերեցան դեղեցկաշէն քաղաքքն Հռովմայեցւոց ծովեզերայքն Տրապաւլսոյ և Աքայիոյ և եկեղեցիք քրիստոնէից եղեն հաւուց և խաշանց փարախ։ Եւ դկնի մի ամի առաւ աստուածաբնակ դղեակն Հռոմկլա ի զօրացն փարաւոնէ, որ էր աթոռ հայրապետացն Հայոց և սպասք սրբութեանն, զերի վարեցաւ հանդերձ մեր գլխովն՝ հայրապետաւն, որոյ անունն Ստեփաննոս. և հասեալ ի քաղաքն Դամասկոս ճգնաւորական հանդիսիւ փոխեցաւ յաստեացս և եթող սուգ անմխիթար ազգիս Հայոց և յայնժամ խորհուրդ ի մէջ առեալ թագաւորն Հայոց Հեթում բոլոր ուխտիւն եկեղեցւոյ և իշխանաւքն հանդերձ շնորհել բերդ ամուր և երկիր առատ սր. աթոռոյ Լուսաւորչին առ ի հաստատել վերստին։ Եւ առաքեն դիմս նուաստութիւն և զսիրելի և զսննդակից եղբայրն իմ զպատուելի եպիսկոպոս զտէր Թումաս, յաշխարհս արևելից առ ի մեծարանս եպիսկոպոսաց և իշխանաց գալ վերստին նորոգել զաթոռ սուրբ Լուսաւորչին. և մեզ հրամայեալ ի թագաւորէն և ի սուրբ ժողովոյն յառաջագոյն գալ ի դիրս. սր. առաքելոյն Թադէոսի առ գերահռչակ և արժանապատիւ եպիսկոպոսն տէր Տիրացուն, որ էր առաջնորդ սուրբ ուխտիս Թադէոսի առաքելոյ։ Եւ յայսմ ժամանակի փայլէր իբրև դջահ վառեալ ի մէջ գիշերի, որ էր նաւահանգիստ վտանգելոց, զղջելոց և ծարաւելոց, շնորհաւք սուրբ առաքելոյն։ Եւ Ը (8) ամաւ յառաջ եկեալ սուրբ արքայն Հայոց Լևոն, բարի և սնուցող և երախտաւոր, տէրն իմ, յայս սուրբ ուխտս և բազում սէր գտեալ արքային Հայոց ի սիրոյ եպիսկոպոսէս՝ տէր Տիրացուէ. Նաև ես նուաստս Թորոս վայելեալ ի սէր սորա և ի...» (№ 9223, Գ, նույնը տես № 482 ձեռագրում, էջ 53բ)։

29. Անծանոթ վայր։

30. Հմմտ. ՄԺ, 1, էջ 86, տես նաև վերևում, էջ 80։

31. Նկատի ունի Դրխտոր Է. Անավարզեցի կաթողիկոսին (1293—1307 թթ.), որը ձգտում էր հայերի կաթոլիկացմանը։

32. Լևոն Բ-ի մահից՝ 1288 թ. փետրվարի 6 (տես վերևում, էջ 169, ծանոթ. 174) մինչև Հեթում Բ-ի կրոնավոր դառնալը՝ 1293 թ. (ՄԺ, 1, էջ 86), իրոք, տևում է հինգ տարի։

33. Անվանապես տես Հեթում Բ-ի մոտ (ՄԺ, 1, էջ 83—85, և վերևում, էջ 105)։

34. Տես նաև ՄԺ, 1, էջ 86։

35. Տես վերևում, էջ 105։

36. Իմա Հովհաննես։

37. Այս դեպքերը, ըստ Հեթում Բ-ի, տեղի են ունեցել 1293 թ. (ՄԺ, 1, էջ 86)։

38. Նույնը ինքը Հեթում Բ. (Հովհաննես Minor)։

39. Այս հաստատում է նաև Հեթում Բ-ն, ըստ որի նա կրոնավոր դարձել է 1293 թ. և նույն թվին էլ նորից ստանձնել թագավորական իշխանությունը (ՄԺ, 1, էջ 80, 87)։

40. Այսինքն՝ 1294 թ., տես նաև Հեթում Բ., ՄԺ, 1, էջ 87։

41. Այսինքն՝ 1295 թ., տես նաև Հեթում Բ., (ՄԺ, 1, էջ 87), վերջինիս մոտ չի ասվում, թե ինչու է թագավորական իշխանությունը նորից հանձնել Թորոսին։

42. Այսինքն՝ 1296 թ., տես նույն տեղ, էջ 87, 106։

43. Ն. Գալիենցն իր մի այլ աշխատության մեջ Սմբատի իշխանությունը նշում է երկու տարի՝ մինչև 1298 թ. (տես ներքևում, էջ 205)։ Ավելի ստույգը սա է։

44. Դահակալական այս պայքարի մասին համառոտ տես ՄԺ, 1, էջ 86—87, 106, որտեղ նշված է, որ Թորոսը բանտարկված էր Մոլեվոնի բերդում, իսկ Հեթում Բ-ն՝ Բարձրբերդում (տես նաև վերևում, էջ 150, 170, ծանոթ. 193)։

45. Ն. Գալիենցը ներքևում (էջ 205) Կոստանդինի թագավորության ժամանակը մոտավոր հաշվով նշում է մեկ տարի։ Ավելի ճիշտն առաջարկվող վկայությունն է, որով-հետև Հեթում Բ-ն թագավորական իշխանությունն երրորդ անգամ ստանձնել է 1299 թվին։ Այս պայքարի մասին խիստ համառոտ հիշում է նաև Մ. Համթեոին («Ազգաբա-նութիւն Հայոց», էջ 47—48)։

46. Իմա, Ֆրանցիսկյան վանական միաբանությունը, որի անդամները կոչվում էին կրասեր եղբայրներ՝ (իտ.) Frari Minori։

47. Ն. Գալիենցը մի փոքր սխալվում է։ Խոսքը վերաբերում է Ղազան ղանի Սիրիա կատարած առաջին արշավանքին, որը տեղի է ունեցել 1299 թ. աշնանը և 1300 թվի գարնանը (մանրամասն տես Ռաշիդ-ադ-դին, հատ. 3-րդ, էջ 182—186)։

48. Լեն-Գուլի համաձայն Եգիպտոսում այդ ժամանակ, երկրորդ անգամ, (1299—1309 թթ.) իշխում էր Նասիր Նասիր-ադ-դին Մուհամմեդը (էջ 63)։

49. Ղազան ղանի կողմից Դամասկոսի գրավման մասին մանրամասն պատմում է Ռաշիդ-ադ-դինը, բայց նա լռում է Ն. Գալիենցու հաղորդածի մասին։ Ռաշիդ-ադ-դինը Դամասկոսի գրավումը նշում է 1299 թ. դեկտեմբերի 31-ին (էջ 184, հմմտ. «Հեթում Պատմիչ Թաթարաց», Վենետիկ, 1842, էջ 62—63)։ Ռաշիդ-ադ-դինը նշում է նաև, թե Ղազան ղանը, երբ տեսավ Մայդան-ալ-Հաս բնակավայրը, Դամասկոսի մոտ, այնքան հա-վանեց նրա գեղեցկությանը, որ կարգադրեց այն պահպանել, այդ բանի համար առանձ-նացնելով զինվորական հատուկ ջոկատ և արգելեց այդիներում մոնղոլ զինվորների թրև գալը, վնասներ պատճառելը և քաղաքացիներին վիրավորանք հասցնելը (էջ 184)։ Ն. Գա-լիենցու վկայության հիմքում հավանաբար այս տեղեկությունն է ընկած, երբ նա գրում է. «Ձոր տեղիս, որ առնուին ոչ աւերէին և ոչ դմարգիկն սպանանէին»։

50. Ռաշիդ-ադ-դինի հաղորդմամբ, Ղազան ղանն իջևանել է Դամասկոսի մոտեր-քում գտնվող Մարջրախիտ վայրում, իսկ Հեթում Պատմիչը նշում է. «Եհար զխորանս իւր առ գետովն Դամասկոսի» («Հեթում Պատմիչ Թաթարաց», էջ 63)։

51. Ն. Գալիենցու համաձայն հայ-մոնղոլական ուժերի և եգիպտացիների բանակի միջև ճակատամարտը տեղի է ունեցել «յայնմ տեղոջ» ուր իջևանել էր Ղազան ղանը, մինչդեռ, ինչպես ճիշտ նշում է Ռաշիդ-ադ-դինը, թշնամի բանակների միջև ճակատա-մարտն ընթացել է 1300 թ. հունվարի 12-ին Ջեբել-աս-Սալիհի վայրում, Դամասկոսից մի քանի ժամվա ճանապարհ հեռու։ Այս կռիվներում հայերի և վրացիների մասնակցության մասին հիշում է նաև Ռաշիդ-ադ-դինը (էջ 185)։

52. Այլ մանրամասնությամբ այս մասին հաղորդում է նաև Հեթում Պատմիչը (տե՛ս «Հեթում Պատմիչ Թաթարաց», էջ 62), իսկ Մ. Համթեցին, թեև շատ բան համառոտում է, բայց դեպքերը նույնությամբ հաստատում («Ազգաբանութիւն Հայոց», էջ 45—46)։ Եթե նկատի ունենանք, որ Մ. Համթեցին կազմել է նաև Հռոմի կայսրների ցանկը (տես նույն տեղ, 53 էջից), ապա կարող ենք ենթադրել, որ նա ամենայն հավանականությամբ օգտվել է Ն. Գալիենցի սույն թարգմանությունից։

53. Իմա կահիրե։

54. Վր. gmiri, հերոս. նաև քաջ, խիզախ, կտրիճ։

55. Հեթում Պատմիչը համառոտաբար ևս հիշում է Ղազան ղանի նվիրատվությունների մասին, ավելացնելով. «Եւ եղբայր Հեթում զայս ամենայն աչօք տեսի, զի առաջիկայ էի»։ («Հեթում Պատմիչ Թաթարաց», էջ 62), բայց նա նման բան չի հաղորդում։

56. Բնագրում «Ռապետ» ձևով։

57. Ռաշիդ-ադ-դինի համաձայն, Ղազան ղանը Դամասկոսի կառավարիչ նշանակում է Կիփչակին, իսկ Սիրիայում մնացած մոնղոլ զորքերի հրամանատար՝ Խութլուշահին և ուրիշներին (հմմտ. «Հեթում Պատմիչ Թաթարաց», էջ 63) և ինքը Դամասկոսից վերադառնում է Թավրիզ։

58. Դամասկոսի կառավարիչ Կիպչակի դավաճանության և մոնղոլական զորքերի պարտության մասին բավական մանրամասն հաղորդում է Հեթում Պատմիչը («Հեթում Պատմիչ Թաթարաց», էջ 64), իսկ Ռաշիդ-ադ-դինը հիշում է հարևանցիորեն (էջ 185)։

59. Հեթում Բ-ի և Ղազան ղանի այս հանդիպման մասին այլ աղբյուրներից մեզ ոչինչ հայտնի չէ։

60. Այս օգնության մասին ընդհանուր ձևով հաղորդում է նաև Հեթում Պատմիչը («Հեթում Պատմիչ Թաթարաց», էջ 64)։ Բնագրի «հետևազաց Ռ» սխալ է, այն պիտի լինի «ԺԳՌ», որովհետև քիչ ներքև Հեթում Բ-ի ամբողջ զորքը հեղինակը նշում է ԺԸՌ (18000)։

61. Ալիշանի ծանուցմամբ, նշանակում է, պատերը քարաձիգ մեքենայով փլցնող («Հայապատում», Բ, էջ 523, ծանոթ. 7)։

62. Հմմտ. «Հեթում Պատմիչ Թաթարաց», էջ 64, ուր Խութլուշահի զորքը նշված է 30000։ Ռաշիդ-ադ-դինը նշում է, որ 1300 թ. աշնանը առաջատար ջոկատով դնում էր Խութլուշահը, այնուհետև շարժվում էր Ղազան ղանը (էջ 186)։

63. Ալիշանը հայտնում է, որ նման մի բառ ունի Եղիշեն դարպաս նշանակությամբ, բայց տվյալ դեպքում այս բառը պետք է ունենա խորամանկ, նենգավոր իմաստ («Հայապատում», Բ, էջ 524, ծանոթ. 1-ին)։ Եղիշեի մոտ գտնում ենք «դարի-թիր» ձևով, Մովպետը պարսիկ ազնվականներին ասում է. «Եւ եթէ դարհուրեցայք ինչ հոգիս ձեր, վաղագոյն առաւօտուցն ի դարի-թիր եկայք, զի վաղիւ անդ Մովպետան մովպետ ռատ՝ յաղէ» («Եղիշէի պատմութիւն Վարդանանց», Թիֆլիս, 1913, էջ 234)։ Փորթուգալ փաշան այս բառը արձագրում է «Դարեմրհր», կամ «դարեմիր», պահլավերեն նշանակում է «դուռն Միհրի» («Բազմավէպ», 1895, էջ 6—7, մանրամասն տես Հ. Աճառյան «Հայերեն արմատական բառարան», հտ. 2, Երևան, 1926, էջ 454—456)։ Այսպիսով, «տրայիտուրք» բառը ոչ ձևով և ոչ էլ իմաստով չի նույնանում «դարի-թիր» բառի հետ։ Թեև բնագրում «արայիտուրք» բառը համընկնում է Ալիշանի տված խորամանկ, նենգավոր բացատրությանը, բայց այդ բառի ստուգաբանությունը հայտնի չէ։

64. Տես նաև «Հեթում Պատմիչ Թաթարաց» (էջ 66, հմմտ. Ռաշիդ-ադ-դին, էջ 196)։

65. Հեթում Պատմիչը հաստատելով այս վկայությունը ավելացնում է. «յորոց մինչև գտաւ և պատմարանս» («Հեթում Պատմիչ Թաթարաց», էջ 66)։

66. Հմմտ. «Հեթում Պատմիչ Թաթարաց», էջ 66։

67. Ղազան ղանը մահացել է 1304 թվի մայիսի 17-ին, կիրակի օրը (Ռաշիդ-ադ-դին, էջ 202)։

68. Տես ՄԺ, 1. էջ 88, 89, 99, ծանոթ. 129։

69. Այսինքն, Հեթում Բ-ի եղբոր՝ Թորոսի որդին երեք տարեկան էր, երբ թագավոր հռչակվեց։ Արիստակես դպիրը 1301—1307 թթ. շրջանում ընդօրինակած ձեռագրի հիշատակարանում գրում է, որ Լևոնը թագավոր օծվել է 1306 թվի հուլիսի 30-ին (տես վերևում, էջ 170, ծանոթ. 193, հմմտ՝ Ս. Անեցի, էջ 155)։ Սակայն ժամանակակիցներն այդ եղելությունը նշում են 1301 թվին և այդպես էլ ընդունված է գիտության մեջ (տես Ալիշան, «Սիսուան», էջ 557 և այլն)։ Երուսաղեմի Մատենադարանի № 596 ձեռագրի հիշատակարանում կարդում ենք. «Արդ՝ գրեցաւ սա ի հռչակավոր անապատիս որ կոչի Թորին... որ

է մեռծ ի սահմանս Բարձրբերդոյ և Լեռնկլային անառիկ ղղեկացն, Թուականիս Հայոց ԶՄԱ (սխալմամբ մեքենագրված է ԶԺԱ—Վ. Հ.) և ի Թագաւորութեան Հայոց Հեթմոյ. զոր եղեր զեղբօրորդին իւր զպարոն Թորոսի, որ կոչի Լեւոն, մանուկ տիօք, յաթոռն իւր և ինքն ի կարգ կրօնաւորութեան մտեալ և խորագէտ իմաստութեամբ և նախահոգս մեծահանճարութեամբ յանձն առեալ հոգւոյ զաշխարհս մինչև յարբ ունս հասցէ Թագաւորն։ ...» (ՄՏՄՑ, գործ № 9, էջ 81-85)։ Նշանակում է, Լևոնը արդեն 1301 թ. թագավոր է հիշվում։ Մի այլ ժամանակակից 1301 թվի ընդօրինակած ձեռագրի հիշատակարանում գրում է. «...դարձեալ եկն տէր Աբրահամ ի մայրաքաղաքն ի Սիս, որ եղև աշխարհաժողով յամենայն յախուան, Թագաւորն Հայոց Հեթում, զպարոն Թորոսի զի՛ր եղբաւրորդին, զանբիծ պատանի զԼևոն Թագիւ պսակեաց և յամսեանն յունիս յերեսունն, յաւուր հինգշաբթու...» (ՄՏՄՑ, գործ № 43, էջ 362)։ Եթե հաստատ է հունիսի 30-ը, ապա օրը կլինի ուրբաթ, հինգշաբթին կընկնի 1301 թվի հունիսի 29 ին։

70. Հեթում Բ-ի եղբայր Ալինախի սույն բողոքի մասին այլ աղբյուրներից մեզ ոչինչ հայտնի չէ. միայն Ս. Անեցու շարունակողը գրում է, թե Ալինախը գնացել էր ղանի մոտ (էջ 156), թեև բնագրից պարզ երևում է, որ այդ տեղի է ունեցել մինչև սպանությունը, այս դեպքում Ալինախը ղանի մոտ բողոքի համար չի գնացել։

71. Մոնղոլների Փ. Ասիական կառավարիչ։

72. Իմա Լևոն Դ։ Ըստ Սմբատի «Տարեգրքի» շարունակողի, սրան թագաւոր օծել են 1321 թվին (էջ 128). տես և համմտ. ՀՋՀ, էջ 170. ՄԺ, 1, էջ 88։

73. № 7841 տարբերակում «գմիային» ձևով (էջ 302ա), այսինքն նախահանդստի բերդը։

74. Ալիշանի բնագրում «զպէշք նի Թսն» ձևով («Հայապատում» Բ, էջ 533), իսկ ուրիշ տարբերակներում «զպէշքայաթսն» (№ 3079) կամ «և զսուլթսն, որ է պէշքնա»։ Ըստ Ալիշանի, «անծանօթ այլազգի բառ. կարծեմ, թէ վերջի մասն քինէթ՝ թուրքարէն աղխ, փականք նշանակողն է, իբր թէ փականքն ևս խալներ տարեր են» (նույն տեղ, էջ 533, ծանոթ. 2)։

75. Իմա գերմանական կայսր Լուդվիգ Բավարացին, որը իշխել է 1314—1343 թթ.։

VI

## ՆԵՐՍԵՍ ՊԱԼԻԵՆՑԻ ՀԱՅՈՑ ԹԱԳԱՎՈՐՆԵՐԻ ԵՎ ԻՇԽԱՆՆԵՐԻ ԿԱՐԳԸ (XIV Դ.)

*Այս բնագիրը գտնվում է, մեզ արդեն ծանոթ, հետևյալ ձեռագրերում №№ 2037, էջ 131ա—133ր (A), 2038, էջ 199բ—207բ (Г), 3079, էջ 203բ—212ր (Д), 6554, էջ 52բ—60բ (B). 7841, էջ 275բ—280ր (Б).*

*Բուն նյութին նախորդում է մի փոքրիկ ներածական, որտեղ հեղինակը հիշեցնում է, որ ինքն իր կարողության սահմաններում, ինչպես նշել է Մ. Լեհացու ժամանակագրության թարգմանության հիշատակարանում, կազմելու է հայ իշխանների, թագավորների և կաթողիկոսների ցանկը։[1] Այս հատորում առայժմս բացառում ենք կաթողիկոսներին վերաբերող ցանկը։ Հայ թագավորների և իշխանների այս շարքը սկսվում է Աստվածաշնչի ժամանակագրական սահմաններից՝ Նոյի և նրա որդիների հիշատակությամբ, ապա թվում Հայկի և հաջորդների, Արշակունի թագավորների, Մարզպանության շրջանի իշխանների, Բագրատունի թագավորների, Կիլիկիայի հայ իշխանների և թագավորների հաջորդական կարգը։ Բնագրի նույնիսկ պատմական մասում ժամանակագրական տվյալները հազվադեպ են. հեղինակն ընդհանուր առմամբ բավարարվել է միայն իշխանների կամ թագավորների կառավարման տարիների ընդհանուր քանակը նշելով։ Բնագիրն հաւզնում է մինչև 1351 թվականը[2]։ Հենց այս թվին էլ, ըստ երևույթին, կազմվել է այս բնագիրը։*

*Ներածականում իր օգտագործած սկզբնաղբյուրների մասին հեղինակը հանվանե հիշում է Եվսեբեոս Կեսարացուն և Մովսես Խորենացուն, որպես «ստուգաբան» մատենագիրներ, ինչպես ինքն է գրում, թեև «բազումք ընդ այլս բազում ինչ պատմեցին», բայց նա դրանց չի հավանում։ Հին շրջանին վերաբերող տեղեկությունները հեղինակը վերցրել է այս երկուսից, ցուցածների մասին, փաստեր չունենալու պատճառով, հաստատ բան չենք կարող ասել։*

*Հրատարակության համար հիմք ընդունեցինք № 2037 (A) բնագիրը, իսկ ցուցածների տարընթերցվածները տվեցինք տողատակ։*

---

[1] *Տես վերևում, էջ 173։*

[2] *Տեղին է նշել, որ Հեթում Բ-ի տարեգրության Ն. Պալիենցի ընդօրինակության բնագիրը ևս շարունակվել է մինչև 1351 թիվը, տե՛ս ՄԺ, 1, էջ 89։*

VI

## ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆՔ ԵՒ ԹԱԳԱՒՈՐՔ ՀԱՅՈՑ[1] 131 ա

*Արդ՝ վասն զի գիրքս առաջակա[2] գաւազանաց կամ ժամանակագրաց կոչեալ մինչև ցայս վայր ի գրոյ լատին ի հայ թարգմանեցաւ ինէ փցուն Ներսէսիւ Գալիանցի կոչեալ ի Կիլիկոյ գաւառէն։*

*Պարտ վարկա վերջոյ ինքնակալութեանն Հռոմայեցոցն և տէրութեանն Լատինացոցն զիշխողութենէն և զթագաւորութենէն Հայոց համառօտաբար շարադրել, նայև զհայրապետացն իսկ յիւրում տեղին, եթէ որպէս սկսան և զորն որք փոխանորդեցին և զանուանսն և զժամանակն ևս զորքանութիւն աւուրց բացայ յայտել ըստ կարի, ըստ ուխտադրութեան իմոյ ի նախերգան գրոցս մինչև առ մեզ զպատմութիւնն հասուցանելով։ Եւ քանզի բազումք ընդ այլս բազում ինչ պատմեցին, իսկ մեք առցուք ի ձեռն գրել ի ստուգաբան մատենիցն Եւսեբեայ ժամանակագրի և Մօսէսի Հայոցս վիպակագրի։*

*Արդ՝ ոմանք դնեն զթագաւորսն Հայոց ի սեռէն Քամայ գոլ իջեալ վասն իշխողութեանն Բէլա և զկնի Նինոսի և Շամիրամա կնոջն նորա և այնպէս մի զմի փոխանորդեալ բերին մինչ ի տէրութիւնն Վաղարշակայ։ Այլ ես ոչ առնում յանձն զայս, քանզի թէպէտ և թագաւորութեամբն փոխանորդեցին զմիմեանս, սակայն ոչ սեռեաւ, նայև ոչ տեղօք, այլ յայլևայլ տեղիս և յայլոյ ցեղէ իշխէին և թագաւորէին Հայոց և Պարսից, որք և Մարք ևս, որք են գրդերն ընդ յերկար տիրեցին Հայոց, նայև ամենայն Ասիոյ։ Եւ են սոքա յիրաւի ի ցեղէն Քամայ, յորմէ ցեղէ և Բէլ իսկ, որ է Նեբրովթ։ Սայ շինեաց զՈւռհայ, զոր յետո քակեաց Սենեքարիմ և զՍելևկիայ շինեաց, որ թագաւորեաց սոյն Բէլս[3]*

---

1 Г *իշխանութիւն, 1-ին տողը* D *չիք։* 2 ГD *առաջակայ,* Б *ժամագրաց։* 4 B *ինէ չիք, Ներսէսիւ,* ГD *Կիլիկիոյ։* 6 BГD *վարկայ,* БD *ինքնակալութեան,* ГD *Հռոմայեւոցն։* 7 Г *լադինացւոցն։* 8 Г *նա և։* 9 D *և թէ* փխ. *եթէ,* BГD *և որք զորն։* 10 BГD *աւուրցն։* 11 Б *կարգի* փխ. *կարի։* 12 Г *հասուցանելով զպատմութիւնն։* 13 Б *այլոյ,* BГD *այլ ընդ այլոյ։* 14 Г *ըստուգաբան,* Б *եւսև* փխ *Եւսեբեայ,* B *Եւսեբեա,* D *ժամանակագրին։* 15 BГD *Մովսէսի։* 16 BГ *զթագաւորն։* 17 БBГD *Բէլայ,* ГD *Շամիրամայ կնոջ։* 18 BГD *բերեն։* 19 Б *Վաղարշակա։* 21 ББD *նաև,* Г *և* փխ. *նայև,* BD *տեղեօք,* Г *տեղիւք,* B *այլոց։* 22 BD *որ,* Г *որև։* 23 Г *էին* փխ. *են,* BГ *երկար։* 24 BD *սոքայ։* 25 БBD *սա,* BBГD *յետոյ։* 26 B *Սենէքէրիմ,* ГD *Սենեքերիմ,* Б *զՍելևկիա,* B *զՍեղեկիայ* փխ *զՍելևկիայ,* Г *զՍէլեֆկրիա,* D *Սելևկիայ,* B *որ չիք,* БГ *Բլէս։*

ամենայն Ասիոյ, բաց ի Հնդկաց, ամս ԿԲ (62)։ Եւ յետ Բելայ՝
Նինոս ամս ԾԲ (52). սայ զՆինուէ շինեաց։ Ի սորին Նինոսի
ԽԴ (44) ամին Թարայ զԱբրահամ ծնանի։ Շամիրամ կինն Նի-
նոսի ամս ԽԲ (42) և այլք հետևաբար։ Իսկ մեք ի խոստացեալն
մեր կարգ շարագրութեանցն դարձցուք պայազատութեամբ իջու-
ցանել զցեղն և զիշխանութիւնն Հայոց յուղեղ գծէն և ոչ ի խո-
տորնակի ուղէշնոյ։ Արդ՝ ասեմ զազգսն և զիշխանսն Հայոց եղ-
եալ և իջեալ ի ցեղէն և որդոցն Յաբեթի կրսերո որդոյն Նոյի,
զոր ցուցանեմք այսպէս ըստ աստուածային գրոց ևս՝ Աբեթ կրսեր
որդին Նոյի ծնանէր զԳամեր, Գամեր՝ զԹիրաս, Թիրաս՝ զԹոր-
գոմ, Թորգոմ ծնանի զՀայկն[4]։
Ա Այս Հայկս մի է ի հսկայիցն, որք խորհեցան զանբարիշտ
խորհուրդն աշտարակաշինութեանն։ Իսկ յետ ըլանելոյ աշտարա-
կին և անլուր բարբառոյն միմեանց խրոխտանօք ի վերայ միմ-
եանց տիրել կամելով, որով ի մէջ այլոցն Բէլ բռնանայր տիրել
Բ կամելով երկրի։ Իսկ Հայկն առեալ զորդի իւր զԱրամանեակ, զոր
ծնեալն էր ի Բաբելոն, ընդ այլևս Յ (300) ոգոց ի նայ յարեւոց,
ախիւ և կահիւ, չուեալ գա ի լեառնոտն Այրարատո, շինէ անդ տուն
և տայ զայն Արամանեկի, որդոյն իւրոյ և ինքն գնայ ընդ յարև-
մուտս հիւսիւսի բնակէ և անուանէ զայն Հարք։
Իսկ Բէլայ տիրեալ ամենեցունց կոչէ և զՀայկն ի Բաբելոն,
զոր ոչ առ յանձն գնալ։ Գայ ի վերայ նորա խրոխտանօք և Հայկն
նետով հարեալ զԲէլ սպանանէ։ Յետ որո կացեալ Հայկայ ամաց
ոչ սակաւուց մեռանէր, յանձնեալ զախն, այսինքն է զպարոնու-
թիւնն Արամանեկայ։
Գ Արամանեակ, որդի Հայկայ, ծնանի զԱրմայիս և թողու զեր-
կու եղբայրս իւր ի Հարք՝ զԽոռ, յորմէ ազգն Խոռխոռունեաց և
զՄանաւազ, յորմէ Մանաւազեանքն և Բզնունեանքն և Գնու-
նիքն անուանին։ Եւ ելեալ ինքն գնացեալ բնակէ ի լեառնակողմն,
զոր և կոչէ զայն Արագած և ապրեալ անդ ոչ սակաւ մեռանի։
Դ Արմայիս, որդի Արամանեկայ ծնանի զԱմասիայ։ Ամասիայ
Ե ծնանի զԳեղամ ընդ յայլ Բ (2) որդոց։
Գեղամ, որդի Ամասիա, շինեաց բազում [] տեղիս. որ և շինէ 131 բ
զԳեղաքունիս և զծովն ևս կոչէ յիւր անունն։

1 БГ Բէլա։ 2 БВ սա, Г շինեաց զՆինուէ։ 1—2 D ու յետ Բէլայ Նինոս սա զՆինուէ շին-
եաց ամս ԾԲ եկաց։ 3 В Թարա, ВГD կին։ 4 ВГD այլքն, Г ի չիք, D զխոստացեալն։ 6 Б ի
ցեղն, Г յուղից. ВГ ի չիք։ 7 Б զազգն, ВГD զազգս, Г իշխանս։ 8 BD յորդոցն, Г յորդ-
ւոցն Աբեթի կրսեր, В կրտսերոյ, D կըրսերոյ։ 9 BE կրտսեր։ 10 Г որդի։ 12 БГD հսկայիցն,
В մի էր հսկայիցն։ 13 ГD խորհուրդ, Б աշտարա[կա]շինութեանն։ 14 В միմեանս, В
խրոխտալով։ 15 ВГD որ և ի մէջ։ 16 Г զորդին, D զԱրմանեակ։ 17 Г ծնեալ, D Գճ, BBD
նա։ 18 ГD գայ, ВГD Այրարատոյ։ 19 BBD տա, БГD Արմանեկի, BD որդոյ, Г որդւոյ,
БВD գնա։ 19-20 ВГD արևմուտս հիւսիսի։ 21 В Բէլա, В կոչեալ, և չիք, զՀայկ։
22 BD գա։ 23 ВГD որոյ, Г կեցեալ, D ամաց չիք։ 24 ЕГD այս փխ. այսինքն։ 24 В
զտէրութիւնն փխ. զպարոնութիւնն, 25 БГ Արմանեկայ։ 26 ВГ Արմանեակ, Г Հայկա, զԲ
փխ. զերկու։ 27 Г եղբարսն, D եղբարս։ 29 D և ելեալ չիք, В գնացեալ չիք, Г լեառնա-
կողմ։ 30 В զոր չիք։ 31 ВГD Արմանեկայ, Г զԱմասիա, Ամասիա։ 32 БЬГD այլ։ 33 ВГD
Ամասիայ, D շինէ փխ. շինեաց, Б շէն փխ. շինէ։ 34 В և կոչէ, ГD անուն։

[Զ] Գեղամ ծնանի զՀարմայի և զՍիսակ և սահմանէ նմա կէտ երկրի ի ծովէն ընդ արևելս կոյս, ընդ որ անցանէ Երասխ գետ, ընդ դաշտն կոչեալ Փայտակարան և անուանէ զայն երկիրն Սիւնիս և այլն։

Է Հարմայ, որդի Գեղամայ, ծնանի զԱրամ և յետ ամաց մեռանի։ Արամ, որդի Հարմայի, բազում գործ քաջութեան ցուցեալ ընդարձակէ զաշխարհն իւր ընդ Դ (4) կողմանցն, յորոյ անունն ամենայն ազգ և լեզուք զմեզ և զաշխարհն մեր Արամէնի և Արմէնք կոչեն։ Եւ. Արծրիկ ըմբռնէ զբռնաւոր ոմն Մադէս կոչեցեալ և կախէ զպարսպէն։ Եւ երկրորդ իւր կոչեաց զսա Նինոս։ Տայ և համարձակութիւն և հրաման վարսակալ ածել մարգարտեայ։ Զայլ ոմն հզօր և բռնաւոր Պայապիս անուն ի մէջ երկրաց հալածական առնէ ի կղզի ինչ յԱսիա։ Եւ ի տեղի նորա Թողու զմշակ իւր, յազգէ իւրմէ հայ, որ շինեաց զՄայժաք, որ յետոյ կոչեցաւ Կեսարիայ։ Հրամայէ անդ և լեզու հայկական ուսանիլ։ Սա ծնաւ զԱրա։

Ը Արայ Գեղեցիկն որդի Արամայ։ Սայ պատուի ի Նինոսէ, որպէս և հայրն իւր, իսկ յեա մահուանն Նինոսի, շռայլն Շամիրամ, յետ չհնազանդելո նորա կամացն իւր, զի ուզէր քունել զինքն։ Եյանէ պատերազմաւ ի վերայ Արայի ընդ բռամբ ածել զնա, որ սպանաւ անզէն Արա, ի խառնիլն պատերազմին։ Որ և յետոյ Շամիրամն շինէ զամուրն, որ կոչի այժմ ·Վան։ Եւ զորդին Արաի Կարդոս առեալ, վասն սիրո հօրն, Արայ անուն եդ։ Եւ ապայ ինքն հալածի ի Զրադեշտէ մոգէ, որ էր Նահապետ Մարաց, զոր ի դալն իւր Շամիրամ ամի ամի ի Հայս կողմնապետ Թողոյր դԶրայդաշտն կողմանցն Ասորոց։ Ցայսմ պատերազմիս մեռանէր Արայ, որդին

Թ Արայի։ Իսկ Շամիրամ փախստական լեալ հալածի և սատակի ի Զամեսեայ որդո իւրո, որ է Նինուաս։

Արայեանն Արայի որդի Անուշաւանն։ Այս Անուշաւանս հարուստ և հանճարեղ լիր և ի բան։ Սայ տուայտեալ շատ արհամարհանս կրէ ի Զամեսեայ և օգնականութեամբ բարեկամացն շահի զմասն ինչ յաշխարհէն Հայոց, յետոյ ողջոյն իսկ։ Իսկ ի սմանէ յառաջ ոչ ըստ ազգի, այլ ըստ յառաջադիմութեան արանց բռնակալաց տիրեցին աշխարհին Հայոց և ոչ ըոա ազգաց ասեմ, զի չէին հայեր, այլ զի ուղղակի ժառանգութեամբ ի հօրէ յորդի ոչ անցանէր իշխանութիւնն։ Եւ անուանք նոցա այսպէս՝ Պարետ,

1 B զՀարմայիայ։ 3 D զայ[ն]։ 5 Г Հարմա։ 7 B ß փխ. Դ, BГD կողմանց, Г յորոց։ 8 ГD ազգք։ 9 D զգլխաւոր փխ. զբռնաւոր, կոչեալ։ 10 D զպարանոցեն փխ. զպարսպէն, երկրորդ որդի իւր, БBD ատ։ 11 BГ մարգարտեա։ 12 Г Պապայիս. ГГ երկրեաց։ 13 B յԱսիայ։ 14 Г ոՄաժաք, D զՄայժակք, BГD յետոյ, Б Կեսարիա։ 15 BBD ուսանել, Г սայ, БBГD զԱրայ։ 16 БBГ Արա, БBD սա։ 18 БBГD չհնազանդելոյ. D զնա փխ. զինքն։ 20 ГD Արայ B պատերազմի, BГD յետոյ։ 21 BГD Արայի, Г Հարգոս։ 22 БBГD սիրոյ. B Արա։ 24 Г Շամիրամի, ամի ամի չիք, B զԶրաշտն, ГD զԶրադաշտն։ 25 Г Ասորւոց, БB Արա, Б որդի։ 26 БГD հալածի և չիք, B և չիք։ 27 БB Զամեսեա որդոյ իւրոյ, Г Զամեսաեա-որդւոյ իւրոյ, D որդոյն իւրոյ։ 28 Б Ար[ա]յի։ 29 Б յերև ի բան փխ. յիր և ի բան, BD սա։ 31 B յաշխարհէս, յետոյ։ 32 Б ըստ (յառաջադիմութեան) չիք, D յառաջադիմութեանց։ 33 БГ յաշխարհին։ 34 ГD ի չիք։ 35 BГ այս փխ. այսպէս, B Զարետ փխ. Պարետ։

Արբոկ, Զաւան, Փառնակ, Սուր։ Առ սովաւ Ցեստւ Նաւեայ զօրավարեաց։ Սրդ՝ ի սատակելն Ցեսուեայ զՔանանացիսն անդին փախստական Ցադոաս նաւելով ի Թարսիս։ Եւ յայս յայտն[ի] գրոշմամբն, որ յարձանին Ափրեկեցոց աշխարհին գրեալ կան այսպէս. «Ի Ցեսուեայ դողոյ փախուցեալ եմք նախարարք Քանանացոց և եկաք բնակել աստ», յորոց մի և քանի դաս պատուականագոյնն մեր ի Հայս։ Զայս և ստուգեալ գտաք զազգն Գնթունեացն ի նոյն Քանանու դասէն յառաջ դալ, զոր և բարք ազգին յայտնեն Քանանայիս գոլ։ Յետ սորա Զաւանակ, Վաշտակ, Հայկակ։ Զհայկակ, ասեն, առ Բէլիքոսիւ եղեալ և անրոխ արարեալ անխորհրդարար մեռանի. Անրակ, Առնակ, Շաւարշ, Նորայր, Վստամ, Կար, Գոռակ, Հրանդ, Ընձակ, Գլակ, Հօրայ, Զարմայր։ Սայ օգնական Պրիամու ի Տաւտանայ, առաքեալ ընդ Եթօպացի զօրացն և մեռանի ի քաջանցն Ելենացոց, Դրօացիքն են կարծեմ։ Պերճ, սայ էր յաւուրս Դաւթի արքայի Իսրաելի։ Արբուն, Բազուկ, Հոյ, Յուսակ, Կապակ, Սկայորդի, Պարոյր։ Այս Պարոյրս, որդի Սկայորդոյն Հայկազնի, օգն<ան>ական լեալ Վարբակա Մարի, Թուի թէ Պարսիկն է, բառնան զթագաւորութիւնն ի Սարդանեայպալլեայ։
Ա Եւ Թաղ եղեալ սմայ Վարբակ լեալ առաջին Թագաւոր || Հայոց և 132ա
առաջին պսակաւոր ի Հայկազնեաց։

Հրաչեայ որդի Պարոյրայ. սայ Հրաչեայ կոչի վասն առաւել բոցակնագոյն և պայծառ երես լինելոյն։ Առ սովաւ գերեաց զՆբուսադէմ Նաբօդօդոնոսոր, որ և սայ զմի ի գերելոց գլխաւորացն Հրէից խնդրեաց ի Նաբագօդօնոսորա անուն Շարբաթ և բնակեցոյց առ ինքեան մեծաւ պատուով, յորմէ յառաջ եկին ազգն Բագրատունեացն, և Սմպատն անուն է Շամբաթ։

Իսկ յետ Հրաչեայ պայազատէ զթագն Փառնաւազ, Պաճոյճ, Կոռնակ, Փաւոս, Հակակ, Երուանդ, Տիգրան։ Այս Տիգրանս առաւել զօրաւոր լեալ ամենայն նախարարացն իւրոց, զորոյ զառաւել զօրութիւնն ուսցիս ի պատմութենէ մեծին Մօսէսի պատմագրի։ Տիգրանս Թ (9)-երորդ գոյ ի Պարոյրա առաջին թագաւորէ Հայոց։ Առ սայ եկին որդիքն Սենեքարիմա Ադրիմէլէք և Սանա-

1 D Զառան փխ. Զաւան, Փառակ։ ВБ Նաւեա։ 2 Г Ցեսուա, Г փախըստական։ 3 BD Ցադըոաս, B Թարսիսէ, БВГD այս։ 4 B Ափրիկացոց, Г Ափրիկացւոց, D Ցափրիկեցոց։ 5 B ի չիք, Г իսկ փխ. ի, Г Քանանացւոց։ 6 Г բնակիլ, D պատուականագոյն։ 7 B ի (Հայս) չիք։ 8 БВГD Քանանոյ։ 9 БВГD սուրայ։ 10 ГD ամրոխ։ 11 BD Վս[տ]ամ։ 12 D Արանտ փխ. Հրանդ, БВD սա։ 13 Б Տաւաանա, BD Եթովպացի։ 14 Г Ելենացւոց, ВГD Ելէնացիք Դրօացիքն են կարծեմ։ 15 БВD սա, D Արբգան փխ. Արբուն։ 16 B Կայպակ, ВГ Սկաորդի, D և [Ս]կաորդի, BD Պարուրս, ВГ Սկաորդոյն, D Հսկայորդոյն. 17 ВГ Պարսիկ է Թուի, D Վարբակ Պարսիկ է Թուի Մարի։ 18 B Սարդանայպալլեա, ГD Սարդանայպալլեայ։ 19 ВГD սմա, B և առաջին չիք, ГD առաջին Թագաւոր Հայոց և չիք։ 20 Б Հայկազնեայ, D Հայկազնին։ 21 ВΞ Հրաչեա, Г Հռաչեա, D Հրաչէսս, B Պարուրեա, ВГ Պարոյրա B Պարուրեա սա Հրաչեա, Б սա Հրաչեա։ 22 B բոցագոյն։ 23 БВD սա։ 24 ГD Նաբուդոդոնոսորայ։ 25 Б առաջ։ 26 Г Բագրատունեաց, BD Սմբատ, Г Սըմպատ, B Շամբաթն։ 27 BD Հրաչեա, Г Հռաչեա, B Պայճոյճ։ 28 B Կուռնակ։ 29 Б ամենայն չիք։ 30 B զօրոզութիւնն փխ. զօվութիւնն, ВГ պատմութենէն, BD Մովսէսի։ 31 BD ինն-րդ, Պարոյրայ։ 32 БВD սա, Б Սենեքարիմայ, B Սէնէքարիմայ, ГD Սենեքերիմայ, BD Ադրամելէք։

տար. և ընակեցոյց զՍանասար առ Ասորեստան կողմամբն, որ աճեցեալ լցին զՍիմ լեառն. և իմաստնագոյնքն նոցա վասն մտերմութիւն ցուցանելս կոչեցան ըդեաշխք. իսկ յԱդրամոլ. ազանէն՝ Արծրունիք և Գնունիք։ Իսկ ի Պարքամայ թոռնէ Հայկակայ լեալ Անդեղտուն։ Ցետ սպանանելս նորա զԱշդահակ, որ թարքմանի վիշապ։ Զկին նորա զառաջին զԱնոյշ ամենայն զարմիւքն կացուցանէ առ թիկունս Մասեաց ոտին, որ է Տանպատ մինչև զ[Գ]ողթն, յորոց մին Վրանւցւնիք և Աժդահականն։ Սակայն որդիք Տիգրանայ լինին՝ Բաբ, Տիրան, Վահագն, յորմէ Վահունիք։ Առաւան, յորմէ Առաւենեանք. յԱռաւենայ՝ Ներսէհ և ի Ներսէհէ՝ Զարեհ, ի Զարեհէ՝ Արմոգ, յԱրմոգայ՝ Բագամ, ի Բագամա՝ Վան, ի Վանայ՝ Վահէ։ Սա ընդվզեալ մեռանի յԱղէքսանդրէ Մակեդոնացոյ։ Ցայս վայր տէրութիւնն Հայոց գազարէ։

Ցայսմհետէ մինչև ցթագաւորելն Վաղարշակա ի Հայս ոչ ինչ ստուգիւ ունիմք ասել, քանզի շփոթեալ, արք զալամք ելեալք։ Եւ վասն այնորիկ եղև գիւրաւ մուտ ի Հայս Արշակա Պարթևի, որ թագաւորեցոյց Հայոց զՎաղարշակ եղբայրն իւր[6]։ Բայց լինին ի սպանմանէն Բէլայ մինչև ցՎաղարշակ ամք ՌՋԾ (1950) կամ ՌՋԽԲ (1942)։ Ցետ բառնալոյ տէրութեանն Հայկազեանց յԱղէքսանդրէ, մեռանի Աղէքսանդրոս, որ թագաւորեաց ամս ԲԺ (12) և ամիսս Զ (6)[6], որ և դարձեալ յարմատոյ սկսանիմք։

Արդ՝ վասն զի զԲաբելացոցն և զՄարացն, որք են Քրթաստանեայք և զԼիդիացոցն, Կիւրոս բարձեալ զիշխանութիւնն յոյս և էին Հայոցն ընդ Մարացն։ Եւ ինքն Կիւրոս միայնեծան տիրեաց այսոցիկ ի թագաւորեաց ամս Լ (30)։ Եւ ի Կիւրոսէ մի զհետ միս եղեն ի Բաբելոն ունելով զերիս վերոյիշեալ թագաւորութիւնսն կացին թագաւորք ԺԴ (14) զամս ՄԼ (230). յորոց վերջինն էր Դարեհ Արշամայ[7]։

Արդ՝ յառաջին ամին թագաւորելոյն սոյն Դարեհիս ել յերկրի Աղէքսանդր Մակեդոնացի ՃԺԱ (111) օլիմպիաթին[8]։ Իսկ եթէ զինչ է օլոմպիաթն ասասցուք՝ օլոմպիաթն է անուն թւականի և թուաբերութեան, զոր Սարգիոոս առաջին թագաւոր Լիդացոց, ի յերկրորդ ամին իւրո թագաւորելոյն, կարգեաց և եդ ի Փիդոս

3 BГD ցուցանելոյ, D ըղեա[շ]խք։ 4 D հայկակ։ 5 B Անդեղտանոյ, D Անդեղտունն, БВГD սպանանելոյ, B զԱշդահ[ակ]։ 6 БB զկնի փխ. զկին, B զԱնոյ[շ], Г զԱյնոյշ։ 8 D Աժդահականն։ 0 B Վահանդն։ 10 B Առաւանք, յԱռաւենա, D յԱռաւենոյ։ 11 Г Արմոգայ, D Բահամ, B Բագամայ, D Բահամայ։ 12 Г Վանա, БВГD առ, D յԱղեկսանդր, Г Մակեդոնացւոյ։ 14 BГ Վաղարշակայ, D ցթագաւորութիւնն Վաղարշակայ։ 15 Г ստուգիւ չիք։ 10 BD գիւրեաւ, Արշակայ։ 18 Г Բէլա, БBD ՌԹԾԾ։ 19 BD ՌԹՃԽԲ, D Հայկազնեաց։ 21 B ԲԺ-ն, ГD ԲԺ-ան, BГD յարմատոյ։ 23 B զԲէլացոցն, Г զԲաբելացւոցն, BГD որ փխ. որք։ 24 Г զԼիդիացւոցն, D զԼիդացացն։ 25 D Տիւրոս փխ. Կիւրոս, БВГD միահեծան։ 20 Г զամ, BГD միոյ։ 27 B վերասառեալ փխ. վերոյիշեալ, Г վերյիշեալ, Б պարոնութիւնսն փխ. թագաւորութիւնսն։ 27/23 տողը D ի Բաբելոն... կային չիք։ 23 BD ԲՃԼ։ 29 Г վերջնս։ 30 Г առաջին, Б երկրի, D յերկրի չիք։ 31 BD ոլոմպիաթին, Г օլոմպիադին։ 33 BD թագաւորն, B Լիւդացոց, Г Լիւդացւոց։ 34 Г ի Փիդոս չիք, BD իւրո։

Պրաքսիւոն ի Դիմոնայ, որ է դպիր կամ Թխտապան, Թւական եդ և ամենայն ժամանակագրութիւնն Յունաց անդի սկսանի Թւել, քանզի մինչև ի յայս իւրաքանչիւր ոք, որպէս և յօժարէր Թագաւոր հրամանն տայր Թագաւոր դրել[9]: Եւ ասացեալն Ալէքսանդր Մակեդոնացի սկսաւ ի ՃԺԱ (111) օլոմպիադական Թւարերութեանն և Է (7) ամի իւր էառ զԲաբելոն և սպան զԴարեհ[10], որ Թագաւոր էր Բաբելոնի, Մարաց և Լիդէացոցն ևս և Պարթևացն ընդ Հայոց, Թագաւորեաց ամս ԺԲ (12) ամիսս Զ (6): Իսկ զկնի մահուանն Աղէքսանդրի իշխանութիւն նորա ի Դ (4) բաժանի, որ յայլում տեղոջ պատմի: Արդ՝ մի ի չորիցն Սելևկոս, որ զկնի Ալէքսանդրի կալաւ զԲաբելոն, որ ընդ այլոց ազգաց և զՊարթևս հնազանդեցոյց մեծաւ պատերազմաւ և վասն այնորիկ կոչեցաւ Նիկանովր. սայ Թագաւորեաց ամս ԼԱ (31), զկնի Անդիոքոս Սովտէր, որդի սորա ամս ԺԹ (19): Անդիոքոս Թէոս ամս ԺԷ (17)[11]: Ի սորին ԺԱ (11) ամին ‖ ապստամբեն Պարթևք ի Մակե- 132 բ
դոնացւոցն. որոց Թագաւորեաց Արշակ քաջ, նախ ի զաւակէն Աբրահամու ի Քետուրական ծնընդոց, ի քաղաքին՝ որ կոչի Բահլ, ամս ԼԱ (31): Եւ ապայ որդին նորա Արտաշէս ամս ԽԶ (46): Եւ ապայ Արշակ մեծ ամս ԾԳ (53)[12]. Այս Արշակ մեծ Թագաւորեցոյց զեղբայրն իւր զՎաղարշակ աշխարհին Հայոց ի ԻԷ (27) ամին Պտղոմիդեայ և Դ (4) ամին Էրգիտեայ Թագաւորացն Եգիպտոսի և օլոմպիադին ՃԿԷ (167), տալով սմայ սահմանս զհիւսիւսի և զարեմուտս աշխարհին Հայոց: Վաղարշակս այս էր այր քաջ և խոհեմ. և սահմանեաց կարգս և դասապետութիւնս կենցաղականս որ և նախարարս և նահապետութիւնս ի պալատն արքունի. այլ և յաշխարհին Հայոց կարգեաց նոյն այլ բազում իրս բարեձևութիւնս յօրինուածս տանց, ազգաց, քաղաքաց, շինից, գաս[տ]ակերտաց, զօրաց, կողմնակալաց և այլոց այսպիսի պիտոյից. յօրինուածոց և սահմանագրութեանց, ընդ որս սակաւուք անցցուք բացայ յայտմամբ[13]:

Արդ՝ նախ սկսանի ի գլխոյ իւրմէ և զԲագարատ, որ է ի Հրէիցն, առնէր Թագադիր ասպարապետ և տայր նմա աստիճան դնել Թագ ի գլուխ Թագաւորին: Եւ սգեցուցանող իւր զձեռէս ի

1 Г Պրաքսիւոն...դպիր չիք, BD ի Դիմոնայ չիք, Б կամ իշխան Թղթապան: 2 B սկսան, Г սկսան Թուել: 3 D ի չիք, ցյայս, Г ոք չիք: 4 Б Թուական փխ. Թագաւոր: 5 D Թվարերութեամբն: 6 ГD և ի Է, D զԲաբիլոն: 6,7 D որ էր Թագաւոր: 7 Г Բաբիլոնի, Լիդէացւոցն, B ևս չիք, Г ևս ընդ փխ. և.ս և: 8 B և ամիսս: 9 D մահուան, BГ իշխանութիւնն, B չորս փխ. Դ: 10 ГD տեղւոջ: 11 Г Ալէսանդրի: 12 B սաստիւ փխ. պատերազմաւ, D ուժով փխ. պատերազմաւ, B և (վասն) չիք: 13 BBD սա: 14 B Սովտէրն, BD որդի չիք, ի սորա, B ԺԲ փխ ԺԹ: 15 ГD ապստամբին, D ի (Մակեդոնացոցն) չիք, Г Մակեդոնացւոցն: 16 ГD նախ Արշակ քաջ, Г յԱբրահամու: 18 БBГD ապա, B որդիքն, ГD որդի, B Արտաժէս փխ. Արտաշէս: 19 БBГD ապա: 20 ГD զեղբայր, Г յաշխարհին, B ԻԲ փխ. ԻԷ, D ԻԱ փխ. ԻԷ: 21 Б Պտղոմիաեա, BГ Պաղոմիդեա, B Երգիտեա: 22 B ՃԷ փխ, ՃԿԷ, D ՃԿ փխ. ՃԿԷ, БB սմա, D ամս փխ. սմայ, БBГ զհիւսիսի: 23 Г յաշխարհին: 24 BD քաղաքական փխ. կենցաղականս: 26 B ա[րքու]նի, D աշխարհին, БBD նաև: 28 B իշխանաց փխ. զօրաց, D բաց կողմնակալաց: 31 B Այլ փխ. Արդ, Г է չիք: 32 B առնէ, D տա, Г նմայ: 33 БBГ զգեցուցանող, D զձեռս:

զաւակացն Քոռնանու և կոչէ զազգն Գնթունի, ոչ գիտեմ այր ազա-գաւ ի քանի դայ։ Եւ Թիկնապահ իւր ի զաւակացն Խոռայ Հայ-կազնոյ զՄախխազ, որ և անուն զնախնականն պահէ Մաղխազու-նիք։ Եւ զԴատ ի զաւակէ Գառնկայ, որ[դ]ի Գեղամայ ի վերայ որսոց, որո որդի Վարաժ, յորմէ կոչին և Վարաժնունիք։ Եւ զազգն Արծրունեաց, որ է արծիւ ունիս։ Եւ զԳնունիքն՝ գինի ունիս, սոքա էին յորդոցն Անէնքարիմայ։ Եւ զՍպա[ն]դունիսն, որ է Թուր ունիս ի վերայ զինուցն. կացուցանէ և պահապանս արքունի[14], զորս այժմ պահնորդեր կոչեն ի Կիլիկեայ. ի հին զարմից Թագաւորացն, որ բուն ոստ անուանին, որք և Վիրք և այժմ սեփէծուլ կոչեն։

Եւ յորեևլից կողմանէ զերկուս նահապետութիւնս զՍիսա-կանն որ ի տանէն Կոդմեայ և զԱռան, ի նոյն զարմէ, կարգէ անդ կողմնակալ ի նոյն Սիսական ծնընդոց։ Եւ աշխարհն նոցա յանուն քաղցր բարբառոյն կոչի Աղուվանք և սոյնպիսիք բաղումք։ Իսկ ի չորրորդն կոչեցեալ Հայք հաստատէ զմեծ նահապետու-թիւնն Ծոփաց, այլ և զնահապետութիւնն Ապայհունեաց և զՄա-հաւազեանն, և զԲզնունեացն։ Եւ զայր ոմն սրտեղ՝ անունն Սլաք, թէ յազգէն Հայկեայ և թէ յառաջ քան զնայ կարգէ պահել զլեառն, որ Սալք կոչի։ Եւ ի սոյն իրս զՄիանդական անդառնայի յորմէ՝ Մանդակունիք։ Ի սակաւուցս զա՛յլ բազումս իմանալ բաւական է խոհեմ լսօղաց, զորս կարգեալ կացոյց իրս Թագաւորականս Վա-ղարշակս ասացեալ ի Թագաւորելն իւր ի Հայս[15]։

Ուր սկիզբն գտանես զանունն իւր առաջի դիրն այն Թա-գաւորք են, իսկ որ գտանես նախգրեալ՝ պարոն, այն ոք չեն Թա-գաւոր[16]։

Ա Եւ յետ այսպիսի բարեձևութեանց և կարգաւորութեանց Վաղարշակայ մեռանի ի Մծբին, Թագաւորեալ ամս ԻԲ (22).

Բ Զկնի Արշակ, որդի նորա, ամս ԺԳ (13)։

---

1 B Քանանացոց։ 2 B Թէ[կնա]պահ, Խոռաւ 3 B զմախ խարխորխնականն պահէ մաղխազունիք փխ. զՄախխազ...Մաղխազունիք, D [զմախ]խազ որ և անուն չիք, ի նա[խն]-ականն։ 4 B Գառնկա Արշամա, Г Գառընկայ, D Գառնկայ չիք, B որդի Գեղամայ չիք, D որդի չիք, [Գեղ]ամայ։ 5 D Ասորոց փխ. որսոց, BГD որոյ, BГD և կոչին, BD Վարաժունիք։ 5/6 B և վասն փխ. և զազգն։ 6 D զազգն չիք։ 7 BГD սոքայ, Г յորդւոցն Սենեքերիմայ, D որդոցն, B Սէնէքէրիմայ, D զապազունիսն։ 8 D զինուց, B և չիք։ 9 D արքունիս զոր, Г Կիլիկեա, D ի հին չիք։ 10 D [զարմ]ից, BГD որպէս փխ. որք, BГD և (այժմս) չիք։ 11 БГD այժմ, D սեփ[էծուլ], BD կոչեն չիք։ 12 B երկուս, D և յարեելից... զՍիսականն չիք։ 13 14 B որ ի տանէ միւս և զԱռան ի նոյն զարմէ կարգէ անդ կողմնակալ փխ. որ ի տանէն...կարգէ անդ կողմնակալ, D [Կոդ]մեա, զԱռանա։ 14 Г Սիսակա, D Սիսակայ ծնընդոցն, յաշխարհն։ 15 B անուն, Б Աղուանք, D սոյնպէս'իք], BD բազումք չիք։ 16 D նահապետութիւն։ 17 D այլև չիք, Г Ապահունեաց։ 18 B զայլ փխ. զայր, D զայր չիք, զոմն, Б ստեղ փխ. սրտեղ։ 19 B Հայկա, D Հայկայ, BBГD զնա, D պահել չիք։ 20 B զսոյն փխ. ի սոյն, BГD զՄիանդակն։ 21 B Մակեդունիք, D Ման[դակ]ունիք, ի չիք, սակաւուց, Г իսկ ի սակաւուցս, BD բազումս։ 22 B զոր։ 23 D այս փխ. ասացեալ, իւրում, Б իւր չիք։ 24 BГ ի սկիզբն, Г յառաջի, B դրին, Б Թագաւորին փխ. Թագաւորք են։ 25 B նախագրեալ, Г այնոքին փխ. այն ոք, D պարոնայք փխ. պարոն այն ոք, B այն ոք չեն Թա-գաւոր չիք, Б որք փխ. որ, նախագրեալ։ 28 B Վաղարշակա, D Վաղարշակ, D մեռաւ։ 29 Г որդին։

Գ Արտաշէս, որդի Արշակայ, ամս ԻԵ (25)։ Սայ յառաջադէմ եղեալ քան զամենեսեան, ոչ եղեալ երկրորդ Պարսից, այլ զՊարսից թագաւորն արարեալ իւր երկրորդ, որ և անհամար զօրօք դիմեաց յունմուտս և զբազումս հնազանդեցոյց և մեռաւ յիւրայոցն։

Դ Տիգրան, որդի նորա, ամս ԼԳ (33)։ Սայ ոչ ինչ ընթաց ի հօրն քաջութեանն առնել արիութիւնս, բայց դարձեալ եղև երկրորդ Պարսից։ Առ սօվ[աւ] Վակոն ելուզակ, յորմէ լեառն Վակունիք։

Ե Արտաւազ որդի Տիգրանայ ամս Բ (2)։

Զ Արջամ որ և Արշամ, եղբայր Տիգրանա, ամս Ի (20)։ Առ սովաւ զառաջինն եղև Հայոց || հարկ ինչ տալ Հռոմայեցոցն։ 133ա.

Աբգար որդի Արշամայ ամս ԼԸ (38)։ Ի սորա թագաւորութեանն երկրորդ ամին հարկին Հայք Հռոմայեցոցն ամենեքեան. զի որպէս ասէ Աւետարանագիրն ել հրաման յՕգոստոս կայսերէ աշխարհագիր առնել ընդ յամենայն տիեզերս, որոյ աղագաւ և ի Հայս եւս եկին, յորում ամի Տէրն մեր և Աստուածն ծնաւ ի Բեդղահէմ։

Արդ՝ ի Վաղարշակայ, որ նախ ի վերջինս թագաւորեաց Հայոց մանաւանդ թէ առաջին իսկ մինչ ի Յարգար և ի Քրիստոս հաւաքին ամք ՃԺԷ (117). և էր այն ամ Օգոստոսի կայսրութեանն ԽԲ (42) և Հէրօդէ ի այլազգոյ, որ Յերուսաղէմ ամք ԼԲ (32) և Ալէքսանդր Մակեդոնայր ամք ԳՃԺԱ (311), իսկ օլիմպիադին ՃՂԳ (194)։ Աստ ոչ համաձայնին թուականութիւնքս պէսպէս։ Արդ՝ ի վերո ասացեալոցդ, ի յերկրորդ ամին Աբգարու
Է ծնաւ Քրիստոս։ Իսկ Աբգար թագաւորեաց այլ ամս ԼԶ (36)։

Սանատրուկ ամս ԼԲ (32)[17]։

Երուանդ ամս Ի (20)

Արտաշէս ամս ԽԱ (41)։

Արտաւազ ամս Բ (2)։

Տիրան, որդի Արտաշէսի, ամս ԻԱ (21)։

Տիգրան, եղբայր սորա, ամս ԽԳ (43)։

Վաղարշ ամս Ի (20)։

Խօս[ր]օվ ամս ԽԸ (48)։ Յետ մահու սորա ոչ եղին թագաւոր ամս ԻԸ (28)։

Տրդատ ամս ԾԶ (56)։

Տիրան և Խօսրօվ փոքրն ամս Ժ (10)։

---

1 Г Արշակա, D Արշամայ փխ. Արշակայ, БBD սա։ 2 D զամենեսին։ 3 B որ չիք։ 4 BГD յիւրայնոցն։ 6 БBD սա, BГ ընթաա, D ընթաաի։ 7 D քաջութեան, Г արութեանս։ 8 Г յելուզակ, D յեղուզակ, Г Վարկունիք։ 9 БB Տիգրանա։ 10 БГD Տիգրանայ, B Տիւրանա փխ. Տիգրանայ։ 11 D Հռոմայեցւոցն։ 12 B ԼԱ փխ. ԼԸ, D թագաւորութեան։ 13 ГDՀռոմայեցւոցն։ 14 Г զի չիք, D աւետարանն, B Օգոստոս։ 15 BГD ամենայն, Б որու 16 БГD ի յորում, D յամի, Աստուած։ 17 B Բեթղեհէմ, Г Բեդղահէմ, D Բեթլէհէմ։ 19 D մինչև։ 20 D այն ամք։ 21 BD Հերովդի, Г Հերովդէի, այլազգւոյ։ 22 Г Ալեսանդր, D Ցաղեկսանդր, BD Մակեդոնացոյ Г Մակեդոնացւոյ։ 23 B օլօմպիաթին, D ոլոմպիաթին։ 24 BГD ի (յերկրորդ) չիք, BD վերասացելոցդ, Г վերասացեալս։ 30 Г Արտաշէսի։ 33 BD սորայ։ 33 D մահուան, սորայ, թագաւորք։ 36-րդ տողը՝ ГD չիք։

*Խոսրով, որդի Խոսրովու, ամս ԺԲ (12)։*
*Տիրան ամս Լ (30)[18]։*
*Արշակ ամս Է (7)[19]։*
*Պապ ամս Դ (4)[20]։*
*Վաղարշ և Վաղարշակ Բ (2) եղբայր՝ ամս Ե (5)[21]։*
*Վռամշապուհ ամս ԺԹ (19)[22]։*
*Խոսրով ամս մի[23]։*
*Շապուհ ամս Զ (6)։*
*Արտաշէս ամս Զ (6)[24]։ Յետ սորայ անթագաւոր ամս ԺԳ (13)։*
*Պարոն Վարդ մարզպանն ամս ԺԷ (17)[25]։ Զկնի սորայ անտէրութիւն ամս Ե (5)։*
*Պարոն Մանկոս ամս ԺԸ (18)։*
*Պարոն Արշամ ամս Ե (5)։*
*Պարոն Վահան ամս ԻԸ (28)[26]։*
*Պարոն Վարդ ամս Գ (3)։ Յետ սորայ անիշխան ամս Դ (4)։*
*Պարոն Դաւիթ ամս Լ (30)[27]։*
*Պարոն Թէոդոս ամս ԻԵ (25)[28]։*
*Պարոն Համազասպ ամս Է (7)[29]։*
*Պարոն Մէժէժ ամս ԻԹ (29)[30]։ Յետ սորայ անիշխան ամս ԼԷ (37)։*
*Պարոն Ներսէհ ամս Բ (2)[31]։*
*Պարոն Աշոտ ամս Գ (3)[32]։*
*Պարոն Սմպատ ամս ԻԱ (21)[33]։ Զկնի սորայ անիշխան ամս ԾԴ (54)։*
*Դարձեալ թագաւորք՝*
*Աշոտ ամս ԺԶ (16)։*
*Սմպատ ամս ԻԶ (26)։*
*Աշոտ, որդի սորայ, ամս ԺԶ (16)։*
*Սմպատ, որդի Աշոտոյ, ամս ԼԲ (32)[34]։*
*Աշոտ, որդի Սմպատայ, ամս ԼԶ (36)[35]։*
*Սմպատ ամս ԻԴ (24)[36]։ Յետ սորայ անթագաւոր ամս Ե (5)[37]։*
*Աբաս, որդի Սմպատայ, ամս ԻԵ (25)։*
*Աշոտ, որդի Աբասայ, ամս ԻԶ (26)։*
*Սմպատ Շահինշահն ամս ԺԳ (13)։*
*Գագիկ, եղբայր սորայ, ամս ԻԹ (29)[38]։*
*Յովաննէս և Աշոտ եղբարք՝ ամս ԺԸ (18)[39]։*

---

1 Г *Տրդատայ* փխ. *Խոսրովու*, D *որդի Խոսրովու* չիք։ 2 Г *ԺԳ* փխ. *Լ*։ 3 Г *Լ* փխ. *Է*։ 4 Г *Է* փխ. *Գ*։ 5 D *եղբայրք*։ 6 *տողը*՝ D չիք։ 7 B *ամ*, БD *Ա* փխ. *մի*, Г *Ի* փխ. *մի*։ 10 Г *Վարդան* փխ. *Վարդ*, BD *մարզպան*, Г *սորա*։ 10—11 *տողը*՝ *զկնի սորայ անտէրութիւն ամս Ե* B չիք։ 11 Г *անտէր*։ 12-րդ *տողը* B չիք։ 14—18 *տողերը* B չիք։ 15 Г *սորա*։ 19 Г *սորա* 20 )) *ԻԷ* փխ. *ԼԷ*։ 23 D *Ի* փխ. *ԻԱ*, ГD *սորա*։ 24 D *Ծ* փխ. *ԾԴ*։ 25 B *դարձեալ* չիք։ 27 B *ԻԱ* փխ. *ԻԶ*. D *ԼԳ* փխ. *ԻԶ*։ 28 Г *սորա*։ 20 D *Աշոտայ*։ 30 B *Սմբատա*։ 31 ГD *սորա*, Б *անիշխան* փխ. *անթագաւոր*։ 31-ի և 32-ի արանքում Г *Աշոտ որդի Սմբատայ ամս ԻԵ*։ 32 ГD *ԻԶ* փխ. *ԻԵ*։ 32 - 33-ի արանքում D *Աբաս որդի Սմբատայ ամս ԻԵ*։ 33 Б *Աբասայ*, Г *ԻԵ* փխ. *ԻԶ*, D *ԻԷ* փխ. *ԻԶ*։ 33-րդ *տողի փոխարէն* B *Աշօտ որդի Սմբատայ և եղբայր Աշօտոյ ամս ԼԶ*։ 34 Г *Շահընշահն*, D *Շահնշահ*։ 35 D *Սմբատայ* փխ. *սորայ*։ 36 B *Յովանէս*, Г *Յովհաննէս*, D *Յոհաննէս*, B *ԺԶ* փխ. *ԺԸ*, D *ԺԳ* փխ. *ԺԸ*։

Գագիկ, որդի Աշոտոյ, ամս ԼԶ (36)[40]։

Գարոն Ռոբէն ազգական Գագկայ ամս Ի (20)[41]։ Իսկ յետ սորա փոխեցաւ թագաւորութիւնն կամ թէ տէրութիւնն Հայոց ի գաւառն Կիլիկոյ ի թւականութեանն Աղէքսանդրին ՌՆԹ (1409)[42] և Քրիստոսի մարդեղութեանն ՌՂԸ (1098), իսկ Հայոց թւականութեանն ՇԽԷ (547)։

Գարոն Կոստընդին, որդի Ռոբէնի, ամս Ե (5)[43]։

Գարոն, Թորոս որդի Կոստանդեայ, ամս ԻԳ (23)[44]։

Լևոն, եղբայր Թորոսի, ամս ԺԵ (15)։ Յետ սորայ կայսրն Փէրփոժէն էառ զԿիլիկեայ և Ահմաա տաճիկ ամիրայ ոճն, որք և տիրեցին ամս Ա (1) և այլք ասեն լինել ամս ԺԱ (11)։

Գարոն Թորոս[45], որդի Լևոնի, ամս ԺԳ (13)։

Գարոն Ռոբէն, որդի սորա, ամս Ա (1)։

Գարոն Մլեհ, եղբայր Թորոսի, ամս Է (7)[46]։

Գարոն Ռոբէն, որդի Ստէփանէ, եղբօր Թորոսի, ամս ԻԲ (22)[47]։

Լևոն[48] Առաջին, եղբայր Ռոբէնին, ամս ԼԵ (35)[49]։

Ֆիլիպն փեսայ Լևոնի և որդի բրընձին Անդիոքու ամս Գ (3)։

Հէթում փէսա Լևոնի ի նոյն ախչիկն թագուհի Ֆիլիպին ամս ԽԵ (45)։

Լևոն, որդի սորայ, ամս ԺԸ (18)։

Գարոն Հէթում իւր որդին մեծն՝ ամս Ը (8)։

Սմպատն, եղբայր սորայ, ամս Բ (2)։

Կոստանդին, եղբայր Սմպատին, ամս Ա (1)։

Գարոն Հէթում, որ վերոյ, դարձեալ ամս Բ (2)։

Լևոն որդի Թորոսի, եղբօր սորա, ամս Գ (3)։

Օշին, հօրեղբայր Լևոնի, ամս ԺԳ (13)։

Լևոն որդի Օշնի[50] ամս ԻԱ (21)։

Գարոն Ջուան, հօրքուեր որդի Լևոնիս, պայլ կացեալ ամ մի։

Կիտ[51], եղբայր Ջուանիս, ամս Բ (2)։

---

1 D Աշօտայ, B Լ փխ. ԼԶ։ 2 BD Ըոօբէն, Г Ռուբէն, D Գագիկայ։ 3 BD սորայ, B կամ թէ չիք։ 4 Կիւլիկիոյ, D Կիլիկիոյ, B ի թվականութեանցն Ալէկ[ս]անդրի ՌԳԾԹ, Г թվականութեանց Ալէսանդրին ՌԳԾԹ, D թվականութեանցն Ալէսանդրին ՌԳԾ։ 5 B ի թվին Քրիստոսի, Г և ի մարդեղութեանն Քրիստոսի։ 5 D Հայոց թվական[ութեանն], 6 Г ՇԻԵ փխ. ՇԾԽԷ, BD ՇԾԽԷ չիք։ 7 BBГD Կոստանդին, Г Կոստանդին որդին Ռուբէնի, D Ըոուբենի, B Ռօբա, Б որդի չիք, B Ե չիք։ 8 BГ Կոստանդեա, D Կոստանդինի, BD Ի փխ. ԻԳ։ 9 Г Թորսի, B ԺԲ փխ. ԺԵ, Г սորա, D կայսր։ 10 Г զԿիլիկեա, B ամիրա, D ոճն ամիրայ։ 11 Г ամ, B մի փխ. Ա, D Ա չիք, այլ, Г տասն և մէկ։ 13—14 տողերը Б չիք։ 13 Г Ռուբէն, D Ըռուբէն, B սորայ, Г սորա ամ մէկ։ 14 D մսեմ փխ. Մլեհ, Ե փխ. Է։ 15 BD Ըոօբէն, B եղբայր Թորոսին, Г Ռուբէն, եղբօր Թորոսի չիք, D յեղբօր։ 16 B Լէոն, D առաջին չիք, Г Ռուբենի, B Ռօբէնին ամս ԼԵ. այս Լևոն Առաջին ի Կիլիկիայ թագաւորեաց, D Ռուբենի առաջին թագաւոր Կիլիկիայ ամս ԼԵ։ 17 B բրընձին Անդիոքու ամս Գ չիք, D Ֆիլիպ, բրինձին։ 18 Б Հէթում փեսա Լևոնի չիք, BD փեսայ, Г փեսա, D աղջկան թագուհոյն։ 20 ГD սորա։ 21 BГD մեծ։ 22 D Սմբատ, B Ը փխ. Բ։ 26-րդ տողի փոխարեն՝ Г Կոստանդին եղբայր Լևոնի ամս ԺԳ։ 27 D սորա փխ. Օշնի, ԻԳ փխ. ԻԱ։ 27—28 արանքում՝ D Կոստանդին ազգական Լէօնի ամս Է։ 28 D Ժուան, Լէօնի, ամս Ա։ 29 BГ ամս Բ. զսա ընդ եղբօրն իւր և հայերն սպանին ՌՑԾԱ թվին, D ամս Բ գսա ընդ եղբօրն իւր սպանին Հայք թվական Հայոց ԸԾԷ և Քրիստոսի ՌԳԾԾԱ։

*Կոստանդին, ազգական Լևոնի, կեայ այժմ և թագաւորէ ամս Է(7), որ է թուականին Հայոց Պ(800) և Քրիստոսին ՌՅԾԱ(1351).*

1 Б *գայ* փխ. *կեայ*, В *կեա*, Г *կեայ այժմ և թագաւորէ* չիք. 1—2 տողի փոխարեն մեկ ուրիշն ավելացրել է՝ D *Լեօն իբր թագաւոր կացեալ ԺԱ ամիս և բարձաւ թագաւորութիւն ի տանէն Կիլիկեցւոց։* 2 Г *թուական*, В Ը D փխ. *Պ*, Г *Քրիստոսէ*, В *ՌԳՃԾԱ* փխ. *ՌՅԾԱ*։

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

*1. Բնագրում վերնագիրը գրված է կարմիր թանաքով։*

*2. Բնագրում մինչև այդտեղ գրված է նույնպես կարմիր թանաքով։ «Առաջակա» բառին բնագրում նախորդում է «առաջ» բառը, այն չվերցրինք։*

*3. Բնագրում «Բլէս» ձևով։*

*4. Տես և համա. Մ. Խորենացի, Պատմութիւն Հայոց, գիրք I-ին, գլուխ Ն։*

*5. Այս ամբողջ տեղեկությունները տե՛ս նույն տեղում, գիրք I ին, գլ. Ժ—ԼԱ։*

*6. Տես Ե. Կեսարացու ժամանակագրությունը, մասն Բ, էջ 126։ Ըստ երևույթին Ն. Պալենցն այստեղից է սկսել օգտագործել Ե. Կեսարացու վերոհիշյալ աշխատությունը։*

*7. Տես և համա. Ե. Կեսարացի, Ժամանակագրություն, մասն Բ, էջ 113—126։*

*8. Տես նույն տեղում, մասն Բ, էջ 126։*

*9. Տես նույն տեղում, մասն Բ, էջ 98։ Ե. Կեսարացին այդ մասին գրում է. «Ջայս Ողոմպիաս եդ Իփիտոս Պրաքիոնի Դիմոնեայ։ Եւ յայն ժամանակէ թուի Յունաց ժամանակագրութիւնն վաւերական. զի յառաջ քան զայսոսիկ՝ իւրաքանչիւր ոք որպէս և յօժարէր՝ վճիռ տայր»։ Հույները առաջին օլիմպիադան հաշվում են 776 թ. (Ն. մ. թ.). յուրաքանչյուր օլիմպիադան ունի չորս տարի։*

*10. Տես նույն տեղում, մասն Բ, էջ 126։ Ալ. Մակեդոնացին Աքեմենյան Պարսկաստանի թագավոր Դարեհ III-ի բանակները ջախջախեց 331 թվի սեպտեմբերի 30-ի, Նինվեի ավերակներից ոչ հեռու, Գավկամելա փոքրիկ գյուղի մոտ տեղի ունեցած արյունահեղ ճակատամարտում։*

*11. Սելևկյան թագավորների մասին այս տվյալները տես նույն տեղում, մասն Բ, էջ 128—130։ Մինչև այստեղ Ն. Պալենցն օգտվել է Ե. Կեսարացու ժամանակագրությունից, իսկ այնուհետև գարձյալ Մ. Խորենացուց։*

*12. Այս և շար. տես Մ. Խորենացի, գիրք II, գլ. Ա.։*

*13. Տե՛ս նույն տեղում, գիրք II, գլ. Գ։*

*14. Նախարարական տների կազմավորման ամբողջ պատմությունը տես նույն տեղում, գիրք II, գլ. Է։*

*15. Տես նույն տեղում, գիրք II, գլ. Ը։*

*16. Բնագրում այս ամբողջ հատվածը գրված է կարմիր թանաքով։*

*17. Տես նույն տեղում, գիրք II, գլ. Ը—ԿԱ։*

*18. Մ. Խորենացին Տիրանի թագավորության տարիները նշում է 11, գիրք III, գլ. ԺԷ։*

*19. Նախագաղափար օրինակում գուցե եղել է ԺԷ։ Արշակ Բ-ի թագավորության ժամանակի մասին տես ներքևում, էջ 468, 471, ծանոթ. 3։*

*20. Մ. Խորենացու մոտ Պապի թագավորությունը նշված է յոթ տարի, գիրք III, գլ. ԼԹ։*

*21. Այստեղ պակասում է Վարազդատի անունը, որը, ըստ Մ. Խորենացու, թագավորել է չորս տարի, գիրք III, գլ. Խ։*

*22. Ըստ Մ. Խորենացու 21 տարի, գիրք III, գլ. ԺԵ։*

*23. Տես նույն տեղում, գիրք III, գլ. ԾԵ։*

*24. Արշակունիներից հետո Ն. Պալենցը, թե ո՞ւմից է օգտվել, դժվար է ասել։*

*25. Համա. ՄԺ, 1, էջ 255։*

*26. Մի այլ ժամանակագիր սրա իշխանության տարիները նշում է 21, ՄԺ, 1, էջ 255։*

*27. Իմա Դավիթ Սահառունի, տես և համա. ՄԺ, 1, էջ 255, 259, ծանոթ. 3։*

28. Իմա Թեոդորոս Ռշտունի, հմմտ. Մժ, 1, էջ 255, 259, ծանոթ. 4։

20. Հմմտ. Մժ, 1, էջ 255, 259, ծանոթ. 5։

30. Մի այլ ժամանակագիր սրա իշխանությունը նշում է 34 տարի, Մժ, 1, էջ 255.

31. Ոմանք սրա իշխանությունը նշում են երեք տարի, Մժ, 1, էջ 255, 259, ծանոթ. 7։

32. Հմմտ. Մժ, 1, էջ 255, 259, ծանոթ. 12։

33. Հմմտ. Մժ, 1, էջ 256, 260, ծանոթ. 13։

34. Այս մի քանիսի մասին տես և հմմտ. Մժ, 1, էջ 256, համապատասխան ծանոթագրություններով։

35. Հմմտ. Մժ, 1, էջ 256։

36. Հմմտ. նույն տեղ, էջ 256, 260, ծանոթ. 10։

37. Հեղինակը բաց է թողել Աշոտ Երկաթի անունը, հմմտ. նույն տեղում, էջ 256, 260, ծանոթ. 20։

38. Վերոհիշյալ չորս թագավորների վերաբերյալ տեղեկությունները հմմտ. նույն տեղում, էջ 256, 260—261, ծանոթ. 22—24։

39. Հմմտ. նույն տեղում, էջ 256, 261, ծանոթ. 25։

40. Ըստ երևույթին 36 տարիների մեջ հեղինակը նկատի է ունեցել նաև Գագիկ Բ-ի պանդխտության տարիները՝ մինչև նրա սպանությունը 1079 թվին։ Հմմտ. նույն տեղում, էջ 90, ծանոթ. 1, էջ 256, 261, ծանոթ. 26։

41. Հեթում Բ-ն Ռուբեն Ա-ի իշխանությունը նշում է տաս տարի, տես նույն տեղում, էջ 74։

42. Հեղինակը նկատի ունի Ալ. Մակեդոնացուն, որովհետև, նրա կարծիքով սրանից մինչև Քրիստոսի ծնունդը 311 տարի է, (տես վերևում, էջ 203) հետևապես նշված՝ 1409-ից եթե հանենք 311, կստանանք 1098, այն ինչ ցույց է տրված Հուլյան և հայկական թվականներով։

43. Կոստանդինի իշխանության տարիները սովորաբար նշվում է տաս տարի, տես Մժ, 1, էջ 74, 75, 90, ծանոթ. 9։

44. Հմմտ. նույն տեղում, էջ 75։

45. Բնագրի ձախ լուսանցքում, միևնույն ձեռագրով, ավելացված է. «Մեծ Թորոսն է»։ Նույնը տես Б տարբերակում, էջ 280ա։

46. Հմմտ. Մժ, 1, էջ 75—76։

47. Հմմտ. նույն տեղում, էջ 76, 92, ծանոթ. 27։

48. Բնագրի ձախ լուսանցքում, միևնույն ձեռագրով, ավելացված է. «Այս Լևոն առաջին հիլիկեցի թագաւորեցաւ»։

-49. Լևոն Ա-ի վերաբերյալ այս տեղեկությունները ստույգ չեն, հմմտ. Մժ, 1, էջ 51, ծանոթ. 9, էջ 76, 70։

50. Օշինի և հաջորդների վերաբերյալ տեղեկությունները հմմտ. Հեթում Բ-ի տարեգրության Ն. Պալյանցի շարունակության հետ, տես Մժ, 1, էջ 89։

51. Բնագրի ձախ լուսանցքում, միևնույն ձեռագրով, ավելացված է։ «Դսայ ընդ եղբօրն իւր հայերն սպանին», նույնը տես Б տարբերակում, էջ 280բ։

VII

## ԴԱՎԻԹ ՄԵՐԴԻՆՑՈՒ ՏԱՐԵԳՐՈՒԹՅՈՒՆԸ (XV Դ.)

Երուսաղեմի հայերեն ձեռագրերի մատենադարանի № 1198 ձեռագիրը պատմական և այլ նյութերի ժողովածու է, որը ընդօրինակել է Դավիթ երեցը, 1452 թ., Մերդինում։ Ձեռագրում, փոքրիկ հիշատակարանին առընթեր, գտնում ենք գրիչ Դավիթ երեցի կողմից հետագայում կազմած տարեգրությունը, շուրջ ութ տարվա՝ 1450—1457 թթ. անցուդարձի հիշատակությամբ։ Տեղեկությունները վերաբերում են Ջհանշահի և Ջահանգիրի, Ակ-Կոյունլու երկու եղբայրների՝ Ջհանգիրի և Ուզուն Հասանի կռիվներին, մերդինցիների ապստամբությանը և այլն, որոնք թարմ տվյալներ են պատմագրության համար։ Հեղինակն եղել է ոչ միայն իր նկարագրած եղելությունների ժամանակակից, այլև առանձին դեպքերի ականատես, այդ պատճառով էլ նրա տեղեկությունները հետաքրքիր են, հավաստի, որոնց շնորհիվ կարող ենք մասամբ վեր բարձրացնել հայ ժողովրդի XV դարի պատմության առանձին էջերի մթության քողը։

Հրատարակության համար առաջարկվող բնագիրը վերցրել ենք Մ. Տեր-Մովսիսյանի ձեռագրերի ցուցակից[1]։ Բուն հիշատակարանը, որը կազմում է մի քանի տող, անջատել ենք բնագրից և նշել միայն ծանոթագրության մեջ։

[1] Պատմության ինստիտուտի արխիվ, Մ. Տեր-Մովսիսյանի ֆոնդ, գործ № 4, էջ 74—75։

VII

Ի թվին[1] ՊՂԹ (1450) եկ Ջհան[շ]այ միրզա ի Թավրիզու 74 յաշխարհէ և էառ զԵզնկայ[2]. և անալի առաքեց զոմն զաւրապլուխ ի Միջագետս Թրխան աւղլի անուն. և նա եկեալ գերեաց զԹիլգուրան[3] և աւերեաց զնա և չարչարեաց զբազում քրիստոնեայս և նահատակեաց.և անտի եկեալ ի Խասըլէն, ի սահմանս Մերտինայ։ Եւ մերտինցիքն զարհուրեցան. և բազումք ելեալ ամրացան յամրոցն Մերդնոյ[4]։

Ի թվիս Չ (1451), որ նաւասարդի էր աւրն կիրակի[5], եկեալ Թրխան աւղլին պատերազմեցաւ ընդ մերտնցոցն և կոտրվաւ ի Տնիսայ Աղապի գլուխն։ Եւ զկնի վեց աւուրն, յաւրն ուրբաթու,[6] քաղաքացիք ապստամբեցան ի Ջհան[գ]իր ամիրզայէն և ապաբեցին զքաղաքն ի Թարխան-աւղլին. և ըստ արժանացն նոցա զոմանս տուգ[ա]նեց և զոմանս թալանեաց և սկսաւ բանալ զդարաներն, որ կայր ինչք մերտնոցն, և զինչ որ հաւանէր յափշտակէր և զինչ որ մնայր ի հնգից զմէկն առնէր. և կապուտ նշան եդիր ի վերայ քրիստոնէից և բազում չարիս արար, զոր թէ գրէի մի ըստ միոջէ նա գիրք մի լինէր, զինչ Եսայի Պաղուածս և այլ շատ։ Եւ սկսան քաղաքացիքն և Ղարա-Ղոյունլու խսաբիլ զբերդն ի նաւասարդէ ի Զ (6)-էն[7] ի վեր, յորում էր թվականն Չ (1451). և զկնի Զատկի ԻԸ (28) աւուր, ի Յերեման խաչի կիրակին[8], եկեալ Ջհանկիրն Յամթայ ի Մերտին և ոչ հնազանդեցան նմա մերտնցիքն։ Եւ դարձաւ Յամիթ և զկնի այնորիկ եղև պատերազմ մեծ ի դուռն Ամթայ և կոտորումն[9] մեծից երկու դիմացն և սպանաւ անդ Մեսրոպ էրէց, Նախաշ տէր Մկրտչի որդին[10]։ Եւ այս պատերազմս եղև ի երեքշաբթի[11], որ զկնի երկու աւուրն հինգշաբթի, Համբարձումն էր[12]։

Իսկ ի թվիս ՉԱ (1452), յաւուրս երկուշաբթի[13], արձակեցին ի բերդէն զռազխաթն ի խառէն ամէքն հիւանդ, կիսոմն ի վայր կուռէին և հաց ուտէին և քան զկոտորածն կումնային, կացին ըռազխաթն տարի մի[14], պակաս Ե (5) աւր, ի խսարն. որոյ յայնմ աւրերն եկեալ էր Մհամատ ամիրզայն, Ջհանշի որդին, առ Ռուստամ Թրխան աւղլին և խոտրեցին զՋհանկիրն ի Յամիթ, որոյ վճար եղև այս գրոց և զառաջնայ Աստուած գիտէ։

Ի սմին ամի յաւագ Զատիկն[15] հաշ[տ]ութիւն եղաւ, հաշտեցան Ջհանշահ և Ջհանկիրն և դարձոյց զՄերտին ի Ջհանկիրն։ Եւ յաւագ պահոցն[16] գնաց Ռուստամ պատերազմել ընդ Հասան պէկն ի Ջերմուկն[17] և կոտրվաւ Ռուստամն։

Եւ ի նոյն պահին բլաւ մզկի[թ]ն բերդին Մերտ[ն]այ, առանց շարժի և անձրև[ի]։

Դարձեալ ի նոյն պահքն կայծակ իջաւ ի վերայ Մարտին և այրեաց զնա, ի նոյն Մերտնայ բերդն։

Ի նմին ամի ելաւ Ճհանկիրն Ցամթայ և գնաց Քուրթ թալանել. և Հասան պէկն եկեալ մտաւ Ցամիթ և էառ զնա. և Ճհանկիրն փախստական եղաւ. և եկեալ ի Մերտնայ բերդն մտաւ սեպտեմբերի Ի (20)։

Ցամին ՋԲ (1453) եկաւ Հ[ա]սան պէկ և խսարեց զՄերտին ԺԵ (15) աւր. և ապա հաշտ[եցան] Բ (2) եղբայրքն՝ Ճհանկիրն և Հասան պէկն։

Ի նմին ամի վախճանեցաւ Ցովանէս էրէցն, Ղուկաս երիցու որդին, յուլիս Ա (1)։

Ցամին ՋԳ (1454)-ի յունվար ԺԱ (11), յաւուր շաբաթու, վախճանեցաւ Առաքել վարդապետն[18] յԱրղնի[19]։

Ցամին ՋԵ (1456) եկաւ Հասան պէկն Ցամթայ և գնաց ի Ճղիրայն խատել զնա. և նոքա հնազանդեցան նմա և եղեն հարկատու։ Եւ անտի եկեալ ի Մերտին. և խնդրեաց զսուլտան Համզայն, զՃհանդրի որդին, Կ (60) հողով լինել նմա հեծելքաշ և Ճհանկիրն ոչ ետ։ Եւ նա արածեաց և քաշեց զՄերտնայ մուտքն և կտրեց զայգիքն, իսկ Ճհանգիրն ելեալ գնաց առ Ճհանշահն և խնդրեաց ի նմանէ հեծեալ, զի գայր պատերազմել ընդ եղբաւրն իւր Հասան պէկն։ Եւ ետ նմա զԵզնկայ քաղաքն և ասաց նմա՝ գնալ յԵզնկայ. և զԱրապշահ պակն, յոր Երզնկայ էր, առնուլ ընդ իւր և երթալ պատերազմել ընդ Հասան պակն։ Իսկ Արապշահ ոչ իշխեաց գալ պատերազմել ընդ Հասան պակն, այլ ապսպրեաց զԵզնկայն[20] ի Ճհանկիրն և ինքն գնաց առ Ճհանշահն, որ ի Ջաղաթայ էր[21]։ Իսկ Հասան պէկն քշեց զկնի նորա Ը (8) աւուր ճանապարհ և յորժամ ոչ գտաւ զնայ, դարձաւ Ցամիթ քաղաք իւր։ Իսկ Ճհանկիրն, յորժամ Հասան պէկն գնաց զկնի Արապշին և անդ ժղուլ մնաց, ել ի Ցեզնկայ փախստական և թողեալ անդ զորդին իւր զՄուրատ բէկն և եկեալ ի Մերտին։

Ցամին ՋԶ (1457) առաքեաց Ճհանկիրն զեղբայր իւր զՈւայիս պէկն առ Ճհանշահն ի Ջաղաթէն և գանգատ արար ն՛ վերայ Արապշին. և Ճհանշահն զԱրապշահն թալանեց և զնգանեց։ || Եւ 75 փոխանակ Արապշին եկ Ճհանկրին այլ հեծել. գլխաւորք հեծել էին՝ Ռուսթամ պակն, Թրխանի որդին և Ալիշաքար պակն և իւր որդին և Սաւալան պակն և Փիր պակն. զսոսայ իւրեանց հեծելօք առաքեաց Ճհանշահն յաւգնութիւն Ճհանկրին առ ի պատերազմել ընդ Հասան պէկն։ Եւ եկեալ սոքա Ճհանկիրն իւր հեծելովն և Սաւրայ[22] պարոնով գնացեալ Ցամիթ ի պատերազմ և խմպեալ պատերազմին և Բ (2) կողմունքն եկեալ ի պատերազմ. զօրացաւ Հասան պակն և պարտեցաւ Ճհանկիրն։ Քանզի Ճհանկրի զաւրքն ծռան և Ճհանկիրն փախեաւ և զաւրքն ցրուեցան։ Եւ Ռուստամն, Թըրխանի որդին, ըմբռնեալ եղև և տարեալ առաջի Հասան պէկին կացուցեալ և զկնի Գ (3) աւուր եսպան զնա։ Իսկ կին Ռուսթամին

փախեաւ և հասաւ յԱւրէլ քաղաքն[23] իւրեանց և յզարկել խնդրեաց զլաշն Ռուսթամին և տարաւ զնա յՕրէլ։ Իսկ Ալիշաքարն և իւր տղայն Ալի միրզայն և Սաւալան պակն առքա եւ ըմբռնեցան և արկելնոցա Հասան պէկն ի զնդան, իսկ Փիրի պակն մազապուրծ եղաւ։ Եւ այս հեծելիս կոտորած Ճհանկիրի փախն էր պատճառ և իւր զաւրացն ծռուԹն նոյնպէս։ Եւ Ուլանիսն փախաւ, իսկ Սուրայ[24] տէրն ըմբռնեցաւ. և Հասան պէկն էառ զիւր Բ (2) անառիկ բերդորայքն և ետ նմա զՕշին գաւառն[25]; Իսկ մերանցիքն, յորժամ զայս ամենայն տեսան, մխարանեցան մեծ և փոքրն և ասացին Ճհանկրին, Թէ «Հնազանդեայ քո եղբաւրդ և տուր նմա զքո որդի հեծելքաշ, ապա Թէ ոչ մեք այսուհետև ոչ ունիմք կարողուԹիւն հակառակ կալ Հասան պէկին, եԹէ գայ պատերազմել ընդ մեզ»։ Եւ Ճհանկիր առաքեաց զորդին իւր Լ (30) հոգով հեծելքաշ և հաշտեցան։ Տեսէք եղբայրք, զանմտուԹիւն Ճհանկրին, որ այս ամենայն արհաւիրքս, որ եղաւ և ամենայն աւերուԹիւն և ապա ետ զորդին, և Թէ տարով մի յառաջ տուեալ էր զորդին, այս ամենայն աւերուԹիւնս չլինէր։

Ի սմին ամի եղև շարժ և բլաւ Կեղայ կէս բերդին և Եղնկայ քաղաք տապալեցաւ և Ջրահեղձ եղաւ[26],

# ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

*1. Բնագրում ինչպես նշել ենք «ի թվին» բառին նախորդում է գրչի հիշատակարանը, այն բերում ենք ամբողջությամբ. «Զաւրինակի աբւսւղ զԱռաքել վարդապետն յիշեցէք ի տէր և զանպիտան գրիչս զԴաւիթ էրէցս. քանզի գրեցաւ սա ի թուականութեանս Հայոց ի յինն հարիւր մէկն, յամսեանն դեկարմբերի ԻԹ (29), աւուրն չորեքշ[աբաթ]ու, Ցայտնութեան բարեկենդանն, ի դառն և ի նեղ ժամանակիս» (էջ 74), այնուհետև շարունակությունը կազմում է տարեգրությունը:*

*2. Ջհանշահի կողմից Երզնկայի գրավման և հաջորդող մի քանի դեպքերի մասին բավական հետաքրքիր տեղեկություններ գտնում ենք Դավիթ եպիսկոպոսի 1453 թվի հիշատակարանում, որը բերում ենք ամբողջությամբ. «Ի թւականութեան Հայոց ՊՂԹ (1450) ելեալ սուլթանն Թաւրիզու Ջիհանշահ անուն, բազում և անթիւ զաւրաւք ԿՌ (60000)-աւ եկեալ էառ զԵզնկայն յազգէն Թուրքմանաց, որ էր ազգաւ Պայընտուր, և կալեալ զիշխանն Եզնկա քաղաքին և Խ (40) անուանի ամիրայ զհետ նորա, և տարեալ յարևելս կորուսին: Եւ զԿամխայ աստուածաշէն երկիրն ես հասարակ գերեաց իբրև անձինս ԺՌ (10000) ընդ այր և ընդ կին, թող զայն որ մաշեցան: Եւ զՆերքին Դերջանն և զՎերին Դերջանն, զԲաբերդ, զԿեղի, զԿոճակն և զԳայլ գետն, զՇիռեան, զՍատաղ առհասարակ գերեաց...: Եւ գնացեալ նստան ի վերայ Ամթայ և ի վերայ Արղնու և ի վերայ Մէրտընու, Ե (5) տարի բոլոր, և յամենայն աւուր մարտնչէին և կռուէին ընդ նոսա: Եւ իջեալ բնակիչքն բերդորէից կոտորէին զթշնամիս... և ինքնեանք դարձեալ ի բերդն ամրանային: Եւ հասեալ ի Բարեկենդանեաց յետին շաբաթ աւրն՝ ի տաւնի ս. Հայրապետացն ելեալ գազտագողի ի հեծելէն՝ որ յԱմթայ վրայ էր նստեալ, և շուրջ պատեցին զերկիրն Արղնու, մինչդեռ այգն զառաւաւտն չէր մերկացեալ և Դ (4) գեղ ի ծառայութիւն վարեցին իբրև ՇԾ (500) հոգիս և սպանին անձինս Խ (40) և դարձան և բնակարանս իւրեանց: Եւ դարձեալ ի Ծառզարդարն հաշտեցան և արարին խաղաղութիւն ընդ միմեանս և ազատեցան գերեալքն Արղնու... և ոչինչ կարաց առնել կամ զԱրղնի կամ զԱմիթ կամ զՄերտին, այլ դարձաւ յաշխարհ իւր... Արդ ես Գաւիթ եպիսկոպոս աղաչեմ... յիշեսջիք... զիս... ի թվին ՋԲ (1453) գրեալ ի Խարբերդ»: (Գ. Սրուանձտեանց, «Թորոս աղբար» մասն Բ, Կ. Պոլիս, 1885, էջ 380—381):*

*3. Ճիշտ ձևը Թլղուրան, Ամիդից արևմուտք:*

*4. Թարխան օղլու արշավանքը դեպի Ամիդ և կռիվները համառոտաբար տես նաև Անանուն Սեբաստացու (ՄԺ, 1, էջ 168) և մի ուրիշ ժամանակագրի մոտ (տես վերևում, էջ 152):*

*5. Շարժական տոմարի համաձայն հայոց Ջ թվի նավասարդի 1-ը կընկնի 1450 թ. նոյեմբերի 29-ին (*Ed. Dulaurier „Recherches sur la chronologie Arménienne, t. 1er, Paris, 1859, *էջ 387) կիրակի: Եթե նկատի ունենանք այդ հատվածի անմիջական շարունակությունը. «Եւ զկնի վեց աւուրն յաւրն ուրբաթու», ինչպես նաև մի քանի տող ներքև «և Ղարա-Ղոյունլու խսարիլ գրերոն ի Նաւասարդէ ի Զ (6)-էն» վկայությունը, ապա ամսաթիվը կարող ենք ճշտել: Վերջին վկայությունից կարելի է եզրակացնել, որ Մերդինի այս դեպքերը տեղի են ունեցել նավասարդի առաջին շաբաթում, մյուս կողմից առաջին վկայության «յաւրն ուրբաթ» հատվածը պետք է ընկնի դարձյալ նավասարդի առաջին շաբաթվա մեջ Թարխան օղլու Մերդին հասնելու վեցերորդ օրը: Ուստի, նոյեմբերի 29-ից հաշված, վեցերորդ օրը կընկնի դեկտեմբերի 4-ին, և այդ օրն էլ իրոք ուրբաթ է: Այստեղից էլ Թարխան օղլին Մերդին եկել է 1450 թ. նոյեմբերի 29-ին կիրակի օրը, իսկ մերդինցիների ապստամբությունը Ակ-Կոյունլու Ջհանգիրի դեմ տեղի է ունեցել դրանից վեց օր հետո, այսինքն դեկտեմբերի 4-ին, ուրբաթ օրը:*

6. Այսինքն 1450 թ. դեկտեմբերի 4-ին, տես վերևում, ծանոթ. 5։

7. Այսինքն 1450 թ. դեկտեմբերի 4-ից։

8. Այսինքն 1451 թ. մայիսի 23-ին, կիրակի օրը, որովհետև զատիկը կրնկնի ապրիլի 25-ին։

9. Բնագրում «կորաումնք» ձևով։

10. Մկրտիչ Նաղաշի որդու՝ Մեսրոպ երեցի մասին տեղեկություն գտնում ենք նաև Մատենադարանի № 2379 ձեռագրում, բերում ենք նրան վերաբերող հատվածները.

ա. «... և ի վայելումն աստուածապարգև զօակին իւրոյ (Մկրտիչ Նաղաշին—Վ. Հ.) տէր Մեսրոպին, որոյ տէր Աստուած վայելել տացէ երկար կենաւք և պարագայից ամաւք...» (էջ 260ա)։

բ. «...և զծաղկեալ զաւակն իւր (Մ. Նաղաշի —Վ. Հ.) և զաւագ որդին զտէր Մեսրաւպ...» (էջ 260բ)։

գ. «Դարձեալ յիշեցէք ի Քրիստոս զՇահմելիքն զկենակցին տէր Մեսրօպայ, որ տղայ հասակաւ փոխեցաւ ի Քրիստոս, զի դեռ Բ (2) ամիս էր, որ տէր Մեսրօպն երէց էր աւրհնուած և Շահմելիքն նոր տիրուհի և նման արեգական փոխեցաւ ի Քրիստոս ի ՊՂԸ (1449) թվին», (էջ 262ա և բ)։ Ուրեմն Աստվածատուրն այս հիշատակարանը գրել է շուրջ 1449—1450 թվերին։ Երկրորդ վկայության «զաւագ որդին» հատվածը թերևս կարող է մտածել տալ, որ Մեսրոպ երեցը Մկրտիչ Նաղաշի միակ զավակը չէ, թեև մենք հակառակ կարծիքի ենք, որովհետև, եթե Մկրտիչ Նաղաշը, բացի Մեսրոպ երեցից ուրիշ զավակներ ունենար, հիշատակարանում անպայման կհիշվեր նրանց մասին։ Հետաքրքիր է նաև երրորդ վկայության տվյալները, ըստ որի Մեսրոպ երեցը քահանա ձեռնադրվել է 1449 թվին, ամուսնացել՝ նույն թվին։ Մեսրոպ երեցը սպանվել է 1451 թվի հունիսի 1-ի (տես ներքևում ծանոթ. 11) Ամիդի մոտ տեղի ունեցած ճակատամարտում, նշանակում է նա սպանվել է երիտասարդ հասակում։

11. Այսինքն ճակատամարտը տեղի է ունեցել 1451 թվի հունիսի 1-ին, երեքշաբթի։

12. 1451 թվի Համբարձման տոնը կընկնի հունիսի 3-ին, հինգշաբթի։

13. Հավանաբար 1452 թ. մայիսի 17-ին, երկուշաբթի։

14. Այս մասին մասամբ տես վերևում, ծանոթ. 2։ Հավանաբար այս կռիվների ժամանակ տեղի ունեցած մի եղելությանն է վերաբերում 1452 թվի Աղթամարում Դրիգոր գրչի ընդօրինակած Ավետարանի հիշատակարանի հետևյալ հատվածը. «...քաղում աշխատանօք գծագրեցի... տառապանօք և բաղում տրտմութեամբ ի դառն և ի վշտալից ժամանակիս, յոր եկն Ջհանշայ փաթշահն և ի Ցոստան նստաւ բոլոր ձմեռ մի բաղում զօրօք...» (№ 4830, էջ 315բ)։

15. Երևի 1452 թ. զատկին, այսինքն ապրիլի 9-ին։

16. Հավանաբար նկատի ունի մեծ պասը, որը 1452 թվին ընկնում է փետրվարի 20-ից մինչև ապրիլի 8-ը։ Հետևապես Ռուստամ բեկի և Հասան բեկի կռիվները Ջերմուկում տեղի են ունեցել այդ ժամանակամիջոցում։

17. Գտնվում է Դիարբեքիրից հյուսիս-արևմուտք, իսկ Արղնից հարավ-արևմուտք, Եփրատի և Կըզլըըպուդ չայի միջև, վերջինիս աջ վտակներից մեկի վրա։

18. Այս անձնավորությունը, կարծում ենք, վերևում հիշված (ծանոթ. 1) Առաքել վարդապետն է, որն ընդօրինակելու համար Դավիթ Մերդինցուն 1452 թ. տրամադրել էր իր ձեռագիրը։

19. Արղնի կամ Արկնի, փոքրիկ քաղաք, Քոլաղ լեռան լանջին, Դիարբեքիրից Խարբերդ ընկած ճանապարհի վրա, վերջինիցս հարավ-արևելք։

20. 1446 թվին ընդօրինակված մի Հայսմավուրքի հիշատակարանում էլ նշվում է, որ Ջհանգիրը 1446 թ. ամռանն ասպատակել է Եկեղյաց գավառը («Նոտարք», էջ 150)։

21. Իմա, Խորասան։

22. Արդյոք Խիզանում (պատմական Աղձնիք) գտնվող այժմյան Սորի կամ Սորիկ գյուղը չէ՞։ Թերևս Աղձնիքի արևելյան մասում, Տիգրանակերտի շրջան, Սիլվան գավառի Ջեյրա (Ջէրրէ) ավանը։

23. Ս. Անեցու ժամանակագրության շարունակողը խոսելով Կարա Յուսուֆի 1406 թ. արշավանքների մասին, գրում է, որ նա «արար շատ աւեր և գնաց ի Թավրէզ և այլ յառաջ, և մլքեաց բաղում տեղիս մինչև ի Սուլտանիայ և Օրէլ քաղաք» (էջ 173)։ Այսպիսով, ըստ երևույթին, Օրելը պետք է փնտրել Սուլտանիայի կողմերում։

24. Հմմտ. «Սաւրայ» ձևի հետ (տես վերևում, ծանոթ. 22)։

25. Դուցե նկատի ունի Ուշնուհ քաղաքը և շրջանը, որն ընկած է Ուրմիո լճից հարավ-արևմուտք, մանրամասն տե՛ս և հմմտ. Հ. Փափազյան, Անանուն տաջիկ աշխարհագիրը....., (Հայկ. ՍՍՌ ԳԱ-ի «Տեղեկագիր», 1953 թ., № 5, էջ 78, 83, ծանոթ. 45)։ Հմմտ. ներքևում, էջ 232, ծանոթ. 1։

26. Ժամանակակից մի հիշատակարանում հետևյալ հետաքրքիր տեղեկությունները են պտհվել,

«Եւ զարձեալ ի սոյն աւուրս եղև ահագին շարժ Ցեղնկայն և կործանեաց զքաղաքն և զբոլոր պարիսպն յատակէն ապալեց և մեռան ի նմին ժամու ի շարժէն անձինք ԲԺ (12) հազար հաւատացեալ և անհաւատ, այր և կին, ծեր և տղայ և սրբասնեալ քահանայք, զոր ոչ կարեմք զաղետս և զկսկիծ և զկոծ և զհառաչ նոցա թուել, զի ականատես եղաք ահագին պատուհասին, զոր արարիչն Աստուած մի ցուցցէ ծառայից իւրոց այնպիսի փորձութիւն և վիշտ...... և յայսմ ամի էր թվական Չ և Զ (1457) ապրիլ ամսոյ ԻԳ (23), յաւուր շաբաթու, կրկնազատկին, ի չորրորդ ժամու ցերեկին»։ Ըստ իրոք, շարժական տոմարի հաշվով 1457 թ. ապրիլի 23-ը կլինի շաբաթ. հետևապես Դավիթ Մերզինցին ևս իր հաշվումների մեջ հետևել է շարժական տոմարին, որովհետև անշարժ տոմարի դեպքում հայոց ՋԶ թվի ապրիլի 23-ը կընկնի 1458 թ. մեջ, իսկ այդ թվին, նշված օրը կլիներ կիրակի։

VIII

## ՄՈՎՍԵՍ ԱՐԾԿԵՑՈՒ ՏԱՐԵԳՐՈՒԹՅՈՒՆԸ (XV Դ.)

Սույն տարեգրությունը պատկանում է Մովսես Արծկեցու գրչին, որի կենսագրությունից մեզ ոչինչ հայտնի չէ։ 1472 թվին, Արծկե քաղաքում, ընդօրինակված գանձարանի չափածո հիշատակարանից իմանում ենք, որ նա ապրել է XV դարում և նրա ծնողները եղել են Դանիել քահանան ու Խայխաթունը[1]։

Մ. Արծկեցու տարեգրության մասին, որքան մեզ հայտնի է, առաջին անգամ հիշատակություն հանդիպում ենք Խաչիկ Դադյանի ձեռագրերի ցուցակում[2], որտեղ բերված է Ղ. Փիրղալեմյանի անտիպ աշխատությունների ցանկը։ Մի փոքր ավելի ուշ, Ալիշանը հայ մատենագիրների շարքում հիշում է Մ. Արծկեցուն, հայտնելով, որ նա «...ոտանաւոր բանիւ գրեր է Ճիհան Շահի և Ուզուն Հասանայ իրարու հետ պատերազմիլն 1467—73 տարիներում»[3]։

Կարծում ենք, Ալիշանը նկատի է ունեցել Հ. Թոփչյանի վերոհիշյալ տեղեկությունը, իսկ տարեգրությունը նրա ձեռքի տակ չի գտնվել[4]։

Մ. Արծկեցու մատենագրական այլ գործերից մեզ ոչինչ հայտնի չէ։ Փիրղալեմյանի «Նշխարք պատմութեան Հայոց» անտիպ աշխատության մեջ[5] մեզ հանդիպեց նրա միայն վերոհիշյալ չափածո հիշատակարանը և առաջարկվող տարեգրությունը։ Վերջինս 160 տողից (40 տուն) բաղկացած չափածո մի պատմություն է, գրված ութոտնյա չափով։

Այս տարեգրությունն ընդգրկում է շուրջ յոթ տարվա, 1467—1473 թթ., մեծ մասամբ Հայաստանում տեղի ունեցած ասպատակությունների, ավերումների և տառապանքների տխուր պատմությունը, ժամանակակից անձնավորության կողմից նկարագրված։ Այս բնագիրը լինելով չափածո ստեղծագործություն, գրական տեսակետից առանձին արժեք չի ներկայացնում, մինչդեռ, որպես պատմական սկզբնաղբյուր, բովանդակալից է ու ստուգապատում։ Տարեգրությունը պարունակում է ոչ միայն տեղի ունեցած մի շարք դեպքերի ստույգ տարեթվերը, այլև այդ դեպքերի որոշ մանրամասնությունները՝ Ջհանշահի և ապա նրա որդու՝ Հասան Ալիի կռիվները Հասան բեկի հետ և այլն։

---

1 Ձեռ. № 4515, էջ 200։

2 Ց. Թօփճեան, «Ցուցակ ժողովածուաց Դաղեան Խաչիկ վարդապետի», մասն Բ, Վաղարշապատ, 1900, էջ 59։

3 «Հայապատում», Ա, էջ 127։

4 Նույն տեղ, էջ 128, հմմտ. Թովմա Մինասենցու մասին եղած հաղորդման հետ։

5 Ձեռ. № 4515, էջ 206—208։

*Տարեգրության բնագիրը ժամանակին գտնվել է Բաղեշի Ամրդոլու վանքի մի ձեռագիր գանձարանի մեջ, որը եղել է հեղինակի ինքնագիր օրինակը։ Տարեգրությունը, ինչպես և հիշատակարանը, 1881 թ. հուլիսի 9-ին ընդօրինակել է Ղ. Փիրղալեմյանը «Նշխարք պատմութեան Հայոց» իր անտիպ աշխատության Բ հատորում։ Հրատարակությունը կատարում ենք այստեղից։*

VIII

Յինն հարիւր Հայոց թվական 206
ընդ որ ԺԶ այլ յաւելան (ՋԺԶ 1467),
այն մեծ արքայն արևելեան
խաղաղարարըն Ջըհանշայն,
Յամէն գիմաց եհան հրաման,
որ զօրք բաղում ժողովեցան
և էջ նոքօք յԱսորեստան
առ ի յաղթել զՄիր Հասանն[1]։
Իսկ Հասան բէկ քաջ փահլաւանն
զօրօքն իւրով որ գումարան.
ի քուն եգիտ ըզՋըհանշայն
զօրացն ի զատ անպահապան.
Որ և սպան անդէն ըզայն
և զՄուհամատ որդի նորայն.[2]
Իսկ չար հեծեալքն որ յետ դարձան
առին[3] բաղում առ և թախթան[4]։
Հասան Ալին այն չար գազանն,
որ ի Մակու էր ի զընդան,[5]
ելեալ գնաց դէպ ի Ղափան
և կոտորեաց զհաղինայն.
Այնչափ երետ պարգևս մարդկան, 207
վասն այն բաղումք ժողովեցան[6],
քան զերկերիւրըն հազարեան,
այլ աւելի անդ գումարան[7]։
Իսկ ի գալ միւսն ամեան, (ՋԺէ 1468)
Աղգոյլուցիքըն[8] զօրացան,
ելին յաշխարհըն Հայաստան
մինչ յԵրասխայ յափըն հասան[9]։
Հասան Ալին հեզ յիմարն այն
մըտեալ նըստաւ ի կարճ մէջայն,
զոր զօրքն անդէն ապստամբրան
ւ ի թշնամիքն եկեալ խառնան[10]։
Հասան Ալեանքըն զարհուրան
ւ ի բանակէն ելեալ փախեան,
զոր և եկեալ սուլտան Հասանն,
Մնացեալքն անթիւ հնազանդեցան.

Նստեալ ի Թաղթըն Շահաստան
դաշխարհս էած իւրն ի հաւան.
երկիր բոլոր խաղաղացան
որպէս ի մօր գիրկըն տըղայն։
Հասան Ալին իւրքն ամենայն
փախեալ հասին ի Զաղաթայն,
զԽուսայիտն առեալ եկան[11]
և զքառասուն որդին լըման.
Ելեալ զօրօք գումարեցան,
վասըն կըռւոյ և բարկութեան,
Հասան Ալիքըն միարան
ի մէջ նոցա ալա դարձան։
Յերեկոյին յորժամ Հասան
որ և զամբարք նոցա լուցան,
ելեալ զիրեարըս խառնեցան
ոմանք սպանան· և այլք փախեան.
Իսկ Հասան բէկըն քաջ արքայն,
որ այսք վասն իւր ներգործեցան,
եկեալ բարուք խաղաղութեան
յաւար էառ զրանակ նոցայն։
Ըզխուսայիտն անդէն էսպան
և զայլս յորգոցն որք ըմբռնան,
զՀասան Ալին զանբաղդըն զայն
զորդին և զայլքըն զամենայն.
Հասան Ալին անդօլվաթն այն,
եկեղեցի շինեաց զՄակուայն,
որոյ անուն սուրբ Վարդան
և նա չեղև իւրն օգնական
կամօք վերինն հայրական։
Իսկ Աղղոյլուքըն քաջացան
և զԽարբելոն առեալ կալան,
մինչ յԱմուսան գնացեալ հասան,
որ և ըստոյդ է Խորասան[12],
Իսկ յանցանելն երրորդ ամեան (ՋԺԹ 1470)
որ և զԹաղթն ինքեանք կալան,
Հասան փատշահըն մեծ սուլտան
զօրս առաքեաց ի Քըրդաստան.
Մեծ զօրավարըն Սուլէյման[13]
զօրօք հասեալ գաղտագողեան,
քաջ պաշարեաց զնոսա այնքան,
որ մեծ զարմանք ըղմեղ կալան։
Իսկ ի յերկու ամսին լըրման
չէկած անդէն բէկ Սուլէյմանն,
քանզի Քըրդերըն զօրացան[14]
կորուսանել զնա կամեցան.

Զոր երկուցեալ ի յետ դարձան
ւ ի Վան քաղաք ձըմըռնեցան,
իսկ Քուրդն արար զդախիրայն՝
բաղում ընչից պատրաստութեան։
Դարձեալ ի գալ միուսն ամեան,
և Թվական Հայ զարմեան,
ինըն հարիւր էր և քսան (ՋԻ 1471)
կրկին նոքա անդէն դարձան.
Ի Մուշ գնաց Խալիլ[15] իշխանն,
և ի Բաղէշ քաջ Սուլէյմանն,
և Բայանդուռ Ղօչի միրզայն
կալաւ զբոլոր Խլաթայ Թումանն։
Երբ յաւելաւ կրկին Թվական(ՋԻԱ 1472)
Քըրդեր բերդին Կալահոքեան[16] 208
յաւուրս պահոց աղուհացեան,
որ էր Տաճկացն ըոմադան[17]
Եկեալ ի Մուշ չար խորհրդեամբ,
առ ի յաղթել զԽալիլ իշխանն
և զքրիստոնեայքըն զամենայն
տանջել չարեօք զանազանեան։
Իսկ Թադաւորըն Տարօնեան
և խնամատարն աղանց համայն
մեծ Կարապետըն բանին ձայն,
որ մկրտեաց զտէրն Յորդանան,
Եհար վանեաց զԲըիմաղայն
և զզօրս նորա զամենեսեան,
զի շատք ի ձիւնըն մըսեցան
ւ այլքըն սըրոյ ճարակ եղան։
Իսկ Բայանդուռ Ղօչ ամիրայն
նըզմեալ ըղբերդըն Խըլաթայն
երբ վեց ամիսըն լըմնեցան
էառ զԽըլաթ[18] և զԲըլիճան[19].
Պակեաց ըղբերդըն Խլաթայն
և զպահողքն ըղբերդին այն.
արար խւրեանըն զօրական
և ելեալ էջ ի Ջըզիրայն[20]։
Քանզի Քըրդերն երկրին Բուխտան[21]
ելեալ գնացին ի Ջըզիրայն.
զԹուրքերն որ անդ սպանին համայն.
ւ ինքեանք ըզբերդն առեալ նոտան։
ԶԲայանդուռի ձայնն երբ լըւան
նոքա կըռուու պատրաստեցան.
և երբ ըռազմն կազմեցան
նոքա վանեալ հարեալ լըքան։
Կէսքըն սըով սատակեցան
և կէսքն ի գետըն խեղդեցան.

Բայանդուռն առ զըՋըզըրայն
և եօԹն բերդն յերկրին Բուխտան։
Եկն ի գաւառն Բըղնունեան,
որ Արծկէ յորջորջի այն.
բերել ըղջուրըն Ծըոգետեան[22]
Պէշնագոմեր[23] գեղջին միայն։
Ի ԺԵ (15) յուլիս ամսեան
իհան ըղջուրըն Ջամըրղկեան[24]
յԳ (3) աւուրն յետոյ հատեան.
և սուրը Խաչին[25] կըկին ըրղխան։
Իսկ Հասան բէկ արի արքայն
զԹաղԹըն առեալ զՇիրազայն.
յորդին իւր Խալիլ սուլԹան[26]
պահել զկողմանս արևելեան։
Եւ դարձաւ ինքն յԱսորեստան
եկն ի գաւառըն Տարօնեան
զբերդըն քակեաց ի խոր հիման
Նըւէրս երետ վանաց Գլակայն։
Զօրս առաքեաց ի Հռոմաց տան
քաղաքըն մեծ Թողաթ հասան,
ոսկի, արծաթ եղև Թաղթան
կումաշն ամէն հրով կիզան[27]։
Իսկ փատշահն էջ ի Շամայ տանն.
Հալապ քաղաքըն շահաստան
քաղաքացիքըն չհնազանդեցան[28].....
ԶԲաղէշ զշինուածն Աղեքսանդրեան,
զոր պաշարեալ էր Սուլեյմանն
ամ մի և հինգ ամիս կեցան
որ ԻԲ (ՋԻԲ 1473) աջեաց Թվական[29]։
Քուրդն ետ ըղբերդն ի Թուրքմանն,
զի ի տեառնէ էր սաստ նոցայն.
Ռ (1000) հոգի ի բերդն ելան և ՋԾ(600) որք անդ նեխան.
ութ մարդ մնաց և ամիրայն[30]։

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Նկատի ունի Ուզուն Հասանին, նույն ինքը Հասան բեկ։

2. Խանդեմիրի տվյալներով Պետրուշևսկին ցույց է տալիս, որ Ջհանշահի Մուհամեդ որդուն Ուզուն Հասանը գերել է և ապա կախել (տես Сборник статей по истории Азербайджана. вып. I, Баку, 1942 г., стр. 168)։ Ժամանակագրական մի այլ վկայությամբ Ճապաղջրի ճակատամարտում սպանվել են Ջհանշահի երկու որդիները (տես ՄԺ, 1, էջ 168, տես վերևում, էջ 153)։

3. Բնագրում «Ն» տառն ավելացված է հետագայում, մատիտով։

4. Բնագրում «Թախթան», բառի դիմաց, լուսանցքում, միևնույն ձեռագրով, գրված է «Թալան»։

5. Հասան Ալին Ջհանշահի որդին էր և Նախիջևանի կուսակալը։ Նրա բանտարկության մասին հաղորդում են նաև Անանունը և Հակոբ Հիսուսին վերագրված ժամանակագրությունը (ՄԺ, 1, էջ 143, 194)։ Հասան Ալու բանտարկության հանգամանքները մեզ հայտնի չեն։ Սակայն, եթե նկատի ունենանք, որ 1458 թվին, երբ նրա հայրը՝ Ջհանշահն, զբաղված էր Խորասանի, Հերաթի նվաճումներով, նա Ադրբեջանում ապստամբություն բարձրացրեց հոր դեմ, և այն Ջհանշահի կողմից ճնշվեց 1459 թվին, ապա կարող ենք եզրակացնել, որ ապստամբության ճնշումից հետո Հասան Ալին հոր կողմից բանտարկվել է Մակու բերդում և այնտեղ մնացել մինչև հոր, Ջհանշահի սպանությունը։ Տես և հմմտ. Петрушевский „Гос-а Азербайджана в XV в." Сборник статей..." выпуск 1, стр. 167).

Կարծում ենք Հասան Ալու ապստամբությանն է վերաբերում 1459 թ. ընդօրինակված մի Ճաշոցի հիշատակարանի հետևյալ վկայությունը.

... «և դարձեալ ծանուցանեմք ձեզ դաւեր աշխարհիս մերոյ, որ վասն մեր մեղաց հաս[աւ] Մակու՝ և յաղդմանէ չարին և վասն ծուլացեալ մեղաց մերոց, արձակեցաւ ի յերկաթոյն և բաղում աւար արար քաղաքաց և զինչ բռնած կայր հօրն, աղատեաց՝ զՂլիճ Ասլանն, և զորդին իւր զԱրապշէն և զորդին նորա և ժողովեաց առ ինքն և արար իւր բաղում հեծելս. և յետոյ առաքեաց զՂլճ Ասլանն ի վերայ Վանայ բերդին, զի առցէ զնա և ոչ կարաց։ Եւ ապա խորհուրդ չար արար, վասն երկրիս մերոյ. և արար չար աւեր և թա[լ]ան] և գնաց ամօթով ի յետս և մնաց երկիրս աւերեալ. բայց մնաց փոքր ի շատէ երկիրն Գաւաշից ի դատարանք և մնաց ի խաղաղութեան Ախթամար... արեւութեամբ տէր Զաքարիա կաթողիկոսին» (ՄՏՄՑ, գործ № 23, էջ 89)։ Տե՛ս նաև Ղ. Փիրղալեմյան, Նոտարք Հայոց, էջ 193—195, հմմտ. նույն տեղ, էջ 190։

6. Ի. Պետրուշևսկին նշում է, որ Հասան Ալին ցանկանալով իր կողմը գրավել ադրբեջանական ժողովրդի լայն խավերին, Թավրիզում քաղաքային չքավորությանը և գյուղացիներին բաժանեց դրամական մեծ գումար. („Сборник статей по истории Азербайджана, вып. I, стр. 169)։ Բնագրում խոսքն այդ մասին է։

7. Ուրիշ աղբյուրներ Հասան Ալու զորքի թիվը նշում են 100,000 մարդ (տես վերևում, էջ 153, ՄԺ, 1, էջ 168)։

8. Իմա Ակ-Կոյունլուները։

9. Ուզուն Հասանի սույն նվաճումների մասին ժամանակակից գրիչը այսպես է տեղեկացնում. «...Եւ ի դանութեան Ջհանշի սկսեալ եղև գիրքս և սպանաւ նա ի ձեռաց Հասան բէկի և եկեալ տիրեաց երկրիս մեր և փախոյց զորդի Ջհանշին զՀասան Ալի. և մեր առեալ զգիրքս փախեաք տեղէ ի տեղ և յամենայն ժամ փախուստ և սառանումն գայր և հասանէր ի վերայ և մեր զամենայն արհամարհելով ի բաց ընկեցաք զայս ամենայն, զի մէկ

տարի և վեց ամիս նոյնպէս կայեաք ի վարանի ի գաւառիս Արարատեան ի գեղաքաղաքիս Եղիվարդայ, որ կայ առ ոտս յԱրարայ»...: № 4515, էջ 199:

10. Ուզուն Հասանի և Հասան Ալիի բանակները հանդիպեցին Մարանդում (հարավային Ադրբեջան), 1468 թ. հուլիսի վերջերին (տե՛ս ՄԺ, 1, էջ 143, 151, ծանոթ. 33, էջ 168), ուր Հասան Ալին պարտվեց, որից հետո նրա բանակի և Կարա-Կոյունլու ցեղերի նշանակալի մասն անցնում են Հասան-բեկի կողմը („Сборник статеи...“ выпуст I, ст. 169).

11. Խոսքը վերաբերում է Լենկ Թեմուրի թոռ և Ջհանշահի դաշնակից Աբու Սեյիդի արշավանքին, որը տեղի ունեցավ 1468 թ. երկրորդ կեսին: Այս դեպքերին հատուկ գլուխ է նվիրում Ի. Պետրուշևսկին „Гос-а Азербаиджана в XV в.“ „Сборник статей“ вып. I, էջ 169—171), աշխատության մեջ: Դեպքերի ժամանակակից Ամբրոսիոս Կոնտարինին ևս հիշում է («Ուղեգրություններ» հտ. Ա, 1932, Երևան, էջ 128), տե՛ս և համա. նաև ՄԺ, 1, էջ 168:

12. Սկզբում կռիվները Խորասանի համար գնացել են 1469 թ. փոփոխակի հաջողությամբ Շահռուհի սերնդից միրզա Մուհամմեդ Եդիգարի, որին օգնում էր Ուզուն Հասանը և Հուսեյին Բայկարի միջև: Այս կռիվներում Ուզուն Հասանն իր նպատակին չհասավ. նրա զորքը, ճիշտ է, գնաց Խորասան, միրզա Մուհամմեդ Եդիգարին օգնելու, որի հետևանքով վերջինս վերահաստատվեց Հերաթում, սակայն Ուզուն Հասանի զորքը վերադառնալուց հետո, Հուսեյինը կրկին հարձակվեց միրզա Մուհամմեդ Եդիգարի վրա, նրան պարտության մատնեց, գերեց և ապա սպանեց 1470 թ., մանրամասնությունները տես Ի. Պետրուշևսկի „Гос-а Азербайджана в XV в.“ (Сборник статей... вып. I, стр. 174).

13. Խոսքը վերաբերում է Ուզուն Հասանի զորավար Սուլեյման բեկ Բիժան օղլուն, որն Ակ-Կոյունլու տաղանդավոր զորավարներից էր:

14. Բնագրում սխալմամբ գրված է «դօրաղան» ձևով:

15. Ուզուն Հասանի անդրանիկ որդին:

16. Խոսքը վերաբերում է Բաղեշի մոտերքում գտնվող Գելհոգ գյուղին, որին կոչում են նաև Կալհոք, այս ձևից էլ առաջ է եկել բնագրի «Կալհոքեան» ձևը:

17. Բնագրում այս բառի դիմաց գրված է «ռամաղան»: Այդ դեպքերն ընկնում են 1472 թ. փետրվարի վերջերին:

18. Տե՛ս և համա. ՄԺ, 1, էջ 143:

19. Խոսքը, հավանաբար, վերաբերում է պատմական Տուրուբերանի, այժմյան Բուլանըխ գավառի ամենաբարձր Բլեջան լեռան, որը գտնվում է Խլաթից հյուսիս և Խաչլու լճից արևմուտք: Բլեջանը Բուլանըխ գավառը բաժանում է երկու մասի՝ վերին և ներքին: Բլեջանի արևելյան լանջին ընկած է Հայկաշենը, ոմանք այն նույնացնում են Խարաբաշահր գյուղի հետ: Այս մասին տե՛ս Բենսէի ուսումնասիրությունը «Բուլանըխ կամ Հարք գաւառ» (Ազգագրական Հանդէս, գիրք Ե, 1899 թ., էջ 9—184):

20. Ջեզիրե, քաղաք Միջագետքում, Տիգրիսի ափին:

21. Բոհտան-սու գետի ավազանի լեռները, որոնք ընկած են Անձևացեաց և Մոկաց գավառների մեջ, կոչվում են Բոհտան լեռներ: Վինչենցո դ'Ալեսանդրին, որ 1571 թ. անցել էր այս տեղերով, ժողովրդին կոչում է Ջինդի (chinedı) (Ուղեգրություններ», հտ. Ա, էջ 338), դրանով կարծում ենք, նա նկատի ուներ Բոհտան լեռների քրդերին:

22. Հեղինակը, հավանաբար, նկատի ունի Մուշից արևելք, Մեղրագետից մոտավորապես 5 կիլոմետր հարավ Ծղեռ գյուղը, որը մոտ Մեղրագետը թեքվում է հյուսիսարևմուտք, այդ պատճառով գյուղը կոչվում է Ծղեռ: Հեղինակը, «Ըղջուրն Ծըղեռան» անվամբ, կարծում ենք, նկատի ունի Մեղրագետը:

23. Այս գյուղը գտնվում է Արծկե գավառում: № 4882 Ճառընտիրի հիշատակարանում, որն ընդօրինակվել է 1491 թ. Արծկե քաղաքում, հիշում է, որ «...ետ զսա (Ճառընտիրը—Վ. Հ.) ընծայ և նըւէր ի գեաւղն իւր (ստացողն է տանուտեր պարոն Խալիֆան—Վ. Հ.) Պեշնադամերն, ի դուռն սրբոյն Գէորգայ...» (էջ 472ա):

24. Այս անվանը մոտ երկու գյուղի անուն գիտենք՝ մեկը Ամր կամ Ամպ անունով, Բաղեշից հարավ-արևմուտք, որը նշանավոր է մերձակա ժայռերից բխող սառնորակ ջրով, մյուսը Ջամրեղ անունով, Խոզաղ գյուղաքաղաքի շրջանում (Խարբերդից հյուսիս): Այս երկու գյուղն էլ, մասնավորապես վերջինը, հիշված վայրերից բավական հեռու են: Հավանաբար Արծկե գավառում գտնվել է Ջամբղիկ անունով մի գյուղ և հիշատակությունն էլ վերաբերում է դրան:

25. Այսինքն 1472 թ. սեպտեմբերի 13-ը։

26. Հմմ. Ամբրոսիոս Կոնտարինի («Ուղեգրություններ», հտ. Ա, էջ 229)։

27. Այս արշավանքը վերաբերում է 1473 թ. աշնանը Ուզուն Հասանի և Օսմանյան սուլթան Մուհամմեդ II-ի կռիվների առաջին շրջանին (հմմտ. Մժ, 1, էջ 168, Ջենո կատերինո «Ուղեգրություններ», հա. Ա, էջ 165), որի ժամանակ նրանք ավերում են Դերջանը, Երզնկան, Թոխատը և այլ վայրեր։

28. Ղ. Փիրղալեմյանի հաղորդմամբ 4-րդ տողը չկա, հավանաբար բնագրի ջնջված լինելու պատճառով։

29. Վերևում մենք տեսանք, որ Սուլեյման բեկ Բիժան օղլին Բաղեշը պաշարել էր 1471 թ.։ Եթե պաշարումը տևել է մի տարի և հինգ ամիս և ապա նոր գրավել այն, նշանակում է, պաշարումը սկսված պիտի լինի 1471 թ. աշնան վերջին կամ ձմռան սկզբին, իսկ գրավումը 1473 թ.։ Սակայն Բաղեշի պաշարման մասին հաղորդում է նաև 1474 թ. ընդօրինակված մի Ավետարանի հիշատակարանը, ըստ որի պաշարումը տևել է մինչև 1474 թ. «Յայսմ ամի յորում Հասան Բաղէշ խըսարեաց և զբաղումս ի Մարաց ազգէն կոտորեաց և հայոց ազգիս յոյժ ողորմած է. զի զերի ոչ առնէ...» (№ 216, էջ 205բ)։

30. Մովսես Արծկեցու չափածո տարեգրությունն ընդօրինակելուց հետո Ղ. Փիրղալեմյանը գրում է. «Ահա այսչափ միայն էին տարեգրութիւնք Մովսէս քահանայի Արծկեցւոյ, զոր խնամով ընդօրինակեցի յինքնաձեռագիր գանձարանէ նորին ի պէտս տարեգրութեան» (№ 4515, էջ 208)։

IX

# ՀՈՎՀԱՆՆԵՍ ԱՐՃԻՇԵՑՈՒ ՏԱՐԵԳՐՈՒԹՅՈՒՆԸ (XVI Դ.)

*Առաջարկվող բնագիրը տարեգրություն չէ բառի նեղ իմաստով, այլ մի քանի տարվա՝ 1531—1534 թթ. շրջանում թուրքերի և պարսիկների հերթական պատերազմների, ասպատակությունների, կոտորածների ու գերեվարումների, սովի ու տարաժամ մահվան, ավերի ու թալանի մի տխուր պատմություն։ Դեպքերը տեղի են ունեցել Վանա լճի շրջակա գավառներում։ Այդ ամենն ամփոփված է հեղինակի ինքնագիր հիշատակարանում։ Բնագրում հեղինակն իր մասին երկու անգամ հիշատակում է նկարագրվող դեպքերին ականատես. «Ես մեղաւոր Յօհաննէս,—գրում է նա,—զայս դառն օրս աչօքս իմ տեսերս»։ Այդ պատճառով էլ մեզ հետաքրքրող տեղեկությունները ականատեսի հավաստի և արժեքավոր վկայություններ են, որոնք հաստատվում են ժամանակակիցների կողմից։*

*Այս բնագիրն ինքնագիր օրինակից վերցնելով, առաջին անգամ հրատարակել է Գ. Աղանյանցը «Դիւան Հայոց պատմութեան» շարքում*[1]*։ Հրատարակիչը հեղինակի մասին գրած փոքրիկ ներածականում նշում է, որ Հովհ. Արճիշեցին «Աշակերտել էր նշանաւոր Թոմայ Մեծոփեցուն, որից և սովորել գրչութեան արհեստը»*[2]*։*

*Մեզ անհայտ է հրատարակչի աղբյուրը, բայց կարծում ենք, որ դա ճիշտ չէ, որովհետև Թովմա Մեծոփեցին, ինչպես հայտնի է, մահացել է 1446 թ.*[3]*, հետևապես Հովհ. Արճիշեցին վերջինիս մահվան տարում պետք է լիներ առնվազն 10—15 տարեկան, որպեսզի կարողանար աշակերտել նրան, այս դեպքում Հովհ. Արճիշեցու կյանքը 1534 թվին կանցներ հարյուր տարուց, մի բան, որ հազիվ թե հավանական լիներ*[4]*։*

*Հովհ. Արճիշեցու մի այլ, թեև փոքրիկ հիշատակարանը և խրատական*

---

*1 Գիրք Ժ, էջ 19—30։*

*2 Նույն տեղ, էջ ԻԸ։*

*3 Տես Ներքևում, Դավիթ Բաղիշեցու վկայությունը, էջ 353։ Տես և համա. Գ. Հովսեփյան, «Թ. Մեծոփեցու կյանքը և գործունեությունը», Վաղպատ, 1914։*

*4 Վերևում մեր ասածը հաստատում է Մատենադարանի № 4746 ձեռագրի հիշատակարանը, որը գրել է մի ուրիշ Հովհաննես, 1457 թ., Արճեշում «...Յիշեսջիք... այլև զիս զանարժան և զանպիտան գրիչս զՅովանէս անուամբ քահանայ և ոչ գործով, և զերախտավոր ուսուցիչն իմ զսուրբ վարդապետն Թումա մեծ րաբունին և զմարմնաւոր ծնաւղսն իմ՝ զհայրն իմ զՄանգասար և զմայրն իմ զՓաշամէլէք...» (էջ 446բ)։ Ինչպես տեսնում ենք, սա ուրիշ Հովհաննես Արճիշեցի է, տարբեր ծնողների սերունդ, որը եղել է Թ. Մեծոփեցու աշակերտը. հետևապես Գ. Աղանյանցի ասածը պարզ թյուրիմացություն է և չի վերաբերում մեր հեղինակին։*

մի ոտնաստեղծությունը (Բարոյականը) հրատարակված է դարձյալ «Դիվան»-ում։ Բարոյականի շարունակության մեջ, հիշատակարանում, հեղինակը գրում է, որ իր ծնողներն են մահտեսի Կարապետը և Փարիխանը[1], մինչդեռ հրատարակիչ Գ. Աղանյանցը նույն ներածականում գրում է. «Յովհաննէս քահանայի ծնողներն էին Յակոբ քահանան և Մալչուկ խաթունը»[2]։ Եթե սրանցից երկուսն էլ ճիշտ են, նշանակում է, գործ ունենք երկու տարբեր անձնավորությունների հետ, հետևապես Բարոյականը չի պատկանում մեզ հետաքրքրող բնագրի հեղինակին։ Ի դեպ նշենք, որ՝ հենց նույն ժամանակամիջոցում մեզ հայտնի են նաև ուրիշ Հովհաննես Արճիշեցիներ, որոնց ընդօրինակած ձեռագրերից գտնում ենք մեր Մատենադարանում. օրինակ՝ №№ 962, Մաշտոց, 1530 թ., 6881, Մաշտոց, 1531 թ. 6495, Գանձարան, 1490 թ. և այլն, հնարավոր է, որ սրանցից որևէ մեկը, եթե ոչ բոլորը, նույնանան մեր հեղինակի անձնավորության հետ։

Հրատարակության համար բնագիրը վերցրինք Գ. Աղանյանցի «Դիւան Հայոց պատմութեան» ժողովածուից (գիրք Ժ)։ Ծանոթագրություններում օգտագործել ենք դեպքերին ժամանակակից ուրիշ անձնավորությունների տեղեկությունները։

[1] «Դիւան Հայոց պատմութեան», գիրք Ժ, էջ 29։
[2] Նույն տեղ, էջ ԽԸ։

IX

Դարձեալ աղաչեմ զձեզ սուրբ քահանայք և աստուածասէր 19
ժողովուրդք ոչ ձանձրանայք կարդալով կամ լսելով զգանգատ և
զտապալումն աշխարհաց. եւ առաւել զսաստիկ պատուհասն՝ որ
ի Վան եղև և յիւր բոլորն, զի պարտ է մեզ գծողացս՝ սակաւ
մի ճառել զպակասումն ազգաց և զպատուհասն յանցանաց մե-
րոց. և ձեզ ընթեռնուլ և մեզ մեղաց թողութիւն խնդրել. և ձեզ
խաղաղութիւն հայցել ի բարերարէն, զոր մաղթեմք հանապազ
զմարդասէրն Աստուած, որ զխնդրուածս ձեր կատարէ և զայս
պատուհաս ձեզ տեսնուլ ոչ տայ ամէն։

Ի յայս ժամանակս՝ որ հայ թուական ՋՁ 1531 աշխարհաւեր
Ուլամէն ինքնագլուխ դարձաւ ի Թաւրէզ և շատ չարիք գոր-
ծեաց՝ ճանապարհորդ կոտորեաց և թալանեաց և բազում մեծու-
նեայք տուգանեաց, զի շահ Դահման ի Խորասան էր[1]. և ինքն էր 20
ըէկլարբէկի։ Երբ լսեց զգալ շահին փախուստ առաւ և ամրացաւ
ի դղեակն Վանայ. և ձեռք ձգեց ի փաթշահն Հռոմոց[2], թէ «Ես
քեզ հնազանդ եմ և դու ծառայ ղարուլ անես. շուտ հեծեալ ուղար-
կես որ զբերդս պահէ. և ես դամ ի քոյ ծառայութիւնդ»։ Զոր
լուեալ խոնդքարն յոյժ ուրախացաւ. և առաքեաց բազում ենգի-
չարի և շատ խալաթ Ուլամին. և իբրև հասան ի Վանայ դաշտն՝
ի դեօղն, որ ասի Արտամետ[3] ելեալ գոռոզաբար գնաց ի գէմ
հեծելյին և խալաթին. դարձոյց Աստուած զսիրտս իւր հեծելլին որ
ի բերդին. յիշեցին զաղ ու հացն շահին. և փակեցին զդուռն
բերդին ի դէմ Ուլամին. և նորին չար խորհուրդ խափանեցաւ,
զի այն էր միտքն՝ որ զէնգիչարիքն ի բերդն դնէր, և ինքն
գծովու բոլորս թալանէր, և դերի վարէր. և քաջութեամբ ի խոնդ-
քարն գնէր։ Երբ զայն տեսան զօրք Հռոմոց՝ որ ամէն բան || 21
Ուլամին սուտ եղև. առեալ զնա իբրև զչար դերի՝ և տարան ի
խոնդքարն. և նա սակաւ մի ընդունեաց. և զշահի բանն հարցաւ.
թէ «Ո՞նց գնանք ի վերայ նորա»։ Եւ նա չարախօսեց զամիր Շա-
րաֆն. թէ «Ամէն չարութիւն ի նմանէ է»։ Եւ նա տուեալ վաթ-
սուն հազար հեծեալ՝ որ եկեալ պաշարեաց զդղեակն Բաղիշու[4].
երբ իմացաւ ամիր Շարաֆն զբերդն ամրացոյց. թողեալ ի մէջն
զորդի Շխամիրն. և ինքն գնաց ի Թավրէզ մօտ ի շահն. և գան-
գատ արար յՈւլամիցն, և ելեալ շահն երթայր ի վերայ. Նա
լուեալ զգալն նորին փախեաւ ի Դիարբէկն. և շահն ի Խլաթայ
ի յետ դարձաւ. և դարձեալ շինեցաւ Բաղէշ, Մուշ և Խլաթ, զի լուան

զգալն Ուլամին և ամենեքեան ցրուեցան. և դարձեալ ժողովեցան. և էր Թուական ՋՁԱ 1532։

Եւ դարձեալ միւս ամին մահտաըաժամ եղև ի վերայ աշխարհի և բազում մարդիկ խոցեցան ի հրեշտակացն Աստուծոյ և մեռան. քանի հայր և մայր անորդի եղան և անդուստր և քանի քոյր առանց եղբայր և եղբայր առանց քոյր մնացին. քանի սիրուն հարսն ու փեսայ բաժանեցան. և քանի քոյր ու եղբայր ի մէկ գիշերի մեռան. և ով կարէ պատմել զաղէտ և զկսկիծն ծնողացն և զընտանեացն. սիրելեացն և զբարեկամացն. բայց Աստուծոյ միայն է գիտելի, որ ստեղծ զնոսա. և այս ամենայն եկն ի վերայ մեր վասն մեղաց մերոց։ Եւ յորժամ եղև այս պատուհասս՝ նա զայն աչօք տեսաք՝ որ ով ոք փախաւ՝ ապրեցաւ. ըստ բանի մարգարէին, որ հրամայէ, թէ փախիր և թաքիր առ ժամանակ մի մինչև անցցէ բարկութիւն տեառն. զի այս երեք ցասումս մի են. հեծելշարժութիւն, || սով և մահ. ի հեծեալէն 22ա
փախիս կուխալիսիս, ի սովուն գնաս ի լիութիւն ապրիս. ի մահուն փախիս ազատիս։ Ճշմարիտ է ի բնական մահուն մարդն փախչիլ ոչ կարէ. բայց մահտարաժամն պատուհաս է. ես մեղաւոր Յոհաննէս զայս դառն օրս աչոքս եմ տեսեր. և զայս կսկիծս քաշեր. զփախածն ճոխ ի շուռ եկեր. և զոչ փախածն ի հողն աճրոեր։

Եւ դարձեալ ի միւս ամին ՋՁԲ 1533 էր թիւն. առեալ Ուլամէն հեծեալ և եկեալ ի Խիզան. և գնացեալ ամիր Շարաֆն ի վերայ. և պատերազմեցան ի Տաճկոյ դաշտն[5], և ամիր Շարաֆն սպանաւ և հեծեալքն որն սպանաւ, և որն փախեաւ. և Ուլամէն զհետ մտեալ մինչ ի Խլաթ. և սկսաւ ի չարիս՝ շատ սպանեց և թալանեց և բազում գերիս վարեաց. ասելով «Դուք անցեալ տարի յինէ փախեայք և հետ Շարաֆին ի Ղզլպաշն գնացիք»։ Եւ էառ զառ և զաւար և նստեալ ի Թուխայ Ջուրն[6] զօրդուն ի տեղն եթող. և սուրայ հեծելով ի լղար արար ի վերայ Վանայ. և նոքա իմացեալ ամրացան ի բերդն. և գնացեալ զօրքն ի յԱմկոյ երկիրն[7] զԱլուր[8] գերի արարին շատ հայ ու տաճկով ի ձեռն անկաւ։ Եւ կամէր որ զԲերկրի ու զԱրճէշ գայր գերեցուցէր. և մեք լուեալ ահաբեկ եղաք. և փախեալ ի Ցերիձոր[9] և յԱլատաղն[10] սակաւ մի ամբացաք, զմահն մոռացաք և զկենդանիքն լայեաք, լալով և ողբով զԱստուած աղաչէաք. և ինքն Քրիստոս ազատեաց. յանկարծ լուաւ թէ ի Թավրիզոյ հեծեալ եկաւ. ելեալ Ուլամէն ի Վանայ և փախեաւ. զի Աստուած խնայեաց զքրիստոնեայքն. շահն ի Խորասան էր և անտէր էաք. և Քրիստոս իւր ժողովուրդն ազատեաց. և զՈւլամի չար խորհուրդն || խափանեաց և գնաց դարձեալ ի Թուխայ Ջուրն. և սակաւ մի գերի ազատեաց աղաչանօք 25
տանուտէրանց, և առ զառ և զաւար և գնաց քաջութեամբ ի Դիարբէկն. զի զամիր Շարաֆն առեալ էր և զխոնդքարի սիրտն ուրախացուցեալ. և այնչափ չարիք գործեաց, որ չեմ բաւական ճառել. զի շատք ի գերելոցն ի Ցալթուն քօփրուն[11] ի վայր վաթեցան[12] ի չարութենէ զօրացն. և ի պղծութենէ էնգիչարեացն. և այս ամենայն եկն ի վերայ մեր վասն մեղաց մերոց։ Եւ

դարձեալ ասէ գիրն, թէ մեղք մեր խնդիր գտան և բարկութիւն Աստուծոյ առ մեզ բերին. մեր մեղքն յուղարկեց զՈւլամէն, որ էառ զխոնդքարն ի միւս աարին և եբեր ի վերայ շահին բազում հեծելով և անթիւ արապով, թօփով և զարպազանգով և վաթսուն հազար թըւանգչով, զոր մարդ ոչ կարէ պատմել զնորին թագաւորութիւնն, թէ որպէ՞ս և կամ զիարդ ոսկին և արծաթ զոր մխսէին այնչափ էր, և գնացեալ առին զշահանիստ քաղաքն՝ որ է Թավրէզ, և սփռեալ տարածեաց զզօրսն իւր ի չորս կողմն. աւերեցին զբաղում քաղաքս աւարաւ և գերութեամբ։ Եւ լուեալ շահ Դահմանին զգալ խոնդքարին, և ելեալ ի Խորասանայ ի լղար, և եկեալ ի Դարդաղին[13]. և տեսեալ զբազմութիւն Հռոմոց հեծելին՝ զարմացաւ և ասաց, թէ «Զդոցա ոտքն ու ձեռքն կապեն մեք յամիս մի չեմք կարեր ի սուր քարշել. թող թէ կռուող, միայն թէ Աստուած բարկանայ և դոցա պատուհաս տայ»։ Եւ յայնմ գիշերին շատ անձրև եկաւ և սաստիկ ձիւն և ցուրտ եղև, և երեք հազար մարդ մեռաւ ի զօրաց խոնդքարին. և շահն կամք || ունէր, զի 24
յերեք դիմաց ի վերայ գայր։ Մահմադ սուլթան տասն հազար մարդով ի խոնդքարն գնաց և զթաճն ձգեց և շատք ի զօրաց շահին խօսք էին տուեր Ուլամին ի փախուստ գնաց դէպի Խորասան, և խոնդքարն ի յետ դարձաւ և գնաց ի Բաղդատ. և զՈւլամէն եթող ի Թավրէզ. շահն լուաւ զձայն Ուլամին շուտ ի վերայ դարձաւ. և նա լուաւ զգալ շահին փախաւ ի Թավրիզոյ և ամրացաւ ի Վանայ բերդն. և Մահմատ սուլթան ի Ցարծկէ փախուստ գնաց ի Թավրիզոյ. և լուեալ շահին ի Վան լինելն զաշխարհաւեր Ուլամին, շուտ ի վերայ հասաւ. և պաշարեաց զքաղաքն և զբերդն, և ի յուժ ձգել կարմիր գլխին, թողին ըզքաղաքն և ամրացան ի բերդն. և ի յառնուլ քաղաքին երեք հարիւր մարդ ի սուր քարշեցին, և ի յահէ կարմիր գլխին, աբեղայ մի և շատ մարդ ներքև յոտից մնացին և մեռան ի կտրած քարին, և ով կարէ ճառել զպատուհասն եղև. և սկսաւ քակել զքաղաքն և զերկիրն, զի զշէնսն քակէին և մինչև ի լոյս հազար տեղ կրակ վառէին և զճանապարհներն պահէին, որ մարդ ի բերդէն չիջանէր, և հեծեալքն ցուրեալ ի չորս դիմաց աւերեցին և անմարդաբնակ արարին. զՎանայ երկիրն, զՈստանայ և զԱմկուն, և զինչ մարդ որ ի ձեռքն անկանէր այնչափ տանջէին, որ զիւր տեղն և զգեղն ի խոստ գայր. և տարեալ ի յիւր շէն չարչարէին, մինչ որ ի խոստ գայր ապարանքն և զայլոցն, և սաստկացաւ պատուհասն, որև զհրաշալի վանօրայքն և զեկեղեցիքն քակեցին և բազում սուրբ նշաններ խաչ և աւետարան, շուրջառ և սուրբ գրեանք ի ձեռս անօրինաց մատնեցան. և անսուրբ ձեռօք || շօշափեցան և 25
գերեցան, յաշխարհէ յաշխարհ մոլորեցան վասն մեղաց մերոց, որ ասէ գիրն, թէ սկիզբն աւերման ի տանէ իմմէ արարից։ Եւ օր մի շաւաղաթ արար շահն, թէ «Բազամսքին թող իջնու, բան չեմ ասեր. իմ գլուխս և Ուլամէն դաստուր ետուր». և շատ ժողովուրդք իջան. և դաստուր երետ կարմիր գլուխն, թէ «Գնացէք ի Մահմտանք[14]». և Ամիրայ բէկին հրաման արար, «թէ մարդ դիր, որ տանեն ի քո յաշխարհն». և նա այնպէս արար. և միւս

առաւօտին այլ շատք իջին ի բերդէն, և տեսին երկու ենգիչարի հետ ըռխաթին աղքատի կերպիւ, զի ի Բաղդատ կուգնային. զայն իմացեալ շահին և զամենեսեան ճարակ արար սրի. և կոտորեաց յառջև բերդին, և անդ էր տեսանել զաղիողորմ ձայնս նոցին որ աղաղակէին դիմաց բերդին, և հառաչէին, թէ «Օգնեցէք մեզ և թափեցէք զմեզ յանօրէնին կարմիր գլխի սրէն»։ Եւ նոքա դառն լային և գոռային ի բարձր բերդին և օգնել ոչ կարէին, և նոքա լալով ի սուրն մաշէին, և չէր կար մեր բաւական պատմել զխիղճս նոցին, և այնքն, որ ի Մահմըտանք կուգնային, ի հասանել յոտն Վարագայ եղև սաստիկ ձիւն և բուք, և վեց հարիւր այր և կին, երիտասարդ և տղայ՝ մեռան ի սարին. և այնոքիկ որ յառաջն էին գնացեալ յօտար երկիր ամենեքեան եւս ցաւօք մեռանէին, և ի մէկ գեօղն ի Մահմըտանք ութսուն հոգի մեռան վանեցի, և ընականքն մէկ ոչ պակտսեցաւ, և քանի գնայր պատուհասն սաստկանայր. և սիրտ ընաւորին ի բարկութիւն շարժէր, զի պատուհասն յԱստուծոյ էր. ի յամէն օր տասն մեծ թօփ ձգէին ի բերդն և զարպազանդին և թւադին թիւ չկտյր, և ծովու բոլորս ի մեծ թօփի ձայնէն կուսասանէր, ապա բերդի մարդ ոնց կուդիմանայր, աւաղ, զիմ հոգւոյս, թէ քանի մարդ 26 մեռաւ որով և թրով, թօփով և թուանկով, սովով և ծարաւով, ահիւ և դողալով, ի սուրբ Սարդսի պահոցէն մինչև ի Համբարձումն[10] տասնուհինգ հազար մարդ մեռան ի բերդն ի քաղաքն և ի սարն. և շատ պատուհաս դրած կայ ի Հանկ Թամուրէն, և յայլ չար թագաւորաց, բայց քան զայս մարդ չէր լսեր. մենք զամէն աչօք տեսանք. և զկսկիծն քաշեցինք։ Պատուհասն այն էր, որ մեծատունք որ ի բերդին տուն կայր, որ քսան հոգի ի վերն ելան, մէկն ի վար չեկաւ, ամէն մեռան. ոչ հացն էր պակաս և ոչ ջուրն. և ամենայն բարիք առատ էր ի տներ, որ երկու տարի ուտէին, ոչ պարապէր, բայց պատուհաս էր որ պիտի կատարէր, փառք ներողութեան Աստուծոյ որ ստեղծ զնոսա. և մատնեաց ի ձեռս անօրինաց։ Եւ դարձեալ այլ պատուհաս, որ երբ ի բերդէն ի վայր իջան՝ վաղուց գնացած ճանապարհորդներ եկան ի քաղաքն և շատք մեռան։ Եւ լուաւ խոնդքարն ի Բաղդատայ ի Թավրէզ դիմեց. և ապա լսեց շահն և գնաց բերդէն ի յետ. և մնացեալքն ելեալ ի բերդէն նուաղեալ և նուազեալ. խոց սիրտ և լալոտ աչօք. որոց հայրն և մայրն մեռեալ և որոց դուստր և որդին ի սուրն քարշեալ և որոց տունն անցեալ և սիրտք սիրելեացն և բարեկամացն խոցոտեալ. և մարդ հողեղէն ոչ կարէ ճառել, կամ լեզուով պատմել. բայց աղաչեմ զամենեսեանդ, լիով Աստուած ողորմի ասել նոցա հոգւոյն. թէ յայս կեանքս նեղութեամբ և փորձութեամբ մեռան, նա ի Քրիստոսի յարդար || դատաստան պարզերես լինին. և օրհնեալ ձայնին արժանի եղէն որ ասէ եկայք օրհնեալք հօր իմոյ ժառանգեցէք զանսպառ ուրախութիւնն ամէն։ Մանաւանդ զստացող գրոցս զդարբին Շահալն 27 և զեղբայրն զԲրահիմն, և զծնողս նոցին զդարբին Թումէն և զՇամամն և զամենայն արեան մերձաւորքն՝ զկենդանիքն և զհանգուցեալքն ամէն։ Եւ զիս անարժան գծողս Յօհաննէս և զիմ հօր-

քուրն Ջինախփաշէն, զՋնձելենց հարսն, որ քսան ընտանեօք ի
բերդն ելաւ, մէկ ի վայր չեկաւ. տուն անցաւ, և շատ մուլք ու
մէրէթն անտէր մնաց. Աստուած ողորմի ասացէք առհասարակ
ամենեցուն. և ո՞վ կարդայ այս բաներս և լսէ, Քրիստոս ողորմի
ասէ, նա Յիսուս միածին զիւր մեղքն թողու. և զիւր ննջեցելոցն
ոչ յիշէ ամէն։ Եւ դարձեալ զմնացուած չարիքն, որ եղև ի յեր-
կուց թագաւորացն, շահն գնաց ի վերին աշխարհն և խոնդքարն
յետե, մինչև յաշուն ի շուռ եկին. շահն գնայր՝ ու խոնդքարն
յետևն, ոչ պատերազմեցան, և ոչ հաշտեցան, այլ խոնդքարն ի
հետ դարձաւ. և շահն զկնի մինչև ի Խոյ. Հոռմոց թագաւորն գնաց
ի Խլաթ, և Ուլամէն ի Վան ի ներս գնաց. մեծ փաշէն որ խոնդ-
քարն ուղարկեց թէ զՎանայ տիրէ, եկաւ տեսաւ աւերն կարմիր
գլխոյն, որ այլ զօրութիւն չէր թողեր թօփն ի բերդն. շուտով փա-
խաւ ի Գաւաշն[16] ի ներս և գնաց ի խոնդքարն, այն լալի ժո-
ղովուրդն Վանայ, որ զայս ամենայն չարիք տեսեալ էին, տեսին
որ հոռմեցիք թողին զբերդն ու փախեան, նոքա այլ փութով ելան
զկնի հեծելին և գնացին ի Նոկս դառն արտասուօք, զի զրկեցան
ի յընտանեաց որ ի բերդն մեռան և յապրանաց որ թալան գնաց
և դարձեալ լալոտ աչօք || ելան, որ յօտար երկիր վտարան։ Եւ 28
եկեալ շահն ի Վան, և տեսաւ զբերդն անմարդաբնակ և զքա-
ղաքն աւերեալ՝ խիստ ուրախացաւ ի բերդին անկռիւ առնուլն.
և դառն տրտմեցաւ ի վերայ աշխարհի աւերմանն. երդուաւ, թէ
«Յօրէս ի յետ Վանայ շաղաւաթ առնեմ. թէ զիմ որդին են սպա-
ներ՝ այլ բան չեմ ասեր, խուդէն վկայ»։ Ապա լսեց թէ խոնդքարն
զՈւլամէն երեք փաշայով ի յետ դարձոյց ի Վանայ բերդն, գի-
շերով ի լղար գնաց մինչև ի Կապուտկողն[17] Ուլամէն փախաւ.
զերեք փաշէն հեծելովն ջարդեց և դարձաւ ի Վան և եկեալ ի
Յարճէշ, տեսաւ զի Իբրահիմ փաշէն և Մահմադ սօլթան ի յետ
էին դարձեր. զԱրճիշու բերդի թուանդչիքն հաներ ու զժողովուրդն
սուրգուն արեր մինչև յԱրծկէ. և դարձեալ քրիստոնէութիւն արար
էն օրհնեալ փաշէն ու զամէն ազատ արար, որ եկին յաշխարհն
իւրեանց. և ինքն առաւ զխոնդքարն և գնաց ի Դիարբէկն։ Եւ
շահ Դահման առաւ զիւր եղբայրն և զՄանթաշայ սօլթան, որ ի
Յարճիշոյ կողմեր դէմ Հոռմոց թագաւորին գնաց զՄարուսուն[18]
թալանեց, զԽլաթ, զՄուշ, և դարձեալ ի Յօստան ի ներս գնաց ի
Թավրէզ. Եւ մնաց սահրատ ի ձեռն Հոռմոց զօրացն Բաղդատ,
Արծկէ և Աղթամար։ Աւաղ զիմ հոգիս հայրք և եղբայրք, թէ քանի
չարիք գործեցաւ ի յայս հեծեալ շարժութեանցս և ի վրդով-
մանցս, քանի քաղաք և գաւառ աւերեցան և քանի վանօրայք
և եկեղեցիք քակտեցան, քանի մեծատունք աղքատացան, և վա-
ճառականք թալանեցան, քանի քրիստոնեայք գերի վարեցան, և
անմեղ տղայքն ի յանօրէնքն խառնեցան և չեմ կարնար գրել չա-
րիքն, զոր || վերին աշխարհն քաշեց ես առաւել ծովու բոլորս. և 29
այս ամենայն եկն ի վերայ մեր վասն մեղաց մերոց։ Որ զաղօթքն
և զժամատեղն մոռացեալ ենք. և զամենայն բարեգործութիւնս || 30
միմեանց չար կամենանք և զամենայն չարիս գործենք, զգրոց բան
ատենք և զմեր կամքս կատարենք, հազար վայ մեղաւորիս։

# ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

*1. Մատենադարանի № 962 Մաշտոցում պահվել է գրիչ Հովհաննես Արճիշեցու (գուցե մեր հեղինակի) 1530 թվի հիշատակարանը, որտեղ հետաքրքիր տեղեկություններ կան այս դեպքերի մասին, բերում ենք հիշատակարանի մեզ հետաքրքրող մասը. «...Գրեցաւ սա ի թըւականիս հայոց ՋՀԹ (1530) ձեռամբ անիմաստ գրչի Յովհաննիսի ի քաղաքս որ կոչի Արճէշ... ի հայրապետութեան տեառն Զաքարիայի և ի թագաւորութեանն Դահման փաթշահին, որ յայսմ ամի գնացեալ է ի Խորասան ի վերայ Քոչպաշին և ի պարոնութեանս մերոյ Ղուլա (կարելի է կարդալ նաև Ղալա—Վ. Հ.) սօլթանին, որ նա այլ գնաց ի Խորասան ի պատերազմ և մընացինք անպարոն, զոր լուեալ Ղզլբըշան, թէ «Անտէր է վերին աշխարհն» և հկեալ ի Հոռմաց տանէն. և մեք լուեալ փախըստական եղաք և յաշխարհէ յաշխարհ շրջեցաք. ի Ցարծըկոյ մինչև ի Թավրէզ մեծ վրդովումն եղև Բ (2) ամիս: Եւ Ղզլբըշտն եկեալ ի Յօստան ի ներս, առաջնորդութեամբն Շարաֆ պարոնին, և գնացին ի Ցորմի. Շարաֆ բէկն ի յետ դարձաւ և Ղզլբըշան կացեալ քանիմ օր և խաղաղութիւն արար խաբէութեամբ և յանկարծ դիմեալ ի վերայ Որմու, Օշնու և դագայ արար և գրաւումս գերեցուց և մեք լուեալ ահարեկ եղաք և ապաւինեցաք ի վերին նախախնամութիւնն...» (էջ 382ա—382բ)։*

*2. Իմա՝ Օսմանյան Թուրքիան։*

*3. Նաև Արտամատ, այժմ գյուղ Վասպուրականի Վանտոսպ գավառի մեջ, Վանից հարավ-արևմուտք, լճափի մոտ։ Թ. Արծրունին, ավանդությամբ, նրա հիմնադրումը վերագրում է Արտաշես Ա-ին։ Արտամետի տեղագրության գեղեցիկ նկարագրությունը տե՛ս Թ. Արծրունի «Պատմութիւն տանն Արծրունեաց», Թիֆլիս, 1917 թ., էջ 97—99։*

*Վերջինս այն կոչում է քաղաք. «Իսկ զանուն քաղաքին կոչեցին Արտամատ, որ թարգմանեալ ստուգաբանի Արտաշէսի ձեռակերտ, կամ թէ՝ Արտաշէսի եկք, զի ըստ Պարսիկ ձայնի Մատ՝ Եկք թարգմանի...» (էջ 99, եթե ստույգ է այդ մեկնությունը, ապա «Մատ»-ը պետք է ուղղել «ամատ»՝ Արտ-ամատ)։ Մ. Խորենացին «Մարմէտ»-ը ևս մեկնում է այդպես՝ «մար ամատ, որ թարգմանի Մարս եկն» (II, ԽԶ, էջ 173)։ Համտ. նաև «Ամատունիք, որպէս թէ Եկք» (II, ԾԼ, էջ 187)։ Ավանի անունով այս շրջանը կոչել են նաև արտաշեսյան գավառ։*

*4. Մատենադարանի № 5665 շարականում գրիչ Առաքել աբեղան 1532 թ. հիշատակարանում այդ մասին գրում է. «...այլև գրեցաւ սա ի գաւառն Տարօնայ ի սուրբ ուխտն Յովաննու, որ Եղրթա ի վանք կոչի ի դառն և ի դաժան ժամանակի, որ երեկ Ուլամայ սուլթանն ի վերա Բաղիշու բերդին և խաբեաց և բաղում աւերք արար երկրի մերում և վասն ծովացեալ մեղաց մերոց դեռ յեբերման է երկիրս մեր. և զվերջն ոչ գիտեմ, թէ ինչ լինելոց է...» (էջ 201բ)։*

*5. Ըստ երևույթին պատմական Աղձնիքում։*

*6. Գետ, որի անունով Լլ գյուղը կոչվում է Թուղխ. վերջինս ընկած է Բաղեշից արևելք։ Թ. Արծրունին Սմբատ Ա-ի մասին գրում է. «Գնացեալ ընդ եզր ծովուն Բըզնունեաց, ընդ կողմն Ապահունեաց՝ և բանակեցաւ յափն գետոյն, որ իջանէ յԱղձնեաց խոխոմացն» (էջ 381)։ Նույն գլխի վերնագրում հեղինակն այսպես է գրում. «... և պարտութիւն Սմբատայ յԱհմատայ ի սահմանս Աղձնեաց ի վերայ գետոյն Թուխ կոչեցեալ, որ իջանէ ի ծովն Բզնունեաց» (էջ 380)։ Հովհ. Դրասխանակերտցին խոսելով նույն դեպքերի մասին, նշում է. «...հազիւ հասանէին (Սմբատ Ա-ի զորքը—Վ. Հ.) ի ջուր ինչ գեղջ մի Թուղխ անուն...» (էջ 175)։ Այս գյուղը և գետն այժմ կոչվում են Գյոզալդարա, պատմական Աղնվաձոր գավառում։*

7. Ամյուկ կամ Ամուկ, Վասպուրականի Առբերանի գավառում, Վանա արևմայան ծոփին, անառիկ հրվանդանի վրա, Լիմ կղզու դիմաց։ Թ. Արծրունին հիշում է բերդ. «Աշոտ գնացեալ տալ պատերազմ ընդ ծովեզրեցիսն, որք Ութմանիկ կոչին, որք ամրանային ի Ցամիւկ անկասկածելի քարանձաւին» (էջ 346)։ Թ. Մեծոփեցին ես բերդ է նշում (էջ 88), մի անդ էլ կոչելով Քար Ամկոյ (էջ 110)։

8. Ալյուր գյուղն Ա. Դավրիժեցին տեղադրում է Ամուկ գավառի մեջ (էջ 542), գտնվում է Վանա արևելյան լճափին, Մարմեաից հյուսիս, Կտուց կղզու դիմաց։ Ա. Դավրիժեցին նկարագրելով 1648 թվի ապրիլի 2-ի երկրաշարժի ավերածությունները Վանում և շրջակայքում, կործանված վանքերի թվում հիշում է նաև «Ալերու վանքն» (էջ 402), խոսքն արդյոք վերաբերում է Ալյուր գյուղի վանքերից մեկին։

9. Կարծում ենք հեղինակը նկատի ունի այժմյան Երիշատ գյուղը, պատմական Ջաբիշատը։

10. Իմա, Ծաղկաց լեռները, պատմական Ծաղկոտն գավառում։

11. Անծանոթ վայր։

12. Բնագրում այդպես, սակայն այդ բառի իմաստը՝ վատանալ, տկարանալ, նիհարել (տես Ստ. Մալխասյանց, Հայերեն բացատրական բառարան, Երևան, 1945, հա. 4, էջ 305) նշանակությամբ չի համապատասխանում նախադասության մաքին. հեղինակը երևի ուզում է ասել թափեցին։

13. Անծանոթ վայր։

14. Խոշաբ բերդաքաղաքի (Վանից հարավ-արևելք) և գավառի մի այլ անունը, որի մեջ մտնում էր պատմական Մարդաստան գավառը։

15. Այսինքն 1534 թ. հունվարի երկրորդ կեսից (սուրբ Սարգսի պասը կընկնի հունվարի 15-ից—21-ը) մինչև մայիսի 3-ը, Համբարձման տոնը։ Այս վկայությունները բառացի հաստատում են այլ ժամանակակիցներ. 1534 թ. Վանում ընդօրինակած մի Ճառընտիրի հիշատակարանում գրիչ Մարգարեն մանրամասն է խոսում (№ 4764, էջ 248բ—249բ, հրատ. տես, Ալիշան, «Հայապատում», էջ 501, նույնը տես, ՍՎՑ, Բ, էջ 1172—1174)։ Մեկ ուրիշը գրում է. «Դարձեալ ի ՋՁԳ (1534 թ.) թուին Հայոց եղև պատուհաս և բարկութիւն ի վերայ աշխարհիս մեր Վանայ վասն ծովացեալ մեղաց մերոց, որ եկն շահ Թահմազ փաթշահն ի յաւուր ձմերայնոյ ի տաւնի սուրբ Սարգսին մինչև ի Համբարձումն պաշարեաց և հսարեաց և շատ աւերս արար, փակեցին բազում եկեղեցիս և ապարանս մեծամեծս կործանեցին, աւար ածին զինչս և զստացուածս և անբնակ արարին զաշխարհս ի մարդկանէ և յըռզակէ։ Սպանին բազում քրիստոնեայս և զոմանս դերի վարեցին։ Ապա զբերդն ոչ կարացին առնել, բայց զչարիս զոր գործեցին, ոչ կարէ ոյք լեզուաւ ճառել կամ ընդ գրով արկանել։ Զի մեռան ի հսարն և ի յայլ տեղիս զանձինս ԺԵՌ (15000) և թողին մեզ սուգ անմխիթար և վէրք անողջանելի։ Եւ կամբք տխուր տառապանաւք ի վերայ երկրի և ոչ զաանեմք հանգիստ կենաց մերոց։ Եւ ապա ի սուրբ և յաստուածաբնակ ուխտս Վարագ մտին կատաղիքն և արեան ծարաւիքն, ժանտքն և թշնամիքն արդարութեան և յուզեալ քանդելով ուր կայր պահարան սրբութեան զգեստուց ղտեալ կողոպտեցին զամենայն գրեանս և զաւետարանս, բայց զսուրբ և զաստուածային բուրաստանս և զքաղցրավտակ աղբերս եդեմաբուղխ նառխս, զոր է մեկնեալ վարդապետին Սարգսի, տարեալ էին զսա յերկիրն Արարատեան ի քաղաքն Ցերևան։ Եւ ես Ստեփանոս վարդապետ Վարագեցի հետամուտ եղէ հանդերձ եղբարցս հոգևոր Ստեփաննոս Նորընծայ եպիսկոպոսիւ և տէր Յովհաննէս կրօնաւորիւ և Ներսէս փոքր աբեղայիւ։ Եւ հասեալ մտայք ի քաղաքն Ցերևան և տեսեալ զսուրբ գիրքս և ուրախացաք ոչ սակաւ։ Ապա բազում ջանիւ և աշխատանաւք և դեկանս Ռ. և ՆՃ (1500) ետուք և թափեցաք զսուրբ գիրքս և բերեալ ի ընիկ տեղս իւր ի Վարագ, զի ի Վարագայ էր տարած, և դարձեալ բերաք ի տեղիս իւր և եդայք ի դուռն սուրբ Նշանիս անջինջ յիշատակ ինձ և ծնողաց իմոց...» ՄՏՄՑ, գործ № 11, էջ 45)։ Տաշյանի ցուցակում բերված 1534 թ. մի Մաշտոցի հիշատակարանում ժամանակակից գրիչը վերոհիշյալ դեպքերը հաղորդում է ճնշված տրամադրությամբ. «Ի սոյն ամի, յորում էր թիւն Ջ և ՁԳ (1534) սոլթան Սուլէմանն եկաւ ի վերայ Կարմիր գդակին (Դըզըլպաշ) և նա ոչ կարաց զդէմ ունել՝ փախեաւ յարեւլս. իսկ նորա հետամուտ եղեալ և էառ զըազում քաղաքս, ընդ նմին և զՎան քաղաք, զամուրն շռայլին Շամիրամայ և գնաց մինչ ի Սո[լ]թանիա, դարձեալ ի յետ գնաց ի Բաղդատ, և զձմեռն անդ եկաց և Կարմիր գդակն գարձաւ ի վերա Վանա և Դ (4) ամիս խսարեաց, աւախ և վայ է գիս հազար բերան, թէ

որքան անձինս կորեան, հաւատացեալ և անհաւատ, զի կարծիս էր, թէ քան զԺԶՌ· (16000) անձինս մեռան, աւելի և ոչ պակաս (ՏՎՑ, էջ 434)։

16. Պատմական Ուշտունիքը։

17. Կապուտկող լեռ, կոչվել է նաև Ընձաքիսար, Ընձաքարս, գտնվում է Ուշտունիքում, Ընձաք գյուղի հյուսիսային մասում։ Լեռան հարավ-արևելյան լանջի վրա գըտնըվում է ս. Հակոբի վանքը։

18. Սարըսու, Արածանիի վտակներից, նաև գավառ, որը գտնվում է Արծկեից հյուսիս, Բատնոցի մոտերքում։ Բնագրում խոսքը վերջինիս մասին է։

X

## ՀՈՎՀԱՆԻՍԻԿ ԾԱՐԵՑՈՒ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ (XVI Դ.)

*Մեզ զբաղեցնող ժամանակագրությունը, որը խորագիր չունի, գտնվում է Մատենադարանի №№ 2776 (էջ 266ա—271ա), 8245 (էջ 93ա—95բ) ձեռագրերում։ Ժամանակագրությունն ընդգրկում է 1572 մինչև 1600 թվականների անցուդարձի, գլխավորապես Ադրբեջանում և Վրաստանում տեղի ունեցած դեպքերի նկարագրությունը։ Բնագրում գտնվում են հետաքրքիր և բավական մանրամասն տեղեկություններ թուրքական զորավար Մուստաֆա Լալա փաշայի 1578 թվի դեպի Անդրկովկաս կատարած արշավանքի, ասպատակությունների և պատերազմների, 1579 թվի մեծ սովի և մահտարաժամի, Օսմանյան Թուրքիայի դեմ* XVI *դարի 80 – 90-ական թվերին վրաց ժողովրդի ազատագրական հերոսական պայքարի և այլ հարցերի մասին, որոնց ոչ միայն ժամանակակից է եղել հեղինակը, այլև որոշ դեպքերի ականատես։ Այդ պատճառով էլ սույն բնագրի վկայությունները ուշագրավ են և գիտական արժեք ներկայացնող։*

*Նախքան այս բնագրի հայտնաբերվելը և առանձին հրատարակվելը, կորստից փրկելու նպատակով, այն, որպես ինքնուրույն գլուխ՝ «Պատմութիւն Աղուանից աշխարհին արարեալ Ծարեցի Յովհաննէս վարդապետին» խորագրով, տակավին* XVII *դարում Ա. Դավրիժեցին իր «Պատմութիւն» աշխատության մեջ էր դրել*[1]*։ Այնուհետև* XVII *դարի մի այլ մատենագիր՝ Զաքարիա Սարկավագը ժամանակագրության հեղինակին կոչում է Ծարեցի Յոհան վարդապետ*[2]*։ Հետևելով սրանց և մեջբերում կատարելով Ծարեցու բնագրից, Չամչյանը հեղինակին կոչում է Հովհաննես Ծարեցի*[3]*։ Բայց սրանցից և ոչ մեկը չի նշել, թե խոսքը որ Հովհաննեսին է վերաբերում, Ջհանշահի որդի Հովհաննես Ծարեցո՞ւն, թե Մելքոնի որդի Հովհաննես (նույն ինքն Հովհանիսիկ) Ծարեցուն, որոնք տարբեր անձնավորություններ են։*

*Մատենադարանի № 2776 ձեռագրից ժամանակագրությունն առաջին անգամ հրատարակեց Մ. Մսերյանը. «Յոհանիսիկ վարդապետի համառօտ պատմութիւն» խորագրով*[4]*։ Հրատարակության բնագրի վերջում, տողատակի ծանոթագրության մեջ, հրատարակիչն իրավացիորեն նշում է, որ այս բնագրի*

---

*[1] Վաղարշապատ, 1896, էջ 605—619։*

*[2] «Պատմագրութիւն», հտ. Ա, Վաղարշապատ, 1870, էջ 12։*

*[3] «Պատմութիւն Հայոց» հտ. Գ, էջ 529։*

*[4] «Ճռաքաղ», 1859, Գ և Դ, էջ 69—76, 105—112։ Ավելի ուշ, 1893 թվին Ա. Տեր-Միքելյանը, Ս. Օնեցու ժամանակագրության հրատարակության հավելվածում «Ճռաքաղ»-ից արտատպեց այս բնագիրը, էջ 185—199։*

հեղինակը ոչ թե Ջհանշահի որդի Հովհաննես Ծարեցին է, մահացած 1583 թվին, այլ վերջինիս աշակերտ, Մելքոնի որդի Հովհանիսիկ (նաև Հովհաննես) Ծարեցին[1]։ Թեև առկա էր այս պարզ ցուցումը, սակայն այդ չխանգարեց հայագետ Գ. Պատկանյանին «Հայ պատմագիրների երկասիրութեանց ցուցակ»-ում մեզ հետաքրքրող հեղինակին կոչել Օհան Ծարեցի, որը «գրեց իւր հայրենի Աղուանից աշխարհի համառօտ ժամանակագրութիւնը 1571—1600 թթ.։ Այս ժամանակագրութիւնը Ա. Դավրիժեցու պատմութեան 54-րդ գլուխը կազմելով՝ առանձին չտպագրուեցաւ»[2]։ Ալիշանը թեև տարբերում է Հովաննես և Հովանիսիկ Ծարեցիներին, բայց նա սխալմամբ ենթադրում է, թե ժամանակագրությունն սկզբում կազմել է Հովհաննես Ծարեցին, որի գործը հետագայում շարունակել է Հովհանիսիկ Ծարեցին[3], և, բացի այդ, իբր ժամանակագրությունը սկզբից թերի է[4]։

Ինչպես ներքևում ցույց կտանք, այդ կարծիքը ևս պարզ թյուրիմացություն է։ Որպեսզի պարզ լինի ժամանակագրության հեղինակի հարցը՝ այն կազմել է մեկ, թե՞ երկու անձնավորություն, այլև, ի՞նչ կապ գոյություն ունի Հովհաննես Ծարեցիների միջև, ապա թե Մատենադարանի № 2776 ձեռագրի ժամանակագրության բնագիրը արդյո՞ք Հովհանիսիկ Ծարեցու ինքնագիրն է, անհրաժեշտ է անդրադառնալ այդ հարցերի հետ աղերսվող նույն ձեռագրի, հետաքրքրությունից ոչ զուրկ, մի քանի հիշատակարաններին, որոնք գրված են տարբեր ձեռացագրերով, ասել է, թե տարբեր անձնավորությունների կողմից։ Ձեռագրի 32-րդ ա էջի հիշատակարանից իմանում ենք, որ Դավիթ երեցը, ինչպես ինքն է ասում, 1531 թվին «առի սուրբ գիրքս (Մխ. Գոշի Դատաստանագիրքը—Վ. Հ.) աստուածային [յ]իշատակ ինձ և ծնուղաց իմոց և հաւր իմոյ Ջա[հ]անշահին և մայր իմոյ Մուտամփաշային...»։ 32-րդ բ էջի մի այլ հիշատակարանում, տարբեր ձեռացագրով գրված է. «Արդ՝ ես Դաւիթ էրէցս տվի իմ սրտի կամաւս զսուրբ գիրքս (Մխ. Գոշի Դատաստանագիրքը—Վ. Հ.) Յոհանէս վարդապետին...»[5]։ Այս հիշատակարանի ձեռացագրով գրված մի ուրիշ հիշատակարան հանդիպում ենք նույն ձեռագրի 258-րդ ր էջի դատարկ մասում, հետևյալ բովանդակությամբ. «Ըղցոհանէսս Ծարեցի կարմիրս որ սեաւ ես խառնեցի յիշել խնդրեմ զիս ի բարին, յիշողքդ աոցյիք հազար զմէկին. ամէն»։ Այս երկու (32ր և 258ր էջերի) հիշատակարանների գրության միևնույն ձևը մեզ ենթադրել է տալիս, որ դրանք Հովհաննես Ծարեցու ինքնագիր հիշատակարաններն են։ Հետագայում այս ձեռագիրն անցնում է Հովհանիսիկ Ծարեցուն, որը 1600 թվին նորոգել է տալիս այն, ավելացնելով հետևյալը. «յիշատակ ինձ և կրկնակի ծնողացն իմոց Մելքոնին և Փիանդին...»[6]։ Եւ իրոք,

---

[1] «Ծոաքաղ», 1859, Դ, էջ 112—113։

[2] «Փորձ», 1880, № 1-ի հավելված, էջ 35։

[3] Հայապատում, Ա, էջ 129, Սիսական, էջ 71։

[4] Նույն տեղ, էջ 129։

[5] Ժամանակագրության նախորդող հիշատակարանում (տես ծանոթ. 1-ին) Հովհանիսիկ Ծարեցին հաստատում է ոչ միայն այս վկայությունը, այլև նշում նվիրատվության տարեթիվը. «...մեծ վարդապետն Յոհանէս ի ՋՁ (1531) թվին ստացեալ էր այս սուրբ գիրքս դատաստանաց...»․ և որովհետև Հովհաննես Ծարեցին էլ մահացել է 1583 թ., (տես ներքևում, էջ 250), նշանակում է վերջինս մահացել է խորը ծերության հասակում, ինչպես վկայում է նաև Հովհանիսիկ Ծարեցին «և յաւուրեալ լի յաւուրբք հանգեաւ...»։

[6] Տես ներքևում, ծանոթ. 1-ին։

ձեռագրի բազմաթիվ էջերում նկատելի են նորոգման հետքեր (թերթ 32, 35, 256, 259, 260 և այլն)։ Ժամանակագրությանը նախորդող հիշատակարանից երևում է, որ Հովհաննիսիկ Ծարեցին ձեռագիրը ոչ թե ինքն է նորոգել, այլ տվել է նորոգելու։ Միևնույն հիշատակարանում նույնիսկ պահվել է նորոգողի անունը. «Նորոգեցաւ սուրբ կտակս ձեռամբ Ցալեքսանոս կրօնաւորիս»։ Բուն ժամանակագրությունը կազմում է այդ վկայության շարունակությունը և երկուսն էլ գրված են միևնույն ձեռագրով. այդ հանգամանքը մեզ եզրակացնել է տալիս, որ № 2776 ձեռագիրը նորոգելուց հետո, նրա վերջին դատարկ էջերում Ալեքսանոս Կրոնավորն ընդօրինակել է ինչպես Սյունյաց եպիսկոպոսներ Հովհաննեսի, Ստեփաննոսի և այլոց նամակն ուղղված Կոստանդին Բ Կատուկեցի կաթողիկոսին, այնպես էլ Հովհաննիսիկ Ծարեցու կազմած ժամանակագրությունը։ Ի դեպ, նշենք, որ Ալեքսանոս Կրոնավորը նաև նորոգել է Սաղմոսի և Երգ երգոցի Վարդանի մեկնության ձեռագիրը (Մատենադարան № 1121)։ Այդ երևում է երկու ձեռագրերի նորոգման ենթարկված էջերի և ժամանակագրության բնագրի գրության ձևից։ Եվ որովհետև վերևում նշված՝ № 1121 ձեռագրի հիշատակարանը հետաքրքիր է, մասնավորապես Հովհաննիսիկ Ծարեցու կենսագրականի առընչությամբ, ուստի բերում ենք մեզ հետաքրքրող մասը. «Դարձեալ ի թուիս Հայոց ՌԼ և Է (1588) ես Յոհաննէս անպիտան թափառ և յետնեալս ամենայն բանաւորաց, ի սուրբ ուխտէն Թադէի վանք կոչեցեալ, ի յերկրէն Ծաքա, ի տանէն Սիսակայ, յաշակերտ մեծ րաբունապետին Ներսէսի Գնունեցոյն, որոյ յիշատակ նորին աւրհնութեամբ եղիցի։ Եւ ես տեսի զՍաղմոսի մեկնիչս և զԵրգ երգոցս հնացեալ բաղում ժամանակաց և յոլով թուխդ պակասեալ, յանարժան ձեռովք իմ ծրեցի նօտրիկս և նորոգեցի ի վայելումն յանձին իմոյ և յիշատակ ինձ և կրկնակի ծնօղացն իմոց՝ հօրն իմ Մելքոնին և մօրն իմ Փիանդին և եղբարցն և քւերցն իմ ամենայնի ես առաւել հօրեղբօրն իմս Յոհաննէս րաբունապետին*, որ բաղում աշխատանք ունի ի վերայ իմ և նորին յիշատակն աւրհնութեամբ եղիցի…»[1]։ Հովհաննիսիկ Ծարեցու այս հիշատակարանի ձեռագիրը տարբեր է վերևում նշված Ալեքսանոս Կրոնավորի ձեռագրից և կարծում ենք, որ այս հիշատակարանը ևս Հովհաննիսիկ Ծարեցու ինքնագիրն է։ Հետևապես վերջինս, այս հիշատակարանում թեև գրում է «…յանարժան ձեռովք իմ ծրեցի նօտրիկս և նորոգեցի», պետք է հասկանալ, որ նորոգումը ոչ թե անձամբ Հովհաննիսիկ Ծարեցին է կատարել, այլ մեկ ուրիշը՝ Ալեքսանոս Կրոնավորը, և որ այդ արվել է նրա ցուցումով կամ հսկողությամբ։ Նշանակում է, ժամանակագրությունը չի հանդիսանում Հովհաննիսիկ Ծարեցու ինքնագիրը։ Հենց դրանով պիտի բացատրել, թե ինչու ժամանակագրության բնագրում մի երկու բառ բաց է թողնված, որովհետև ընդօրինակության ժամանակ գրիչը, ըստ երևույթին, դրանք չի կարողացել կարդալ։

Արդյո՞ք ժամանակագրությունն ամբողջությամբ Հովհաննիսիկ Ծարեցին է կազմել։ Ժամանակագրության սկզբում հեղինակը գրում է. «Իսկ արդ ի ԲԺ (12)-ն յամի կենաց իմոյս նըւաստ Յոհանէսի, որ ծանեայ զիս… և ի մերս Հայոց թվականի ՌԻԱ (1572) էր…»։ Այստեղից եզրակացնում ենք, որ խոսքը վերաբերում է ոչ թե Հովհաննես Ծարեցուն, որը, ինչպես վե-

* Իրականում Հովհաննես Ծարեցին Հովհաննիսիկ Ծարեցու հոր հորեղբայրն է։

[1] № 1121, էջ 271ա և բ։

ըևում տեսանք, տակավին 1531 թ. իր եղբոր Դավիթ երեցից № 2776 ձեռագիրը նվեր էր ստացել այլ Հովհաննիսիկ Ծարեցուն. նշանակում է վերջինս ծնվել է 1560 թվին։ Հետևապես թյուրիմացություն է Ալիշանին այն կարծիքը, թե այս թվականը վերաբերում է Հովհաննես Ծարեցուն, և ապա, իբր վերջինս գրել է «1572 թուականէն սկսեալ իբր տասն տարուան պատմութիւն»[1]։

Այսպիսով, ամբողջ ժամանակագրության հեղինակը Հովհաննիսիկ Ծարեցին է։ Բայց ո՞վ է այս անձնավորությունը և արյունակցական ի՞նչ կապեր է ունեցել Հովհաննես Ծարեցու հետ։ Այդ ցույց տալու համար մեր ձեռքի տակ գտնված հիշատակարանների[2] հիման վրա կազմեցինք տոհմական հետևյալ ճյուղագրությունը.




Հովհաննիսիկ Ծարեցու մասին շատ բան չգիտենք. վերևում նշված հիշատակարաններից երևում է, որ նա եղել է Թադեի վանքի միաբան, աշակերտել է Ներսես Գնունեցուն և Հովհաննես Ծարեցուն, ստացել է վարդապետական աստիճան, զբաղվել ձեռագրեր նորոգելով։ Մատենադարանի № 2519 ձեռագրի մի հիշատակարանից երևում է, որ նա ձեռագրեր է ընդօրինակել տվել և հավաքել[3]։ Սյունյաց Սոթ գավառի Աղքիլիսա գյուղի ս. Աստվածածնի եկեղեցու՝ հարավային պատի վրա գրված արձանագրության համաձայն[4] այն կառուցել է Հովհաննիսիկ Ծարեցին[5]։ Թե ե՞րբ է մահացել վերջինս, հաստատ չգիտենք, սակայն 1621 թվի մի կալվածագրում գտնվում է մի կնիք, որտեղ գրված է. «Յովհաննէս վարդապետ Ծայրեցի»[6]։ Եթե այստեղ նկատի չի առնվում մեկ ուրիշ Հովհաննես Ծարեցու, նշանա-

---

[1] Հայապատում, Ա, էջ 129։

[2] Տե՛ս վերևում և ծանոթ. I-ում նշվածները։

[3] Հիշատակարանում կարդում ենք. «Զվերջին ստացող քաղուածոյ աւետարանին Ղուկասու Ծայրեցի Յոհանէս վարդապետս յիշատակ հոգոյ իմոյ և կրկնակի ծնողացն իմոց և բազմերախտ ուսուցչին իմոյ Յոհաննէս մեծ բաբունապետին...», (էջ 3բ)։

[4] Մ. Սմբատյանց, «Տեղագիր Գեղարքունի», Վաղարշապատ, 1895, էջ 628։

[5] Տես և հմմտ. Կարապետ եպիսկոպոս «Նիւթեր հայ մելիքութեան մասին», Բ պրակ, Էջմիածին, 1914, էջ 82։

[6] Ց. Ց. Թօփճեան, Ցուցակ ժողովածուաց Գադեան Խաչիկ վարդապետի, մասն Բ, էջ 24։

վում է՝ նախ, այդ կնիքը Հովհաննիսիկ Ծարեցունն է, երկրորդ՝ վերջինս կենդանի էր տակավին 1621 թվին։

Բնագրին վերաբերող մի շարք պարզաբանումներ կտանք ծանոթագրություններում։

Հրատարակության համար հիմք ընդունեցինք № 2776 ձեռագրի տարբերակը, որտեղ ժամանակագրությունն ընդհանուր առմամբ լավ է պահպանված, քան № 8245 ձեռագրում, որն ընդօրինակվել է 1847 թ. Թբիլիսիում։ Վերջին տարբերակի տարընթերցվածները, թեև էական չեն, այնուամենայնիվ, նշեցինք տողատակ։

# X

Արդ՝ զնեղութիւն[1] և զդառնութիւն վշտաշատ ժամանակիս 266 բ ով կարէ ընդ գրով արկանել, ով եղբարք, բայց փոքր ի շատէ ողբալով ասասցուք։ Քանզի յաղագս ծովացեալ մեղաց իմոց յազգն մահմետականաց, որ ըմբռնեալ էին զդաւառս Հայոց, աւերելով և դերելով զամենայն շէնս և զանշէնս[2], և տիրեալ բնակէին ընդ ամենայն տեղիս, քանզի անչափ և այնքան խիստ էր լուծ հարկի նոցա, մինչ զի բազումք զրկեալք ի ստացուածոց և ի հայրենի ժառանգութեանց և դեռ ևս ոչ կարէին զերծանել, այլ և ոչ գոյր փախըստեան ճարակ և թաքըստեան[3] տեղիք, այլ ամենայն մարդ ի տարակուսանս կայր և երանի տային մեռելոցն և ոչ այս կենդանեացս. քանզի ոչ եթէ սակաւ ժամանակ էր բռնութիւն սոցա ի վերայ դաւառաց, այլ բազում և յերկար յամօք. քանզի որդիք հարցն, որ անկեալ էին ընդ լծով ծառայութեան նոցա, ծնան և նոքա որդիք և որդոց յորդիս, մինչ ի բազում յազգս, որ ոչ թվէ և ոչ ևս մխիթարութիւն յազգիս Հայկածին, այլ դեռ ևս կամք գլխակորեալք ի ներքոյ չար ծառայութեան նոցա և ի հայրենի գաւառացն արտաքսեալ, ցիր և ցան եղեալ ընդ ոլորտս տիեզերաց և իշխանազինք և ազատածինք, ծառայք լեալ ազգին մահմետականի։ Այլ և եկեղեցիք կոխան եղև այլազգեաց. զորս քակեալ և զքարինս տանէին ի շինութիւն բերդից, և զորս շէն մնացեալ էր ինքեանք պղծագործութեամբ և երիվարք և ջորիք իւրեանց պարէին ի նոսայ։ Եւ մեք գլուխ ի կոր և բազում տարակուսանօք լցեալ, վասն այսպիսի աղետալի կսկծանացս և ոչ ուստէք երևի հնար օգնականութեան։ Եւ այս յառաջնոցն էր դրեալ[4]։

Իսկ արդ[5] ի ԲԺ (12)-ն յամի կենաց իմոյս՝ նըւաստ Յոհանէսի, որ ծանեայ զիս, վայ ինձ, զի զպատուիրանաւն յԱստուծոյ ոչ գնացի, և ի մերս Հայոց թվականի ՌԻԱ (1572) էր, ոմն թագաւոր յԱտրպատականի, ի յայլազգաց Դահման անուն շահ կոչեցեալ, ի Կարմրագլխաց, յոյժ խաղաղասէր և անյագահ, մինչ ասիւր ի ծերագունից, թէ ԵԺ (15)-ն յամի հարկն ոչ է առեալ ի յերկրէ իւրմէ։ Այլ և զպաջ[6] վաճառականաց և զմաքս, զոր վասն իւր ի գանձի իւրում ժողովեալ լինէր եբարձ աշխարհէ տէրու-

3 աղղն։ 9 փախստեան, ճարակ և թաքըստեան չիք։ 14 որդւոց։ 15 թուի, հարկածին փխ. Հայկածին։ 19 մահմէզականի։ 28 ոչ գնացի չիք, թուականի։ 31 հնգետասան ամի։ 32 զքաջ փխ. զպաջ։ 33 յաշխարհէ։

թեանն իւրոյ։ Այլև կանայք լկտիք, որք ի քաղաքի նստէին և հրապարակայայտ զբաղումս խոտոռեցուցանէին և հարկ տային յարքունիս և դանասելի յօճրագործութիւնք Սոդոմական յախտից բնաւորեալ ի Պարսիկքն, զայն ամենայն վճիռ հրամանաւ խափանեաց և ուրէք թէ երեէր չարաչար տանջանօք սպաննել հրամայէր։

Եւ ի թվիս ՌԻԴ (1575) մեռաւ ասացեալ շահն թագաւորեալ յամս ԾԱ (51)։ Եւ յոմն ի որդոց նորայ Իսմայէլ անուն, զոր յառաջագոյն ի հօրէ իւրմէ յարգելեալ կայր ի կլայ, վասն իրաց ինչ յանդգնութեան[7], և այժմ ելեալ թագաւորեցաւ ի տեղի հօր իւրոյ և սուր ի գործ արկեալ սպան զեղբարս իւր հարազատ թվով Է (7). և սկսեալ զնախարարս զօրաց իւրոց սպանանել՝ զոմն յայտնի և զոմն ի գաղտնի, մինչ դրէ թէ սպառել ջանայր զամենայն յադդն Պարսից։ Եւ զայս ծանուցեալ տիրատեաց Պարսիցն, թէ հասեալ է կորուստ յանձանց իւրեանց, ոմն Ցամիրխան յանուն յիշխան Թավրիզոյ և Մահմետ || ոմն, իշխան Սհաթին՝ Ցարարադեան[8] գաւառի, մականուամբ Թօխմախ կոչեցեալ 207ա
և այլք ոմանք, որ ոչ դիտեմ հաւաստեաւ զանուանս նոցա, միաբանեալ ընդ յարրանեկաց Ցիսմայէլին և սպանին զնայ ի գաղտնի, ոչ դիտելով զօրաց նորա զմահ Իսմայելին և ի դիվան դատաստանի ոչ նստելն, ասացեալ լինէր յոմանց, թէ լրտեսութիւն գնացեալ է այլոց թագաւորաց վիճակ և դառնալոց է. մինչև ի յամ մի, զայս կարծեցեալ լինէր։ Եւ յետոյ ստուգիւ իմացեալ յամենեցուն զկորուստ նորին, և դարձեալ յամենեքեան միաբանեալ գնացին ի Խորասան, և բերին զոմն Խուտարանդայ կոչեցեալ շեխ գոլով, եղբայր Ցիսմայէլին, և որդի նոյն Դահմազ շահին, կարդեալ ի հաւրէն իւրմէ տէր աշխարհին Խորասանայ[9], զնայ թագաւորեցուցին ի տեղի Իսմայելին։ Բայց անյարի և վատթար ի գործս թագաւորութեան և պակասեալ ի լուսոյ աչս։ Ի սորայ Բ (2) ամի իշխանութեանն, թագաւորն Բիւզանդիոյ, յազգաւ Ցաւթմանի, Մուրատ յանուն[10], որ և խոնդկեար ասի, հրաման եհան զօրաց իւրոց գալ ի վերայ աշխարհիս Կարմրագլխոյն։ Եւ ելեալ ոմն զօրագլուխ Լալայ կոչեցեալ, բազում զօրօք եկն և եհաս ի յերկիրն Ցարարադեան, և գերեաց ընդ հայ և ընդ տաճիկ[11] թվով ԿՌ (60000) և տարեալ խաղացոյց ի յերկիրն Հոռոմոց[12]։ Եւ ի միւս ամին դարձեալ շարժեալ խաղաց ի վերայ Վրաց և հասեալ ի Փայտակարան քաղաք, որ է Տփխիս, և շինեաց բերդս ի նմայ, և յամրացոյց անդ յարս բազումս պատեբազմողաց։ Եւ զոմն Բագրատունի թագաւոր Վրաց, Սիմոն[13] կոչեցեալ, որ երբեմն վասն անհնազանդութեան ըմբռնեալ էր ի յառաջ ասացեալ Դահմազ շահէն[14], և տկարացեալ ի հաւատոցն և կայր առ նա ընդ ձեռամբ։ Իսկ ի թագաւորելն Իսմայէլին

---

1 ի չիէ։ 5 սպանանել։ 7 Թուոխ։ 8 ոմն, յորգւոց։ 9 յարգէյեալ։ 12 Թուով։ 13 ի չիէ։ 16 անուն, Թաւրիզոյ, Մահմէտ։ 17 Ցարաբատեանն։ 18 որք։ 19 զնա։ 20 Իսմայէլին, դիւան։ 22 մինչ։ 25 Խուդարանդայ։ 27 հօրէն։ 28 զնա, Իսմայէլին։ 29 լուսոյ։ 31 Ցօթմանի։ 34 Ցարաբատեան։ 35 Թուով։ 38 նմա։

շնորհեաց զհայրենի իշխանութիւնն և զտեղիքն Սիմոնին, գնալ իշխել իւրոցն և մնալ յօրինօքն Մահմետի։ Եւ նա գնացեալ ի տեղի իւր ի Տփխիս, յանդիմանեալ եղև յառաջնորդաց և քահանայից իւրոց, մանաւանդ ի կնոջէն և ի յընդանեացն իւրմէ, յուրացող և յաղերախտ կոչելով զնա, և ոչ հաղորդելով ընդ նմա։ Ի յայսմանէ սարջացեալ նորա զղջացաւ զտաճկութիւնն, և դաւանեաց վերըստին զխաչն Քրիստոսի յերկըրպագելի. և զխաչելեալն Քրիստոս, յԱստուած ամենայնի։ Եւ լուր եղև համբաւս այս առ Պարսիկքն։ Եւ զի մեռեալ էր Իսմայէլն, և այլքն ոչ ինչ կարելով առնել նմայ շնորհուկս եղեն նմայ կալ ի քրիստոնէութեան, գոնէ միայն հաւատարմութիւն և մտերմութիւն արասցէ ընդ տունս շահին։

Եւ այժմ Լալայն փախոյց զՍիմոնն այն, և շինեաց ի յերկիրն նորա բազում բերդս, զոր ոչ գիտեմ զյոճն գրել, վասն անտես լինելոյն մեր ի տեղեացն։ Սակայն լւաք, թէ զՏփխիս, զՏումանիս, զԳօրի և զԼօռէ, և այլ տեղիք շինեաց բերդս և եթող ի նմայ զօրս, և ինքն յանցեալ ի Ցալանս գնաց, ի դուռն Երկաթի[16], և շինեաց անդ եւս բերդ և ասի Դամուր ղափ. և եդ զօրս ի նմայ բազում և զօրագլուխ յոմն Յօսման յանուն[16], յոյժ հնալաւոր և անողորմ. և ինքն դարձաւ առ թագաւորն իւր և սատակեցաւ ի նմանէ ի խօսս քսուաց, բայց վրէժխնդրութիւնն Աստուծոյ ոչ ետ նմա կեալ վասն արեանց յանմեղաց։

Իսկ ի թվականիս ՌԻԸ (1579) եղև սաստիկ և մեծ տարաժամ մահ ի Ցատրպատական և ամենայն Ցաղուանս և կոտորէր զբազումս ի յամենայն ազգեաց, մինչ բազում տունք անտէրունջք և բազում հայրք և մայրք անզաւակ մնացին։ Եւ երկիրս Ցաղւանից ի մէջ այսպիսի վտանկի գոլով, զմեռեալսն սգալով, և զկենդանի զանկեալսն և զինքեանք եւս հոգալով մտածմամբ ասէին՝ ո՞հ թէ զերծանիմք ի տարաժամ մահուանէս, թէ ոչ։

Ի այս յեղակարծ ժամուս յանկարծակի եկն եհաս վիրագն և զօր մահուն մոռացեալ || 267 բ Յօմանն այն, զոր յառաջագոյն ձեռն յարձակեալ առ Թաթարսն, որ Ղայթաղ ասի, և ամենայն Կովկասային լեռնական Լակզիքն ժողովեալ առ ինքն ի Դամուր ղափ, բազում և անթիւ յարեանարբու հեծելօք, և նոքօք եւ և եկն այս կոյս Կուր գետոյն, և զիշխանն Գանձայոյ և Պարտաւոյ փախըստական արարին։ Եւ ինքեանք սփռեալ ընդ դաշտս և ընդ լերինս՝ զԳանձայ և զԲարտայ, զՋարաբերդ և զԽաչէնք, զՎարանդայ և զԻիզակ ի Զարեքի կոչեցեալ գետոյն մինչև ի գետն Ցերասխ ի միում աւուր յաւարի հարեալ գերեցին և զանհաճոյսն սրով սպանին և զկնի Դ (4) և Ե (5) աւուրց դարձան ի տեղի իւրեանց[17]։

Դարձեալ[18] ի սոյն յամբ ընդ երկուց պատժոցս՝ մահուն և սրոյն, եղև ահագին և անասելի սով սաստիկ, այնքան մինչ մար-

2 Մահմէտի։ 4 յընտանեացն։ 5 ուրացող, աղերախտ, զնա։ 7 վերստին։ 14 զյոճ։ 15 լուաք։ 16 զՏումանիս, զԳորի։ 17 անցեալ։ 19 ոճն։ 23 թուականիս։ 24 կոտորեր։ 25 ազգացս։ 26 յերկիրս։ 27 Ցաղուանից։ 35 փախստական։ 37 զԳանջայ, զՋարաբերդ։ 38 Զարէքի, Երասխ։ 42 մարդիկ։

դիք գազանապէս անկան ի հմայկերութիւն, վասն յորր մնալոյն, ի մահոյն և վասն անինչք և անյարկ շրջելոյն ի գերչացն։ Քանզի ամենայն գաւառք Հայոց, որ ընդ իշխանութեամբ Կարմրագըլխոյն կայր, քակեալ աւերեցաւ։ Եւ թէ ուրէք յանկեան մնացեալ լինէր շինութիւն դետեղէին տնանկք և մերկք, այրք և կանայք, ծերք և երիտասարդք, տղայք և յաղջկունք և առանց յօթևանի, արտասուալից դիմօք շրջէին ի դրունս յօտարաց և ի յերթս այլոց, առ ի խնդրել զկերակուր յանձանց իւրեանց և ի ոչ բաւելն կերակրոց յուժ՛ղքն ի նոցանէ մտանէին գաղտ ի փարախ խաշանց և ի դոմս յարջառոց և ի յոչ կարելն զենուլ զմեծամեծ յանասնոցն առ ի ոչ ունելոյ սուր ինքեանց և յուժ անձանց ըմբըռնէին յորթս ղիեցիկ և գառինս մատաղ և յուլունս և պատառէին զկող նոցա և հանեալ զսիրտ և զփորոտիք նոցա ուտէին հում. և ելեալ գաղտ գնային, և ոչ ոք կարծիս ունելով զայս ի նոցանէ լինել, մինչ տեսեալ յոմանց զնոսա յայնպիսի գործ և հաւաստեալ դիտացին զայս։ Իսկ անզօրքն ի նոցանէ ի կույտս յաղբից անասնոց և ձիոց յորոնեալ գտանէին հատս գարոյ և ուտէին. այլ և ոչ գիտելով սրբոյ և անսրբոյ ի հերուն հետէ և ի վաղ ժամանակէ ի փողոցի յանկեալ ոսկերք մեր առեալ ի քարի եդեալ և քարիւ փոշի առնէին և ի բերանն իւրեանց արկանէին և մռընչէին. այլ և հնացեալ փոկ կաշէ և մաշեալ աբրեխ, ի բեկտոր ինչ խեցոյ ի յեփոցի եդեալ և առեալ ուտէին։ Վայ տեսողութեանս եղբարք։ Եւ իբրև եղև գարունն սփռեցան յաղքատքն ի յերեսս դաշտաց, սևացեալ մարմնով, որպէս զերամակս յայծեաց և իբրև զշոլորիրս հօտից, ուտելով զբանջարս վայրի և զխոտս կանաչ և ոչ յագենային, քանզի կոչեցեալ էր յերկիր սով և զօրութիւն հացի բեկեալ ըստ մարգարէին։ Մանաւանդ յուռուցեալ ի գլխոցն մեռանէին յոմանք ի տեղի յարօտիցն[19], որ ոչ կարէին դառնալ և յոմանք եկեալ ի գեղամիջի, ի տակս յորմոց և ի յանկիւնս տանց աւերուածոց մեռանէին։ Եւ թէ լինէր ոք երկիւղած յԱստուծոյ, առեալ ի դիակացն Թ (9) և Ժ (10) և այլ յաւելի ի վիհ ինչ կամ ի հոր արկեալ հողն ի վերայ փլուցեալ ծածկէր և թէ ոչ մնայր անթաղ։ Եւ լուր լինէր.բազմաց թէ այս յանուն տանուտէր կամ մեծատան որդի մեռեալ և դի նորա անւանիկ այս նիշ տեղի է. և լուեալ բազումք ի սիրելեաց և ի ծանօթից նորա, և եղուկ և վայ կարդային յանձանց իւրեանց. ևս և զթաղիլն ի վաղն ձգէին և վաղուէն ի միւս վաղն վասն բազում ձանձրութեանցն. և դարձեալ լսէին ի յոմանց, թէ դին այն պատառեալ ի գազանաց ցրուեցան ոսկերք նորա. և զայս լուեալ անհոդ լինէին և այսպէս մնայր անթաղ։ Եղուկ թշուառականիս և պատմութեանս, եղբարք[20] || 268ա ։ Քանզի բազումք ի պիղծ մսէ, զագիր շանց և կատուաց կամաւ յագեալ եղեն և մարմնոց մարդկան ևս. քանզի ի սահմանս յԱմարասայ, յերկիրն Վարանդոյ և Դի-

1 հմակերութիւն։ 6 աղջկունք։ 8 և չիք։ 11—12 ընռնէին։ 12 դիեցիք։ 14 գնային։ 16 կուտս։ 17 գարւոյ։ 21 մռնչէին, տրեխք։ 23 յաղկատքն։ 24 ի չիք։ 25 զշոլիւս 32 փլուցեալ։ 37 վաղուէն։ 40 թշուառականիս։ 42 կատուաց։

ղակայ դեղի միում,ումեմն մեծատան միամաւր որդի մի դոլով եաւթն յամեայ, և կանայք այրիք մերձակա գեղաւրէից ժողովեալ բնակելով մերձ մեծատանն, կերակրելով ըստ պատահմանն ի մեծատանէն, յաւուր միում պատրանօք զաղայն ի տուն իւրեանց կոչելով կանւացն և սպանեալ, զմի յոտն հանդերձ յանդամօքն կերեալ. և յերեկոյին ծնողացն յորոնեալ, և ի տուն յայրեացն դտանելով զկիսակտուր դիակ աղային իւրեանց։ Այլ և լուաք եւ, թէ ծէր ոմն զմարմին դստեր իւրոյ կերեալ է ի նոյն յերկիրն։ Եւ այլ ամենայն տեղիք այսպիսի եղև վիշտ սովոյն ի Ռ և ԻԸ և ԻԹ (1579, 1580) թվականիս։ Վա՜յ ինձ պատժապարտիս, զի մահուամբ և սրով և սովոյ կոտորեալ մարդկան մարմնոց գազանք այնքան կերեալ, մինչ զի տնաւուն շունք վայրենացեալ յարտաքոյ շինի զկենդանի մարդիք որսային։ Եւ դայլք ի ճանապարհի եւ և շինամիջի ի տուն մտեալ զմարդիք ի ննջման յարտաքս քարշէին և ուտէին։ Եւ ի՝ մէջ խաշանցն մտեալ զխաշնարածսն յուտէին և խաշանցն ինչ ոչ մեղանչէին։ Եւ զթիւ մահուամբ սովով և սրով մեռելոցն և դերելոցն ընաւ ոչ կարեմ ընդ թիւ բերել և գրով արկանել, բայց թէ իմ զքարտէսս և զմէլանս առաջի ձեր յարկից ըստ դպրացն Դաւթի, որ առ Ցերուսաղէմիւ։

Իսկ ի ՌԼԲ (1583) թվականին դարձեալ հրաման եղև ի Մուրատ խոնդկեարէն զօրապետաց և զօրաց իւրոց՝ ելանել ի վերայ Ցէրևանայ և առնուլ զնա[21]։ Եւ եկին իսկ և աւերեցին, և բազում եկեղեցիք քակեալ, զքարինս ի շինումն բերդին տանէին, որ և կամեցան զմեծ եկեղեցին, որ Ցերկու երեսի[22] ասի, եւ ‖ քակել։ Իսկ 268 բ
յոմն վարդապետ Ցառաքեալ յանուն, որ և յետոյ կաթողիկոս եղև[23], յիշատակ նորայ աւրհնութեամբ եղիցի, եմուտ առաջի Ֆարհատի զօրապետի զօրուն և ոչ ետ թոյլ քակելոյ զեկեղեցին. բայց վա՜յ լսելեացս և պատմութեանս, զի աւուրս Լ (30) ջորիք և երիվարք և բազում Տաճիկք ինքեանց յանծանօթք բնակեցան եկեղեցին։ Եւ եղև յասացեալն ի մարգար[է]էն՝ զի մտին հեթանոսքն ի ժառանգութիւնն Աստուծոյ և պղծեցին զտաճար նորա սուրբ։

Ի սոյն թվականի եղև վախճանք մեծ և երանաշնորհ վարդապետին մերոյ Ցոհանիսի։ Եւ զի էր նա ի յերկրէն Ծարայ, Փոքր Սիւնիս կոչեցելոյ, ի վանիցն Դադիու[24] սուրբ Ցառաքելոյն, որդի յումեմն ազատի և բարեբարոյի Ջհանշահ կոչեցելոյ, յազգէ Դօփեայ և Հասանայ։ Եւ էր նայ յաշակերտ մեծ վարդապետին Ղուկասու Հախպատեցոյ[25], յոյժ սրբասէր և աստուածասէր, հեզ և աղօթող, քարոզող յուղղափառաց և յանդիմանող ըստահակաց, սիրող ուղղութեանց և պատուող տօնախմբութեանց, յոյժ ընթերցասէր և գրասէր, մինչ զի բազում գրեանս ետ գրել[26] յիւրն

1 միամօր։ 2  է (7), մերձակայ գեղօրէից։ 5 կանանցն, ոտն։ 7 զիակ։ 10 և ԻԸ և չիք, թուականիս։ 13 մարդիկ։ 14 զմարդիկ։ 21 թուականին։ 25 երէսի։ 27 օրհնութեամբ։ 27—28 Ֆյարհատի։ 34 թուականի։ 35 Ցովհաննիսի։ 36 Տաթևոյ։ 38 Դոփեաց, նա։ 39 Հախպատեցւոյ։ 40 յանդիմանօղ ստահակաց։ 41 սիրօղ, պատուող։

յիշատակ և այլ սպասք և զարդ եկեղեցոյ յոլով։ Եւ յաւերեալ լի յաւուրբք հանգեաւ խաղաղութեամբ ի Քրիստոս ի յունվար[27] ամսոյ Ի (20) ի ՌԼԲ (1583) թվականիս մերոյ, որոյ պատուական մարմինն նորա եդեալ կայ ի յերկիրն Գեղամայ[28] ի գեւղն Վասակաշէն[29], հուպ ատմպարանի վարդապետին Սարգսի։ Յիշատակ նոցա յաւրնութեամբ եղիցի և աղօթք նոցա ի վերայ ձեզ և մեզ եղիցի. և տէրն տէրանց ի վերայ ամենայն աշխարհիս գթասցի. ամէն։

Իսկ ի ՌԼԴ (1585) թվականին ի խրոխտէն Մուրատայ հրաման եղե ի Դամուր դաֆ յառ Օսմանն, գնալ առ ինքն ի Կոստանդինուպօլիս, որ և գնաց իսկ և պատուեցաւ ի նմանէ և զօրապետ և յիշխան ‖ աց յիշխան կարգելով զնայ բոլոր յարեւելեանս, 280ա ի Բիւզանդիոյ մինչև ի Յալանս.[30] և ետ ի ձեռս նորա զօրս բազում թվով Ո (600) հազարաց և առաքեաց ի վերայ շահաստան քաղաքին Թավրիզոյ. որ և եկն իսկ յոյժ խրոխտանօք, առ զնա և աւերեաց յաւար առնելով զամենայն ինչ որ ի նմայ[31]։ Եւ շինեաց բերդ, այլ ոչ ժամանեաց յաւարտման բերդին, յանդէն սատակելով ոչ եղեալ արժանի լսելով յաստէն ի թագաւորէն իւրմէ զգովութիւն իւրոյ յաղթութեանն, և զի հատուցմունք հանդերձելումն նմայ՝ դատողին յամենեցուն է յայտնի։ Իսկ ի յայլ յիշխանաց և գլխաւորացն բազում պատերազմաւ ընդդէմ կացեալ Կարմրագլխացն և յաւարտեցին զբերդն, և կարգեցին ի նմա զօրս ծառայ[32] յանուամբ և կացուցին զօրապետ նոցա յումն ներքինի Ջաֆար անուն. և ինքեանք դարձան ի տեղի իւրեանց տանելով ընդ ինքեանց զանմաքուր շաղիղ նորա։

Այսուհետև դարձցուք ի կարգ պատմութեան Կարմրագլխացն։ Քանզի էր այսու ժամանակաւ թագաւոր նոցա, յառաջ ասացեալ, Խուդաբանդայն։ Եւ սորա գուն գործեալ ընդ զաւրաց Յօսմանին յոյժ ջանիւ, յաճախ վշտօք, բազում յաշխատութեամբ, յոլով յաւուրց պատերազմաւ, և յերկոցունց կողմանց յանչափ արեանց հեղմամբ, և ոչ կարաց խափանել զնոսա ի գործոյ շինութեան բերդին Թավրէզոյ։ Եւ յայնժամ դեռ ևս ունէր ընդ ձեռամբ զՍեաւ այգի[33] կոչեցեալն և զԳանձակ, որ է Գանջայ։ Եւ շահն գնացեալ յանդ հանդերձ պատանի յորդւով իւրով, Յամիր Համզայ կոչեցելով, և զօրաժողով եղեն յանդ ամենայն Կարմրագլուխքն՝ խորհել ինչ վասն Թավրիզոյ և[34] Յօթմանի զօրացն։ Եւ տիրատեաց Կարմրագլուխքն յաւելին զվէրս ի վերայ վիրաց Խուտաբանդային, մանաւանդ յինքեանց ևս կրկին և երեկքին. վասն զի այն եղև բեկումն նոցա վերըստին, զի սրախոց ի գաղտնի սպանին զզորդի շահին[35]. քանզի շուք թագաւորի ի տղայն երևէին և ի նմանէ Կարմրագլուխ Պարսիկքն յոյժ երկընչէին։ Եւ

---

1 եկեղեցւոյ։ 1—2 յայեւորեալ ի յերկիրն Գեղամայ լի յաւուրբք։ 3 Ի (20) չիք, թուականիս։ 4 ի յերկիրն Գեղամայ չիք, գեղն։ 5 դամբարանի։ 6 յօրհնութեամբ։ 8 ամէն չիք։ 9 թուականին։ 10առ Օսման։ 11 և (զօրապետ) չիք։ 12 զնա։ 14 թուով։ 15 Թաւրիզայ։ 16 կամ փխ. զամենայն։ 20 Յնայ փխ. նմայ։ 25 շաղեղն։ 29 զօրաց։ 32 Թաւրիզոյ։ 36 Թաւրիզոյ։ 37—38 Խուդաբանդային։

իբրև այս այսպէս եղև, ցրրուեցան Պարսիկքն ըստ իւրաքանչիւր ոք, ոչ գիտելով զտեղի իւր, իբրև զդիշատեալ հօտ որոց ոչ իցէ հովիւ։ Եւս և զի խրոխտ հրաման թագաւորին Մուրատի Ցօթմանցոյ պատեալ էր զնոսա որպէս զկղզի նման ծովոյ։ Եւ շահն Խուտաբանդայ յոյժ հեծեծանօք և || թախիծ սրտիւ և լի տրտմութեամբ 299 բ գնացեալ ի Խորասան առ միւս որդին իւր Ցարաս[36], յանդէն թողեալն ի գալն իւր յԱտըրպատականս՝ տիրել Խորասանայ. առ նա հասեալ Խուտարանդային և յետ սակաւ յամաց ինքն մեռաւ, ոչ ինչ քաջութիւն ցուցեալ յազգի իւրում յանարին այն։ Եւ թագաւորեցաւ Ցարաս որդի նորա ընդ նմա, յոյժ քաջ և յաղթող ի պատերազմի. վասն զի զԳիլան, որ՛ և Ջօրջանեթ յապըստամբեալ ի հօրէ նորա, Ցտրաս քաջութեամբ նուաճեաց զնոսա ընդ ձեռամբ։ Այլև Ցօզբէկն կոչեցեալ ի Բալխա և Բուխարայէ ելեալ էառ զՀէրի քաղաք[37] և այլք ի տեղաց շահին և ընդ ձեռամբ արար, մինչդեռ նա ի Ցարտաւէլն էր գնացեալ վասն նըւիրանաց և ընծայից բաշխելոյ յառ շիրմի հարցն իւրոց և հաւուցն։ Եւ լուեալ դարձաւ յանտի և գնացեալ զՕզրէկն՝ զոմն կոտորեաց և զոմն փախոյց և զտեղիքն իւր դարձեալ հաստատեաց։ Այլ և յերկիցս և երիցս յանդամ զօրս արձակեաց ի վերայ նոցա. և յետոյ ինքն գնացեալ զբազումս ի նոցանէ սպան յոյժ պատերազմաւ. և զորդի թագաւորի նոցա ըմբըռնեալ դարձաւ ի տեղի իւր ի Ղազւին. և այնպէս նըւաճեաց զնոսա։ Եւ է թագաւորն Ցարաս յոյժ խաղաղասէր, մանաւանդ քրիստոնէասէր, որ և ասի ի վաճառականաց, թէ ի տան գանձի իւրում զնշան սուրբ խաչին պատուով պահեալ ունի. և ի ժամ պատերազմի ի ծոց իւր բարձեալ տանի ընդ իւր։ Եւ այժմ է յիշխանութիւն նորա ի Խորասանայ մինչև յԱրտաւէլ և ի Ցերասխ դետ։

Իսկ ի ՌԼԷ (1588) թվականին դարձեալ հրաման ել Մուրատ խոնդկեարէն յումեմն Ֆարհատ կոչեցելոյ, յառողի և շինողի Ցէրեանայ, զոր յառաջ քան զՕսմանն նայ յունէր զզօրապետութիւն կողմանս յարևելից յետ Լալային, և այժմ վերստին զիւր յառաջին իշխանութիւնն շնորհեաց նմայ. և առաքեաց ի վերայ Գանճայոյ՝ հեռացուցանել զմնացեալ սակաւ Կարմրագլուխքն, որ յանդ և շինել ի նմա բերդ և դառնալ[38]։ Որ և եկն իսկ ծանր զաւրու և արար ըստ հրամանի խոնդկեարին։ Հերքեաց, մերժեաց, հեռացոյց, տարակացոյց, յուրոյն կացո[յ]ց, զատացոյց, ի բաց կացոյց, հալածեաց, փախըստական արար, վտարեաց, մեկուսացոյց. և ինքն զհետմտեալ մինչ ի դետն Ցերասխ և զբազումս գերեաց և զօրս ետ ճարակ սրոյ այլ և գետահեղձ արար զյոլովս։ Եւ ինքն դարձաւ և շինեաց բերդ ի Գանճայ և կարգեաց || ի նմա 270ա զաւրս, ըստ յօրինի իւրեանց ծառա կոչմամբ. և ինքն դարձաւ

---

1 այսպէս չիf, ցրուեցան։ 2 զգիշատեալ։ 3—4 յօսմանցւոց։ 7 անդէն։ 13 և չիf։ 14 Բուխարէ։ 16 Նուիրանաց։ 17 զՕվրէկն։ 19 անգամ։ 22 նուաճեաց։ 27 յԱրտևէլ։ 28 Թուականին։ 29 խոնդկարէն, Ֆահրատ կոչեցեալ։ 30 նա, ունէր։ 32 իշխանութիւն։ 33 Կարմրագլուխն։ 34—35 զօրօք։ 35 խոնդկարին։ 37 փախստական։ 40 Գանջայ։ 41 զօրս, ծառայ։

առ կայրսն իւր։ Իսկ շահն Ցարաս յորժամ ետես զեղեւալքս յամենայն առ աշխարհն իւր՝ երկեաւ ևս վասն տեղոյ շիրմից հարցն իւրոց և հաւացն զՑարաաւիլ գուցէ առցեն. և յառաջ ի Ներս ի Պարսիկս ևս ճեպեսցեն. դեսպանս առաքեաց, հրեշտակութիւն յարձակեաց[39] առ Մուրատ խոնդկեարն յառ ի խաղաղութիւն համոզել և սէր ընդ միեանս ունել։ Եւ ընդ այս ոչ եղև լսելի գոռոզին, պատանդս խնդրելով ի նմանէ։ Եւ շահն Ցարաս յաւել ևս առաքել զեղբօր իւրոյ զորդին հանդերձ մեծ իշխան դայեկաւ և յերկերիւր զինակիր սպասաւորով առ խոնդկեարն՝ տալ պատանդս յանդէն ի Ցստամպօլ վասն խաղաղութեան միջի իւրեանց, որ և խաղաղութիւն եղև իսկ։

Եւ ի ՌԽ[Դ][40] (1595) թվին մեռաւ Մուրատ խոնդկեարն և թագաւորեցաւ սուլթան Մահմեա որդի նորա ընդ նմայ։ Եւ յաւուրս այս Մահմետի յարեան Ֆռանկքն, որ Մաճարք կոչին, ի վերայ ծովու բազում նաւօք. և են պատերազմ ընդ սոցայ յամս[41]։ Եւ ամենայն յամի յառնեն ընդ միմեանս յահադին և սաստիկ պատերազմաւ և կոտորմամբ յիրերաց, որպէս տապարաւորս և կացնաւորս մայրահատաց հատանեն սպառելով զմիմեանս հրով և որով։ Եւ ի միւս յամին յերկաքանչիւր կողմանց յարքուէ իւրեանց դարձեալ զօրս հասեալ լինի ի թիկունս և լինի նոր նորոգեալ պատերազմն յետինս ամի կրկին ևս քան զյառաջինսն յամ։

Եւ ի թվականիս ՌԽԹ (1600), յորում եմք, է այսպէս և զյապագայն տեառն Աստուծոյ է յայտնի, թէ զինչ լինելոց է յայնմ, որում շնորհելոց է կողման ինչ պարտութիւն և կողմանց ինչ յաղթութիւն։ Զի գրեալ է, ոչ թէ զօրութեամբ զօրանայ հզօրն, այլ տէր ակար առնէ զհակառակորդն։ Տէր սուրբ է և նա կարողացուսցէ զհաւատացեալս խաչին իւրոյ։

Այժմ դարձեալ երկրորդեսցուք վասն Սիմոնի թագաւորին Վրաց, թէ զինչ եղև. քանզի Սիմոնն, յորժամ փախեաւ ի Հալայէն, գնացեալ ի յանկեան յուրէք ինչ իւրոյ յաշխարհին, բնակէր ի մացառ և ի կապան տեղիք և ի սիրտ իւր խոցեալ լինէր վասն յառման յերկրին իւրոյ. և հնար իրացն ոչ ինչ կարէր գտանել, վասն յոյժ խրոխտ լինելոյ համբակին իւրոյ, սպասէր խնամոցն Աստուծոյ։ Պատգամս յղէր և հարկս խոստանայր Մուրատին, երբեմն տալով և երբեմն ոչ տալով[42], յապըստամբէր ի նմանէ և յաւազակ ի վերայ բերդիցն յարձակէր պատճառն զզօրաւք բերդիցն արկանելով առ Մուրատ թագաւորն համբաւէր և ի նմանէ զվնասն նմայ շնորհեալ լինէր։ Եւ յորժամ թագաւորեաց սուլթան Մահմետն, Սիմոնն զխորհուրդ յապըստամբութեանն

1—2 ամենայն։ 2 և փխ. ևս։ 5 արձակեաց, խոնդկարն առ։ 9 սպասաւորօք, խոնդկարն։ 10 անդէն, Ցստամբօլ։ 12 ՌԽ թուին, խոնդկարն։ 13 Մահմեան, նմա։ 14 յաւուր, Մահմէտի։ 15 նաւուօք։ 16 ահագին։ 20 յարքայէ։ 21—22 զառաջինսն։ 23 թուականիս 23-րդ տողից մինչև 25-րդ տողը՝ յորում եմք է այսպես...յայնմ չիք։ 25 յորում, կողմանս 27 զհակառակորդն։ 31 ուրեք։ 36 յապստամբէր։ 37 զզօրօք։ 40 Մահմէտն, յապստամբութեանն։

իւրոյ յայտնեաց այսպէս՝ զհարկն ոչ տալով և զաւազակսն յոյժ բազմացուցանելով, յաւել ևս ինքնին զօրաժողով եղև. և յարեաւ ի վերայ բերդին Գորոյ[43] || և յամիսս Ը (8) նեղեաց զնոսա և առ 270 բ
զնա. և քակեալ զքարինս բերդին յողամբ յայլազգեացն տանել հրամայեաց և ի Կուր գետն յարկանել։ Եւ ապա զարսն կոտորեաց սրով և կանայք և զորդիք նոցա յաւար բաշխեաց զօրաց իւրոց Վրաց։

Ի յայսմանէ յամենայն ազգն Հագարու ի սիրտ և ի խոր խոցեցան և յոյժ սրտմտեալ և ի բարկութեան և ցասման հարեալ Մահմեա խոնդկեարին և յոյժ տագնապաւ հրաման եհան և զտեղի Ցահրատին և զիշխանութիւն նորին տալով ներքինւոյն Ջաֆարի[44], որ ի Թավրէզ։ Եւ առաքեաց ի վերայ Սիմոնին, յառնուլ զվրէժ յանարգանաց և արեան յօթմանական և իսմայէլական գնդին։ Եւ յորժամ ի թագաւորէն էառ համարձակութիւնս այս, երկրորդ վիրագ, չեզոքն այն Ջաֆար, յոյժ խրոխտացաւ և արձակեաց հրաւիրակս ընդ կողմանս յիշխանութեանն իւրոյ և ինքն ել ի Թավրիզոյ եկն յԱրարատ։ Եւ ժողովեցան անդ ամենայն հրաւիրեալքն առ նա զաւրք բազում։ Եւ սուրհանդակք յարձակեալ ի հեռաւոր տեղիս՝ դեղից և քաղաքաց, տանել կերակուր յինքեանց և ձիոց, պատրաստել յանցս ճանապարհաց իւրեանց։ Այլ և թիւս քսան հազար յարանց յարկեալ ռամկաց Հայոց և Տաճկաց, ամենայն յաշխարհաց, յունելով ի ձեռս իւրեանց՝ յորթուց և թիաց, տապարաց և կացընաց, բահաց և փայտատաց, բրիչ տանց հիմանց.այլ և խիստ էառ հարկս ի ժողովրդենէ յարտաքսյ նօմօսաց իւրեանց։ Եւ ապայ ելեալ գնաց յոյժ երկիւղիւ, զի վաղուց հեաէ զփորձ առեալ էին բազում անգամ ի քաջութենէն Սիմոնի և ի հնար յիմաց պատերազմաց նորա. և ի նմանէ պարտեալ յամօթալի դիմօք յետս էին դարձեալ։ Եւ այժմ, իբրև հասին յերկիրն Վրաց գնայն կարծելով երկնչէին և զտեղի առին յաւուրս Գ (3) և չև ևս էր եղեալ զմարտ ճակատուն և ոչ պատգամս և դեսպանս առ յիրեարս գնացեալ։ Եւ Վրացն խորհեալ ընդ միմեանս յասեն առ Սիմոն. «Թոյլ տուր այսօր տարցուք զտունս և զընգանիս մեր յառ լերամբք և մեք դարձցուք յամենայն սրտէ և յամենայն զօրութենէ մերմէ յարեան չափ և մահու պատերազմեսցուք ընդ Թուրքացն և յաղթեսցուք նոցա, զօրութեամբն Աստուծոյ»։ Բայց վասն բնաւին բառնալոյ զսահման յաղօթից ի յազգէս քրիստոնէից, մինչ զի ի բոլոր տարին յամենեւին ի դուռն եկեղեցոյն ոչ ընթանան ի փոքունց մինչև ի մեծամեծս, վասն այսր յիրաւունքն յԱստուծոյ ոչ ետ թոյլ կատարիլ խորհրդոցն Վրաց. զի ասէ Աստուած մարգարէիւն. «Ապա թէ ոչ դառնայք առ նա, զսուր իւր սրեալ է և զաղեղն լարեալ». || և կամ թէ ասէ. «Մի- 271ա
թէ° վերանայցէ փայտատ առանց փայտահարի և սղոց առանց ուրուք ձգելոյ». և դարձեալ ասէ. «Ես սպանանեմ և ես կեցու-

3 Գորւոյ։ 4 հողամբ։ 5 գէտն։ 10 Մահմէդ խոնդկարին։ 12 Թաւրէզ. 15 չէզոքն։ 16 յիշխանութեան։ 17 Թաւրիզոյ։ 18 զօրք։ 21—22 Տաճկած։ 23 կացնաց։ 25 ապա։ 31 ասեն։ 32 զընտանիս։ 33 առ։ 37 եկեղեցւոյն։

ցանեմ, հարկանեմ և ես բժշկեմ». և կամ ասէ. «Ձի՛ զոր կամի տէր կորուսանել՝ յիմարեցուցանէ»։ Վասն որոյ յիմարեալ Սիմոնին այժմ նստի ի գինի սակաւ արամ[բ]ք։ Եւ յայնմ կողման, յորում էր Սիմոնն, Թուրքացն յամենևին ոչ ունելով կարծիք զՍիմոնին յանդ լինելն, բայց յաւարի պատճառաւ, Թուրքացն ղունդ ինչ բաժանեալ և ի կողմն այն գնացեալ և տեսեալ զՎրացի յոմն ըմբռնեն. և յառաջ ինչ գնացեալ սակաւ զՍիմոնին գունդն տեսանեն. և ի ըմբռնելոյն հարցեալ զյովն լինել այնմ և լուեալ ի նմանէ, թէ նայ ինքն իսկ է Սիմոնն։ Եւ Տաճկացն յոյժ երկուցեալ յետս կանգնեն. և վաղվաղակի յարս զօրաւորս յարագընթաց երիվարօք առ բանակն հասուցանեն և Ջաֆար զօրապետին յայտնեն։ Եւ նորա յոյժ զւարճացեալ և բազում քաջ արանց խրախուս տուեալ յառաքէ։ Եւ գնացեալ ըմբռնեն զՍիմոնն և բերեն յառ նա[45]։ Եւ ի գալն յելեալ ընդ յառաջ Ջաֆարն յողջունել զՍիմոնն, և ապայ ի լեզուս իւրեանց մեծաձայն հնչմամբ աւրհնեցին զԱստուած ի լուր բանակին։ Եւ Սիմոնին զնոյն երկրորդեալ ասէ. «Աւրհնեալ է Աստուած և անփոփոխ տէրութիւն նորա. զի տէր մեռուցանէ և տէր կեցուցանէ, յիջուցանէ ի դժոխս և հանէ»։ Եւ Ջաֆարն յանդէն սուրհանդակ յարձակեալ առ խոնդկեարն յաւետել նմայ. և ինքն առեալ զՍիմոնն ժամանէ ի Թավրէզ։ Եւ հրաման ել ի խոնդկեարէն յամենայն տեղիք տէրութեանն իւրոյ զարդարել զփողոցս քաղաքաց և յամենայն ոք յաւուրս երեք նստել ի խրախութիւն ընդ տիւ և ընդ գիշեր և եղև այնպէս. և զՍիմոնն առ ինքն տանել։ Եւ Ջաֆարին պահեալ զՍիմոնն ի Թավրէզ յաւուրս ձմերան և գարնան և ի յամարան[46] ժամու յառաքեաց առ կայսրն, որ ի Բիւզանդիայ. և ի գնալն հասեալ ի Կարնոյ քաղաք, զտեղի առին վասն յումեմն յիշխանի հրովարտակաց դպրի, որ ի լեզուս իւրեանց Եազըչի ասի. ընդ իւր յունելով արանց յաւելի քան ԻՌ (20000)-աց յապըստամբելոյ ի յաւաքէն իւրմէ և ի թագաւորէն եա։ Եւ այս երկու յամ է, որ զգլխահարկ ժողովրդեանն, որ վասն թագաւորաց է, յինքն կորզեալ ժողովէ։ Այլ և վասն Սիմոնին զգուշութեամբ պատուէր տուեալ է զօրաց իւրոց յափշտակել ի տարողացն և առ ինքն հասուցանել. յաղագս այս պատճառի Սիմոնն յարգելեալ կայ ի Ցարզըում քաղաքի։ Աւրհնեալ է Աստուած, զի վերջն նմա է գիտելի։

---

3 արամք։ 5 անդ։ 8 ղով, լուեալ։ 11 երիվարօք։ 12 զուարճացեալ։ 13 խրախոյս։ 14 առ։ 15 ապա։ 16 օրհնեցին, ի բոլոր փխ. ի լուր։ 17 օրհնեալ։ 18—19 իջուցանէ։ 19 անդէն։ 19—29 արձակեալ։ 20 խոնդկարն։ 21 Թաւրէզ, խոնդկարէն։ 22 տէրութեանն։ 22—23 ամենայն։ 25 Թաւրէզ։ 26 յամառան, առաքեաց։ 28—29 Եազչի։ 29 ունելով, աւելի։ 39 յաւաղէն։ 35 օրհնեալ։

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Հովհաննիսիկ Ծարեցու ժամանակագրության բնագիրը «Ճռաքաղ»-ում և Ս. Անեցու ժամանակագրության հրատարակության հավելվածում լույս է տեսել այստեղից, մինչդեռ բնագրում «Սրգ գնեղութիւն» բառերին նախորդում է Հովհաննիսիկ Ծարեցու ընդարձակ հիշատակարանը, որը բերում ենք ամբողջությամբ.

«Փառք պատիւ և գոհութիւն հօր և որդոյ և սուրբ հոգոյն ամէն։ Արդ՝ ես մեղուցեա Ծարեցի նըւաստ Յոհաննէս վարդապետս, որդի Մելքոնին, որդոյ Միրզաջանին, յորդւոյ Ջահանշահի, որոյ որդի նորին մեծ վարդապէտն Յոհաննէս ի ՋՁ (1531) թվին ստացեալ էր այս սուրբ գիրքս դատաստանացս։ Եւ ես ի Ռ և ի ԽԹ (1600) թվիս նորոգել ավի զսուրբ մատեանս յիշատակ ինձ և կրկնակի ծնողացն իմոց՝ Մելքոնին և Փիանզին և եղբարցն իմ Թումայ իրիցոյն և նորին որդոյն՝ Ռստակէս իրիցոյն, և միւս եղբօրն իմ Միրզին և հանգուցելոյն [Ու]լուխանին և քւերցն իմ Փարինխան[ին], Սուլթանին, Նազլուխանին և հօրեղբօրն իմոյ Յուղուբլուին և յամենայն. արեան մերձաւորացն մերոց կենդանեաց և ննջեցելոց։ Արդ՝ աղաչեմք զձեզ որք պատահիք և յօգաիք ինչ ի սմանէ յիշեա զմեծ վարդապետն Յոհաննէս և զիս (№ 8245 տարբերակում հիշատակարանն ընդհատվում է այստեղ և ապա սկսվում Ժամանակագրությունը—Վ. Հ.) զփոքր Յոհաննիսիկս և զիմ ծնողքն. և սրբոյ մտօք Աստուած ողորմի ասացէք մեզ և յամենայն վերոյ գրելոցս ի սմայ։ Եւ Քրիստոս Աստուած, որ յառաասէ ի տուրս բարեաց, ձեզ յիշողացդ և մեզ յիշեցելոցս առհասարակ ողորմեսցի ի յօրն յահեղին ամէն։ Նորոգեցաւ սուրբ կտակս ձեռամբ յԱլեքսանոս կրօնաւորի, Աստուած զինքն ընդ սրբոյն Յանտոնի և հրօնիգեայ և եօթնից ընկերացն դասակցեսցէ և ծնողաց նորին ողորմութիւն պարգևեսցէ. ամէն (էջ 266ա և բ)։

2. Հայագիտության մեջ կարծիք կա, որ Արշակունյաց ժամանակ «շէն»-ը չի գործածվել ավան, գյուղ, դաստակերտ առումով, այլ բնակիչների կամ ժողովուրդների, որ «շենը» գերությունից կամ ստրուկ կանանցից մայրական ընտանիքի միջոցով գոյացած բնակիչներն են, որ «շենը» ցեղի ստորադաս մասն է (մանրամասնությունները տես Ս. Բահաթրյանց «Հողային և անձնական իրավունքը հին Հայաստանում», «Մուրճ», 1894, № 3, էջ 425—432)։ Թեև այս տեսակետն ունի վիճելի կետեր և ապացուցման կարիք է զգում, համենայն դեպս «շէն» և «անշէն» արտահայտությունները, որոնք մեր մատենագիրների մոտ հաճախ ենք հանդիպում, սոցիալական բովանդակություն ունեցող հասկացություններ են։ Այստեղ այդ արտահայտությունը, ի հարկե, վերոհիշյալ իմաստով չի գործածված, այլ բոլոր վայրերը, ամենուր, թե հարուստ, բարեկի և թե ոչ հարուստ, թալանել են։

3. Բնագրում «ճարակ և թաղստեան» բառերը վերցրած է շրջանակի մեջ։

4. Ըստ երևույթին այս հատվածը նկատի ունենալով, Ալիշանը ենթադրում է, թե «այլ բան պակասի տպագրուածին մէջ» («Հայապատում», Ա, էջ 129)։ Մեզ թվում է, հեղինակն իրենից առաջ տեղի ունեցած դեպքերն ընդհանուր կերպով, որպես ներածական, բերելուց հետո, նշում է, որ այդ մասին «յառաջնոցն էր գրեալ», իսկ ինքը կոնկրետ դեպքերը շարունակում է իր ժամանակաշրջանից սկսած։ Հետևապես Հովհաննիսիկ Ծարեցու ժամանակագրության բնագիրը լրիվ է։

5. Ա. Դավրիժեցու պատմության մեջ առաջարկվող ժամանակագրության բնագիրն սկսվում է այստեղից (էջ 605)։ Ինչպես տեսնում ենք, Ա. Դավրիժեցին բաց է թողել ներածական մասը, մեջբերելով հեղինակի ժամանակակից դեպքերի հիշատակությունը միայն։

6. Բնագրում «բաշ» ձևով, այնուհետև ձախ լուսանցքում գրիչն ուղղել է նշելով «պաշ»։

7. Իմա Իսմայել II, շահ Թահմազի երկրորդ որդին։ Սրա բանտարկության մասին բավական մանրամասն է խոսում Վենետիկի դեսպան Վինչենցո Դ' Ալեսանդրին. սա նշում է, որ «ավելի քան տասնյոթը տարի է, որ նա բանտումն է»։ («Ուղեգրություններ», հտ. Ա, էջ 335—336)։ Եվ որովհետև Վ. Դ' Ալեսանդրին Պարսկաստանում եղել է 1571 թվին, նշանակում է Իսմայել II-ին բանտարկել են 1554 թվին, թեև 1560 թ. ընդօրինակված հայսմավուրքի հիշատակարանում բանտարկությունը նշված է 1557 թվին. այնտեղ կարդում ենք. «...գրեցի դաստս ի թվականիս Հայոց Ռ և Թ (1560), ի հայրապետութեան տեառն սուրբ Էջմիածնին տէր Ստեփանոսին... և ի դա[նութ]եանն աշխարհիս շահ Թահմա-[զի]ն, որ նենգութեամբ սպան և կորոյս դԳ (3) եղբայրն, և զորդին իւր եդեալ է ի բանդ Գ (3) տարի և զվերջն Աստուած գիտէ» (№ 6285, էջ 625բ—626ա)։ Ինչպես մեր հեղինակը, այնպես էլ Վ. Դ' Ալեսանդրին բանտարկութեան պատճառը նշում են «վասն... յանդգնութեան», կամ «փառասիրական տեսակետներ ունի» և այլն արտահայտություններով։ Սրա բանտարկության մասին տե՛ս նաև ՄԺ, 1, էջ 195։

8. Այս բառը գրված է բնագրի 267ա էջի վերևի լուսանցքում։

9. Լեն-Պուլի համաձայն Իսմայել II-ն իշխել է 1576—1578 թթ., իսկ Մուհամմեդ Խուդաբենդեն, 1578—1587 թթ. (էջ 219)։ Վերջինս շահ Թահմազի անդրանիկ որդին էր, որը, ինչպես նշում է Վ. Դ' Ալեսանդրին «շատ չի հետաքրքրվում աշխարհիկ գործերով, գոհ է իր հոր կողմից իրեն տրված փոքրիկ կալվածով, Խորասանի շրջանում, կոչված Հերի» («Ուղեգրություններ», հտ. Ա, էջ 335)։

10. Իմա Մուրադ III։

11. Պարսկա-Օսմանական հերթական կռիվները սկսվեցին 1578 թվին։ Թուրքական բանակին ղեկավարում էր Մուստաֆա Լալա փաշան, իսկ պարսկական բանակին՝ Թոխմախ խանը։ Երկու բանակների ճակատամարտը տեղի ունեցավ 1578 թվի օգոստոսի 9-ին, Չըլդըրի մոտ, որտեղ թուրքերը հաղթանակ տարան և մտան Վրաստան (մանրամասն տե՛ս J. Hammer „Geschichte des Osmanischen Reiches" Zweiter Band, Pesth, 1834, էջ 480-481)։

Ժամանակակիցներն այդ դեպքերը նկարագրել են մռայլ գույներով (տե՛ս, Գ. Սըրվանձտյան «Թորոս աղբար», մաս Բ, էջ 268—269, ԼՑՎ, էջ 9—10, ՍՑՎ, հտ. Ա, էջ 667 և այլն)։ Բերում ենք այս և հաջորդ երեք տարիներին վերաբերող մի հետաքրքիր հիշատակարան. «...Արդ գրեցաւ սա յամի Ռ և Լ (1581) թըւականիս մերում... ի թագաւորութեան Տաճկաց Բուզանդիոն, որ այժմ Ստամբոլ ասի, սուլթան Մուրատայ, զոր հրամայեաց նախարարաց իւրոց և առաքեաց ի Վան առ Խոսրով փաշայն իւր, թէ «Ժողովեա զզաւրս քո և ել գնա ի վերայ Կարմիր գլխու աշխարհին ի սահմանս Թաւրիզոյ յառ և յաւար հար զտեղս և զերկիր նոցա, սպան, գերեցոյ, այրէ և աւերեա և ի յետս դարձիր»։ Եւ յորժամ լուաւ զհրաման թագաւորին իւրոյ մեծ փաշայն Խոսրով և ժողովեալ բազում զաւրս և յաւուր պահոց Առաջաւորին ասպատակեալ դիմեցին և գնացին դէպ յարևելս ի վերայ գաւառաց շահին, որ Կարմիր գլուխ ասի։ Եւ գնացեալ հասին մինչև ի Թավրէզ և ի Նախչուան և զբազում քաղաքս և զգեղս և զգաւառս աւերեալ քանդեցին. զարսն սրով սպանին, զկանայսն և զաղայսն գերի վարեցին և այնչափ անողորմ արարին, զի զտղայսն որորանով կալեալ և ընկեցին ի վառեալ թոնիրն ի մէջ կրակին։ Եւ այլ ևս զի զտղայքն ի գիրկս մարցն ջամբէին զստինսն, և յանկարծ հասանէին ի վերայ նոցա, զմարսն սպանանէին և արիւնն և կաթն իրար խառնէին և ջամբէին մանկտիքն և ոչ գիտէին զվայս իւրեանց։ Եւ ետ այնորիկ բռէին նիզակ և հարկանէին զտղայսն ի ծայրս նիզակաց և վերացուցանէին զնիզակսն յերկինս ի վեր և հարկանէին զտղայս ի վերայ քարի և ի վերայ փայտի և սպանանէին. և ոմանք հարկանէին զտղայսն ի ծայրն նիզակացն և վերացուցեալ զնիզակսն տընկէին զմիւս ծայրն ի գետին, և տղայքն ի վայրի ծայրն աղաղակէին և ճչային, թալկանային և ի սաստկութենէ ձմեռանն սառեալ մեռանէին։ Եւ այլ բազում ազգի ազգի հնարս գործեցին, զի ոչ կարեմք պատմել և ոչ զաղէտսն ընդ գրով արկանել։ Եւ յորժամ հասաք ի Համբարձումն առաքեաց թագաւորն Մուրատ զմի ի գլխաւոր փաշայից իւրոց, որ մականուն Լալա փաշա կոչի ՀՌ (70000) արամբք, ի մեծ քաղաքն Ցարգռում, թէ «Գնայ և շինէ զհարս (բնագրում «զհայսր» ձևով) քաղաք», որ ի բազում ժամանակաց աւեր էր, զի սինօռ է Բ (2) թագաւորացն։ Եւ նա եկեալ բանակեցաւ ի դաշտս Բասենու. և հրաման ել յաշխարհս և ժողովեցան բազում ճարտարք և քարագործք և ձեռն արկեալ շինեցին զբերդն և զքաղաքն առ ի հակառակութիւնն Կարմիր գլխուն։ Եւ յորժամ աւարտեցաւ քաղաքն՝ քարոզ հնչեաց և ասպատակեալ գնացին դէպ յարևելս՝ ի յերկիրն Կարմիր գլխոյ մինչ զքսան աւուր ճանապարհն աւելի ի Կարսա

(բնագրում «հայսրա» ձևով), Ցե[րե]ւան, ի Շրուան և մինչ ի Թագաւորական մեծ քաղաքն Տփխիս։ Զայս ամենայն քաղաքս և գաւառս անմարդաբնակ արարին և զմեծ աթոռն սբ. Էջմիածին ցիր և ցան արարին՝ զկաթողիկոսն և զմիաբանքն. և յաւուր միում գնացեալ ի վերայ Երեւան քաղաքին և բերին գերի ոգիք ԻԴՌ (24000) քահանայք և ռամիկք, կանայք և աղայք։ Զի Գ (3) դիմաց պատուհաս պատեալ էր զաշխարհս վասն մեղաց իմոց՝ մահ, սուր և սով. մինչ զի շատ ոք ի Տփխիս քաղաքի շուն և կատու կերան։ Եւ թագաւորն Կարմիր գլխոյ փախստական լինէր, զի ոչ կարէր ընդդիմանալ նոցա։ Այս երեք ամ է, որ աշխարհս ամենայն երերմանի կայ. և զվերջն միայն աէր ինքն գիտէ, թէ ինչ աի լինի։ Ցայս դառնութեան աւուրքս աւարտեցաւ ոսկրափոր ճառընտիրս ի Խլաթ քաղաքի ի պատուական և յընտիր աւրինակէ...» (ՄՏՄՑ գործ, № 31, էջ 25—26)։

12. Իմա՛, Թուրքիա։

13. Քարտլի թագաւոր Սիմոն I։

14. Վրաց թագավոր Սիմոն I-ը գերվեց 1569 թ. Փարցխիսի մոտ (Ալգետի հովտում) տեղի ունեցած ճակատամարտում վրացիների պարտությունից հետո։ Նա բանտարկվեց Ալամութ բերդում և ազատվեց գերությունից 1578 թվին։

15. Իմա Դերբենդը։

16. Իմա Օսման Ցուղդեմիր, Օսմանյան Թուրքիայի արյունարբու զորավարներից մեկը։

17. Օսման Ցուղդեմիրի 1580 թվի կատարած այս ասպատակությունների մասին ահա թե ինչ է հաղորդում Իսրայել գրիչը. «...գրեցաւ... Ցիսրայել սուտ անուն իբիցու ի ժամանակիս, որ երեկ ազգի ազգի պատուհասն՝ մահն, սովն, սուրն, գերութիւն։ Երեկ Աւսման փաշէն Հոռոմացոց Դամուրղապէն էառ ի աշխարհն Շրվանայ և կոտորեաց ազգս Ղիզիլպաշին, բազում խանս և սուլտանս և·արար փախստական։ Երեկ ազդ մի կայր Ղայտաղ կու ասեն և գերեաց բազում տեղիս՝ Ղարայպաղն, Ղաբաղաջն, Խաչէն, Վարանդայ մինչև Տիղակ. երեկ Սարաար փաշէն Երեւան, արար փախըստական Մահմատի խանն, էառ Երեւան, Ծաղկունաց ձորն, Լոռ, Եղեկաց ձորն, Շարուր, Դեղա[ր]դունի և շինեաց բերդ մէջ Երեւանայ. երեկ Քուրան էառ Խոյ, Սալմաստ և Նախչվան և գերեցին և թալնեցին, որք հայր զորդի կանչէր և մայրն՝ զդուստրն. վայ և եղուկ ազգիս Հայոց. ի թվականիս Հայոց ՌԻԹ (1580), երանի մեռելին, վայ կենդանոյն...» (№ 4173, էջ 95ա, հմմտ. ՄԺ, 1, էջ 145)։

18. Այս տեղից մինչև 244 էջի, «ըստ գպրացն Դաւթի, որ առ յԵրուսաղեմիւ» հատվածը հրատարակված է նաև «Հայապատում»-ի մեջ, (Ա, էջ 596—597)։

19. Բնագրում «յօրստիցն» ձևով։

20. Բնագրում «Եղուկ թշվառականիս և պատմութեանս եղբայրք» հատվածը կրկնված է։

21. Այս արշավանքին է վերաբերում Առաքել գրչի 1585 թ. Արզրումի Դրվնիկ գյուղում ընդօրինակած ձեռագրի հիշատակարանը. «...քանզի յայսմ ամի եղև տարտարոս սաստիկ, վասն ծովացեալ մեղաց մերոց, որ եկեալ Վաղիր փաշան յարեմտից բազում զաւրաւք և անթիւ հեծելաւք գնաց յարեելս ի Շահստան, վասն շինութեան Երեւանայ բերդին. և յոյժ նե[ղեց]ին և չարչարեցին ազգըս քրիստոն[եա], փախուցին զթումըս Հայկազան [և շ]ատ աւեր ածին, որն ի ցուրտըն պաղե[ցա]ն, որն ի սովն ջարդեցան» (№ 8625, էջ 367ա)։

Երեւանի գրավման և բերդի կառուցման, եկեղեցիների քանդման մասին հետաքրքիր տեղեկություններ գտնում ենք 1584 թ. ընդօրինակած մի Ավետարանի հիշատակարանում «...Գրեցաւ երկիրս Բասենու, ի գեւղն, [որ] կոչի Ծառս, ընդ հովանեաւ սբ. Խաչի վանեացս... ի թուականիս Հայոց ՌԼԳ (1584), որ յայսմ տարոյս գնաց Ֆարհատ փաշայն ԴՃՌ (300000) հեծելազաւրաւք ի վերայ Երեւան քաղաքին, փախոյց զտէրն, որ նստեալ էր անդ, Մահմետ խանն, և շինեաց անդ նորայհիմն բերդ մեծ և զարմանալի, որ բազում եկեղեցիք խաչ և տապանք քակեցին, և քարն ի բերդն տարան, քրիստոնէից ազգս ամէն թալանուեցաւ, որ առաջ քան հասանել փաշային ի քաղաքն Երեւան, Թաջալ ազգն արձակեց ի վերայ քրիստոնէից ազգիս, որպէս գայլք ի վերայ ոչխարաց՝ քշեցին տարան մինչև Գանձայ ի հետ իւրեանցն և անդ թալանեցին, բազումս սպանին և բազումս գերեցին ։ Եւ ես անարժ[ան] գծողս անդ թալանած, փախստական եկի և գրեցի սբ. Աւետարանս...» («Էջմիածին», 1950 թ., XI—XII, էջ 87)։ Միևնույն գրիչ Դավիթը համարյա նույն բովանդակությամբ հիշատակարան թողել է 1584—1587 թթ. ընդօրինա-

կած մի այլ Ավետարանում (տես «Էջմիածին», 1950, VII—VIII, էջ 87—88)։ Մի այլ ժամանակակից հաստատում է միևնույն տեղեկությունները. ՌԼԳ... «...հասեալ ի մուտս Շարվանա և գերեաց զազգսս Հա[յ]կազանց եւթանասուն ԲՌ (72000) գերի տարան այր ու կին, ծեր և տղայ, և այլ թիւն ո՛րայ՝ն հայրն գիտի, յետո այլ տարին գերեցին Արարատան գաւառն ԿՌ (60000), և եղաւ սով սաստիկ մեծ և նուաղեցաւ զթումս Հայոց։ Եւ յետո եկաւ անիծած որդն Ջիղալի, Երեւա՛ն բերդ չինեցին, եկեղեցիքն քակեցին, շատ աւծաց խաչ ջարթեցին...» (№ 9223 Իէ, էջ 1ա)։

22. Այս եկեղեցու մասին մանրամասն խոսում է Ե. Շահազիզը («Հին Երևանը», Երևան, 1930, էջ 200—204), նա հենվելով Գր. Դարանաղեցու վկայության («Ժամանակագրութիւն», Երուսաղէմ, 1915, էջ 56) և ճարտարապետ Թ. Թորամանյանի կարծիքի վրա գտնում է, որ Երկու երեսանի եկեղեցին Զորագյուղում չի գտնվում, թեև ինքն ստուգապես նրա տեղը մատնացույց չի անում։

23. Մ. Օրմանյանն Առաքել անունով կաթողիկոս չի ընդունում, թեև Ա. Դավրիժեցին (էջ 42) և 1578 թվի մի հիշատակագիր (Գ. Սրվանձտեան «Թորոս աղբար», մասն Բ, էջ 435) նրան կոչում են կաթողիկոս. այս ժամանակ, այսինքն 1570—1590 թթ. կաթողիկոս էր Գրիգոր ԺԲ Վաղարշապատեցին։ Ա. Դավրիժեցին վերջինիս հետ հիշում է Առաքելին (էջ 438)։ Այդ պատճառով Օրմանյանը սրան համարում է Գրիգոր Վաղարշապատցու աթոռակից (մանրամասն տե՛ս «Ազգապատում», էջ 2286—2288)։

24. Սա Դադի վանքը չէ, որ գտնվում է Թարթառ գետի ձախ կողմում, Խաթրավանքից բավական վերև և կոչվում է նաև Խութա կամ Գոթայ վանք (Բարխուդարեանց, «Արցախ», էջ 203)։ Ժամանակագրության № 8245 տարբերակում սխալ՝ «Տաթևոյ» ձևով. ստույգը՝ Թադեի վանք, որը գտնվում է պատմական Աղահեճ գավառում (Փոքր Սյունիք)։

25. Այս անձնավորության մասին այլ վկայություններ մեզ հայտնի չեն։

26. Ջահանշահի որդի Հովհաննես Ծարեցին իր ունեցած ձեռագրերից մեկը 1580 թվին վաճառում է Մելիքբեկին. այդ մասին Մատենադարանի № 6879 ձեռագրում կարդում ենք. «Արդ՝ ես Մէլիքբէկս գնեցի զսուրբ յաւետարանս ի Ծարեցի Յոհաննէս վարդապետէն ԵՌ (5000) դեկան ի թվականութեանս Հայոց ՌԻԹ (1580) ի դառն և ի նեղ ժամանակիս, զի ամենայն կողմանց արհաւիրք է, միթէ՞ Աստուած խաղաղութիւն շնորհէ»։ (էջ 367ա, հմմտ. «Բանբեր Հայաստանի գիտական ինստիտուտի» 1921—1922 թթ., Երևան, Ա և Բ, էջ 113)։

27. Ժամանակագրության № 2776 տարբերակում ամսի անունը գրված է կիսատ՝ «յո» ձևով, այն կարող է լինել «յո[ւնվար]», «յո[ւնիս]», «յո[ւլիս]», թե սրանցից որն է ստույգ, առայժմ դժվար է ասել։ Թեև ժամանակագրության № 8245 տարբերակում գրված է «յունվար», սակայն մենք կասկածանքով ենք վերաբերվում, թե դա սկզբնական բնագրից է ընդօրինակված. հնարավոր է, որ № 8245 տարբերակն ընդօրինակելիս գրիչը գրել է «յունվար», այնուամենայնիվ հենց այդ բառն էլ դրեցինք հրատարակության բնագրում։ Ա. Դավրիժեցու բերած այս ժամանակագրության բնագրից բացակայում է «խաղաղութեամբ» և «ի յո | | | ամսոյ Ի (20)» բառերը (էջ 612)։

28. «Ի յերկիրն Գեղամայ» հատվածը բնագրում գրված է ձախ լուսանցքում։

29. Այժմյան Բասարգեչար գյուղը։ Մ. Սմբատյանցը գյուղի Աստվածածնի եկեղեցու բեմի առջև տեսել է երկու գերեզմանաքար, դրանցից մեկը Հովհաննես Ծարեցու գամբարանն է, ուր կարդում ենք. «Այս է հանգիստ Յովհաննէս վարդապետին ՌԼԲ (1583)», իսկ երկրորդը՝ «Աստ հանգչի մարմին Սարգիս վարդապետի, Ռ (1551)»։ («Տեղագիր Գեղարքունի», էջ 603)։

30. Բնագրում «Ի Ցալանս» հատվածից հետո մի բառի տեղ բաց է թողնված։ Խոսքը թուրքական զորավար Օսման Ցուզդեմիրի մասին է։

31. Օսման Ցուզդեմիրի Թավրիզի գրավումը ոմանք սխալմամբ նշում են 1586 թ. (ՄԺ, 1, էջ 145, 324), իրականում այն տեղի է ունեցել 1585 թվին (ՄԺ, 1, էջ 159, 173, 203), թեև Բարսեղ Վարագեցին էլ նշում է 1584 թիվ։ Վերջինիս հիշատակարանը նվիրված է այդ դեպքերին, ուստի բերում ենք մեզ հետաքրքրող ընդարձակ հատվածը. «Իսկ ի վերջին գարուս և ի նսեմ ժամանակիս մեր, եղև բարկութիւն և պատուհաս ի վերայ աշխարհիս վասն ծովացեալ մեղաց մերոց, քանզի մեծ թագաւորն խոնդքար զօրաժողով արար հեծելոց եօթն հարիւր հազար և ետ նոցա գլուխ զոմն անուն Օսման փաշայ. և եկեալ բազմութեամբ զօրօք ի Թէոդուպօլիս, որ է Արզրում և զչարիսն զոր արար ո՞վ կարէ պատմել կամ ընդ գրով արկանել։ Կացեալ անդ աւուրս բազում, որ և զայր մարդիկ ի

զուրս ձգէին. և զկանայս և զկոյս աղջկունս և զտղայս խայտառակէին, այնպիսի պիղծ գործովք էին անօրէն ազգն Մահմէտի. որ և մինչ զի զդեղեցիկ կանայք և զտղայքն ի հետ բերէին և յօտար երկիր ձգէին։ Եւ չունեալ զնաց ի շահաստան ի Թաւրէզ քաղաք. և ելեալ ընդդէմ նոցա ազգն Պարսից որդի թագաւորին Խուտապանտայի Ամիր Համզա միրզայ. և բանակեցան ճակատ առ ճակատ և զօրքն խոնդքարին հրաձգութեամբ հարկանէին զնոսա. և նոքա յետոյս քարշէին զինքեանս և սոքա հետամուտ լինէին Պարսից և նոքա ի յետ դառնային սաստիկ ձիընթաց արշաւմամբ հարկանէին սրով, նետիւ և նիզակաւ. զբազումս ի վայր թափէին. և զիակունք արիւնաշաղախ թաւալէին։ Անդ էր տեսանել զփրնջիւն քաջ երիվարացն, ի շողել սուսերացն, և ի ճօճել ճապուկ նիզակացն, վայ և ճչիւ աղիողորմ կսկծանացն և տագնապել հողւոցն ելանելոցն շատ որք առ ոտս ձիոց սատակէին և այլք ահարեկ մեռանէին. բազում և անթիւ սատակեցան յերկուս կողմանցն և արք երեւելիք փաշայք, պարոնայք, սուլթան, և խանք ի փառս սատանայի։ Եւ յետոյ ոչ կարաց զդէմ ունել որդի շահին ընդդէմ բազմութեան զօրացն և կրակին. վասն զի ոչ էին միաբան զօրք շահին, թէ մին պատերազմէր՝ նայ շատ որք ի յետ դառնային. վասն չմիաբանութեան. յայնժամ զօրացան զօրք խոնդքարին, և մտին ի քաղաքն Դաւրէժ ՌԼԳ (1584) առ և աւար արարին, զայրս ի սուր սուսերի մաշեցին, զկանայս, զաղջկունս և զտղայս գերի վարեցին, բերդիւ ամրացուցին զքաղաքն, և զբոլորն խանդակ արարին ի յահէ Կարմիր գտակին. և եդին անդ երեք փաշայ երեք հազար արամբք, յոլով պատրաստութիւն արարին մտին ի ներս՝ և ամուր փակեցին և ապա մին եղեալ գլուխ զօրաց խոնդքարին երթալ դէպ յարեւելս առ և աւար հարկանել, զգեղ և զքաղաք տապալել ի հիմանց. իսկ համբերողն Աստուած ոչ կարաց ժուժել պղծոյն, այլ յարոյց ի վերայ նորա մի ի պիղծ ազգաց իւրոց, որ ետ դեղ մահու և սատակեաց զնա չարաչար. և ի յահէ զօրաց Կարմիր գտակին, ոչ համբաւեցին զմահ պղծոյն, այլ գաղտ եդին, գլուխ զօրացն զՎանայ փաշէն զՋղալ Օղլին, որ էր յազգէն Ֆռանկաց, թողին զքաղաքն և դարձան։ Եւ լուեալ զօրաց շահին զհետ մտին և կոտորեցին զբազումս. և դարձան ի վերայ քաղաքին բոլորեցին և նստան. և զօրքն խոնդքարին որ ի յետս դարձան յոլով չարիս գործեցին. բազում գիւղ և գաւառ անբնակ արարին. կար որ յիւրեանց հարկատուացն գերի վարեցին և յՍտամպօլ հասուցին։ Եւ դարձեալ զօրք կազմեցին յայսմ ամի անթիւ և չունեալ զնացին յօգնականութիւն նեղելոցն՝ որ ի Թաւրէզ. և էր գլուխ զօրացն, ոմն անուն Ֆահրատ փաշայ. և էր անդ կռիվ սաստիկ, և մեք ոչ գիտեմք պատմել զաղէտ և զկսկիծ, զողբումն և զկոծումն և զարածութիւն, զսով և զգերութիւն, զսպասնութիւն և զայլ ազգի ազգի պատուհաս, որ եկն ի վերայ մեր վասն ծովացեալ մեղաց մերոց։ Երեւնայ աշխարհն, քաղաքն և երկիրն, և ամենայն շուրջադտյ գաւառքն ի յանօրէն ազգացն Պարսից և Իսմայելացւոց սրբաջնջ եղև ամենայն աշխարհս քրիստոնէից. զվերջ և զկատարած ոչ գիտեմք. միայն Աստուծոյ է գիտելի...» (Գ. Աղանեանց, «Դիւան Հայոց պատմութեան», գիրք Ժ, Թիֆլիս, 1912, էջ 34—37)։ Իրենց դառը վիճակի մասին է պատմում Հովհաննես Սեբաստացին 1585 թվի իր մի հիշատակարանում.

«Արդ գրեցաւ պատմագիրքս այս ի թվին Հայոց ՌԼԴ (1585) ի քաղաքիս Սեբաստիոյ ձեռամբս մեղապարտ և անարհեստ գրչի Յովաննիսիս ի թագաւորութեանն սուլտան Մուրատին ի նեղ և ի նուրբ ժամանակիս, զորս բազում մրրիկ յարուցանէր ի վերայ քրիստոնէից և յիւր ազգին ի տեղիս տեղիս փոխելով և հարկապահանջութեամբ և այլ բազում վշտաւք կռփահարէր զերկիր։ ...Զի ի մէջ դառնութեանն գրեցի զսայ, զի բռնութիւնն և չար հրամանն թագաւորին սաստկացեալ էր ի վերայ մեր վասն ծովացեալ մեղաց մերոց, զի ի յայսմ ամի առաքեաց զոմն ի նախարարաց իւրոց, որ եկն ի վերայ քրիստոնէից և զչար սահմանն կատարելով ի յերկիրս Սեբաստիոյ միայն Յ (300) մանկունս ժողովեաց և արձակեալ ընդ ամենայն տեղիս զնոյն առնէր ի վերա քրիստոնէական տոհմից. բայց ես, եղկելի գրիչս, յէի ըստ մանկութեանն հասակիս երբեմն փախչելով կայաք, երբեմն սարսելով, այսպիսի դառն և դժուար տանջանաւք և հառաչանաւք նաւաբեցի զգիծս...» (№ 1868, էջ 232բ—233ա)։

Այս դեպքը գրական մշակման է ենթարկել Սիմեոն Ապարանեցին։ Նրա գրած ողբը «Ի վերայ առմանն Թաւրիզու, որ առաւ ի Յօսմանէ և այլ ողբ ի վերայ տառապեալ ազգիս Հայոց, ասացեալ ի Սիմէոնէ վարդապետէ» խորագրով տես «Սիմէօն վարդապետի Ապարանեցւոյ վիպասանութիւն սակս Պաhլաւունեացն զարմի և Մամիկոնեանցն սեռի» 1870, Վաղարշապատ, էջ 158—162։

32. Իմա ղուլ, ղուլամ, Օսմանյան Թուրքիայի զորքի մի տեսակը, որ կազմված էր սարուկներից։

33. Իմա Ղարաբաղ։

34. Բնագրում «եւ»-ը կրկնված է։

35. Խոսքը Խուդաբենդէ շահի որդի Ամիր Համզայի մասին է, որին մեր ժամանակագիրներից ոմանք նշում են թագավոր 1585—1587 թթ. (ՄԺ, 1, էջ 196, 392), թեև սրան սովորաբար Սեֆյան շահերի շարքում չեն հիշում (հմմտ. Լեն-Պուլ, էջ 219)։

36. Իմա, Աբաս I։

37. Բնագրում մեկ-երկու բառ բաց է թողնված, Ա. Դավրիժեցու բնագրում այդ բանը չի նկատվում (էջ 614)։

38. Այս դեպքերը մի ժամանակագիր նշում է 1589 թ. (ՄԺ, 1, էջ 145)։

39. Բնագրում «Դեսպանս յարձակեաց, հրեշտակութիւն առաքեաց» ձևով, ուղղեցինք գրչի ցուցումի համաձայն։

40. Բնագրում գրված է «ՌԽ», իսկ երրորդ տառը բաց է թողնված։ Ա. Դավրիժեցու մոտ գտնում ենք լրիվ թվականը «ՌԽԴ» (էջ 615)։ Բաց թողած տառը պետք է լինի «Դ», որովհետև Մուրատ III-ը վախճանվեց 1595 թ. (Հայոց ՌԽԴ) հունվարի 16-ին (J. Hammer „Geschichte des Osmanisches Reichs" Zweiter Band, էջ 845), իսկ Մուհամմեդ III-ն էլ հաջորդում է նույն տարին։

41. Բնագրում տարիների քանակը բաց է թողած, մինչդեռ Ա. Դավրիժեցին իր բնագրում նշում է՝ «ամս հինգ» (էջ 615)։ Հավանաբար այդ հաշվումը կատարել է ինքը։ Օսմանյան թուրքերի և ավստրիացիների միջև այս պատերազմն սկսվեց 1595 թվին։

42. Բնագրում «տոլով» ձևով։

43. Ապստամբները Սիմոն I-ի ղեկավարությամբ Դորիի բերդը պաշարում են 1598 թ. և գրավում 1599 թվի գարնանը։

44. Ապստամբությունը ճնշելու համար թուրքական սուլթանը Վրաստան է ուղարկում Թավրիզի և Վանի բեգլերբեգ Ջաֆար փաշային։

45. 1600 թ. Նախիդուրիի մոտ տեղի ունեցած անհաջող ճակատամարտից հետո, Սիմոն I-ը Փարցխիսիից ոչ հեռու գերվեց։

46. Դուցե 1601 թ.։

XI

## ԳՐ. ԿԱՄԱԽԵՑՈՒ ԽՄԲԱԳՐԱԾ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ (XVII Դ.)

*Մատենադարանի №№ 3276 (էջ 13ա—15բ), 3078 (*А*, էջ 94բ—95բ), 1151 (*Б*, էջ 223ա—227բ), 7273 (*В*, էջ 63ա—67բ), 678 (*Г*. էջ 169բ—170բ), 605 (*Д*, էջ 20ա—21բ), 4998 (*Е*, էջ 127ա—129ա), 1771 (*Ж*, էջ 240ա—241ա) և 2383 (*З*, էջ 161ա—163ա) ժողովածուներում գտնվում են մի խումբ համառոտ ժամանակագրություններ, որոնք առաջ են եկել մեկ նախագաղափար օրինակից և հետագայում շարունակվել են տարբեր անձնավորությունների կողմից։ Ժամանակագրության այս խմբին են պատկանում նաև Վիեննայի և Լոնդոնի մատենադարանների հայերեն երկու ձեռագրերում գտնվող ժամանակագրությունները[1]։ Վերևում նշված ինը բնագրերի համեմատությունը ցույց է տալիս, որ եթե բացառենք մի քանի փոքրիկ տարբերություններ, նրանք, բոլորն էլ սկզբից մինչև Հայոց ՌԽԳ (1594) թվականը միմյանց հետ գնում են զուգահեռ, որից հետո միայն բոլորովին տարբեր ընթացք են ստանում։*

*Այս հանգամանքը մեզ ենթադրել է տալիս, որ վերոհիշյալ ինն բնագրերի ընդհանուր հանդիսացող մասն առաջ է եկել մի նախագաղաբար օրինակից, որը, հավանաբար, ավարտվել է հայոց ՌԽԳ (1594) թվականի դեպքերի նկարագրությամբ։ Դրանից հետո շարադրված դեպքերը, որոնք տարբեր օրինակներում տարբեր թվականներով են վերջանում (օրինակ № 3276 ձեռագրի տարբերակը վերջանում է 1640 թվականով,* Е*-ն՝ 1660,* А*-ն՝ 1614 և այլն), ավելացվել են հետագայում, տարբեր անձնավորությունների կողմից։ Վերոհիշյալ ենթադրության համար կարող ենք մատնացույց անել ուշագրավ հետևյալ փաստերը. նախ՝* ГЗ *տարբերակներում ժամանակագրությունը վերջանում է վերևում մատնանշված վկայությամբ,*

---

*[1] Հ. Տաշյան, Ցուցակ հայերէն ձեռագրաց, Վիեննա, 1895, էջ 870—871։ Ժամանակագրությունը պարունակող ձեռագիրը 43 թերթից բաղկացած մի ժողովածու է, որի վիճակի մասին Տաշյանը հետևյալն է գրում. «Հանգամանք դէշ, բաց ի այլ և այլ թղթերուն աղտոտած ըլլալէն (հմտ. 6-17, 19—23 և այլն) ամբողջը հատակոտորներ են, որով շատ թղթեր անկապ կսկսին (այսպես թղ. 1ա, 6ա, 19ա, 28ա, 31ա, 36բ) և նոյնպէս կիսատ կը լմնան» (էջ 870).* „A Catalogue of the Armenian manuscripts in teh British Museum", London. 1913, *էջ 227, «Թուական ժամանակաց» խորագրով։ Ժամանակագրությունը երկու տեղում էլ բերված է ոչ լրիվ, ուստի դրանց մասին բավականացանք միայն հիշատակելով։*

*Այս բնագիրը տպագրելիս մեզ հայտնի դարձավ նաև նրա մի այլ տարբերակը, (№ 8506, էջ 147ա—154բ), որը ունի մի քանի փոքրիկ շեղումներ։*

առանց հետագա ավելացումների։ Երկրորդ՝ Դ տարբերակը վերջանում է, ճիշտ է, մեր կողմից մատնանշված սահմանից՝ հայոց ՌԽԳ թվականից, մեկ տարեթիվ՝ հայոց ՌԽԵ, հետո, սակայն այնտեղ է, այդ տարեթվին հաջորդող ավելացումները պահվել են շարունակողի ինքնագրով, որը ցույց է տալիս բնագիրն ուրիշի կողմից շարունակելու փաստը։

Թե ով է եղել այս տարբերակների նախագաղափար օրինակի հեղինակը հնարավոր է պարզել Գր. Կամախեցու տվյալներով։ Նա իր ժամանակագրության[1] սկզբում բերում է ժամանակագրական երեք փոքրիկ բնագրեր, որոնցից առաջինը[2] հանդիսանում է առաջարկվող ժամանակագրության տարբերակներից մեկը։ Վերջինս ժամանակագրական իր եզրերով ընդգրկում է վերոհիշյալ 9 տարբերակների ընդհանուր հանդիսացող օրինակը։ Գրիգոր Կամախեցին այս տարբերակի մասին գրում է. «Թուականաբար վիպասանաբար շարագրութիւն և պատմութիւնք ժամանակաց կարճ ի կարճոյ ժամանակաց անցելոյ, զոր ոմանք գրեալ են, բայց ոչ զժամանակն և ոչ զտեղին և ոչ զանուն գրողին է յայտնի։ Եւ մեք Գրիգոր տրուպ ամենայն վարդապետաց հարկեալ մեր ի Գասպար իրիցէ՝ բանասիրէ և իմաստակէ՝ դրել համառօտ պատմութեանցս դրելոցս։ Եւ ապա մեր սկիզբն առնել ժամանակագրութեանց,...»[3]։ Այնուհետև նա երեք փոքրիկ բնագրերի մեջբերումից հետո դարձյալ գրում է. «Մինչև ցայս վայր գտաք այսպէս դրեալ յոմանց յայլ և այլ գրենաց և ժողովեցաք ի մի վայր հաւաքելով բազում աշխատանօք և մեծաւ ջանիւ»[4]։

Այսպիսով, ինչպես Գրիգոր Կամախեցին է նշում, իրեն հայտնի անանուն ժամանակագրական առանձին բնագրերից նա համառոտել է և խմբագրել այս բնագիրը, որը, ինչպես արդեն նշեցինք, հետագայում շարունակվել է տարբեր մարդկանց կողմից։ Նկատի ունենալով վերևում շարադրածը, կարող ենք հավաստել, որ այս ժամանակագրության նախագաղափար օրինակի կազմման կամ խմբագրման աշխատանքները կատարել է Գրիգոր Կամախեցին։

Կոմպիլյատիվ այս աշխատությունը կազմվել է մեզ հայտնի ժամանակագրական երկու համեմատաբար ընդարձակ բնագրերի հիման վրա։ Այսպես, նախագաղափար օրինակի առաջին մասի՝ սկսած հայոց ՆԿԷ թվականից մինչև հայոց ՋԽ թվականը և Անանուն Սեբաստացու (XIII դ.)[5] ժամանակագրության առաջին մասի համեմատությունը ցույց է տալիս, որ վերջինս աղբյուր է հանդիսացել առաջինին։ Իսկ երկրորդ մասը՝ սկսած հայոց ՊԼԳ թվականից մինչև հայոց ՌԽԳ թվականը, պետք է առաջ եկած լինի մի այլ Անանուն Սեբաստացու (XVI դ.) ժամանակագրությունից[6]։ Վերջինիս հեղինակի մասին խոսելիս արդէն ցույց էինք տվել, որ նա իր նկա-

---

[1] «Ժամանակագրութիւն Գրիգոր վարդապետի Կամախեցւոյ կամ Դարանաղցւոյ», հրատ. Մ. Նշանյան, Երուսաղէմ, 1915 թ.։

[2] Նույն տեղում, էջ 3—7։

[3] Նույն տեղում, էջ 3։

[4] Նույն տեղում, էջ 13։

[5] Տես վերևում, էջ 118—149։

[6] ՄԺ, 1, էջ 167—173։

բագրած վերջին դեպքերին (օրինակ, 1572 թվին) ժամանակակից է[1], իսկ այս ժամանակ Գ. Կամախեցին դեռ չէր ծնվել[2]։

Թեև համառոտ, սակայն ավելի հետաքրքիր են ժամանակագրության տարբերակների շարունակությունները։ № 3276 ձեռագիրն իրենից ներկայացնում է զանազան նյութերի ժողովածու։ Այն ունի տարբեր տարեթվերի վերաբերող հիշատակարաններ՝ 1319 թ. (էջ 151ր), 1384 թ. (էջ 121բ), 1355 թ. (էջ 191ա), 1598 թ., (էջ 217բ), 1624—1630 թթ. (էջ 86ր), բայց սրանցից և ոչ մեկը № 3276 ժողովածուի ընդօրինակման ժամանակին չեն վերաբերում, այն պարզ պատճառով, որ ժողովածուն ընդօրինակվել է 1640 թվականից հետո։

№ 3276 տարբերակի շարունակությունը 1601 թվականից, հասնում է մինչև Հայոց ՌՀԷ (1628) թիվը, որից հետո դեպքերի հիշատակումը ետ է դնում մինչև հայոց ՌԻԴ (1575) թիվը, իսկ այնուհետև, դեպքերը հաջորդաբար թվելով, հասնում է մինչև 1640 թ.։ Այսպիսով, № 3276 տարբերակի ժամանակագրության շարունակությունը (1594 թվից հետո) մեզ ներկայանում է երկու հատվածներով՝ Ա. 1601—1628 թթ., Բ. 1575—1640 թթ.։

Վերոհիշյալ երկու հատվածների մանրազնին քննությունը մեզ բերեց այն համոզման, որ դրանք միևնույն հեղինակի գրչին չեն պատկանում և իրար հետ չաղերսվող ու անկախ հատվածներ են, գրված ամենայն հավանականությամբ, ժամանակակից անձնավորությունների կողմից։ Մեր համոզման համար բերում ենք ուշագրավ հետևյալ հավաստիացումները. նախ՝ եթե այդ երկու հատվածները միևնույն անձնավորության կողմից կազմված լիներ, հազիվ թե հեղինակը թույլ տար այդպիսի անախրոնիզմ՝ սկզբում նկարագրերով 1601—1628 թթ. դեպքերն առանձին, իսկ հետո 1575—1640 թթ. դեպքերն առանձին, չնայած վերջինս ժամանակի տեսակետից ընդգրկում է առաջինի ժամանակագրական սահմանները։ Երկրորդ վերոհիշյալ երկու հատվածներում էլ մի քանի անգամ հանդիպում ենք միևնույն դեպքերի հիշատակությանը, որոնք երբեմն նշանակված են ոչ միայն տարբեր տարեթվերով, այլև տարբեր մանրամասնություններով։ Այսպես՝

Ա. Հատված

1. «Թվին ՌՀԻ նստաւ սուլթան Մուրատն։ Ի սոյն ամի Ապազա փաշան եկեալ յԱրզրում»։

2. «Թվին ՌՀԱ նստաւ սուլթան Մուստաֆան յետոյ կրկին մազուլ արին զսուլթան Մուստաֆան»։

2. «Թվին ՌՀԻ Խօսրով փաշայն վազիր եղաւ, եկեալ ի վերայ Արզրումու, ԺԷ օրն ՌՇԳ թօփ կդուց Գ գիմաց, մովրոմն ի հետ փլուց զպարիսպն բռնեց զԱպազա փաշայն առ գնաց Ըստ[ա]մբօլ»։

Բ. Հատված

1. «Թվին ՌՀԳ սուլթան Մուրատն նըստաւ թագաւոր, քաջ և արի, սեպտեմբեր ամսոյ»։

2. «Թվին ՌՀԱ առաջին սուլթան Մուստաֆան նստաւ թագաւոր խելագար խելօք»։

3. «Թվին ՌՀՁ Խոսրով փաշան զԱպազան եբեր յԱրզրումայ»։

---

[1] ՄԺ, 1, էջ 165։

[2] Գ. Կամախեցին ծնվել է 1576 թվին, նա այդ մասին իր ժամանակագրության մեջ հետևյալն է գրում, խոսելով 1583 թ. Երզնկայում տեղի ունեցած երկրաշարժի մասին, գրում է. «Եւ դեռ մեք եօթն ամաց էաք, որ ի շարժէն յետոյ զատամս կու փոխէի...» (էջ 8), կամ «Ցայսմ ամի (1590) զմեզ մանուկ գոլով չորեքտասանամեայ՝ բռնութեամբ աբեղայ օրհնեցին» (էջ2)։

Նման փաստեր կարելի է շատ բերել, սակայն բերածն էլ բավական է հետևեցնելու. որ Ա. և Բ. հատվածները միևնույն հեղինակի գործ չեն։

Երրորդ Ա. հատվածի (եթե բացառենք առաջին երկու՝ 1601 և 1602 թթ. վկայությունը) մի այլ օրինակը գտնում ենք B տարբերակում, որպես նրա շարունակություն։ Այն հանգամանքը, որ Ա. հատվածը, որպես ժամանակագրական առանձին բնագիր գտնվում է № 3276 և B տարբերակներում, ինքնին մի ապացույց է Ա. և Բ. հատվածների տարբեր անձնավորություններից կողմից կազմվելու մասին։

B Տարբերակն[1] սկսվում է Հ. Կողեռնի տեսիլքի մեկնության մեջբերումով (ժողովածուից թերթեր ընկնելու պատճառով այդ մասն այժմ թերի է)։ B տարբերակն ընդօրինակել է Գր. Կամախեցու աշակերտ Մինասը, 1635 թվին։ Այս տարբերակը նա վերցրել է իր ուսուցչի մոտ եղած տարբերակից։ Բերենք մեկ օրինակ.

| Գr. Կամախեցի<br>էջ 5 | Մինաս |
|---|---|
| «Ի սոյն ամի Արղօնն հարեց գաշխարհն և եղ հարկ ի վերայ ամենայն գլխոց»։ | «Ի սոյն ամի Արղաւնն հարեց գաշխարհն և եգ հարկ ի վերայ ամենայն գլխոյ»։ |

Ընդգծված բառը սխալ ընթերցմամբ Գր. Կամախեցու օրինակից անցել է Մինասի տարբերակին։ B տարբերակի շարունակությունը կազմում է «Թարիխ Տաճկաց» բնագիրը[2] և ապա № 3276 բնագրի Ա. հատվածի մի օրինակը, որը, մեր կարծիքով, Մինասի օրինակից անցել է վերջինիս։[3]

Б տարբերակը կազմում է Գ. Կամեխեցու օրինակից Մինասի վերցըրածի մի տարբերակը, որ ունի խորագիր՝ «Թվականաբար պատմութիւն կարճ ի կարճոյ գիտութիւն անցելոց ժամանակաց»։ Սակայն սույն տարբերակը թերի է վերջից։ Այստեղ բացակայում է Մինասի 1635 թվին վերաբերող վկայությունը և շարունակությունը։

A տարբերակը խորագիր չունի և կազմում է 94բ էջի 1589 թվի հիշատակարանի անմիջական շարունակությունը։ Այս տարբերակը վերջանում է 1602 թ. Թոխաթում տեղի ունեցած հրդեհի վկայությամբ։ Ժամանակագրությունը և մի քանի այլ նյութերի ընդօրինակող գրիչը ժողովածուի 201ր էջում թողել է հետևյալ հիշատակարանը. «Արդ՝ գրեցաւ սա ի թվին ՌԾԷ (1608) ձեռամբ բազմամեղ և անարժան Խաչատուր դպրի՝...», որը

---

[1] Այս տարբերակի մի օրինակը գտնվում է Երուսաղեմի № 819 ձեռագրում։ Այն հրատարակված է Գ. Հովսեփյանի «Յիշատակարանք ձեռագրաց» (հատ. Ա, 1951, Անթիլիաս) ժողովածուի մեջ, էջ 205—212, Գրիգոր Կամախեցու անունով։

[2] Այս բնագիրը, որը գտնվում է ձեռագրի 67ա—71բ էջերում, նպատակահարմար չգտանք հրատարակել, քանի որ նրա վերջին, ընդարձակ և հետաքրքիր մասը, կազմում է Գր. Կամախեցու ժամանակագրության երկու՝ 15 և 16 պարագրաֆների (էջ 35—38) բովանդակած տեղեկությունները, որոնք ընդօրինակվել են վերջինիս աշակերտ Մինասի կողմից, իսկ բնագրի սկզբի մասը վերաբերում է Օսմանյան սուլթանների կարգին (Օսմանից մինչև Մուրադ III), որտեղ առանձին նորություն չկա։ Բացի դրանից, ամբողջ բնագրի մի այլ տարբերակը հրատարակվել է Ս. Անեցու ժամանակագրության հավելվածում (տես էջ 200—203)։

[3] Սույն տարբերակի տարընթերցվածները գրեցինք № 3276-ի շարունակության տողատակ։

ցույց է տալիս թե ժամանակագրության նախագաղափար օրինակը № 3078 ժողովածուի մեջ ընդօրինակվել է 1608 թվին, որին և ավելացված է մի քանի տարվա՝ 1598—1602 թթ. եղելությունները։ Ավելացված դեպքերից մեկում կարդում ենք. «Թվին ՌԽԸ (1599) մարտ ամսոյ ի ԺԷ-ն այսպես դառնաշունչ ձմեռն եղև, որ զսրբոց Քառասնից բազմահանդէս ուխտն խափանեաց, որ չկարացաք ըղսովորական տօնախմբութիւնն առնել»։ Ընդգծված բառը ցույց է տալիս, որ այս վկայության արձանագրողը մասնակից է եղել այդ դեպքին։ Հետևապես անհիմն չի լինի, եթե ժամանակագրության շարունակության մի քանի տարվա վկայությունները վերագրենք խափանված տոնակատարության մասնակցողին։ Եւ որովհետև ժամանակագրությունն էլ ընդօրինակել է վերոհիշյալ դեպքերին ժամանակով շատ մոտ կանգնած մի անձնավորություն, կարծում ենք, որ ժամանակագրության շարունակողը և գրիչ Խաչատուր դպիրը, կարող են միևնույն անձնավորությունները լինել։

Ж տարբերակն, անշուշտ, ընդօրինակվել է A տարբերակից։

Д տարբերակը հիմնականում ընդօրինակել է Կիրակոս աբեղան (էջ 90ա, 133բ և այլն)։ Ժամանակագրությունը խորագիր չունի և կազմում է «Այս են Բժ-ան վարդապետքն» գրվածքի անմիջական շարունակությունը։ Այս տարբերակի շարունակության առաջին երեք վկայությունները վերաբերում են 1594—1598 թվերին, որոնք նույնությամբ գտնվում են A տարբերակի շարունակության մեջ։ Այդ հանգամանքը մեզ ենթադրել է տալիս, որ Д տարբերակը ընդօրինակվել է A-ից։ Իսկ 1598 թվականից հետո Д տարբերակը շարունակվել է ուրիշի կողմից, որը, հենց արձանագրողի ինքնագիրն է, գրված անվարժ, խիստ համառոտ ձևով։ Այն սկսվում է 1603 թ. շահ Աբասի կողմից Երևանի գրավման փաստի հիշատակությամբ և վերջանում 1679 թվի հունիսի 4-ին Երևանում տեղի ունեցած ավերիչ երկրաշարժի վկայությամբ, ընդգրկելով շուրջ 76 տարվա տեղեկություններ, որոնք չկան մյուս տարբերակներում։

E տարբերակն ունի «Պատմութիւնք և թուականք ժամանակաց» խորագիրը։ Ի տարբերություն մյուսներից սույն տարբերակն սկսվում է «Ի թուին ՀԲ զԱռճէշ էառ Թուրքն» հատվածով, այլ խոսքով, վերջինս չունի մյուս տարբերակների սկզբի մի քանի վկայությունը։ Այստեղ ևս նկատելի են նախագաղափար օրինակի վերջում կատարված ավելացումները, որոնք արված են ոչ հաջորդական կարգով։ Այդ ավելացումները վերաբերում են 1574—1664 թվերին։ Հեղինակն ակնարկում է, որ ինքը ժամանակակից է 1578 և 1660 թվականների իր վկայություններին, և որովհետև միևնույն հեղինակը դժվար թե կարողանար ժամանակով իրարից բավական հեռու տեղի ունեցած եղելություններին ժամանակակից լինել, մնում է ենթադրել, որ այդ դեպքերը արձանագրվել են տարբեր անձնավորությունների կողմից՝ մեկը՝ 1574—1584 թթ., իսկ մյուսը՝ 1660—1664 թթ.։ 1574—1584 թվերը ժամանակագրական տեսակետից ընդգրկվում են նախագաղափար օրինակի ժամանակագրական սահմաններում, սակայն 1574—1584 թթ. վկայությունները չենք գտնում ոչ նախագաղափար օրինակում և ոչ էլ նրա շարունակության տարբերակներում, որ ցույց է տալիս, թե վերոհիշյալ վկայությունները կազմվել են անկախ։ Այդ նույն բանը կարելի է ասել այս տարբերակի շարունակության երկրորդ (1660—1664 թթ.) հատվածի մասին։

Г և З տարբերակները նախագաղափար օրինակի վերջին եզրից՝ 1594 թվից հետո չեն շարունակվել։ Երկու տարբերակներն էլ գրված են անվարժ ձեռագրով։ Г-ն ունի «Այս են թվական Տաճկաց և այլազգացն» խորագիրը, իսկ З տարբերակը խորագիր չունի։

Ներկա հրատարակության համար հիմք ընդունեցինք № 3276 ձեռագրի տարբերակը, իսկ մյուսների տարընթերցվածները նշել ենք տողատակ։ Գ. Կամախեցու ժամանակագրության նախորդող տարբերակը նշանակել ենք Н տառով։

XI

## ԱՅՍ Է ԹՎԱԿԱՆ ՏԱՃԿԱՑ[1]

*Թվին հայոց ՆԿԷ (1018) զարթեաւ աստուածասաստ բար-* 13 ա
*կութիւնն, և ելին ազգն Թուրքաց ի վերայ քրիստոնէից և կոտորեցին անխընայ ի Վասպուրական, աւուրս Սէնեքարիմայ։ Եւ Սէնեքարիմ նեղեալ ի յայլազգացն և ետ զաշխարհն իւր ի Վասիլ թագաւորն Յունաց և ինքն եկեալ ի Սեբաստիայ Ե (5) որդովք, որ է՝ Դաւիթ, Ատոմ, Կոստանդին, Վէստ, Ապուսահլ[2]։*

*Թվին հայոց ՆԿԸ (1019) արձակումն սատանային, Ռ (1000) ամն լցեալ եղեն[3], և ահաւոր նշանք եղեալ բազում, զի երկինքն հերձաւ յարեելից յարևմուտս, և լոյսն ի վայր հոսեցաւ, և եղև խաւար, երևեցաւ աստեղք և ձայնք ահաւորք[4]։*

*[Ի] Ջրհեղեղին ի հայոց թվական՝ ՐՋԺ (5710) ամ է։ ՅԱբրահամէն ի հայոց թվական ՍՉԿԲ (2762) ամ է։ Ի Մովսէսէ ի*

---

*1-ինից—11-րդ տողերը* B *չիք*. *1-ին տողը* АDЖП *չիք*. *1.* Б *Թվականաբար պատմութիւն կարճ ի կարճոյ գիտութիւն անցելոց ժամանակաց,* ГЗ *Այս են թվական (*З *թվականք) Տաճկաց և այլազգացն (*З *այլազգաց),* Е *Պատմութիւնք և թուականք ժամանակաց*. *2-րդից—13-րդ տողերը* Е *չիք*. *2* АБГDЖЗ *ի թվին,* Н *ի թուականին, Հայոց* *չիք,* Г *ՆԿԾ* *փխ. ՆԿԷ,* D *զարթաւ,* З *զարթեօ։ 3* Г *բարկութիւն ի վերա քրիստոնէից,* Б *և (ելին)* *չիք,* П *որ* *փխ. և (ելին),* Б *ազգին քրիստոնէից։ 3—4* АDЖ *և կոտորեցին անխնայ* *չիք,* БГЗН *կոտորէին անողորմ*. *4* АDЖН *յաւուրսն,* Б *աւուրսն,* З *յօւրսն,* А *Սենեքարիմայ,* D *Սենաքարիմայ,* А *և (Սէնեքարիմ)* *չիք,* ГDЖ *և Սէնեքարիմ* *չիք։ 5* АDЖ *նեղացեալ,* АБГDЖ *ի (յայլազգացն)* *չիք,* АDЖ *այլազգեացն,* З *այլազգաց,* АБГDЖЗН *և (ետ)* *չիք։ 5* БЗ *զաշխարհս,* Г *զերկիրն և զաշխարհն։ 6* Г *թագաւոր Ունաց,* АБDЖЗН *ինքն* *չիք,* Г *ինք,* АБГDЖЗН *եկն,* Н *Սեբաստիա։ 7* АЖ *որդով,* АDЖ *որ է* *չիք,* D *Դաւթիւ, Ատոմիւ, Կոստանդինիւ, Ապուսալհիւ։ 8* АГDЖ *ի թվին,* АБDЗН *Հայոց* *չիք,* АБГDЖЗН *ՆՀԸ* *փխ. ՆԿԸ,* БН *եղև արձակումն (*Н *սատանայի),* ГЗ *արձակումն եղև,* АБГDЖ *սատանայի,* Н *հազար* *փխ. Ռ։ 9* АDЖ *ամ,* АDЖ *կապանացն* *փխ. լցեալ եղեն,* БН *և* *չիք։ 8-ից—11-րդ տողը* ГЗ *Ռ ամն լցեալ... ձայնք ահաւորք* *չիք։ 9* БН *եղեալ* *չիք,* БН *բազումք,* АDЖ *բազում եղեն,* АЖН *երկինք։ 10* А *հերձցաւ,* D *հերձօ,* Б *մինչև յարևմուտըս,* АD *լոյս,* D *հօսեցօ։ 11* АБЖ *և երևեցան,* D *և աստեղք երևեցաւ,* БН *և ձայնք (*Н *ձայն) ահաւորք յաւուրսն հողէտես վարդապետին Յոհանէսի (*Н *Յոհանէսին) որ մականունն (*Н *մականուն) Կոզեռն կոչէին որ մեկնաց զտեսիլքն և զնշանքն և բազում բանս խօսեցաւ վասն ապագայիցն,* B *սկզբից բերի։ սկսվում է՝ հոգետէս վարդապետին Յոհաննէսին որ մականուն Կոզէռ կոչեն զի մեկնեաց զտեսիլքն և զնշանքն և բազում բանս խաւսեցօ վասն ապագայիցն։ 12-րդից— 13-րդ առդերի փոխարեն՝* ГЗ *ի թվին ՐՋԺ ջրհեղեղն եկաւ։ 12* АБВDЖН *հայ թվականն,* А *ՐՋԾ* *փխ. ՐՋԺ,* B *ՌՇԿԳ* *փխ. ՐՋԺ,* АБВDЖН *ամ է* *չիք,* АБDЖН *յԱբրահամէ։ 13* АБDЖН *հայ,* А *թվականն,* АБDЖН *ամ է* *չիք,* А *Մովսիսէ,* D *Մովսէս,* БН *ի (Մովսէսէ)* *չիք։ 12—13 տողերը յԱբրահամէն... ի Մովսէսէ ի* B *չիք։*

հայոց թվական՝ ՌՇԿԹ[5] (1569) ամ է, Ի ծննդենէն Քրիստոսի մինչև ի Նիկիու սուրբ ժողովն՝ ՅԻԲ (322) ամ է։ Եւ ի հայոց թվականին Ժ (561) կարգեցաւ հինգ հարիւրակն, որով ուղղեաւ Զատիկն[6].

Թվին ԾԲ (603) Խաղրդա շրթունքն է գլուխ Իսմայելացոց։

Թվին Կ (611) երևեցաւ Մահմետն[7].

Թվին ԿԲ (613) բաժանեցան Վրացիքն ի միաբանութենէ Հայոց[8]։

Թվին ՀԲ (623) զԱրճէշ էառ Թուրքն։

Թվին Զ (631) տիրեցին Ապուպաքր, Օմարն, Օսմանն ամս ԼԲ (32)։

Թվին ՇԱ (1052) տէր Պետրոս կաթուղիկոսն երեր դկենաց փայտն ի Պօնտոս, ի ժամանակս Վասիլ թագաւորին. արար ջրօրհնէք և գետն արգիլաւ ի յետս ժամ մի։ Եւ անտի գնաց տէր Պէտրոսն ի Կոստանդնուպօլիս, կացեալ անդ Դ (4) ամ. և անտի եկեալ ի Սեբաստիայ, առ որդիսն Սենէքարիմայ, ի Սեբաստիոյ վախճանի[9]։

Թվին ՇԶ (1057) տէր Խաչիկ կաթուղիկոսն, որ էր քոյր որդի տէր Պետրոս կաթուղիկոսին, թագաւորն Ստամպօլայ՝ Տուկիծ անուն տարեալ ի մօտն դաէր Խաչիկն, էարկ ի բանտն Գ (3) ամ, և պահանջէր ի նմանէ զգանձս տէր Պետրոս կաթուղիկոսին[10]։

Թվին ՇԺԳ (1064) բարձան թագաւորութիւնքն յԱնոյ, որ էր վերջին թագաւորն Յովանէս[11]։

Թվին ՇԽԵ (1096) Ֆռանգ էառ զԵրուսաղէմ[12]։

Թվին ՇԾ (1101) ոչ վառեցաւ լոյսն յԵրուսաղէմ յաւուր շաբաթու, այլ ի կիրակի յինն ժամու։ Ծռազատիկ արին ամենայն ազգն, Հայք և Ասորիք ուղիղ կացին[13]։

Թվին ՈԺԷ (1168) ահագին շարժ եղև յԷրզնկան՝ ԺԲՌ (12000) մարդ մեռաւ[14]։

Թվին ՈԻԵ (1176) թագաւորն Երուսաղէմի եհար զՍահալա-

---

1—3 տողերը E չկա։ 1 ADH հայ թվականն, БЖ հայ, ADЖ ՍԿԳ փխ. ՌՇԿԹ, БН ՌՇԿԳ փխ. ՌՇԿԹ, АБDЖН ամ է չկա, В հայոց թվական ՌՇԿԹ ամ է չկա, ADЖ ի ծննդենէն Քրիստոսի ի (D մինչ ի) Կոստանդիանոս ի Տրդատ (D Տրդադ) ի Լուսաւորիչ ՑԺԳ։ 1—2 A ի ծննդենէ... ամ է չկա։ 2 БВ սուրբ չկա, БВН ի ժողովն Նիկիական, ամ է չկա, АВВDЖ և չկա, A թվին։ 3 A ի Ժ-ն, В ի Ժ, D ի Ժ-ն եղաւ, Ж ի Ժ եղաւ, A եղաւ փխ. կարգեցաւ, Ж Ե փխ. հինգ, A ուղեցաւ, D ուղեցօ։ 4-րդ տողը АБВГDЖЗН չկա։ 5—7-րդ տողերը E չկա։ 5 БВГН ի թվին, A ի թվի ի Կ եղաւ Մահմէտն, D եղաւ փխ. երևեցաւ, Ж ի Կ եղաւ Մահմէտն։ 6 АБВГН ի թվին, АБDН Վրացիք, Г բաժանեցան ի Հայոց, З ի չկա։ 8 АБВН ի թվին, Б զԱրճէշն, Г առաւ Վրացի Թուրքն։ 9-րդից 20-րդ տողերը АБВГDEЖЗН չկա։ 21-ից 22-րդ տողը Б չկա։ 21 АВН ի թվին, E թուին, АЖ ի ՇԺԳ, ВЕЗН թագաւորքն յԱյնւոյ, ГD թագաւորութիւն, Г Յունաց փխ. յԱնոյ, АГD է փխ. էր։ 23 АБВН ի թվին, АГDЖЗ Ֆռանկն, БВН Ֆռանգն, БН առաւ, В առ։ 23-րդ տողը E չկա։ 24 АБВН ի թվին, E թուին, D վարեցօ, З վառեցօ, ADЖ Երուսաղէմ, З Երուսաղէմ, АЖ յաւուրս, З ի օուր, Г ի աւուր շաբաթին։ 25 БВГЗН ի չկա, АБВГDЗ կիրակէի, Ж կիրակէ, БВГЕЗ Թ փխ. յինն, D ինն, Ж ինը, ГЗ ժամուն, ADЖ որով Ծռազատիկ արարին, В արին չկա, ГЕ արարին։ 26 АБВГDЕЗН ազգ, Ж ազգք, Б բայց Հայք, E հայր փխ. Հայք։ 27 АБВ ի թվին, E թուին, Н ի թվականին, АБВDЕЖН ՌԺԵ փխ. ՌԺԷ, Б Յեղնկան, D Եղընկայն, E Յեղէն[ե]ան, Ж Երզնկան, АБВDЕЖН ԺԲՌ մարդ մեռաւ չկա։ 27-րդից 29-րդ տողերը ГЗ չկա։ 29 АВ ի թվին, E թուին, Н ի թվին ՌԺԵ, E եհար չկա, E Սալահատին, ВЖ զՍալհատին։

տին սուլտան ի դուռն Երուսաղէմի, որ եկեալ ԾԽՌ (140000) հո- 13ր
գով՝ առնուլ զԵրուսաղէմ[15]։

‖ Թվլին ՈՁԵ (1236) շարժ էղև յԷրզնկան. եկեղեցի մի փլաւ[16]։

Թվլին ՈՂԱ (1242) Պաչօն էառ դԿարնոյ քաղաք, Հռոմք՝ զԵզնկան[17]։

Թվլին ՉԳ (1254) շարժ եղև յԷրզնկան[18]։ Ի սոյն ամի Արղօն համարեաց զաշխարհն և եգ հարկ ի վերայ ամենայն գլխոյ[19]։

Թվլին ՉԹ (1260) սուլթանն Մսրայ կոտորեաց զօրս Թաթարին, որ [էր] գլխաւորն ]Ք]իթբուղան[20]։

Թվլին ՉԺԴ (1264) Շահպատինն տարաւ զՎարդան վարդապետն ի մօտն Հուլայուն խանին. բազում բան իմաստութեան հարցմունս արարին և մեծաւ պատուով պատուեց զվարդապետն[21]։

Թվլին ՉԺԷ (1268) շարժ եղև յԷրզնկան, ի յօր կիրակէին՝ ԺԵՌ (15000) մարդ մեռաւ։

Եւ ի սոյն ամի մոլորեցան Ժ (10) ազգք քրիստոնեա Ջատիկն։

Թվլին ՉԼ (1281) շարժ եղև յԷրզնկան, Աստուած պահեց, որ ոչ փլաւ։

Թվլին ՉԼԶ (1287) մայիս ամսոյ անադին շարժ եղև յԷրզնկան, բազում անգամ մարդ մեռաւ, որ զթիւն Աստուած միայն գիտէ[22]։

Թվլին ՉԼԹ (1290) սաստիկ շարժ եղև յԷրզնկան, Աստուած պահեց, որ ոչ փլաւ։

Թվլին ՉՂԴ (1345) շարժ եղև յԷրզնկան շատ երերաց, զերթ նաւն ի մէջ ծովուն, Աստուած պահեց, որ ոչ փլաւ։

Թվլին ՊԻԳ (1374) դեկտեմբեր Ը (8), օրն ուրբաթ, շարժ եղև

1 ABDEЖH սուլտանն, D Երուսաղէմայ, E յԵրուսաղէմի, H Երուսաղեմի, DE ՌԾ փխ. ԾԽՌ, H հարիւր քսան հազար զօրաւք, БВ ոգով։ 3-րդ տողը ADЖ չիք։ 3 БВ ի Թվին, E Թուին, БВ եղաւ, БЕ Ցեզնկան, В Եզնկան, H շարժեցաւ Երզնկան, В ըլաւ, E փըլաւ։ 4 АБВН ի Թվին, E Թուին, AЖ Պաչաւն, D Բաչօն փխ. Պաչօն, В Բաչաւն, ГЗ Պաչոն, D Պօչաւն, E Պօչօն, H Բաչօն, Ж եառ, АБВГDЖЗН քաղաքն։ 4—5 AЖ զՀոռոմք և զԵզրնկան, Б զՀոռումք և զԵզընկան, В և զԵզնկան, ГЗ զՀռոմք զԵզընկան, D զՀռոոմ և զԵզընկայն, H զՀռոմ և զԵրզնկան, E և Հռոմք զԵզնկան։ 6-րդից—9-րդ տողերը ГЗ չիք։ 6 A ի Թվին Հայոց, БВН ի Թվին, E Թուին, ADЖН շարժեցաւ, БВН դարձեալ շարժ եղաւ, Ж եղև չիք, АБВDEЖН Եզընկան (Б Ցեզնկան, В Ցերզընկտն, E յԵզըկան Ж Երզընկան, H Երզնկան) ԺՁՌ մարդ մեռաւ, ADЖ Արղաւն, БН Արղօնն, В Արղաւնն, E Արղուն։ 7 ADЖ համարեց, Б հարկեց, В հարբեց, H հարթեց փխ. համարեց, ADЖ զաշխարհս, E իւր աշխարհն, H գլխոց։ 8 ВН ի Թվին, E Թուին, Ж Մսրա, ADЖ կոտորեց, զազգն փխ. զօրս, В զաւրս, E զզօրսն, H զզօրս։ 9 AЖ գլխաւոր, D գլխօոր, ADЖ Քիթպուղան, Б Քիթպողայն, ВН Քիթպուղայն, E Քիթըպուղանն։ 10 БВН ի Թվին, E Թուին, A ի ՉԺԳ-ն, E ՉԺԻ, Ж ՉԺԳ-ն, БВ Շահապատինն, Г Շահպազին, D Շահպատին, E Շահպանդին, DЗ տարօ։ 11 Г ի չիք, Г մաւտն, E քովն, Б Հօլաւու, ВН Հուլաւուն, ГЗ Հալոյն, D Հոլաւուն, E Հալաւու, ADЖ խանն, E և բազում։ 12 ADЖ հարցում արաւ (D արօ), БВГЗН արար, ADЖ մեծ, З մեծօ, AЖ պատվով պատվեց, Б պատուեաց, ВГЗН պատով պատուեաց, E և պատուով մեծարեաց զնայ փխ. և մեծաւ... զվարդապետն։ 13-րդ և 14-րդ տողերը ADEЖ չիք փոխարէն՝ ՉԺԵ (E ՉԺԷ) սուլտանն Մսրայ աւերեց (E աւերեաց) զաշխարհն Կիլիկեցոց (E Կիլիկէցւոց), 13-րդ—14-րդը БВН չիք, 13—24-րդ տողերը ГЗ չիք։ 15 АБВDEЖН Թվին (E Թուին) ՉԺ փխ. և ի սոյն ամի (ՉԺԷ), БВЕЖН Ջատիկն Ժ ազգ քրիստոնէիցն (В քրիստաւնէիցն, E քրիստոնից, Ж քրիստոնէից), D ազգ քրիստոնէից։ 16—24-րդ տողերը АБВDEЖН չիք։

յէրզնկան, եկաց ժամ մի, կարծեցին թէ ոչ շարժի, կրկին շարժեցաւ, պարիսպն փլաւ։

Թվին ՊԼԳ (1384) Բուրհանդատին սպան զտէրն Սեփաստիու, զՍտեփանոս եպիսկոպոս նահատակեաց և զՔառասնից վանքն քակեաց[22]։

Թվին ՊԼԶ (1387) եկաւ Լանկ Թամուրն բազում զօրօք ի Սմրղնտայ, եկեալ աւերեաց զՍեբաստիայ և գնաց ի Ցանկուրիայ, զխոնթքարին [եղբայրն] Իլտուրում Պայազիտն եդիր ի զաֆաղն[24]։

Թվին ՊՂ (1441) այրեցին ըղՍտրչայն ի Մարզուան[25]։ Ջնէրմակ դօտին վերուցին։

Թվին ՋԷ (1458) շարժ եղև յէրզնկան՝ ԼԲՌ (32000) մարդ մեռաւ։

Թվին ՋԺ (1461) Չիթախն եկեալ էառ զՏրապիզոն[26]։

Թվին ՋԺԸ (1469) մահ անկաւ յաշխարհս, Նաղաշ վարդապետն զողըն ասաց[27]։

Թուին ՋԼԱ (1482) մեռաւ սուլթան Մահմատն և նստաւ Պայազիտն։ Եւ շարժ եղև յէրզնկան. ԼՌ (30000) հոգի ներքև հողին մնաց[28]։

---

1—5 տողերը ГЗ չիք, 1—2 տողերը АБВDЕЖН չիք։ 3 БВН ի թվին, Е թուին, А ի ՊԼԳ, Ж ի ՊԼԳ-ն, АDЖ Բուրհանատինն, Б Բուրհանայդատին, ВЕН Բուրհանազաաին, АБЖН եսպան, АБDЖН Սեբաստիոյ, Б Սեբաստիու 4 Е և զսուրբ Քառասունքն քակեաց։ 6 Б ի թվին, Е թուին, БВЕН եւ, Ж Լանկ, З եւ Թամուր Լանկն, АВ զաւրաւք, БDЖ զաւրօք։ 7 А Սմրզզանդայ, Е Սզամանդայ, АDЕЖ և եկեալ, ГЗ եկաւ, Н եկեալ չիք, А աւերեաց զՍեփաստիայ, БВН և աւերեաց զբազում աշխարհս մանաւանդ զՍեբաստիայ (ВН ըՍեփաստիա) և գնաց ի Ցանկուրիայ (В Ցանկուրիա), ГDЕЖ աւերեաց զՍևասա, ГDЖ և չիք, ГЗ ի չիք, А Ցանդուրիայ, Г Անկուրեա։ 8 В զզուանդքարին, БВГЗН եղբայրն չիք, Е որդին փխ. [եղբայրն], АЖ զԾլտրում, D զԸլտրումն, Е Էլտրում, Н Իլտրում, Г Պաեազիդ, եթիր, D եդիր փխ. եդիր, В զաւֆազն, D խաֆասն, Е ի խաֆասն. եդիր է (7) ամիս, Н ի խաւասն եդիր։ 9 Б ի թվին, Е ի թուին, АDЖ ՋԱ փխ. ՊՂ, В ՊՋ փխ. ՊՂ, Г Խարշան, Е զԽտէրշան, ЖЗН զԽտրշան, Г ի չիք։ 10 АDЖ զճերմակ դօտին վերուցին չիք, БН և զսպիտակ տուլպանտն վերուցին ի Հայէն, В զսպիտակ տաւլպանտն վերացուցին ի Հայէն, Г ի սպիտակ/ի Հայոց վերուցին, Е տուլպանդն փխ. դօտին, Е առին և կապուտ տուին փխ. վերուցին։ 10-րդ և 11-րդ տողերի միջև՝ АБВГDЕЖЗ թվին (Е ի թուին) ՋԱ Ջիանշան (БЗ Ջիհանշահ, В Ջիհանշան, Г Ջըհանշահն, D Ջիհանշահն, Е Ճիանշայ) խալիֆան երեկ (Г երեկ չիք) էառ (Г էդնկան առաւ) զԾզընկան (БВ զԾզնկան, Е զԾզէնկան, Ж զԾրզնկան), АБВDЖН թվին Պ՞Թ մահ տարածեցաւ (D տարածեցօ), АБВГDЕЖН թվին (Е ի թուին) ՋԲ առաւ (Г առաւ չիք, Е էառ) սուլթան (АЖ սուլտան, В սուլղան) Մուհամատն (ВГD Մահմատն, Е Մահմատ) զՍտամպօլ (А զԸստամբաւլ, В զՍաանպաւլ, Г Ըսաանպուլ, ЕЖ զՍտամպօլ)։ 11—12-րդ տողի փոխարեն՝ АDЕЖН թվին (Е ի թուին) Ջb (Е ՋԷ) փլաւ (D ըլօ) Ծզընկան (Е Ծզէնկան, Ж Ծրզնկան) ի շարժէ (А ի շարժմանէ, Е ի շարժմանէն), БВН թվին ՋԷ փլաւ (В ըլաւ) Ծրզէնկին (В Ծզընկու) պարիսպն ի շարժէն։ 11—13-րդ տողերը ВГDЕ չիք։ 13-րդ տողը АБЖН չիք։ 14 Е ի թուին, Б ՋԺԲ փխ. ՋԺԸ, А ընկաւ, АDЖ ամէն աշխարհ, Е ամէն աշարհ և, БВ աշխարհս, Г ամենայն աշխարհ, D Նախաչ, Е վարդապետ ողը, Ж վարդապետ։ 16 АБВDН թվին, Е ի թուին, З մեռօ, Е մեռաւ չիք, А Մուհամատն, Б Մահամատն, Е Մահմէտն, ЗН Մահայմատն, Г և չիք, А որդի նորա սուլտան Պայազիտն, БВГDЕЖЗН նստաւ (З նստօ) որդին (D որդին չիք), սուլթան (Г սուլթան չիք)։ 17 В Պ[այ]ազիտն, Г Պայ[ա]զի[դ]ն, АЖ ժամ եկաւ Ծզընկան, БВН եկաւ Ծզընկան, D եզօ Ծզընկան, Е Ծեզէնկան, Б ԼԳ փխ. ԼՌ, Ж հոգին, Б ի ներքև, БВ մնացին, Е հոգոյն մնացին պարոնն մինչև ի Բաբերդ փխ. ներքև հողին մնացին։ 17—18-րդ տողերը ГЗ և շարժ.... մնաց չիք։

Թվին ՋԿԲ (1513) սուլթան Սէլիմն սպան զհայրն իւր Պա-յազիտն և ինքն նստաւ[29]։

Թվին ՋՀԵ (1526) սուլթան Սուլէմանն գնաց էառ զԹախտն Ունկռուզաց, որ է Պուտուն[30]։

Թվին ՋՀԶ (1527) Տաւռիլու Հոռոմն գլուխ քաշեց. Հուսէ[ի]ն փաշան ի վերայ գնաց զՀոռոմն ջարդեց և գերեաց։

Թվին ՋՀԷ (1528) Աթ [[ մաճայ խալիֆան ելաւ։ 14 ա

Թվին ՋՁԴ[31] (1535) ի Շնքուռոյ[32] գեղէն էրէց մի այրեցին։

Թվին ՋՁԵ (1536) զՍօճ[ա] Կօկճան նահատակեցին ի Սե-բաստիայ[33]։

Թվին ՋՁԸ (1539) ծռազատիկ արարին։

Թվին ՋՂԷ (1548) Ալխասն երեկ [և] հանեց տարաւ զխոնթ-քարն ի Թարւէզ, ի վերայ եղբօրն, որ աւիրեց զԹարւէզ, իսկ տէրն

---

1 Г ի թվին. Б ՋԿԵ փխ. ՋԿԲ. АЗ եսպան, Ж Սելիմն եսպան, Г սպան սուլ-թան Սէլիմն։ 2 АБВГDЖ զՊայազիտն, Е Պայազիտ, Е նստաւ ի թախտն։ 2—3-րդ տողերի միջև՝ АDЖ թվին ՋԿԴ սուլտանն Սելիմն գնաց ի Չալ[դ]արանն կռվեցաւ (DЖ կռուեցաւ) հետ շահին և կոտրեց (DЖ կոտորեց) և ի ՋԿԶ գնաց առ (D էառ) զՇամ և զՄըսր։ Թվին ՋԿԸ սուլտան Սելիմն արաւ զմանչ ժողովելն։ Թվին ՋՀ մեռաւ Սելիմն և նստաւ ի թաղթն (D ի թաղթն չիք) սուլտան Սուլէյմանն, ի նոյն ամին ի Սեփաստիայ ըաղանիք շինեցին (D ի նոյն ամին...շինեցին չիք)։ Թվին ՋՀԱ այրեցին զՊեխին որդին Սաֆարն (D զՊեխին որդին չիք)։ БВГ թվին ՋԿԴ սուլթան Սելիմն գնաց ի Չալտրան (Н Չալտարանն) կռվեցաւ (Н պատերազմեցաւ ի) հետ շահին և կոտորեաց (Н կոտորեց և գլխոցն բերդ արար) և ի ՋԿԶ թվին էառ զՇամ և զՄսր։ Թվին ՋԿԸ սուլթան Սելիմն չա-րացաւ և տղայ ժողովեց ի քրիստոնէից։ Թվին ՋՀ մեռաւ Սէլիմն և նստաւ ի թաղտն (Н ի թաղտն չիք) Սուլէմանն (Г այնուհետև չիք). ի նոյն (Н սոյն) ամին ի Սևաստ (Н Սերաստ) բաղանիք շինեցին։ Թվին ՋՀԱ այրեցին զՊեխին որդին զՍաֆարն, Е ի թուին ՋԿԴ սուլթան Սէլիմն գնաց ի Չարաէրանն, կռուեցաւ հետ շաեին և կոտորեաց զամենե-սեան. և ի ՋԿԶ թուին գնաց էառ զՇամ և զՄսէր, զՀալապ, զԱտանայ և զԱնթափ և զՄարաշ, Ի թուին ՋԿԸ սուլթան Սելիմն չարացաւ և տղա ժողովեաց ի քրիստոնէից. ի թվին ՋՀ մեռաւ սուլթան Սէլիմն և նստաւ ի թախտն Սուլէյմանն։ Ի սոյն ամի Սևաստ բաղանիք մի շինեցաւ. ի թուին ՋՀԱ այրեցին զՊէխին որդին զՍէֆէրն։ 3-րդ և 4-րդ տողերը ГЕЗ չիք։ 3 АDЖ ՋՀԷ փխ. ՋՀԵ, ВН Սուլէման, Ж Սուլէյմանն, D առ։ 4 АDЖ Ընկռուզաց, АD զՊուդտան փխ. որ է Պուտուն, Б զՄոյութուն փխ. որ է Պուտուն, ВН զՄութուն փխ. որ է Պուտուն, Ж որ է չիք, զՊուտան։ 5 Е ի թուին, А ՋԿԶ փխ. ՋՀԶ, АБВD Տոռիլու, Г Տարիլուն, Е Տոռոմինոյ, Ж Տուսիլու, Е Հոռումն։ 6 Е փաշէն, Ж պաշան, АБВГDЕЖЗН ի վերայ չիք, АБВГDЖН զՀոռոմն չիք, БВН կոտորեաց և գերե-ցուց, ГЗ կոտորեաց և գերեցուց զնայ (З զնոսայ), АD ու գերեցուց, Ж ու փխ. և, Е գերեցուց։ 7 АDЖ ՋՀԵ փխ. ՋՀԷ, Е ի թուին ՋՀԵ։ 7—8-րդ տողերի միջև АБВDЕЖН թվին (Е թուին) ՋՁԲ զՏևուցու (БВЕЖ զՏևոցու) վանացն զՀարապետ (БВЕН զՀարապետ չիք, D զՀարպետ) աբեղայն (А հաբեղան, Е աբեղա մի, Ж աբեղան) այրեցին (В երեցին)։ 8—11-րդ տողը Г չիք։ 8-րդ տողը Е չիք։ АБВЖН ի չիք, А Շնքըկու, Б Շնքուկու, ВЖ Շնքոկու, А գեղին, Б գեղէն չիք, АЖ գերէցն, АЖ մի չիք։ 9 Е թուին ՋՁԴ, զՍոճա Ոկճէն, Н թվին ՋՁԵ չիք, АЖ ի Սևաստ նահատակեցին, БВН Սևաստ փխ. Սեբաստիայ, Е Սևա[ս]տ թէ քուփր է ասեր։ 11 Е թուին, Н ՋՁԲ փխ. ՋՁԸ, В արին, Е արարին ծ ազգ բայց ի Հայոց և յԱսորոց։ 12 Е թուին, DЕЖ ՋՂԵ փխ. ՋՂԷ, А Ալխօսն, DЖ Ալ-խաւսն, Г եկաւ, Е եկաւ ի Ցստամբօլ և հանեալ, Г և հանեց չիք։ 13 ի (Թաւուէզ) չիք, В Թօրէզ, Е Թարուէզ, Ж Թաւրէզ, Г ի վերայ չիք, АВЕЖ եղբաւրն (ВЕ եղբօրն, Ж յեղ-բօրն) ի վերայ, БDН յեղբօրն (D եղբաւրն) վերայ, АБВГDЕЖ և փխ. որ, А յաւիրեց, БН աւերեաց զԹարվեզ. զՍնուս, В զԹաւրէզ, իսկ տէրն չիք, D յաւերէց, Е աւերեաց, Ж աւերեց զԹաւրէզ, АБDЖ տէր։

Թարվիզու շահ Թամազն եկեալ աւիրեց զՎանուս, զԲասէն, զԱրզրրում, զԴերջանն, զԿեղի, զԽարբերդ, զԷրզնկան, զՍպեր[34]։

Թվին ՋՂԹ (1550) յԱրզուրում քաղաք աղատի որդիքն մէկ գիշերն Հ (70) հոգի ջարդեցին և մեծ աղէտ եղև[35]։

Թվին ՌԶ (1557) Կեղեցի Ղուկաս վարդապետն զՀայոց տոմարն ի յոտք հանեց։

Թվին ՌԶ (1557) որդիք խոնթքարին կռուեցան ի Ղոնիայ. Սէլիմն զՊայազիտն փախուց մինչև յԱրզրում. և նա դնաց ի շահն Գ (3) որդովն, անդ սպանին զնա[36]։

Թվին ՌԺԵ (1566) սուլթան Սուլէմանն գնաց ի վերայ Փէջայ[37] և անդ մեռաւ։

Թվին ՌԺԹ (1570) առչկան բուղն եղեն յԷզնկան։

Թվին ՌԺԶ (1567) նստաւ սուլթան Սէլիմն։

Թվին ՌԶ (1557) առին զԿիպրոս[38]։

Թվին ՌԻԴ (1575) մեռաւ Սէլիմն և նստաւ սուլթան Մուրատն։

Թվին ՌԻԵ (1576) ազեոր սաստ եղաւ։

Անհադին շարժ եղև յԷրզնկան նոյեմբերի Ե (5), ի մէջ գիշերի, մարդ ի շէն չկարաց պառկել Դ (4) ամիս և ապա դադարեցաւ։

Թվին ՌԺԶ (1567) ազեոր սաստ եղաւ։

Թվին ՌԼ (1581) գօտին ի գլխնոյն առին, սուլթան Մուրատն էր[39]։

1 В Թարվիզու... աւիրեց չիք, АЖ Թավրիզին, D Թաւըիզին, Е Թարուիզին, ADEЖ Տահմանն, Б Թամանն, Г եկաւ, БЕ աւերեաց, Ж աւերեց, Б զԹարվէզ զՎնուս, В զԹավրէզ զՎնուս, Е զէրզէրում։ 2 А զծզրնկան, ВВЖ զծղնկան,Е զծզըկան, А զՇսպեր, D զՍերեր, Е Սպեր, Ж Սպեր։ 3—6-րդ տողերը АВВГDЕЖЗН չիք։ 7 Е թուին, АВВГDЕЖЗН ՌԸ փխ. ՌԶ,БВ որդիքն, ГЗ խոնդկարին որդիքն, D խոնթքարին, Е սուլթան Սուլէյմանին փխ. խոնթքարին, AD կովեցան ի Կոնիայ, Н յիկոնիա, Ж կովեցան ի Կոնիա, Б Կոնիայ, В Կոնիա, Г Կունեայ, F յիկոնիայ։ 8 Е փախոյց, АГDЖ Աոզրում, Б ի Ցարզրումն, В ի Ցարզրում, Е յէրզէրում, БВ նա չիք, ЕЗ նայ, ADЖ ի շահն չիք։ 9 Е որզովքն, АГDЕЖ ի անդ, З անա, Г յըսպանի[ն], АГDЕЖН զնա չիք։ 9—10-րդ տողերի միջև АБВГDЕЖЗН թվին (Е թուին) ՌԺԲ մահ տարաժեցաւ (З տարաժեցօ յաշխարհ, D տարաժեցօ)։ 10 Е թուին ՌԺԳ, А սուլտանն, Г սուլթան չիք, D Սուլէման, Е Սուլէյման, Ж Սուլէյմանն, З գնաց սուլթան Սուլէըման։ 10—11 Г Բէճայ, Е Փեջա, Ж Փէչա։ 11 АВВГDЕЖН անկաւ (З անկօ) փխ. մեռաւ։ 12-րդ տողը АБВГDЕЖЗН չիք։ 13 Ж թվականին, БВГDЖЗН սուլթան չիք, Е թուին ՌԺԵ նստաւ Սելիմն ի թախտն, З նստօ, Г Սելում։ 14 АВВГDЖЗН ՌԻ փխ. ՌԶ, АЖ զԿիպրոզ, Г զԿիրիտ փխ. զԿիպրոս։ 14-րդ տողը Е չիք։ 14—15-րդ տողերի միջև БВН աղչկան (В աղջկան) ահն թվին ՌԺԸ էր։ 15 ADEЖ ՌԻԳ փխ. ՌԻԴ, Г ՌԻԲ փխ. ՌԻԴ, З մեռօ, նստօ, Г սուլթան չիք։ 15—16 ВГ Մուրատ։ 17—20-րդ տողերը ВВDЕЗ չիք։ 17—23-րդ տողերը Г չիք։ 17 А ՌԻԳ փխ. ՌԻԵ, Ж ՌԻԳ փխ. ՌԻԵ, АЖ սաստղն։ 18—21-րդ տողերը АЖН ահադին շարժ եղև....եղաւ չիք։ 21—23-րդ տողերը А չիք։ 21 БВН ՌԻԶ փխ. ՌԺԶ, D ի նոյն ամի (ՌԻԳ) փխ. ՌԺԶ, Б սաստղն, В սաստղն եղև, 21—22-րդ տողերի միջև АБВЖ թվին ՌԻԸ զծրևան առին (БВ գերեցին փխ. առին), ГЗ թվին ՌԻԸ Երևան (З զԵրևան) գերեցուց Լալայ փաշան ԿՌ (З ՀՌ) գերի հանեց (Г հանեց չիք) Հայոց ազգէն։ 22 ADЖ թվին ՌԼ զկտակն (Ж զղտակն) սահմանեցին Հայոց, БНВ թվին ՌԼ տօլպանտն (В տալպանտ) ի գլխնուս (Б գլխնուն) վար (ВН ի վայր) ձգելու (В ձգել) սախ արաւ սուլթան Մուրատն (В Մուրաա), Г թվին չալունման վերոյց, Е թուին ՌԻԹ զտուլպանդն ի վայր ձգել տվին սուլթան Մուրատն և սև շափխա տվին, З թվին ՌԼ զթալման վերուց սուլթան Մուրատն։

Թվ[լ]ին ՌԼԳ (1584) շարժ եղև յերկրին յունիսի ժէ (17), սուրբ Լուսաւորչի երկուշաբաթին, Գ (3) ժամն։ Յանկարծակի դողումն եղև, քաղաքն առհասարակ փլաւ, ԺԵՌ (15000) այր ու կին մեռաւ, ԵՌ (5000) այլ ի ներքև հողոյն մնաց, կիսամահ հանեցին, որն ապրեցաւ, որն մեռաւ, որն շահաա մնաց։

Թվ[լ]ին ՌԼԴ (1585) Օսման փաշան առաւ զՇրւան և զԹարվէզ[40]։

Թվ[լ]ին ՌԼԹ (1590) Բուրթն գլուխ քաշեց եկեալ յէզնկան։

Թվ[լ]ին ՌԽԱ (1592) Սևատու տաճիկն չարացաւ էառ զսուրբ Լուսաւորիչ եկեղեցին[41]։

Թվ[լ]ին ՌԽԳ (1594) մեռաւ սուլթան Մուրատն[42]։

Թվ[լ]ին ՌԾ (1601) շահ Ապաղն էառ զԹարւէզ։

Թվ[լ]ին ՌԾԱ (1002) սուլթան Մահմատն մեռաւ և նստաւ սուլթան ‖ Ահմատն։ 14 բ

Թվ[լ]ին ՌԿԵ (1616) Ուռուսն էառ զՏրապիզօն[43]։

Թվ[լ]ին ՌԿԷ (1618) աստղ ելաւ, որպէս կէռ թուր, և մէկ այլ պոչով աստղ, որ գլուխն յարևելք էր, և պոչն յարևմուտս կու հասնէր։

Ի սոյն ամի մահն անկաւ. ՃԽ (140) տղայ մեռաւ ի Գումիշխան մէկ օրն։

Եւ ի սոյն ամի մեռաւ սուլթան Ահմատն և նստաւ եղբայրն սուլթան Մուստաֆան և դրին զսուլթան Ահմատի որդին զսուլթան Օսմանն։

Թվ[լ]ին [Ռ]ԿԹ (1620) սուլթան Օսմանն ի վերայ Լէհին գնաց և ոչ կարաց առնուլ։ Եւ դարձաւեալ յորժամ թագաւորն ի վերայ

---

1—5-րդ տողերը БВГDЕЖЗН չիք։ 6 АDЖ ի ՌԼԴ Ոսման (D Ուսման) փաշային գնալն է ի Թաւրէզ, Б ի թվին, Е թուին, ВЕ Ոսմանն, Е փաշէն, БВН գնաց էառ, Е գնաց էառ զԹարուէզ և անդ մեռաւ, БВН զՇրւան և չիք։ 6-րդ տողը АБВDЕЖН չիք։ 8—10-րդ տողերը Г չիք։ 9 АDЖ ի թվին ՌԽԱ ի Սևաստ զԼուսաւորչի եկեղեցին առին, Е թուին ՌԽԱ Տաճիկնին չարացան և առին զԼուսաւորիչ եկեղեցին, БН և էառ, զսուրբ չիք։ 11 Е թուին, Ж ՌԽԴ-ն, АЖ Մուրատն և թագաւորեաց սուլթան Մահմատն (Ж Մահմէտն), Г սուլթան չիք, ГЗ Մուրատն նստաւ որդին սուլթան Մահմատն։ Թվին ՌԾԴ մեռաւ Մահմատն նստաւ որդին սուլթան Ահմատն, З Մուրատն նստաւ որդին սուլթան Մեհէմմատն, թվին ՋԻԴ առ զԿաֆան սուլթան Մահամատն։ 11-րդ տողը Н չիք։

Մինչև 15-րդ տողը Մինասի հեղինակությանը պատկանող շարունակությունը (B) սկսվում է հետևյալ երեք վկայությամբ. «Դարձեալ թվին հայոց ՌՁԴ (1635)-ին ես՝ անարժան բանի տնտեսէ, ԲՃ ԺԺ ԴՃ Ա ԽՍ (իմա Մ—Ի—Ն—Ա—ՍՍ—) առ ոտս էինք հողեոր հաւրս մերո ըստ եռամեծին Դրիգոր քաջ տէլէտին համախեցու Զի յորժամ աղիողորմ բան գործեցաւ, որ սուրկուն արարին ի Ֆռանդէն մինչ ի Ըստանպօլ, զի ամեն մարդ թողեց շինաց տունն, լալով գնացին, զի ամենայն ինչ ի վերա տան և հողի էին խարճել։

Թվին ՌԼԹ (1590) Քուրթ գլուխ քաշեց եկաւ յԵզնկան։

Թվին ՋԾԵ (1606) Ճալալի Թաւֆիլն ելաւ» (էջ 71բ և 72ա)։

15 Ուռուզ Տրապեզ[ոն] կոխեց։ 17 պուչով, ի գլուխն արևելք, պոչն չիք, արևմուտս։/19 մահ անկօ, տղա մեռօ, ի չիք։ 20 Կումիշխան, աւր։ 21 մեռօ, Ահմատ, Նստօ։ 22 սուլթան Մուսաաւան եղբայր որ էր խէլաքար զարձէալ ոչ էր խելահաս աշխարհի։ 23-րդ տողի փոխարեն՝ թվին ՌԿԸ մանդուլ արին սուլթան Մուսդաւան և դրին սուլթան Ահմատին որդին սուլթան Ուսման։ 24 սուլդան Ուսման, ի չիք, վերա։ 25 և (ոչ) չիք, թագօրն, վերա։

Վ[էՏ]ին էր, ի կողմն հիւսիսոյ երկինք վառեցաւ, որպէս թէ արեգակն ի յամպն վաղէ ի ծագել ժամուն այրի, նոյնպէս եղև։

Ի սոյն ամի սուլթան Օսմանն դարձեալ գնաց յԸստամպօլ իւր ասքարովն, զուլն չարացաւ թէ մեզ հանց թագաւոր պիտոյ չէ, պարկին սպանեցին զթագաւորն։

Թվին ՌՀԱ (1622) նստաւ սուլթան Մուստաֆան, յետոյ կրկին մազուլ արին զսուլթան Մուստաֆան։

Թվին ՌՀԲ (1623) նստաւ սուլթան Մուրատն։ Ի սոյն ամի Ապազա փաշան ելեալ յԱրզըրում։

Թվին ՌՀԴ (1625) Ուռուզն եկեալ զՏրապիզոնու բերթն առաւ, ապրիլի ԺԳ (13), օրն կիրակի, կեցաւ Դ (4) օր և ապա գնաց ՄԽ (240) զայեղ էր. ՌՇ (1500) Ուռուս մեռաւ։

Եւ ի սոյն ամի վրացի Մուրովն ջարդեց զՂայչխայ խանն, զՂասախ խանն, շատ ղըլպաշ, որ իսկի չի մնաց, Գ (3) անգամ[44]։

Դարձեալ ի սոյն ամի Հաւըզ Ահմատ փաշայն վազիր եղաւ, գնաց ի վերայ Բաղդատայ, ԲՃ (200) հազար ասքարով նստաւ ոչ կարաց առնուլ, ասքարին կէսն ջարդեցաւ, և կէսն փախստական դարձեալ եկան։

Թվին ՌՀԶ (1627) Խալիլ փաշայն վեզիր եղաւ, եկեալ ի Ցարզըրում, Ապազայ փաշային վերայ, Ապազայն գլուխ քաշեց, զենկիչարիք ջարդեց, Բ (2) փաշայ այլ ի դուրս սպանեց, Դ (4) փաշայ այլ բռնեց ի բերդն տարաւ զդուռն փակեց. նստաւ Բ (2) ամիս և կէս։ Խալիլ փաշայն Է (7) նազմ բանալ երետ, յետքն չի կտրաց առնուլ և աւուր և կիսոյ ճամբաք զթօփերն վայր ձըգեց։ Ապազան ի յետևն վազեց Զ (80) ղաթար ուղտ, Կ (60) ղաթար ջորի առեց, ամէն բեռնով, շատ մարդ բռնեց, շատք այլ ‖ ջար- 15 ա
դեց, փաշիրն գնաց ի Թօզաթ[45]։

Թվին ՌՀԷ (1628) Խօսրով փաշայն վազիր եղաւ եկեալ ի վերայ Արզըրումու, ԺԷ (17) օրն ՌՇԳ (1503) թօփ կպուց Գ (3) գիմաց, Մուրովն ի հետ, վլուց զպարիսպն, բռնեց զԱպազա փաշայն, առ գնաց Ըստ[ա]մբօլ[46]։

Թվին ՌԻԴ (1575) առաջին սուլթան Մուրատն նստաւ թագաւոր յՍտամբօլ։

Թվին ՌԽՐ (1595) որդի նորա սուլթան Մուհամատն նստաւ թագաւոր։

Թվին ՌԽ (1591) Գըզիր օղլին ելաւ Ճալալի, Քուրթ ազգաւ։

Թվին ՌԽԶ (1597) Խարա Եազիճին ելաւ Ճալալի։

Թվին ՌԽԷ (1598) Ներքինի Ճահվար փաշայն ելաւ Ճալալի, նստաւ ի Թարվէզ։

Թվին ՌԾԴ (1604) սուլթան Ահմատն նստաւ թագաւոր։

---

1 երկինքն վառեցօ։ 2 վազէր։ 3 և ի, սուլգան Յուսման, ի Ըստանպօլ։ 4 ասկարն, զուլն չիf, չարացօ, թագօր, պիտո։ 5 սպանեցին չիſ, թագօր։ 6—7-րդ տողերը չիſ։ 8 նստօ, Մուրատ, ամին։ 9 ելաւ Ապազ փաշան ի Արզռում։ 10 եկօ, ի Տրապիզոն, զբերթն։ 11 ապրիլ, ԻԴ փխ. ԺԳ, աւրն կիրակի էր, աւր։ 12 ԲՃԽ փխ. ՄԽ, ՌԵՃ փխ. ՌՇ, սատակեցօ փխ. մեռաւ։ 13 մովրով ջարդեաց զՂալջիխա խան։ 14 Ղազախ խան շատ մի Ղզլպաշ (բնագիրն այստեղ ընդհատվում է—Վ. Հ.)։

Թվին ՌԾԴ (1605) դայլքն զօրացան յԱնատօլի։

Թվին ՌԾԵ (1606) Ճանփօլատ օղլին եկաւ Ճալալի ի Քիլիսու։[47]:

Թվին ՌԾԸ (1609) Մուրատ փաշան սուրկուն արար։

Թվին ՌԿԱ (1612) Մուրատ փաշան մեռաւ ի Ցամիթ և էառ զվտղիրութիւնն Նասուֆ փաշան։

Թվին ՌԿԶ (1617) սուլթան Մուստաֆան նստաւ թագաւոր՝ Բ (2) ամիս։

Թվին ՌԿԶ (1617), այլ դարձեալ ի նոյն ամի, փոխեցին զնա և նստուցին զսուլթան Օսմանն թագաւոր։

Թվին ՌԿԹ (1620) սուլթան Օսմանն գնաց ի պատերազմ, ի վերայ Լէհայ, զոր Հօթուն ասեն։

Թվին ՌՀ (1621) ծովն պաղեցաւ յունվար ամսոյ ԺԴ (14)[48], որ մարդ շրջէր ի վերայ։

Թվին ՌՀԱ (1622) առաջին սուլթան Մուստաֆան նստաւ թագաւոր խելագար խելօք։

Թվին ՌՀԱ (1622) տղա ժողովեցին յԱնատօլու։

Թվին ՌՀԳ (1624) սուլթան Մուրատն նստաւ թագաւոր, քաչ և արի, սեպտեմբեր ամսոյ։

Թվին ՌՀԵ (1626) Գ (3) ոսկի խարած եկաւ Հայոց։

Թվին ՌՀԶ (1627) Խոսրով փաշան զԱպազան եհեր յԱրզրումայ,

Թվին ՌՀԹ (1630) զԽոսրով փաշան սպանանել ետ թագաւորն Մուրթուզա փաշային ի Թօղաթ։

Թվին ՌՁԳ (1634) օգոստոս ամսոյ զԱպազան սպան թագաւորն։

Թվին ՌՁԳ (1634) սուլթան Մուրատն ի Լէհայ վերայ պատերազմ գնաց և հնազանդեալ դարձուցին։

Թվին ՌՁԳ (1634) Հոռոմք ծռազատիկ արարին։

Թվին ՌՁԲ (1633) յօգոստոս ամսոյ մեծ եառեալս արար թագաւորն պիղծ թութունին և ղահւինին փակեց։

Թվին ‖ ՌՁԴ (1635) զՀուսէն էֆէնտին՝ Մուֆտին սպան 15 բ
թագաւորն։

Թվին ՌՁԴ (1635) զԻմամ Օղլին բերեալ Ստամպօլ սպան թագաւորն և Ջէլէզ փաշայն ի նոյն ամի։

Թվին ՌՁԴ (1635) մարտ ամսոյն գնաց թագաւորն ի պատերազմ յԵրևանու վերայ և եհաս մինչև ի Թարվէզ[49]։

Թվին ՌՁԴ (1635) մայիսի ԺԴ (14), օրն չորեքշաբթի, սուրկուն արար թագաւորն՝ Հայոց և Հոռոմոց և Տաճկաց[50]։

Թվին ՌՁԷ (1638) ապրիէլի ԻԸ (28), օրն շաբաթ, նոյն սուլթան Մուրատն գնաց ի վերայ Բաղդատայ ի պատերազմ. և գնացեալ եհաս ի Պաղտատ։ Ի նոյն ամի, ի նոյեմբերի Զ (6) և ծեծեաց զպասիսպն ԼԸ (38) օր մեծաւ զօրութեամբ և ի դեկտեմբեր ԺԴ (14), օրն ուրբաթ, էառ զքաղաքն[51],

Թվին ՌՁԸ (1639) յունիս Բ (2) հոգոյ Դալըռտեան կիրակին դարձաւ եմուտ յաթոռադիր քաղաքն իւր՝ ի Ստամպօլ մեծաւ զօրօք։

Թվին ՌՁԸ (1639) դեկտեմբերի ԻԸ (28) Մուստաֆայ փաշան վազիրն դարձեալ ի պատերազմէն Բաղդատու եմուտ յՍտամբօլ։

Թվին ՌՁԹ (1640) սուրբ Սարգսի շաբաթուն- մեռաւ սուլթան Մուրատն. և նստաւ ի տեղի նորա թագաւոր եղբայրն իւր սուլթան Իբրահիմն։

## АЖ ՏԱՐԲԵՐԱԿՆԵՐԻ ՇԱՐՈՒՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ
(տողատակ Ж-ի տարընթերցվածները)

Թվին ՌԽԷ (1598) մայիս ամսոյ ի[53] խաւարեցաւ արեգակն[54]։ 95 բ

Թվին ՌԽԷ (1598) ահագին շարժ եղև յԱմասիայ, ի Ջոոոմս և շատ շինուածոց ապականումն եղև մինչ ի Դ (4) ամիսն, ապա դադարեցաւ երէրումն,

Թվին ՌԽԴ (1595)-ն մահ անասնոցն եղև սաստիկ[55]։

Թվին ՌԽԸ (1599) մարտ ամսոյ ի ԺԷ (17)-ն այնպէս դառնաշունչ ձմեռն եղև, որ զսրրոց Քառասնից բազմահանդէս ուխտն խափանեաց, որ չկարացք զսովորական տօնախմբութիւնն առնել։

Ի թվին ՌԽԸ (1599) չար բռնաւորն, զոր Ղարայ Ազիճի կոչիւր, աւիրեաց զՍւոհայ քաղաք ի բնակչացն[56]։

Ի թվին ՌԾ (1601)-ն սոյն չարն գազանն յայրեաց և կողոպտեաց և սրախողող արար զբաղում յամրոխ քաղաքն Սեբաստիայ[57]։

ՌԾ (1601) թվին թալնեց ու կողոպտեց Լաւէնտն, որ Սաթըրճի կոչիւր, զՍիս քաղաք Կիլիկիոյ։

ՌԾԱ (1602) թվին զԹուխաթ քաղաքն յայրեցին։

Ի թվին ՌԿԳ (1614) ի գիւղաքաղաքն ի Ցուլաշն սուրբ Փըրկիչ եկեղեցին շ[ի]նեցաք[58]։

## ԵВ ՏԱՐԲԵՐԱԿՆԵՐԻ ՇԱՐՈՒՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ
(տողատակ В-ի տարընթերցվածները)

Թվին ՌԽԳ (1594) մեռաւ սուլթան Մուրատն և ‖ նստաւ 224 բ
որդի նորա սուլթան Մահմատն, որ է այժմ ի մերումս ժամանակի, որ կատաղի և մոլեգին է դարձէր, գրէ, թէ չկա թագաւոր միայն ժանդ անուան է ի վերայ ներքոյ անկեալ երկրին։ Դատաստանն բարձաւ և ոչ կայ քննութիւն և իրաւունս զրկելոց. դարձեր էն իբրև ձկունս մեծամեծս, որ զփոքունս կլանեն, ըստ ասացելոյն Ամբակումայ։ Թուի թէ լցեալ է չափ մեղաց դոցա, զի կարի շփոթեալք են զմիմեամբք ելանելովն աշխարհի և կալնեն զմիմեանս առանց օտար թշնամեաց, այլ թշնամիք են առն ընտանիք իւրեանց, ամենայն ի թոյլ տայլոն Աստուծոյ է, վասն անուղղագնացից մերոց, բաղում աշխարհք անմարդ դարձան և աւերակք բազմացան ամենայն սրբոց յայտնութիւնքն կատարեցան դեռևս կատարին մի ըստ միոջէ, չի գիտեմք թէ աւարտն զինչ լինելոց է[59]։

---

10 եղաւ, ի չիք, Զորում։ 14 ի չիք։ 17 Ղազիճի։ 19 այրաց։ 20 ամրոխ։ 21 որ չիք։ 23 ի ՌԾԱ, քաղաք։ 28 սուլդան։ 30 կատաղին է։ 32 բարձեալ է, զի դարձեր։ 33 ըստ փխ. ընդ, ասացելոյն չիք։ 34 թվի, մեղաց չիք։ 36 առ։

## D ՏԱՐԲԵՐԱԿԻ ՇԱՐՈՒՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

Թվին ՌԽԳ (1594) մեռաւ սուլթան Մուրատն և նստաւ սուլ- -1 բ
թան Մուհամատն։

Թվին ՌԽԷ (1598) մայիս ամսոյ խաւարեցօ արեգակն[60]։ Ի նոյն ամին շարժ եղաւ Ամասիայ և Զուռում և շատ շինուածոց տապալումն եղև մինչ ի Գ (4) ամիս, ապա դադարեցաւ։

Թվին ՌԽԴ (1595)-ն մահ անասնոցն եղև սաստիկ[61]։

Թվին ՌԾԲ (1603) մեծ շահ Ապազն զԵրևան էառ[62]։

ՌԾԴ (1605)-ին Գ[ա]նձ[ա]կ էառ։

ՌԿԳ (1614)-ին՝ Վր[ա]ց տունս։

ՌԿԴ (1615)-ին Մավրուն ապստ[ամբ]եց։

ՌՀԸ (1629)-ին շահն մեռաւ[63]։

ՌՁԱ (1632)-ին Գաւութ խ[ա]ն ապստ[ա]մբեց։

ՌՁԴ (1635)-ին սուլթան Մուրատ Երև[ա]ն եկն։

ՌՂԲ (1643)-ի փոքր շ[ա]հ-Ապ[ազ]ն Թ[ա]գ[աւո]րեց։

ՌՃԳ (1654)-ին արեգակն խաւարեցաւ։

ՌՃԺԷ (1668)-ին շ[ա]րժ եղև և Շ[ա]մ[ա]խի խոր գնաց[64]։

ՌՃԺԹ (1670)-ին շ[ա]հ-Սուլէյման թագաւորեաց։

Թուին ՌՃԻԸ (1679) Երևանայ շարժն[65]։

## E ՏԱՐԲԵՐԱԿԻ ՇԱՐՈՒՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

Թուին ՌԽԳ (1594) մեռաւ սուլթան Մուրատն և թագա- 128 բ
ւորեաց սուլթան Մահեմէտն յունվարի ԺԶ (16), օրն ուրբաթ։

Թուին ՌԼԱ (1582) սուլթան Մուրատն սունէթի հարսանիք արաւ Կ (60) օր, որդոյն՝ սուլթան Մոհեմէտին ի Ցաթ մէյտանն։ Այնմ ժամանակին պատրիարքն Թումտ եպիսկոպոս էր, քահանաիւք գնաց ի հարսանիքն։

Թուին ՌԻԹ (1580) հոկտեմբերի Ժ (10) զՄուհէմէտ փաշան մէկ խև սպահի մի ի տիվանին մէջն սպան։

Թուին ՌԻԳ (1574) մեծ իշիմ ետ Աստուած Թուրքին՝ առին զՄիթանին երկիրն[66] և զՊադուէշ[67]։

Թուին ՌԻԶ (1577) Խարա Մուստաֆա փաշան դնաց գերեցուց զԵրևան. և ՌԻԷ (1027) գերիք եկին ամենայն աշխարհ. և Ըստամբօլ շատ գերիք եկին հայէր՝ այր և կին[68]։

Թուին ՌԼԳ (1584) տարին նահանջ էր, տանուտէրն կաբինն էր, գիր տաբուն վէւն էր սէն բանեցաւ, յտպրիլի ԺԹ (19) Զատիկ եղև, այն տարին Ֆռանգն իմէնէ զատեցաւ, մարտի ԻԲ (22) Զատիկ արին, թէ յապրիլի Ա (1) է Հայոց հսապն. Նոցա գիրն ինին էր, որ յապրիլի մէկն էր։

Թուին ՌՃԺԳ (1664) գե[կ]տէմբեր ամսուն ագևոր աստղ մի եւաւ մինչև Լ (30) օր։

Թվին ՌՃԹ (1660) յուլիսի ԺԵ (15), օրն շաբաթ, Թ (9) սահաթին բռընկեցաւ Այազմա խափուն, այրեցաւ մինչև երկուշաբթի ճաշք. Ըստամբօլ բոլանդակ չարսու և զանչարսուն, Ջնդանին դուռն. սուլթան Սուլէյմանաւն, Սառաճխանան, Վլանկա։

պիթուն չաք մինչև յՆեթէմէզ-թէքէն, Աթ-պազարն, Ախ-սաբան մինչև ի Տաւութ || փաշան[69]. այս ամենայն պատուհասս, որ գիր 127 ա արկելու չէ, եկն ի վերայ Ըստամբօլսոյ, վասն ծովացեալ մեղաց մերոց, անհամար մարդ այրեցաւ և բաղում եկեղեցիք Հայոց և Հռոմոց և բաղում անհամար մզկիթ այրեցան, որ այլ այսպէս հուր այրաց ոչ էր եղեալ...[70]:

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Բնագրում վերնագիրը կարմիր թանաքով։ Բնագրի 13ա, 14ա և 15ա էջերի ներքևի լուսանցքներում գրված է. «Թվական Տաճկաց»։

2. Տես և համմ. վերևում, էջ 131։ Առավել մանրամասն տես Մ. Ուռհայեցի (էջ 47—49), ուր տարեթիվը նշված է ՆԿԵ (1016)։

3. Տես և համմ. վերևում, էջ 131, որտեղ, ինչպես և մյուս տարբերակներում, տարեթիվը նշված է հայոց ՆՀԸ (1929) թվականը։ Այս և սրա հետ կապված Հ. Կոզեռնի տեսիլքը տես Մ. Ուռհայեցի, էջ 66—74։

4. Այս վկայությունը համեմատաբար ընդարձակ ձևով պահվել է БВН տարբերակներում, սակայն B տարբերակում ժամանակագրության բնագիրը սկզբից թերի է, բնագրից թերթ ընկնելու պատճառով (տես ձեռագիրը, էջ 63ա)։

5. Բնագրում «ՌՇԿԹ». վերջին տառը պարզ գրված չէ, կարելի է կարդալ նաև «ՌՇԿԲ»։

6. Տես և համմ. վերևում, էջ 123։

7. Տես և համմ. նույն տեղում, էջ 123—124։

8. Տես և համմ. նույն տեղում, էջ 125։

9. Տես և համմ. Մ. Ուռհայեցի, էջ 164—167, ՄԺ, 1, էջ 202, ծանոթ. 2։

10. Մանրամասն տես Մ. Ուռհայեցի, էջ 137—138։

11. Տես և համմ. վերևում, էջ 133։ Այստեղ կրկնվել է Անանուն Սեբաստացու (XIII դ.) սխալը, որովհետև Բագրատունիների վերջին թագավորը Հովհաննես—Սմբատը չէր, այլ Գագիկ Բ-ն։

12. Տես և համմ. վերևում, էջ 133։

13. Տե՛ս և համմ. նույն տեղում, էջ 134, Մ. Ուռհայեցի, էջ 286—288։

14. Տես և համմ. վերևում, էջ 135։

15. Տե՛ս և համմ. նույն տեղում, էջ 135։

16. Տե՛ս և համմ. նույն տեղում, էջ 136, ուր նշված է նաև եկեղեցու անունը։

17. Տե՛ս և համմ. նույն տեղում, էջ 139։

18. Տես և համմ. նույն տեղում, էջ 141, որտեղ նշված է նաև ամսաթիվը՝ հոկտեմբերի 11։

19. Տե՛ս և համմ. նույն տեղում, էջ 141։

20. Տե՛ս և համմ. նույն տեղում, էջ 144.

21. Տե՛ս և համմ. նույն տեղում, էջ 144։

22. Տես և համմ. նույն տեղում, էջ 148, այստեղ նշված է նաև ամսաթիվը՝ մայիսի 6։

23. Այստեղից տեղեկությունները նույն կարգով գտնում ենք Անանուն Սեբաստացու (XVI դ.) ժամանակագրության մեջ (ՄԺ, 1, էջ 167—173)։ Այս վկայությունը տե՛ս ՄԺ, 1, էջ 167։

24. Տե՛ս նույն տեղում, էջ 167։

25. Տե՛ս նույն տեղում, էջ 167, 174, ծանոթ. 4։

26. Տե՛ս և համմ. ժամանակագրական մի այլ բնագրում. ՄԺ, 1, էջ 319, 336, ծանոթ. 3։

27. Տես և համմ. Անանուն Սեբաստացի (XVI դ.) նույն տեղ, էջ 168, 176, ծանոթ. 17։

28. Տես և համմ. նույն տեղում, էջ 169, 176, ծանոթ. 25։

29. Տե՛ս և համմ. նույն տեղում, էջ 169։

30. Տես և համմ. ժամանակագրական մի այլ բնագրում, նույն տեղում, էջ 321, 330,

ծանոթ. 14։ 1526 թվին ընդօրինակված մի ձեռագրի հիշատակարանում այդ արշավանքի մասին կարդում ենք. «...Գրեցաւ թվին ՋՀԵ (1526) յունիս ամսոյ ի ԻԸ (28)։ Եւ յայսմ ամի գնաց խօնդքարն, որ անուամբ Սուլայման կոչի, ի վերայ Ընկռուզաց բազում և անթիւ զօրաւք...» (ՄՑՀ, հտ. Ա, էջ 144)։

31. Բնագրում տարեթվի վերջին տառն ուղղված է, այն պարզ չի երևում, նմանեցրինք «Դ» ի։ Տե՛ս և հմմտ. ՄԺ, 1-ին, էջ 170։

32. Կոչվել է նաև Շնքուռակ, գյուղ Սեբաստիայի մոտերքում։

33. Մանրամասն տե՛ս ՄԺ, 1, էջ 170։ Հովասափ Սեբաստացին սրա նահատակության հանգամանքները տվել է մի ոտանավորում (տես Ց. Մանանդեան և Հ. Աճառեան «Հայոց նոր վկաները», Վաղարշապատ, 1903, էջ 373—375)։

34. Տե՛ս և հմմտ. ՄԺ, 1, էջ 171—172։ Այս կռիվներին է վերաբերում Մատենադարանի № 6282 Հայսմավուրքի հիշատակարանի ստորև բերվող վկայությունը։ «...Զի ի ՌԱ (1552) թվականին եկն բարկութեամբ շահ Թահմանն զօրօքն իւրովք ի վերայ աշխարհին այնմիկ և պաշարեաց զծովն բոլոր՝ զՎասպուրականն և զՌշտունիքն, զԲաղէշ և զՏարօնն, զԽլաթ և զԲզնունիքն, զՔաջբերունին և զՏարբերունին, զԽընուս, մինչ ի Ցարըղռում, զԱղսակ և զՄահմուտանք, զամէն առհասարակ պաշարեալ խստութեամբ։ Զբնակութիւն տեղոյն այնոցիկ քանդեցին, աւերեցին և հիմնայատակ արարին, որ ոչ Թողց քար ի վերայ քարի և ըստ մարգարէին անդ կատարեցօ, թէ «Քակեա»։ Եւ զբնակիչսն ամենայն, զոմանս անողորմ սրոյ ճարակեցին, զոմանս ի ձեռացն, ի քթացն և յականջացն խոռոքեցին վասն պահըստական ընչից և զաշխարհն այն արարին ցիր և ցան։ Եւ մնացեալքն մազապուրծ եղեալ ի գիշերի և ոչ ի ցերեկի, ահիւ և դողութեամբ կրսկծագին սրտիւ և դառն արտասուօք և յողոց հանելով, բաժանեցան ի միմեանց՝ հայր յորդոյ և մայր ի դստերաց, եղբայր յեղբօրէ և ազգական և սիրելի ի միմեանց, աղիողորմ հառաչմամբ։ Եւ գնացեալ փախըստական ոմն ի Հոռմաց տունն և ոմն ի Քուրդուստանն, ոմն ի Թուրքստան և ոմն ի Գուրջըստան։ Եւ մնաց երկիրն այն հոպանացեալ և անբնակ ի մարդկանէ տարի մի բոլոր։ Եւ այս ամենայն եկն ի վերայ վասն մեղաց մերոց։ Եւ մեք միաբանաւ ընդ բազմացն փախուցեալ և ազատեցաք....և եկեալ Վերին Գեզամայ դարիպ և աւտարական. և հասաք շրջագայութեամբ ի յաստուածապահ յամուրն Ծար։ Եւ կամեցողութեամբն իշխանաց տեղոյն պարոն Միրզաջանին և Գաւստիբեկին և հոգևոր մարցն իմ Բէկզադին և Գուզալադին, բնակեցաք ի վանքս Գետամէջ ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին...» (էջ 625ա և բ)։

35. Այս մասին մեզ այլ բան հայտնի չէ։ Տես և հմմտ. ներքևում, էջ 518, 531։

36. Տարեթիվը սխալ է, պետք է լինի ՌԸ (1559), ինչպես ճիշտ նշված է մյուս տարբերակներում (տես տողատակ), հմմտ. ՄԺ, 1, էջ 145, 172, 323, ներքևում էջ 355։

Այս դեպքերի մասին հետաքրքիր տեղեկություններ են պահվել Մատենադարանի 6282 և 6198 ձեռագրերի հիշատակարաններում, ուր կարդում ենք.

«...Գրծեցի զտառս ի թվականիս Հայոց Ռ և Թ (1560)... դարձեալ անցեալ յամին սուրբ Խաչի տօնին (1559 թ. սեպտեմբերի 17-ին—Վ. Հ.) խաւարման լուսնին (պրոֆ. Օպպոլցերի հաշվումներով լուսինը խավարել է 1559 թ. սեպտեմբերի 16-ին, տես «Canon der Finsternisse», էջ 367—Վ. Հ.) ելեալ յարեմտից որդին խոնդքարին Բայազիտ սուլտանն ԺԵՌ (15000)—աւ խռով և կաթահար և ի ճանապարհին մարտ և պատերազմ և բազում արենհեղութիւն լինել։ Եւ ելեալ բռնութեամբ և մեծ սանթանաթով և եկեալ ի յոտն շահ Թահմազին ի Ղազուին։ Եւ շահ Թահմանն ելեալ ընդառաջ նորա, սիրեաց և ընդունեաց զնա որպէս զորդի և զեղբայր. և նստան միաբան ի Ղազուին։ Եւ բազում տուրս և բաշխս և խիլայս զանազան ընդ միմեանս տային, զոր տեսողքն և լսողք և աշխարհս հիացեալ զարմանային ընդ մեծութիւն փառաց նորա։ Մինչ ի մեհեկի ամսոյն այսպէս պատուեցօ և մեծարեցօ և ի մուտն արեգի, որ ի սկզբանէ հակառակ է բարութեան... արկեալ չար խորհուրդ ի սիրտն Բայազիտ սուլտանին, զի նենգութեամբ և ծածուկ սպանցէ զշահ Թահմանն և առնու զթաղթն նորին... զոր և ի վերուստ շահին աջողեալ իմացեալ զնենգութիւն նորա և դարձոյց զցաւն ի գլուխ իւր, զոր թագնաբար կալօ զնա և զօրսն նորա կոտորեաց և զինքն եդ երկաթի կապանօք ի մէջ զաֆազին...» (էջ 625բ—626ա)։

«...Արդ՝ գրեցաւ սուրբ տառս, որ կոչի Ցայսմյաւուրք ի դառն և ի նեղ ժամանակիս. քանզի սասանեալ դողամք ի ահէ անաւրինաց, վասն զի որդիք յարքային Ցունաց, որոյ յանունն մեծին սուլտան Սալիմ և միւսոյն սուլտան Պայազիթ մարտուցեալ ընդ միմեանս և կոտորեցին անխնաաբար զզաւրս իւրեանց՝ զբիւրս և զհազարս, ի քաղաքն

որ կոչի Կունիայ։ Եւ անտի ոչ կարոյ ընդդէմ միւսն ընդ աւագ եղբաւրն, եւ փախըստական ի Հայս ունելով ընդ իւր երիս որդիս և ԼՌ (30000) արս հեծելազաւրս։ Եւ եկեալ եհաս ի յերկիրն Արարատան, իսկ յիշխան յերկրիս յել ընդառաջ նորա և մեծարեալ պատուեաց զնա զաւուրս Խ (40)։ Եւ եւ գնաց ի քաղաքն շահըստան, որ կոչի Թավրէժ և անցեալ գնաց ի քաղաքն Ղազպին, քանզի անդ էր բնակութիւն յաշխարհակալ յարքային հա[ր]մրազլխաց, որ կոչիւր շահ Թահմազ, և յանկեաւ ի ոտս նորա։ Իսկ յարքայն ուզջունիւ ընկալաւ զնա և յետ նմա զզանձս բազումս, զձիս և զջորիս, զհանդերձս անհամարս։ Եւ յեզ յուխտ և գաշինս երդուեալ ի յաւրէնս Մահմետի. իսկ նա ոչ մոռացեալ զբնական նախանձն իւր, կամակցութեան քեռն կամեցաւ զազտն սպանանել զարքայն։ Բայց Աստուած ոչ կամեցաւ զչար խորհուրդս նորա։ Եւ իսկ ոմն յիշխանաց իւրոց ծանուցեալ յարքային զխորհուրդս տեառն իւրոյ, թէ կամի սպանանել զքեզ։ Իսկ արքայն կոչեաց զնա պատճառանաւք առ ինքն և կալեալ եդ ի բանդի և կոտորեաց զաւրս նորա ի մեծամեծաց մինչև փոքունս, զզանձս և զինչս նորա ցրուեալ բաշխեաց ծառայից իւրոց։ Եւ յորժամ լուաւ հայրն նորա առաքեաց առ սա զդեսպանս և զպատգամաւորս զզանձս բազումս, զհանդերձս մեծագինս, զթուղթս աղաչանաց, զի տացէ նմա զորդիսն իւր. և ոչ ետ նմա։ Աւել ևս երկրորդ և երրորդ զպատգամաւորս և ոչ կարաց այնու թափել ի ձեռաց յարքային։ Իսկ նա յուսահատեալ առաքեաց առ սա զթուղթս և թէ տուր ի ծառայս իմ, զի սպանցեն ի զրան քո։ Գ (3) ամ ի բանդի պահեաց և յետ ի ծառայս հաւր իւրոյ խեղթամահ արարին զինքն և զերիս որդիս նորա։ Եւ զմարմինն բարձեալ տարան Ըստըմպոլ։ Ի յայս ամի յաւարակցաւ սուրբ գիրս, որ կոչի Ցայսմյաւուր...» (№ 6108, էջ 175ա)։

Այս ձեռագրի հիշատակարանի տարեթիվը պարզ չէ. գրված է «Հայոց Ռ Ժ», վերջինտառը, ինչպես տեսնում ենք, բաց է թողնված։ Նկատի ունենալով, որ գահակալականայս պայքարը տեղի է ունեցել 1550 թ., իսկ Թահմազ I-ի կողմից Բայազիտի սպանությունը տեղի է ունեցել դրանից երեք տարի հետո, նշանակում է ձեռագիրը ընդօրինակվել է 1561 թ. (Հայոց Ռ և Ժ)։

37. Տես և համ. ՄԺ, 1, էջ 172, 177, ծանոթ. 41։ «Մանր ժամանակագրություններ»-ի I հատորի ծանոթագրություններից մեկում (էջ 177, ծանոթ. 41) նշել էինք, որ Ֆյունֆկիրխեն քաղաքը (Հունգարիայում, Մոհաչից մի փոքր արևմուտք) թուրքերը կոչել են Պեչ, սակայն ուրիշները Պեչ քաղաքը նույնացնում են Վիեննայի հետ (տես Ներքեում, էջ 404, Ալիշան, Կամենից, էջ 37), որն ավելի հավանական է։

38. Տարեթիվը սխալ է, ճիշտը նշում են մյուս տարբերակները՝ ՌԻ (1571), տես տողատակ։ Տես և համ. ՄԺ, 1, էջ 172։

39. Տես և համ. ՄԺ, 1, էջ 172։

40. Նկատի ունի Օսման Ցուզզեմիրի նվաճումները. տես և համ. ՄԺ, 1, էջ 173, իսկ ավելի մանրամասն՝ վերևում, էջ 245, 253, ծանոթ. 31։

41. Տես և համ. ՄԺ, 1, էջ 173։

42. Այն տարբերակները, որոնք այնուհետև շարունակվում են և միմյանցից տարբերվում, շարունակությունները բերում ենք ժամանակագրության հաջորդող էջերում առանձին-առանձին։

43. Բնագրում գրված է այսպես՝ «Թվին ՌՄԵ, թվին ՌԿԵ Ուռուսն էառ զՏրապիզոն»։ Ինչպես տեսնում ենք «Թվին ՌՄԵ»-ն սխալմամբ է գրված, այդ պատճառով չվերցրինք։ Տրապիզոնի գրավումը ուրիշ բնագրերում ևս նշված է ՌԿԵ (1616) թվին, տես 268 էջի տողատակը։

44. Հեղինակը, անշուշտ, նկատի ունի Սեֆյան պետության դեմ Գեորգի Սաակաձեի գլխավորությամբ վրաց ժողովրդի պայքարի մոմենտներից մեկը, երբ 1625 թվին Կայխոսրս բերդում պարսիկները վրացիներից գլխովին ջախջախվեցին։

45. Մանրամասն տես Հ. Կարնեցու մոտ (ՄԺ, 1, էջ 240—241)։ Խալիլի արշավանքը, ինչպես ճիշտ նշում է Հ. Կարնեցին, տեղի է ունեցել 1628 թ., իսկ 1627 թվին՝ Գիշլանկ Հուսեյինի արշավանքը։ Այս դեպքերի մասին բավական ուշագրավ տեղեկություններ պահվել են 1623—1620 թթ. ընթացքում գրված մի ձեռագրի հիշատակարանում, որտեղ կարդում ենք. «...անմեղագիր լերուք սխալանաց և խոշորութեան՝ զկարս մեր այս էր, զի մեք գրագրի աշակերտութիւն չէաք արել, այլև ի գրոց նայելով և Աստուծոյ առատ ողորմութիւնն ապաւինելով գրեցաք, թողութիւն արէք. զի ամառնային ժամ չէաք կարել նստիլ, հողագործութեան հետ չարչարեաք. և ձմեռն, թէ զթանաքն եփէի նայ, գրիչ չէի

գտանել, և թէ գրիչն գտնէի, նստոյ տեղ չկայր, վասն վրդովման ժամանակիս, յորժամ որ սկսայ գրոցս ՌՀԲ (1623) թվին աստուածասաստ բարկութիւն իջաւ առաջ ի վերայ Օսմանցոյ ազգին՝ ենկիչարիք սուլտան Օսման թագաւորն սպանեցին Ըստամ[պ]ալ քաղաքս։ Եւ վասն իմ ծովացեալ մեղացս, Աստուած ետուր մեզ չար բռնօր Աղրում քաղաքիս զԱպազա փաշան, որ եդ ձեռք ենկըչարուն վերայ, գնաց զԱխլծէ առաւ և զենկիչարիքն ջարթեց և Բադիր քէհան այստեղիս կոտորեց։ ՌՀԳ (1624) թվին ելան միահամուռ բազում զօրօք Ղարահեսար առին, զՄութաղա փաշան հնազանդեցուցին և կոտորելով գնացեալ հասին յԱնկորիայ քաղաք և պաշարեցին Ժ (10) ամիս, այլ ոչ կարացին առնուլ, սուլտան Մուստաւան թախտ դրին և նայ այլ փոխեցին և դրին թագաւոր սուլտան Մուրատն։ Միաբանեցան սպահիք և ենկիչարիք վազիր հանին և ելան անթիւ զօրօք պատերազմեցան Ապազին հետ Ղայսարի, և փախուցին զնայ մինչ որ եկաւ հասաւ Աղրում և վազիրն եկաւ նստաւ Դերջան։ Ապա վայ պատեց զանմեղ քրիստոնայք, և աստուածային ողորմութիւն հասաւ՝ խաղաղութիւն արին, դարձան գնացին, ենկիչարիք զրկեցին հօս տեղս կեցան Ա (1) տարի մի խաղաղ, յետ տարոյն եղև խռովութիւն և այլի եդ ի նոսա սուր և կոտորեց անխնարար Ժ (10) փաշայ՝ որ սպանեց, որ ձերբակալ արաւ և ցրուեց զամենայն որպէս փոշի առաջի հողմոյ. և ով ոք որ մազապուրծ գնացին ընկան ի մեծ բանակն. որ էր վազիր պեգծ և ժանտ անիծեալն, նման ուրացողին Յուլիանոսի և Լանգ Թամուր կոչեցելոյն, Խալիլ վազիրն և նայ ել որպէս զուխ հեղեղաց ի վերայ երկրիս մեր։ Եւ այս պեգծ Ապազայս նոր չարիք արաւ, և քրիստոնէից զապրանք, զկերակուր թալնեց և ելից ի բերդն և այլ առաւել չարութիւն այնէր, որ մարդն տանէն դուրս ելից զտունն և զկա՛ն ամենեքեան կրակեց և տոչորեց և մտաւ ամրոցօ բերդն։ Եւ այն չար վազիրն եեկ և պաշարեց զքաղաքն և զինչ որ մնացել էր նայ, աւար առաւ, ոչ ողորմեցաւ քրիստոնէից և ամօթով դարձաւ յետս, որպէս առիւծ եկն վասն իւր չարութեան, որպէս մուկ եղև։ Եւ միւս ամն ելեալ Խօսրով անուն վազիր մի, բարէբարոյ, նման Մուրիկ թագաւորին և եղև այնպէս, որ Աստուած ազատեաց... և քաղցրացոյց զսիրտս նոցա և նոքա սիրով և միաբանութեամբ առեալ տարան զնա առ թագաւորն իւրեանց սուլտան Մուրատին...» (Ձ 7756, էջ 248բ—249ա)։

46. Մանրամասն տես ՄԺ, 1, էջ 241։

47. Ջալալիների, մասնավորապես Ալի փաշայի, որին Ա. Դավրիժեցին կոչում է Ջանփոլատցի (էջ 635, 636), գործունեության մասին բավական հետաքրքիր տեղեկություններ գտնում ենք Մատենադարանի № 1354 ձեռագրի 1608 թ. հիշատակարանում, ուր գրված է. «...որ յայսմ ամի արար մեծ սքանչելագործ զօրութիւն... մեծ գազանն և չար վիշապն, շունն կատաղի... պիղծն Ալի փաշան Ճանփօլատին որ[դի]ն, որ ժողովեաց բազում զօրս ԿՌ (60000) հետևակ սակման և քան զայս աւելի և ոչ պակաս զինուորս ձիաւոր և տիրեաց բռնութեամբ երկրին Տիբերայ, որ Հալապ ասի, և բազում քաղաքաց և զեղօրէից աւեր էած, զոր թէ գրէաք մի ըստ միոջէ չէ բաւական տանել թխթոյ։ Որ և ի սոյն չարէն ապըստամբեալն չարն և ժանդն տասնապատիկ քան զսա, պիղծ Թաւուլն, և եկեալ ԺՌ (10000) հեծելօք ի յերկիրն Կիլիկեցոց և առեալ զԱտանայ, զԹարսիս, զՍիս. զՂարս և բազում աւեր էած և ՆԾ (500) արու մատաղ տղայք զերի տարաւ ի Ատանոյ։ Եւ անդի դիմեալ ի վերայ երկրին Մարաշոյ աւերելով և եկեալ հասաւ ի Սեփաստիայ և անդի եկեալ ի Եկեղեաց գաւառն և բազում աւեր էած երկիցս և երիցս, որ և սովոր[եալ] էր պիղծ արեանարբուն,...և այլ բազում աւեր էած աշխարհի մինչև ի մեծ ծովեզերն Եփէսոս ի Զմռին։ Եւ անտի դարձեալ եկն ի Կոնիոն, ի Գաղատիայ, ի Կաստամոնի և անտի ի մեծն Պոնտոս, Տրապէզս և այրեաց զքաղաքս զայս և գնաց կըրկին ի Երզընկան. զոր տէր Աստուած մեր ոչ կամեցաւ զկորուստ մարդկան, այլ ետուր զօրութիւն ալևոր Մուրատ փաշային, որ եկեալ բազում զօրօք էառ զմեծ գոռողն զՃանփաւլատի որդին և անխնա կոտորեաց և զինքն փախստական արար և ամենայն տունն բնաջինջ արար և այլ բազում կոտորս արար ի յերկիրն Տիբերայ և անտի եկեալ դիմեաց ի վերայ չարին, որ Թաւուլ ասէին։ Եւ եկեալ եհաս ի մեծ դաշտն Տարօնոյ և կոտորեաց զնոսա անխնայաբար փախուց զսակաւս մինչև ի Ղզլյպաշն։ Եւ ինքն քաջ ծերն.... Նստաւ ի մեծ դաշտն Բաբերդու և զօրս արձակեաց այսր և անդր, և զքաղումս դտեալ ի ապըստամբ պարոնացն և փաշաներուն բերեալ սուր եդ ի վերայ եսպան և զոր գտանէին բերէին և սպանէին և արար մեծ խաղաղութիւն ի վերայ երկրի» (էջ 199բ—200ա)։

48. Տես Ա. Դավրիժեցի, էջ 638, ՄԺ, 1, էջ 240։ Նույն տարվա մարտի 21-ի մասին մի այլ տեղ կարդում ենք. «Մարտ ԻԱ (21), աւրն չորեքշաբթի, հանց ցուրտ եղաւ,

որ ծովն պաղեցաւ, որ մարդիք Ըսա[ն]պաւլու պաղին վրա[յ]ովն Ուռկոյտարն անցան»։ (ՄՑԽՄ, 1, էջ 54)։

49. Տես և հմմտ. Հ. Հիսուսիի և Հ. Կարնեցու վկայությունները, ՄԺ, 1, էջ 196, 199, ծանոթ. 30, էջ 242, 250, ծանոթ. 10, 17։

50. Տես և հմմտ. ՄԺ, 1, էջ 340, 348, ծանոթ. 48, որտեղ ամսաթիվը նշված է մայիսի 15, եթե ճիշտ է առաջարկվող ընագրի «չորեքշաբթի» վկայությունը, ապա ամսաթիվը պետք է ուղղել «ԺԳ» (13) փոխանակ «ԺԴ» (14), որովհետև 1635 թվին չորեքշաբթին կլինի մայիսի 13-ին։

51. Այս դեպքերի մասին Հ. Կարնեցու վկայությունը ստույգ չէ (տես ՄԺ, 1, էջ 242)։

52. Այսինքն 1640 թ. փետրվարի 1-ին։

53. Բնագրում ամսաթիվը բացակայում է։

54. Այս վկայությունը ստույգ չէ։ Պրոֆ. Օպպոլցերի համաձայն, 1698 թ. արևը խավարել է ոչ թե մայիսին, այլ ապրիլի 10-ին և հոկտեմբերի 4-ին («Canon der Finsternisse» էջ 278), 1696 թվին՝ մայիսի 1-ին և 30-ին (նույն տեղ, էջ 2 6)։ Հետևապես բնագրի «ՌՃԽԷ»-ն կառաջարկեինք սրբագրել «ՌՃԽԵ», ընդունելով հայերեն «Ե» և «Է» տառերի շփոթման փաստը։

55. Վանի Ավանց գյուղում, 1577 թվին ընդօրինակված Ավետարանի դատարկ էջերից մեկում, ժամանակակից մի անձնավորություն ավելացրել է. «Ցայժմ ամի վասն ծովացեալ մեզաց մարդկան խաշնամահ եղև, որ դամէշ, էղն և սեաւ տաւար սակաւ մնաց ի Ռ և ԽԴ (1595) թվին»։ (№ 5507, էջ 232ա)։ Գ. Համախեցին ևս հիշում է այդ դեպքը (տես «Ժամանակագրութիւն», էջ 50)։

56. Ժամանակակիցներից մեկն այդ դեպքերի մասին հետևյալ սակավ տողերն է թողել մի ձեռագրում... «Թվին ՌԽԹ (1600) վաղիրն Ցուռհայոյ եկաւ յԱմիթ յունվարի Ա (1)։ Մարտի Դ (4) խապար եկաւ յԱմիթ, Նազիչուն ելաւ Ցուռհայոյ։ Մարտի Զ (6) ելաւ վաղիրն յԱմթայ. ի Կոստանդնուպօլսէ մինչև յԱմիթ դեաւղ և քաղաք չէն չեթող, զամէնն աւերեց, որ ընդ գրով արկանել չի գայր»։ (№ 1518, էջ 272ա)։

57. Դեպքերին ականատես մի այլ անձնավորություն 1604 թվին, հետևյալն է թողել ձեռագիր Նարեկի վերջին, դատարկ էջում. «Զի ի յայսմ ժամանակի, որ վասն ի բազմանալոյ անաւրէնութեան մերոյ և ի թոյլ տալոյն ամէնազաւրին Աստուծոյ եւ ժանտաբարոյ և պիւղծ թիւնաւոր մի Տաճիկ Ղարայ Ազիճի անուն ի հիւսոռսու կողմանէ և եկն ի վերա Սեփաստիա քաղաքին։ Եւ աէրն Սեփաստիու բերթին Մահամատ փաշան, դեռ մանուկ գոլով, երկեաւ ի նմանէ և գողեցաւ բաղում և անթիւ հեծելաւք ի մէջ բերդին և ամրացան ինքեանքն և մատնեցաւ քաղաքն և երկիրն մարդով և անասնով ընչուքն և ապրանաւքն ի ձեռն արեանարբու գազանին, որ անխնայ կոտորեաց բազում քրիստոնեայս և զմանկունս նոցա դերի տարեալ հանդերձիւք զարդարէին և ի սուրբ հաւատոցն մերկ արաբին և բազում աւուրս նստեալ յեզր քաղաքին այրեաց և աւերեաց զգեղեցկայշէն քաղաքն և դաւանքն մինչզի ամայի մնաց Սեփաստիայ թեմովն և վիճակովն բազում ժամանակս.... յետ սակաւ ժամանակի եղև կրկին խաղաղութիւն, որ ցրուեալ և ճապաղեալ ժողովուրդն հաւաքեցան»։ (№ 1875, էջ 229բ)։

58. Բնագրի ներքևի լուսանցքում այս տեղեկությունն ավելացրել է մեկ ուրիշը։ Ղ. Փիրղալեմյանն օգտվելով ժամանակագրության A տարբերակից, այս վկայության մասին գրում է. «Սոյն տարեգրութիւն գրողն ինձ թուի, թէ Սեբաստիոյ սուրբ Նշանի վանականաց մին լեալ է»։ (№ 4470, էջ 275ա)։ Այս ենթադրությունը կարող է ճիշտ լինել, մանավանդ եթե նկատի ունենանք, որ Անանուն Սեբաստացիների (XIII,XVI դդ.) ժամանակագրությունները, որոնք աղբյուր են հանդիսացել ներկա բնագրին, կազմվել են նույնպես Սեբաստիայում։

59. Մուհամմեդ III-ի մասին Դր. Համախեցու գրածը («Ժամանակագրութիւն» էջ 14—15) այստեղ համառոտաբար երկրորդել է վերջինիս աշակերտ Մինասը։

60. Տես վերևում, ծանոթ. 54։

61. Տես վերևում, ծանոթ. 55։

62. Այնուհետև մնացած վկայությունները ավելացրել են անվարժ ձեռացագրով։ Այս հանգամանքը ցույց է տալիս, որ ժամանակագրությունը տարբեր մարդկանց կողմից շարունակվել է։

63. Խոսքը շահ Աբաս I-ի մասին է։ Լեն-Պուլը սրա մահը թեև նշում է 1628 թ. (էջ 219), սակայն ստույգը 1629 թիվն է։

64. Այս երկրաշարժը տեղի է ունեցել 1668 թվի հունվարի 4-ին։ Այդ մասին մանրամասն տես ՄԺ, 1, էջ 243—244, 251, ծանոթ. 31։ Երկրաշարժի սարսափն ապրող ականատեսի մեկն այսպես է գրում, մի ձեռագրի դատարկ էջում. «Ի թվականութեանս Հոռոմոց ՌՃ և ԺԷ (16"8) ամին և յամսեանն յունվարի Դ (4) և օրն էր շաբաթ, ի աւուր սրբոյ Բարսեղի հայրապետին, ի ժամս ԲԺ (12)-ան, զի մինչդեռ կատարէաք զաղօթս առաւօտեան, յանկարծակի եղև շարժ մեծ, որ յահէ բազումք ահարեկք և կիսամահք եղեն. նաև բազումք ի կանանց վիժեցին զզաւակս իւրեանց, բայց աղօթիւք սուրբ իջման տեղոյս, ոչ ինչ վնաս եղև ի յերկիրս Արարատեան։ Այլ սակայն ի Տփխիս քաղաքի բազում եկեղեցիք և բուրճք և պատուարք ի մայր կործ[ան]եցան և թէպետ վնաս ամրոցաց և ապարանից յոլով եղև, սակայն ումեք վնաս չի դիպեցաւ երբէք, յորմէ երկուցեալք խանն և կաթողիկոսն Վրաց բազում նուէրս և պատարագս մատուցին. և զվաճառուն Վրաց ի բաց բարձին ընաւ յերկրէն իւրեանց երդմամբ։ Եւ ինքեանք ելեալ ի քաղաքէն արտաքոյ բնակէին ամենայն տամբքն իւրեանց վրանօք, քանզի յերերմանէն երբէք ոչ դադարէր քաղաքն. յաղագս որոյ երկուցեալք ոմանք ի փախստեայ գնային և ոմանք յանդիման քաղաքին լինէին։ Իսկ զՇամախոյ Գ (3) բաժինն կործանեցաւ, յերկիր նաև, թէ յանգունդս սուզեցաւ, մինչ.զի նշմարանք քաղաքին ընաւ ոչ երևէր և ի բնակչացն ԽՌ (40000) ոգիս կորընչէր, թող զօտարոտիս, իսկ որք ի յեկեղեցիս էին զերծան և որք արտաքոյ՝ ոմանք կործանեցան մի անգամ և ոմանք կիսամահ և երկնախոցք եղեն, յորոց փրկեսցէ զմեզ կործանմանէ Քրիստոս Աստուած մեր. ամէն»։ (№ 2281, էջ 402ա և բ)։

65. Հմմտ. ՄԺ, 1, էջ 395, 401, ծանոթ. 59—66։ Բնագրում «ՌՃ Երևանայ շարժն ԻԸ թուին» ձևով։ Այս երկրաշարժի մասին ավելորդ չենք համարի բերել ժամանակակից և ականատես՝ Գրիգոր Երևանցու և Սուքիաս քահանայի բավական հետաքրքիր տեղեկությունները, որոնք գտնվում են Հայսմավուրքի և Ժամագրքի ընդօրինակության հիշատակարաններում. «Եւ արդ յիշատակաւ ճառեցից զանցուած ժամանակիս զաստուածասաստն բարկութիւն, զոր եկն ի վերայ երկրիս Արարատեան վասն ծովացեալ մեղաց մարդկան, ըստ մարգարէին որ ասէ. «Ո՞ հայի յերկիր և տայ դողալ սմա մինչև ի լերինս մեծամեծս.»։ Իսկ ի թուականի մերում ՌՃԻԸ (1679) յամսեանն յունիսի ի չորրորդումն աւուր, յաւուր չորեքշաբաթի, յետ Համբարձման տեառն և որպէս թէ ի չորրորդումն ժամու յանկարծակի դղրդեալ շարժեցաւ երկիրս Արարատեան, և այնքան սաստկագոյն մինչ զի թուէր որպէս թէ նաւ ի վերայ ծովու ի սաստիկ հողմոյ ալէկոծելոյ։ Եւ ի սաստկութենէ շարժին բլաւ քաղաքն Երեւան հանդերձ բերդով և պարսպաւ, կործանեցան տունք և ապարանք գեղեցկաշէնք, քակեցան եկեղեցիք և վանորայք, ցամաքեցան աղբիւրք և ի տեղիս տեղիս ելին ջուր սեաւ, պատառեցան վէմք և լերինք և ի պատառմանէ վիմացն բոց ծիրանացեալ ելանէր յօդս։ Բարձրացաւ մառախուղն և ծածկեաց զերկիր ի գաւառէն Գառնւոյ մինչև ցլեառն Արագած հանդերձ լերամբք և դաշտօք, մինչզի արգել զճառագայթս արեգական։ Եւ թուէր որպէս թէ կատարածն լինիլ աշխարհի։ Իսկ մեռելոցն ոչ գոյր թիւ։ Անդ էր տեսանել զտապ մեծի տագնապին և զանբաւ աղէտս տարակուսանաց մնացելոցն։ Անդ էր տեսանել զկոծ և զկսկիծ ծնողաց և զաւակաց։ Անդ էր տեսանել զվայ և զեղուկ սիրելեաց և բարեկամաց։ Գոչէին և հառաչէին և ոչ ոք էր, որ օգնէր նոցա։ Գառնային և ձեռամբ պեղէին այսր և անդր և ոչ զօրէին սիրտք նոցա։ Եւ ի կսկծոցն դարձեալ զօրանային և ձեռամբ պեղէին զհողսն և զքարինսն։ Հանէին զմարսն ի գիրկս ունելով զորդիս իւրեանց, եդեալ ի բերանս նոցա զստինս իւրեանց։ Հանէին զհարսն ի ձեռն ունելով զորդիս իւրեանց, զեղբայր պատուեալ զեղբայրբ և զքոյր՝ զքերբ։ Եւ բազում կանայք ի յեփելն զհացի անկեալ էին ի վերայ թոնրի և խորովեալ։ Եւ որք հանէին կարգաւառ իրեարս դնէին և շուրջ զնոքօք պարէին զլուխ ի բաց և ողբային կսկծալի։ Եւ հատեալ մի գերեզման չորք և հինգ ի միասին թաղէին հանդերձիւք իւրեանց, առանց օրհնաց և քահանայի։ Գային յայլոց գաւառաց յօգնութիւն նոցա և զաւուրս բազումս պեղէին և ապա գտանէին, և հատեալ ի փոս արկանէին։ Եւ դարձեալ շարժէր շարժն ի տուէ և ի գիշերի մինչև յաւուրս ինն։ Եւ յիններորդումն աւուր, յաւուր հինգշաբաթւոջ, և էր որպէս թէ ժամս հինգերորդ, ըստ նմանութեան առաջին շարժին, և դարձեալ շարժեցաւ։ Եւ զոր ինչ խախտեալ մնացեալ էր յառաջին շարժէն և սա իսպառ կործոյս և տապալեաց։ Եւ դարձեալ շարժէր շարժն ի տուէ և ի գիշերի։ Եւ յաւուրս ութերորդի յամսոյն սեպտեմբերի պատահեցաք ի դամբարանի սրբոյ վարդապետին Յովհաննիսի, մականուամբ Կոզեռն կոչեցելոյ ի դիտին, ի վերայ Հրաստան դետոյ, որ է հանգստարան ննջեցելոցն Երեւանայ քաղաքին. և էր ժամ որպէս թէ երրորդ, յանկարծակի դղրդեալ շարժեցաւ երկիր։

Եւ ի սաստկութենէ շարժին զվիմապատ քար զերեզմանացն հարեալ յիրեարս հնչայէին։ Եւ հիացեալ ասեմք. «Փառք քեզ Աստուած...»։ Եւ յերկարեալ շարժն մինչև ի գլուխ ամին և այլ աւելի։ Իսկ այս ամենայն եկն ի վերայ մեր վասն ծուլացեալ մեղաց մերոց...»։ (№ 435, էջ 321ա—322ա, նույն հիշատակարանը տես № 2361, էջ 335ա—337ա)։

«...Եւ յետ նորա (Դաւիթ վարդապետի—Վ. Հ.) նստաւ աթոռ առաջնորդութեան եղբայր նորայ Աստեփաննոս վարդապետ Դ (4) ամ. և էր Ստեփաննոս վարդապետս քաջ փիլիսոփայ և աստուածաբան, բայց ոչ էր իբրև զԴաւիթ շինարար։ Եւ ի յաւուր եպիսկոպոսութեան սորա եղև աստուածասաստ բարկութիւն ի գաւառս Արարատեան ի թուականութեան Հայոց ՌՃԻԸ (1679) յունիս ամսոյ Դ (4) յաւուր չորեքշաբթի, մինչ ոչ էր հասարակեալ օրն, հնչեաց երկիր և գրգեցաւ արարածք զոզմանի լեալ երկիր բոլոր, շարժեաց յօգախառն ոստակազոյն մինչ զի տեսողաց անյոյս մնացեալ ի կենաց կենցաղոյս, զվերջին աւուրս մտածելով, եթէ լրումն երկրի իցէ աւուրս այս, ...վասն զի երկիր մեծաձայն պատառեցաւ, վէմք հատեալ ծուէնս ծուէնս լեալ, թաւալեալ ի ձորակս և ի հովիտս լցուեցան, գլուխն և զարեգակն մթացեալ զիշերացան ի փոշոյ հողոց, ջուրք համօրէն արիւնագունեալ խառնակեցան, ազբերակունք ի սահմանեալ ընթացիցն մոլորեցան, տունք Աստուծոյ հաստատաշէնք և արքայակազմ եկեղեցիք ի հիմնէ տապալեալ քակեցան, պողոտայք յոլովագնացք քարկուտս լեալ խափանեցան ի յընթացից մարդկանց, շէնք և շինուածք հնոց և նորոց ի սպառ կործանեցան ի հիմանց և մարդք անթիւ և անհամարք ի ներքոյ տանց մեռան։ Եւ ոմանք, որք ունէին զտեղիս յետ երկուց և յերից աւուրց հանէին ի տակէ հողից հանդերձիւք իւրեանց, առանց քահանայի և կարգի կատարման ամփոփէին ի հողս, և որք ոչ ունէին ոք սրտացաւ, եթէ հանէր զեռ կայ յայնմ տեղւոջ, ուր հանգուցեալ է... Ո՞վ կարէ պատմել զաղէտ և զկսկիծն, զոր տեսաք աչօք մերովք։ ... Ի յաւագ լեառն Մասիսէ մինչև ի բլուրն Շամիրամայ խաղաղ քակեաց և մեծ աւերումն եղև, բայց ի գլուխ կաթուղիկեաց հանուրց եկեղեցեաց լուսաւորչաշէն բարձրագմբէթն Էջմիածին միայն մնաց հանդերձ Դայիանաւ և Հռիփսիմէիւն ի պարծանս ազգիս մերոյ։ Իսկ գձորակն Այրէվա՛նից առաւել եղև աւերումն և քակտումն, վասնզի է ամենայն շինուածք ի մէջ խոր ձորի և շուրջ բոլորաւն վէմք ահագին. և յորժամ շարժեաց շուրջանակի թաւալեցան ամենայն գիմաց և լցան վանքն ամենայն, մինչզի ոչ երևիւր նշմարանք շինութեան, բայց միայն կատարս քարի երևէր, որք տեսողացն զարհուրեալ զողային։ Ըռահք և ճանապարհք ամենայն խափանեցան և թէ կամէին կերակուրս հոգեպահս տանիլ յուսով և թիկամբ բարձեալ արսիթերս գնային, վասնզի կարի զժուարացեալ էր և ամենայն կահիւք պակասեալ, ոչ գոյր անգի ազօթից և ոչ տեղի բնակութեանց մարդկան, բայց քարակարկառ միայն։ Եւ ոչ մնաց քար ի վերայ քարի, ոչ ի յեկեղեցիսն, ոչ ի յայլ շինուածս, որպէս ասէ Տէրն. «Մի մնասցէ քար ի վերայ քարի, որ ոչ քակտեսցի»։ և զայս կատարեցաւ լիապէս յայսմ ժամանակի։ Եւ մնաց անապատ և ամայի, զի ոչ գոյր հնար և եթէ ոք ըղձայր գնալ յերկրպագութիւն ոչ կարէր և հաւատաւոր երկրպագօղքն ես արգելեալ մնային տոչորեալ սրտիւ։ Եւ յաւուրս շարժման Ստեփաննոս բարունին էր ի մայրաքաղաքն Երևան ի Ցանապատն սուրբ. և ի հասարակաց ճաշու ազօթս կատարէին, հանդերձ միաբանութիւն, յայնժամու շարժեաց և քակտեցաւ եկեղեցին, էառ զտակ զեպիսկոպոսն զՍտեփաննոս և զքաջ հռետորն և անտի փոխեցաւ ի Քրիստոս...»։ (1512, էջ 558ա—559ա, նույնը տես «Արարատ», 1888, էջ 526—531)։

66. Հավանաբար Ռումինիայում։

67. Իմա՝ Բուխարեստ։

68. Նկատի ունի Մուստաֆա Լալա փաշայի արշավանքը. մանրամասն տես վերևում, էջ 241—242։

69. Առ. Դավրիժեցին իր պատմության Ծ գլխում (էջ 561—555) այս մասին ընդարձակ մեջբերում է կատարում Էջմիածնի միաբանության անդամ Ստեփաննոս Մեղրեցու նամակից։ Վերջինս, ինչպես հաղորդում է Առ. Դավրիժեցին. «Իւրոց կենցաղավարութեանց գիրակութիւն գրեաց առ եղբարս, որք էին յէջմիածին, յորում քարտիսի և կոստանդնուպօլսի մեծ քաղաքի հրկիզութիւնն էր գրեալ, որում ինքն անդէն էր լեալ ականատես» (էջ 561)։ Ստ. Մեղրեցու մասին, որ մահացել ու թաղվել էր Կ. Պոլսում, հիշում է նաև Ե. Քյոմուրճյանը. («Երեմիա Չէլէպիի Քէօմիւրճեան Ստամպօլայ պատմութիւն» Վիեննա, 1913, էջ 51)։ 1666 թ. հրդեհը Ե. Քյոմուրճյանը նկարագրել է 1661 թվին Արմաշի եկեղեցուն նվիրված Մաշտոցի հիշատակարանում (նույն տեղ, էջ 157—160) և ի միջի այլոց հիշատակում է Կ. Պոլսի չափածո պատմության մեջ (նույն տեղում, էջ 8)։

70. Բնագիրն այստեղ ընդհատվում է։

## XII

Սույն ժամանակագրությունը գտնվում է Մատենադարանի № 4723 ձեռագրում, որը Հայսմավուրք է և ընդօրինակվել է 1684 թ., Գրիգոր դպիր Վարագեցու կողմից։ Ժամանակագրությունը տեղավորված է ձեռագրի 275բ—276ա էջերում։ Հայսմավուրքի 274բ էջում գտնում ենք Ոստան գյուղաքաղաքի Բարլասան գյուղի բնակիչ ոմն Ավետիսի նահատակության պատմությունը[1]։ Վերջինիս, 275ր էջից, հաջորդում է առաջարկվող ժամանակագրությունը։

Թե ինչու է ժամանակագրությունը մտել Հայսմավուրքի մեջ, իմանում ենք ձեռագրի 275ր էջի ներքևի լուսանցքում, գրչի կողմից թողած հետևյալ վկայությունից. «Զօրինակն ղու տանէին այնոր համար զայս ամէն ի մէկ տեղ գրեցի»։ Աներկբայելի է, որ սույն տեղեկությունը վերաբերում է ժամանակագրությանը, որովհետև, եթե չհաշվենք Ավետիսի նահատակության պատմության վերջին, մի փոքր հատվածը, ապա 275ր էջում, բացի ժամանակագրությունից, այլ բան չենք գտնում։

Ժամանակագրությունն սկսվում է 1606 թ. Վանում և այլուր տեղի ունեցած սովի, և վերջանում է 1601 թ. Ուռհայում Աբրահամ քահանայի և ոմն Իսքանդարի նահատակության վկայություններով։ Բայց, որովհետև ժամանակագրության մեջ տեղեկությունները դասավորված են ոչ հաջորդական կարգով, այդ պատճառով էլ ժամանակագրության սկզբի՝ 1606 թ. և վերջի՝ 1601 թ. վկայություններն այս բնագրի ընդգրկած ժամանակի սահմանները չեն։ Ժամանակագրական տեսակետից մեզ զբաղեցնող բնագրի սկիզբը 1458 թ. է, իսկ վերջինը՝ 1648 թ.։ Այսպիսով, ժամանակագրությունն ընդգրկում է 190 տարվա ժամանակաշրջան։ Հեղինակի ով լինելու մասին ոչինչ չենք կարող ասել, սակայն հավանաբար նա 16-րդ դարի վերջի և 17-րդ դարի առաջին կեսի անձնավորություն է։ Այդ երևում է նրանից, որ երբ նա նկարագրում է 1606 թ. սովը, այնուհետև երկյուղածությամբ ավելացնում է. «Ցորմէ փրկեսցէ զմեզ տէր Աստուածն մեր. ամեն» (էջ 283)։ Ժամանակագրության մի քանի վկայություններ, օրինակ՝ 1606 թ. սովի, 1641 թ. Թավրեզի երկրաշարժի մասին և այլն, գտնում ենք Ա. Դավրիժեցու մոտ առավել ընդարձակ ձևով։ Իսկ մի քանիսն էլ № 3078 ձեռագրում, որի մասին կնշենք ծանոթագրությունների մեջ։

---

[1] Ստուգեցինք ձեռագրի երեք (№№ 4681, էջ 297բ—299ա, 4685, էջ 362ա—364ա, 4732, էջ 325ա—327ա) և տպագիր երկու (հրատ. Գրիգոր Դպրի, 1706 թ., էջ 534—537, 1834 թ., էջ 103—104), Հայսմավուրք, որոնց մեջ բացակայում է ինչպես Ավետիս նահատակի վկայությունը, այնպես էլ սույն ժամանակագրությունը։

«Դիւան»-ում Գ. Աղանյանցը հրատարակեց մի ժամանակագրություն Գրիգոր Դպիր Վարագեցու անունով[1]։ Ինչպես հիմա է պարզվում, Ղ. Փիրղալեմյանը սույն բնագրից[*] բազմաթիվ վկայություններ մուծել է Գր. Վարագեցու ժամանակագրության մեջ։

---

[1] Գիրք Ժ, էջ 59—60։

XII

*Ի Թուին Հայոց ՌԾԵ (1606) ամին խիստ սով եղև ի քա-* 275բ
*ղաքն Վան և Ցարղըռում, այնչափ մինչ զի կապիճ կորեկ դահեկան մի եղև, վասն որոյ հայր զորդին եկեր և որդին՝ զհայր, մայր՝ զդուստրն և դուստր՝ զմայրն։ Զտղայսն խարեալ տանէին ի տուն և զենեալ զմիսն ուտէին։ Այլ և ոմանք կերան զշուն և զկատուն, և ոմանք՝ զմիս իշուն և զձիուն և յետոյ մեռան ի սովուն. զի ոմն երթայր ի ճանապարհ և անդ ի ճանապարհին մեռանէր, և ոմն ի փողոցս և ի հրապարակս քաղաքին նստեալ և անդ մեռանէր, և ոմանք ի յարկս և ի բնակութիւնս իւրեանց նստեալ անդէն մեռանէին, և այնչափ մարդ ջարդեցաւ ի սովուն, որ ոչ կարէին թաղել, այլ վիհ փորէին և ի ներս լնուին և զհողն ի վերայ կուտէին[1]. յորմէ փրկեսցէ զմեզ տէր Աստուածն մեր. ամէն։*

*Դարձեալ ի սոյն թուին սաստիկ սով եղև յԸստամպօլու մինչև ի Թավրէզ, ի Բաղդադայ մինչև ի Դամուր ղափին. որ զշուն և զկատու, զմեռեալ մարդ և զկենդանի մարդ կերան ի սաստիկ սովոյն, վասն որոյ դայլք զօրացան ի վերայ մարդկան, որ զկենդանի մարդիք պատառեալ ուտէին, մինչ զի մարդադայլ անուանեցին զնոսա[2]։*

*Դարձեալ ՌՀԴ (1625) թուին յերկիրն Ցամթայ, ի գեօղն, որ կոչի Քապիկ, եղև մեծ նշան, որ կին մի ծնաւ զաւակ մեռած. Բ (2) գլխէն մէկ գլուխն մարդոյ և մէկ գլուխն հորթոյ և մարմինն անարատ հորթոյ, ոտքն, կճղակն և ագին ամէն հորթու նման, բայց միայն գլուխն մարդոյ։*

*Եւ դարձեալ ի ՌԿԷ (1618) թուին մահ անկաւ ի Գումիշխանէն և մէկ օր Ճ և Խ (140) տղայ մեռաւ։*

*Դարձեալ ՌՁԱ[3] (1632) թուին մոխիր եկն ի վերայ Սելենիկու Գ (3) օր և Գ (3) գիշեր[4]։ Դարձեալ ի սոյն ամին Լէհայ երկիրն մէկ մարդոյ ոչխարի մէջ մահ անկաւ. նա Աստուծոյ քուֆր ետուր և ասաց թէ «Երբ կու սպանես նա եկ և կեր»։ Աստուած նմա պատուհաս ետուր, որ ինքն շուն դարձաւ և զսատակեալ ոչխարսն կերաւ[5]։*

*Եւ դարձեալ ի ՌՁԲ (1633) թուին ի Բէլըրղաթ տաճիկ մի խոզ դարձաւ[6]։*

*Եւ դարձեալ ի ՌՂ (1641) թուին, փետրվարի ամսոյ հինգ, յաւուր ուրբաթու, սաստիկ և ահագին շարժ եղև ի քաղաքն Թաւ-*

րէզ և ի շրջակայ գաւառսն իւր, բաղում տունք և շինուածք կոր-
ծանեցան և բաղում մարդիկք ի ներքոյ հողին ճնացին և Շամ-
ղազան ամարաթն և Ուսթաշագըրտ ամարաթն բլան. և ի մէկ
օրն հինգ և վեց անգամ շարժ կու լինէր մինչև Բ (2) ամիսն, և
ապա ի ԺԵ (15) օրն. ի Ի (20) և Լ (30) օրն մի անգամ կու
շարժէր և այնպէս եկաց մինչև ի հինգ ամիս և || ապա դադարե- 276ա
ցաւ ողորմութեամբն Աստուծոյ[7],

Դարձեալ Թուին ՌՂԷ (1648) ամին, ապրիէլ ամսոյ Բ (2)-ս,
յաւագ ուրբաթու գիշերն, սաստիկ և ահագին շարժ եղև ի քաղաքն
Վան և յիւր երկիրն և բլաւ մասն ինչ պարըսպի քաղաքին և
յոլով եկեղեցիք և մաչիթներ և բազում շինուածք կործանեցան
և անթիւ մարդիկք մնացին ի ներքև հողին. և եկեղեցիքն Վա-
րագայ վանիցն աւերեցան և ամենայն վանորայք գաւառին աւե-
րեցան և յաւուրս Ը (8) ի շարժման եկաց երկիրն որպէս զնաւ
ի վերայ երեսաց ջրոյ և ապա հանդարտեցաւ, որ ի չորս օրն, և
ի հինգ օրն, և ի տասն օրն մի անգամ շարժէր և այնպէս մնաց
մինչ, որ յունիս ամիսն կատարեցաւ և ապա հաստատեցաւ եր-
կիր ողորմութեամբն Աստուծոյ[8]։

Ի Թուին Հայոց ՌԼԴ (1584) ամին, յունիս ամսոյ ԺԷ (17)
սուրբ Լուսաւորչի երկուշաբթին յանկարծակի դողումն եղև Ցե-
ղընկտն և զկնի շարժ ահագին որ և քաղաքն առհասարակ բլաւ և
ԺԵՌ (15000) այր և կին մեռան և ԵՌ (5000) մարդ ի ներքև հո-
ղին մնացին, զորս կիսամահ հանեցին, որն ապրեցաւ և որն
սախատ մնաց[9],

Դարձեալ ՋԷ (1458) Թուին շարժ եղև Ցեղնկան ԼԲՌ (32000)
մարդիկք մեռան։

Թուին ՋՁԴ (1535) աբեղայ մի Հայրապետ անուն և էրէց
մի ընդ նմին հրով այրեցին. և զխօջայ [Կ]ոգջայն ի Սեաստ նա-
հատակեցին[10],

Դարձեալ ի Թուին ՌԿԷ (1618) առաջին շահ [Ա]բասն ի
գեօղն Ցագուլիս զտէր Անդրէաս քահանայն նահատակեաց, վասն
Ք՛րիստոսի հաւատոցս[11]։

Թուին ՋԺԶ (1467) զՊարոնլոյսն նահատակեցին ի Կաֆայ[12]։

Թուին ՋԼԱ (1482) շարժ եղև Ցեղնկան ԼՌ (30000) հոգի
ներքև հողին ճնացին[13]։

Դարձեալ Թուին ՌԾ (1601) ամին Ղարայ Եազիչին սաստիկ
չարչարեաց յՈւրհայ քահանայ մի Աբրահամ անուն և այր մի
Սքանդար անուն և յետոյ գլխատեաց զնոսա, վասն անուանն
Քրիստոսի[14]։

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. 1606—1609 թթ.՝ Հայաստանի բազմաթիվ գավառներում և այլուր տեղի ունեցած սովի մասին հատուկ գլխում անդրադառնում է Ա. Դավրիժեցին («Պատմութիւն Առաքել վարդապետի Դաւրիժեցւոյ», Վաղարշապատ, 1896 թ., էջ 79—92), ինչպես նաև ժամանակակից այլ ժամանակագիրներ (ՄԺ, 1, էջ 185—186, 239, 247, 355)։ Այս վկայությունը Ղ. Փիրղալեմյանը մուծել է Դր. Վարագեցու ժամանակագրության մեջ, տես «Դիւան» գիրք Ժ, էջ 61—62)։

2. Տես ծանոթ. 1։ Սարդագայլի մասին հիշում է նաև Զաքարիա Սարկավագը, այն վերցնելով Ա. Դավրիժեցու պատմության վերևում նշված գլխից, սակայն, այդ մասին նա ավելացնում է իրեն հայտնի այլ տեղեկություններ ևս (Զաքարեայ սարկաւագի պատմագրութիւն» հ. Ա., Վաղարշապատ, 1870, էջ 57—58)։ Սույն տեղեկությունը նույնպես անցել է Դր. Վարագեցու ժամանակագրությանը, տես նույն տեղում, էջ 62)։

3. Բնագրում «ՃԶԱ» ուղղեցինք «ՌԶԱ», ըստ № 3078) ձեռագրի (էջ 276ա)։

4. Այս, ինչպես նաև հաջորդ երկու վկայությունները, որպես ժամանակագրական առանձին հատված գտնվում են Մատենադարանի № 3078 ձեռագրի 276ա էջում։ Դժվարանում ենք ասել, թե ձվ ումից, կամ մի երրորդ աղբյուրից են վերցրել։

5. Տես և հմմա. նույն տեղում, էջ 276ա։

6. Տե՛ս և հմմտ. նույն տեղում, էջ 276ա։

7. Այս երկրաշարժի մասին Ա. Դավրիժեցին բավական մանրամասն է խոսում (տես էջ 481—485), իսկ ժամանակագիրներից Իսահակ վարդապետը հիշում է միայն ամիսը (տես «Մանր ժամանակագրություններ» հա. 1, էջ 302), սակայն Անանունն այս նույն երկրաշարժը նշում է 1642 թ. ներքո (ՄԺ, 1, էջ 326), որն անշուշտ սխալ է։

8. Տես և հմմտ. Ա. Դավրիժեցի, էջ 489—494, իսկ Անանուն Վանեցու վկայության մեջ հավանաբար անդ է գտել գրչագրական սխալ, Հայոց «ՌՂէ»-ի փոխարեն գրել են «ՌՂԵ» (ՄԺ, 1, էջ 355, 381, ծանոթ. 12)։ Տես Դր. Վարագեցու ժամանակագրության Դ. Աղանյանցի հրատարակության բնագրում (Դիւան», գիրք, Ժ, էջ 62—63)։

Այս երկրաշարժը ուրիշները նշում են 1646 թվին։ Երկրաշարժի, ինչպես նաև նրան նախորդող մի քանի տարիներին, Վանում և Ոստանում տեղի ունեցած եղելությունների մասին ուշագրավ տեղեկություններ պահվել են Մատենադարանի № 4472 ձեռագրի դատարկ էջերում։ Այդ տեղեկությունները գրի է առել ժամանակակիցներից մեկը՝ Սահակ աբեղան, Աղբակում. «Եւ արդ ես սակաւ մի հառեցից զդառնութիւն ժամանակիս, որ եմք ի մէջ վասն ծովացեալ մեղաց մերոց, զի անաւրինաց հարկապահանջութիւն անչափ է և անթիւ, որ գրել չէ դար և գայլն պատմեցից ձեզ եղբարցդ իմոց, որ վասն մեղաց է պատուհասն, զի քան զայս ամս չորս ամաւ յառաջ ի Ցոստան մինչ ի Հայկաձոր և ի Մահմուդանք մարախ եկաւ և մարգիք սարսեցան, որ ոչ էին տեսեալ և մեղաց ոչ դարձան։ Եւ դարձեալ երկու ամաւ ի յետոյ սաստիկ մահ անկաւ ի Վան և ի Ցոստան և զթիւ մեռելոցն չկարացաք իմանալ և այնով այլ մեղայ ոչ տուին։ Եւ դարձեալ երկու ամաւ մինչ ի յայս ամս, որ եմք ի մէջ նոր, կրկին աստուածասաստ բարկութիւն սփռեցաւ յաշխարս Հայոց վասն անթուելի մեղաց իմոց մանաւանդ Վանայ քաղաքին դեղարէիւքն և Ցոստանայ մինչ ի Խօշաբ, զի ի յաւագ մեծի ուրբաթի գիշեր լոյսն ի շաբաթ, որ էր Զատիկ, Աստուած բարկացաւ և շարժեաց զերկիր ի բազում տեղիս և այն, որ ի Վան և Ցոստան շարժեաց մարդ ոք չէր տեսեալ և ոչ ի պատմութեանց լուեալ, զի ոչ վանք մնաց, ոչ քաղաք, ոչ գեւղ և ոչ շինութիւն, զի Խ (40) եկեղեցի Վանայ բոլոր մինչ ի Հայկաձոր ի հիմանց ըլան այն հրաշալի աւրն և սուգ ածին քրիստոնէից և զաւերումն տանց և բարձ-

բաշէն ապարանից և գնացեալ մարդ, կին և աղայ և անասուն, որ ի սան հողի տակն մնացին, չկարացաք իմանալ և ի դիր արկանել, դի անթիւ էր, բայց նորա միայն է գիտելի, որ արար գնա վասն մեղաց մերոց...»։ (էջ 633ա—633բ)։ Մատենադարանի մի այլ ձեռագրի (№ 6989) հիշատակարանում այդ մասին մեկ ուրիշը դարձյալ գրում է.

«Որ և ի սոյն ամի (1646 թ.) եղև ահագին շարժ յերկիրս Վանայ ի յարութեան հրաշալուցի շաբաթ աւրն, ի մէջ գիշերի և արար բաղում աւեր մանաւանդ ի Վան և ի Վարագ և բաղում եկեղեցիք տապալեցան և շինուացք կործանեցան և բաղում որդիք մեռան ի յաւերակի, վասն ծովացեալ մեղաց իմոց...» (էջ 351բ)։

Սակայն 1648 թվի ապրիլի 2-ը, ինչպես հաղորդում է այս ժամանակագրությունը, ավագ ուրբաթ չի լինում, որովհետև այդ տարին Զատիկն եղել է ապրիլի 2-ին, հետևապես ավագ ուրբաթը կլինի մարտի 31-ին։ Իսկ ինչ վերաբերում է վերջին երկու հիշատակարաններին, ապա 1646 թվի Զատիկը կլինի մարտի 29-ին. նշանակում է Սահակ արեղայի համաձայն երկրաշարժը տեղի է ունեցել մարտի 27-ի լույս 28-ի գիշերը, իսկ վերջին հիշատակարանի համաձայն՝ մարտի 28-ի լույս 29-ի գիշերը։

9. Տես և համտ. Մ. Անեցի, էջ 176, Ա. Դավրիժեցի, էջ 631, ՄԺ, 1, էջ 173։

10. Այս հատվածի մեջ մի քանի եղելություն միևնույն տարեթվի տակ է դրված. օրինակ՝ Անանուն Սեբաստացին Հայրապետ արեղայի նահատակությունը նշում է 1533 թ. ներքո, ոՌ քահանայի՝ 1535 թ., որը Սեբաստիայի Շնքուռկ գյուղից էր, իսկ խոջա հոկչայի մահը՝ 1536 թ. (ՄԺ, 1, էջ 170)։ Տես նաև «Դիւան», գիրք Ժ, էջ 61։

11. Ա. Դավրիժեցին Անդրեաս քահանայի նահատակության մասին հատուկ գլխում խոսում է (էջ 354—363), նահատակությունը նշելով 1617 թ. նոյեմբերի 18-ին (էջ 361). համտ. ՄԺ, 1, էջ 325։

12. Տես և համտ. ՄԺ, 1, էջ 319, 330, ծանոթ. 4, «Դիւան», գիրք Ժ, էջ 61։

13. Այս երկրաշարժի մասին մի ժամանակակից հետևյալ սակավ տողերն է թողել 1583 թ. ընդօրինակած ձեռագրի հիշատակարանում. «Եւ արդ գրեցաւ սա ի դառն և ի նեղ ժամանակիս, դի վասն ծովացեալ մեղաց իմոց Երզնկա քաղաք տապալեցաւ և ԺԸՌ (18000) ոգի ի ներքև հողու մնաց և այլ ոչ մնաց մի կենդանի։ Եւ Տաճկունք քակեցին զՍքանչելագործն...» (№ 6879, էջ 364ա)։

14. Տես «Դիւան», գիրք Ժ, էջ 61։ Բնագիրն այստեղ վերջանում է և ապա սկսվում է ստացողի հիշատակարանը «Աղօթիւքն ողորմեա տէր Աստուած ստացողի գրոյս դասապ Սարխոշին, հօրն Գրիգորին և մօրն պըստի Խաթունին...» (էջ 276ա)։

XIII

# ԴԱՎԻԹ ԲԱՂԻՇԵՑՈՒ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ (XVII Դ.)

*Դավիթը ծնվել է Բաղեշում, այնտեղ էլ անցկացրել իր կյանքը և գրել իր ժամանակագրությունը։ Նրա ծննդյան տարեթիվը հայտնի չէ[1]։ Կենսագրական որոշ տեղեկություններ կան իր իսկ կազմած ժամանակագրության մեջ, որոնցից պարզվում է, որ Դավիթը աշակերտել է Բաղեշի առաջնորդ Մեսրոպ վարդապետին, 1641 թ. իր ուսուցչից ձեռնադրվում է քահանա, «և յետ Զ (6) ամի», այսինքն 1647 թվին՝ վարդապետ[2], իսկ 1651 թվին դառնում Բաղեշի վանքերից մեկի՝ Ծնդրակատարի վանահայր։ Ժամանակագրության այս տեղեկություններին եթե ավելացնենք մի քանի հիշատակարանների ուրիշ, թեև ոչ այնքան մանրամասն, վկայությունները[3], ապա մեր գիտելիքների շրջանակները Դավիթ Բաղիշեցու մասին կսահմանափակվեն։ Դ. Բաղիշեցին, ինչպես հաղորդում է նրա ուսուցիչը, մահացել է 1673 թվի դեկտեմբերի 29-ին[4], Լիմ անապատում[5]։*

*Ժամանակակիցներից մեկը Դավիթ Բաղիշեցուն կոչում է «քաջայաղթ փիլիսոփա»[6], թեև մեզ հասած նրա մատենագրական ժառանգությունը չի հաստատում այդ հորջորջումը։ Դ. Բաղիշեցին անձամբ ընդօրինակել կամ ուրիշներին ընդօրինակել է տվել բազմաթիվ ձեռագրեր, որոնցից մի քանիսը գտնվում են Մատենադարանում[7]։ Դ. Բաղիշեցու հիմնական աշխա-*

---

*[1] Պրոֆ. Աշ. Աբրահամյանը Դ. Բաղիշեցու մասին գրած իր հոդվածում ենթադրում է, որ նա ծնված պետք է լինի 1610—1620 թվականներին («Էջմիածին», 1946, VIII—X, էջ 56)։*

*[2] Պրոֆ. Աշ. Աբրահամյանը վերահիշյալ իր հոդվածում սխալմամբ գրում է. «Նույն Մեսրոպից նա (Դ. Բաղիշեցին—Վ. Հ.) 1641 թվին ստացել է «գաւազան իշխանութեան», այսինքն վարդապետելու, քարոզելու իրավունք» (նույն տեղում, էջ 57)։*

*[3] Տե՛ս Գ. Աղանյանց, Դիւան Հայոց պատմութեան, գիրք Ժ, Թիֆլիզ, 1912, էջ 55—58, Մատենադարանի ձեռագրեր №№ 5155, էջ 185ա, 5179, էջ 242ա, 5732, էջ 165բ և այլն։*

*[4] Տե՛ս ներքևում, ծանոթ. 287։*

*[5] 1664 թ. Վարդան Բաղիշեցին գնում է և նորոգում Տարոնում գտնվող ս. Ղազարի վանքը, այնտեղ նա հանդիպում է քայքայված ձեռագրերի, որոնց մի մասը տալիս է ընդօրինակելու, այդ մասին գրելով հետևյալը. «...տվաք նորոգել և կազմել ձեռամբ Սահակ Վանեցի վարդապետին ի թվին ՌՃԻ (1671) օգնականութեամբ և ձեռնտուութեամբ* հոգևոր և հարազատ համշիրակ եղբօր մերոյ Դաւիթ վարդապետին. *որ այժմ առաջնորդ է ս. ուխտիս Ղազարու վանացս...» (№ 2748, էջ 358բ)։ Ընդգծված բառերը մեզ ենթադրել են տալիս, որ խոսքը վերաբերում է Դավիթ Բաղիշեցուն, եթե ճիշտ է այդ, նշանակում է Դ. Բաղիշեցին իր կյանքի վերջին տարիներին եղել է ս. Ղազարի (Առաքելոց) վանքի վանահայր։*

*[6] № 5179, էջ 242ա։*

*[7] № № 4109, 5155, 5179, 5732 և այլն։*

տությունը դա նրա ժամանակագրությունն է, որը բավական ժամանակ ինչ հայտնի է մասնագետներին։ Ժամանակագրությունից առաջին անգամ Ղ. Փիրղալեմյանը 1888 թ. «Նոտարք Հայոց»-ում հրատարակեց չորս ոչ ընդարձակ հատվածներ[1], որոնք նա վերցրել էր իր շրջագայությունների ժամանակ Վարագի ս. Նշան վանքի մատենադարանի մի ձեռագրից։ Ավելի ուշ, 1898 թ. «Արարատ»-ում լույս տեսավ Կիլիկեցու (նույն ինքը Հ. Թոփչյան) հոդվածը ժամանակագրության և նրա հեղինակի մասին[2], իսկ ժամանակագրության մի քանի ընդարձակ հատվածները նա հրատարակեց Խ. Դադյանի ձեռագրերի ցուցակում[3]։ Ալիշանը վերոհիշյալ հաղորդումները նկատի ունենալով, Դ. Բաղիշեցուն դասում է հայ պատմիչների շարքը՝ սակայն սխալմամբ նշելով, թե իբր նրա ժամանակագրությունը սկսվում է արաբների տիրապետությունից[4]։ Դ. Բաղիշեցու մասին համառոտ տեղեկություններ և ժամանակագրության անհամեմատ ընդարձակ հատվածներ լույս ընծայեց Գ. Աղանյանցը[5], վերցնելով Ղ. Փիրղալեմյանի հավաքած նյութերից։ Դ. Բաղիշեցու մասին դրանից հետո բանասիրությունը երկար ժամանակ լռեց մինչև պրոֆ. Աշ. Աբրահամյանի հոդվածի հանդես գալը[6]։ Եղած հոդվածներից ամենից հետաքրքիրն ու փաստալիցն այս հոդվածն է, որտեղ օգտագործված են ձեռագրական նոր նյութեր և շարադրված է ոչ միայն Դ. Բաղիշեցու կենսագրությունը, նրա մատենագրական գործունեությունը, ժամանակագրության աղբյուրները, այլև փորձ է արված տալ Դ. Բաղիշեցու պատմագիտական հայացքների և քաղաքական գործունեության գնահատականը։ Բացառությամբ վերջին հոդվածի, նշված հոդվածներին և ժամանակագրության բնագրի հրատարակությանը հիմք է հանդիսացել ժամանակագրության թերի կամ թերի ընդօրինակած (օրինակ Փիրղալեմյան) բնագրերը, այդ պատճառով էլ մինչև վերջերս (1946 թ.) պարզ պատկերացում չկար Դ. Բաղիշեցու ժամանակագրության ծավալի և ընդգրկած ժամանակաշրջանի մասին։

Մեզ հասել են Դ. Բաղիշեցու ժամանակագրության երեք տարբերակներ[7], Սրանցից երկուսը գտնվում են Մատենադարանի №№ 7589 (էջ 1բ—

[1] էջ 86, 122—123, 148, 203—210։ Ղ. Փիրղալեմյանը 86-րդ էջի երկրորդ ծանոթագրության մեջ ժամանակագրության մասին սխալ տեղեկություն է հայտնում. «Ունի սոյն Դաւիթ վարդապետ մի պատմագրութիւն. սկզբնաւորեալ յիշխանութենէ տէրութեան Ռուբինեանց մինչև ի ժամանակս իւր»։

[2] էջ 120—124։

[3] Ց. Ց. Թոփճեան, Ցուցակ ձեռագրաց Խաչիկ վ-ի Դադեան, Ա. Վաղարշապատ, 1898, էջ 96—99։

[4] «Հայապատում», Ա, էջ 129։

[5] «Դիւան հայոց պատմութեան», գիրք Ժ, էջ ԼԱ—ԼԴ, 41—56։

[6] Պրոֆ. Աշ. Աբրահամյան, Դավիթ Բաղիշեցու տարեգրությունը և նրա արժեքը հայ մատենագրության մեջ, «Էջմիածին», 1946, VIII—X, էջ 55—59, XI—XII, էջ 35—42։ Պրոֆ. Հ. Աճառյանի տեղեկատու հոդվածը («Հայոց անձնանունների բառարան», հտ. 2, Երևան, 1944, էջ 57—58) նկատի չունենք, որովհետև այնտեղ բիբլիոգրաֆիկ տեղեկություններ են հավաքած նախորդ հոդվածներից։

[7] Այս երեք ընդօրինակություններից, անշուշտ, տարբեր է «Նոտարք Հայոց»-ում Ղ. Փիրղալեմյանի հրապարակած չորս հատվածների բուն օրինակը։ Հենց այս ընդօրինակությունից էլ Գ. Աղանյանցը «Դիւան»-ում հրատարակեց Դ. Բաղիշեցու ժամանակագրությունը։ Վերջինս իր ներածականում հետաքրքիր մանրամասնություններ է հայտնում ժամանակագրության մասին. լսենք նրան. «Ժամանակագրութիւնը օրինակել է Գրիգոր երեցը իր՝ Դավթի հրամանով Մխիթար Գոշի Երեմիայի մարգարէութեան մեկնութեան

58բ, այս տարբերակը այսուհետև կնշենք A) և 4044 (էջ 1բ—68բ, սա էլ Б) ձեռագրերում[1]։ Վերջիններս բովանդակում են միայն Դ. Բաղիշեցու ժամանակագրությունը։ Սրանց ընդօրինակության ժամանակը հայտնի չէ, ամենայն հավանականությամբ A-ն XVIII, իսկ Б-ն XVII դարի է։ Ժամանակագրությունն ամբողջական է A տարբերակում, իսկ Б-ում միջից և վերջից թերի, թեև այստեղ (Б-ում) ժամանակագրության բնագիրը համեմատաբար լավ է պահպանված, որտեղ աղավաղումները շատ աննշան են։ Երրորդ տարբերակը գտնվում է Բաքվի Լենինի անվան քաղաքային գրադարանում[2]։ Այս ձեռագիրը, որը զանազան մեկնությունների և այլ նյութերի ժողովածու է, ընդօրինակվել է 1664—1667 թվականներին, Բաղեշում, իսկ ժամանակագրությունը՝ 1667 թ., Միքայելի (մականվամբ Բուչանք) կողմից, ասել է թե Դ. Բաղիշեցու կենդանության ժամանակ, գուցե և հեղինակի ինքնագիր օրինակից։ Ժամանակագրությունն այս տարբերակում անհամեմատ լավ է պահպանված, քան նախորդ տարբերակներում՝ չկան աղավաղումներ, խմբագրման և կրճատման հետքեր, ընդմիջարկություններ և գրված է գրագետ մարդու կողմից։ Ժամանակագրության Բաքվի տարբերակի միայն նախավերջի թերթն է ընկած։ Նախքան վերնագիրը ժամանակագրությունն սկսվում է տոհմական չորս (սյունաձև) ճյուղագրությամբ։ Առաջին սյունակում տրված է Ադամից մինչև Նոյ, երկրորդում՝ Սեմի սերունդը մինչև Աբրահամ, երրորդում՝ Քամի սե-

---

հետ, որ Լիմ կղզումն է, ուր բերել է ինքը, երբ իր մահից առաջ իր աշակերտակից Ավետիք վարդապետի և իր վարժապետ Մեսրոպ արքեպիսկոպոսի հետ գնացել էր այցելելու այդ վանքը, ուր և վախճանվում է 1673-ին» (դիրք Ժ, էջ ԼԳ)։

Երեմիայի մարգարեության Մխիթար Գոշի մեկնության Մատենադարանի ձեռագրերից մեկի հիշատակարանում կարդում ենք. «Արդ գրեցաւ... ի թուին հայոց ՌԾ և Ժ (1661) ձեռամբ եղեռնագործ... և տառապեալ ոգւոյ Գրիգոր երեցու ի դառն և ի վշտաշատ ժամանակիս, որ նեղիմք ի ձեռս այլազգեաց և հարկապահանջութեան նոցա։ Արդ՝ գրեցաւ սա ի քաղաքս Բաղէշ... ի խնդրոյ սրբազան և քաջայաղթ փիլիսոփայի Գաւթի վարդապետին ի վայելումն անձին...» (թվում է Գ. Բաղիշեցու աշակերտակիցների անունները, № 5179, էջ 242ա)։ Միևնույն ժամանակ, այս ձեռագրի (№ 5179) բիբլիոգրաֆիկ քարտում, որպես ծանոթություն, գրված է հետևյալը. «Սույն Զ-ի բովանդակության մեջ նշանակված է Մեսրոպ արքեպ. Տ. Մովսիսյանի սկզբնապես կազմած ցուցակում հետևյալը՝ «Համառոտ պատմութիւն ազգաց Տաճկաց Օսմանցոց, որ բռնակալեցին միահեծան ի ծայրիցն Եւրոպիոյ բովանդակ հիւսիսոյ և Բաբելոնիւ ընդ հարաւ», սկ. «Արդ ի թվին ՌՀԱ այր ոմն անուն Օսման»։ Այժմ ձեռագրում չենք գտնում ոչ ժամանակագրությունը և ոչ էլ Օսմանցիների համառոտ պատմությունը, ինչպես հաղորդում են Գ. Ադանյանցը և բիբլիոգրաֆիկ քարտի ծանոթությունը։ Ձեռագրում գրիչ Գրիգոր երեցի ինքնագիրը հասնում է մինչև 237 թերթը, այնուհետև 238ա—242բ էջերը այլ ձեռագրի է և նոր է գրվել, հավանաբար թերթերը հին, փտած լինելու պատճառով։ Նոր ժամանակի ձեռագրով գրված են Մխ. Գոշի, Գրիգոր երեցի հիշատակարանները, որոնք թերի են (Մխ. Գոշի այս հիշատակարանի լրիվ, բայց մի այլ ընդօրինակության բնագիրը տես № 3007 ձեռագրի 146ա և բ էջերում)։ Սակայն հետաքրքիրն այն է, որ Գ. Ադանյանցի ակնարկած Գրիգոր երեցի ընդօրինակությունը Մատենադարանի № 5179 ձեռագիրն է, բայց, սրն ընդօրինակված է ոչ թե Լիմ անապատում, այլ Բաղեշում, ոչ թե 1673 թվին, այլ 1661 թվին։

[1] Ժամանակագրության № 4044 տարբերակը Ն. Գադայանի ձեռագրերի ցուցակում նշված օրինակն է։

[2] Այստեղ գտնվում են հայերեն 4 ձեռագրեր, որոնցից մեկի ՃՀԸ-ՄՀԷ էջերում տեղավորված է Գ. Բաղիշեցու ժամանակագրությունը։ Այս տարբերակը այսուհետև կանվանենք Բաքվի օրինակ։

րունդը մինչև Նինոս և սրա կին Շամիրամը, չորրորդում՝ Հաբեթի սերունդը մինչև Արա Գեղեցիկը։ Այս տեղեկությունները Ս. Անեցու համապատասխան վկայությունների խմբագրությունն է միայն[1]։

Ժամանակագրությունն ունի ընդարձակ վերնագիր՝ «Դաւթի Բանասիրի Բաղիշեցոյ ծաղկաքաղ արարեալ ի բազում պատմագրաց [զազ]գն Յաբեթի և ուղ ինչ զՍեմ[այ] և զՔամայ ըստայգ գտակաւ բազում աշխատութեամբ ընտրելով զլաւն և զպիտանին անոխալապէս շնորհօք Քրիստոսի Աստուծոյ մերում»։ Այս ընդհանուր վերնագրից բացի, բնագրում նյութը շարադրված է մի քանի առանձին վերնագրերի ներքո։ Ժամանակագրությունն սկսվում է հայերի բիբլիական նախահոր Հաբեթի և սրա հաջորդների շրջանից և հասնում մինչև հեղինակի ժամանակները՝ 1662 թ.։ Ժամանակագրական այս հսկայական սահմանների մեջ հեղինակի ժամանակակից շրջանը շատ քիչ տեղ է բռնում։ Ժամանակագրության մեծագույն մասը իր նախորդող մատենագիրներից հավաքած նյութերն են։

Ժամանակագրության կառուցվածքի մասին ահա թե ինչ է գրում հեղինակն իր հիշատակարանում, որը, ի միջի այլոց, A տարբերակում թերի է վերջից, իսկ Б-ում չի պահվել. «...Ծաղկաքաղ և համառօտ արարի ի պատմագրաց բազում աշխատութեամբ՝ յԱդամայ մինչ ցարդ զկարգս նահապետաց և մարգարէից և թագաւորաց և հայրապետաց և ի յերկուս ճառօրս բաժանեցի՝ առաջին յԱդամայ մինչ յԱբեթ մեր նախնին և յԱբեթէ զթագաւորս Հայկազանց և զԱրշակունեաց և զԲագրատունեաց և զԱրծրունեաց և զՕսմանեանց, զգալ Թաթարին և Լանկ-Թամուրին, նաև զկարգ կաթողիկոսաց ի ժամանակս իւրաքանչիւրոցն, ի սրբոյն Գրիգորէ մեր Լուսաւորչէն մինչև թվին ՌՃԺԲ կարգաւ ասացի մինչ ի Յակոբ կաթողիկոս աղաչեմ վասն սի[րոյն]*... ցտաճարն և յաւերումն և ի շինումն և անտի մինչև ի Յաղէքսանդր և յԱնտիոքոս... մինչ ի ծնունդ կենարարին և զկարգս առաքելոց և հայրապետաց Հռոմոց և զկարգս թագաւորաց ի Գայիոսէ մինչև ցԿոստանդիանոս և անտի մինչ ի Մանուէլ...»[2] (ընդգծումը մերն է—Վ. Հ.)։

Այսպիսով, ամբողջ աշխատությունը բաժանվում է երկու հատորի՝ առաջին հատորը ընդգրկում է հայոց պատմությունը, իսկ երկրորդ հատորը՝ ընդհանուր պատմությունը՝ նախահռոմեական, հռոմեական և բյուզանդական շրջանը, ընդ որում յուրաքանչյուր հատորը սկսվում է բիբլիական և ավանդական պատմության զրույցներով։

Առաջին հատորի՝ Հայոց պատմության պերիոդիզացիան հեղինակը հարմարեցրել է քրիստոնեական եկեղեցու չորս ավետարանիչների և սրանց համապատասխան աշխարհի կողմերի, հողմերի, գետերի τετραΧα-յան համակարգությանը, այդ մասին շատ պարզ գրելով ժամանակագրության մեջ. «Արդ ի Դ (4) բաժանեցի զթագաւորութիւն Արամեանս տոհմի ըստ Դ (4) կողմանց և Դ (4) հողմոց և Դ (4) վտակաց, նախ Հայկազնեաց, երկրորդ Արշակունեաց, երրորդ Բագրատունեաց, չորրորդ այժմ Յարծրունեաց խառնեալք խնամութեամբ ընդ Հայկազունսն»[3]. Հենց այս սկզբունքով հեղի-

[1] Տե՛ս Ս. Անեցի, էջ 5—11։

* Բնագրում այստեղից 2—3 տող մաշված է և վնասված։ Հենց այդ մասից էլ հեղինակը սկսում է շարադրել ժամանակագրության II հատորի բովանդակությունը։

[2] Բաքվի օրինակ, էջ ՄՀէ։

[3] Տե՛ս Ներքևում, էջ 343։

նակը դասավորել է ժամանակագրության սկզբի ավանդական պատմության տոհմական չորս ճյուղագրությունը՝ Ադամից—Նոյ, Սեմից—Աբրահամ, Քամից—Շամիրամ և Հաբեթից Արա Գեղեցիկ։ Հնում, մեր նախնիների մեջ, այս պատկերացումն այնքան էր տարածված, որ շատ հաճախ Ավետարան—ձեռագրի գլխավոր հիշատակարանը այդպես էին սկսում[1]։

Սակայն, նյութի շարադրության ընթացքում հեղինակը առաջին հատորը չի ավարտում Ռուբինյանների պատմական ասպարեզից հեռանալով, այլ նա գրում է Լանկ-Թամուրի, Օսմանյան Թուրքերի և այլ եղելությունների մասին, մինչև 1662 թ., դուրս գալով իր կազմած պերիոդիզացիայի շրջանակներից։

Ժամանակագրության աղբյուրներին առաջին անգամ անդրադարձել է Հ. Թոփչյանը[2], իսկ ավելի հանգամանորեն քննել է պրոֆ. Աշ. Աբրահամյանը[3], որոնք մատնացույց են արել Գ. Բաղիշեցու օգտագործած մատենագիրներին՝ Մ. Խորենացուն, Փ. Բուզանդին, Ագաթանգեղոսին, Հ. Դրասխանակերտցուն, Ս. Անեցուն, Կ. Գանձակեցուն, Թ. Մեծոփեցուն։ Այս ցուցակին կավելացնենք նաև Եվ. Կեսարացուն, Հոմերոսին, Գր. Նարեկացուն, Ասողիկին, Միխ. Ասորուն, Վանականին, Կիրակոս Բանասերին, զանազան մարգարեների և առաքյալների։ Հեղինակը մի շարք դեպքերում հիշում է իր օգտագործած աշխատությունների հեղինակներին՝ Հոմերոս, Եվ. Կեսարացի, Մ. Խորենացի, Փ. Բուզանդ, Հ. Դրասխանակերտցի, Գր. Նարեկացի, Ս. Անեցի, Միխ. Ասորի, Կ. Գանձակեցի. իսկ ավելի հաճախ օգտագործված նյութը վերապատմվում է առանց հեղինակին հիշելու, երբեմն էլ «ոմանք ասեն» կամ «այլք ասեն» անորոշ արտահայտություններով։ Ավելորդ չենք համարի դեմ առ դեմ բերել ժամանակագրության և օգտագործված կարևոր սկզբնաղբյուրների համապատասխան հատվածներից մեկ մեկ օրինակ։

| Մ. Խորենացի[4] | Գ. Բաղիշեցի |
| --- | --- |
| 1. I., ԺԲ, էջ 40. «Ամասիա բնակեալ յԱրմաւիր՝ յետ ամաց ծնանի զԳեղամ, և յետ Գեղամայ զՓառոխ արի և զՑոլակ։ Եւ յետ ծնանելոյ զսոսա՝ անցանէ զգետովն մերձ ի լեառնն հարաւոյ, և շինէ անդ առ խորշիւք լեռնոտինն մեծապէս ծախիւք երկուս տունս. զմին յարևելս կոյս, մօտ յակունս աղբերցն, որ առ ստորոտով լերինն ելանեն. իսկ զմիւսն յարևմուտս կոյս նորին տանն, բացագոյն իբր մեծօր հասարակ աւուր միոյ հետևակագնացի առն ճանապարհի»։ | 1. էջ 303 «Ամասիայ բնակէ յԱրմաւիր, յետ ամաց ծնանի զԳեղամ և յետոյ զՓառոխ արի և զՑոլակ։ Եւ յետ ծնանելոյն անցանէ զգետովն Երասխայ մերձ ի լեառնն հարաւոյ և շինէ անդ առ խորշիւք լեարնն ոտին Բ տուն՝ մինն յարևելս ստորոտոյ լերանն մօտ յակն աղբերն և միւսն յարևմուտս կոյս նորին տան, բացագոյն աւուր միոյ ճանապարհ»։ |

[1] Ահա մեկ օրինակ. «Փառք անսկզբանն և սկզբանն ամենայնի՝ անեղէին և դոյացուցչին բնաւից... իսկ չորից աւետարանչացն խորհուրդ բազմաւրինակ իմն ցուցմամբ տեսանի, զի ոմանք ասեն թէ չորից աւետարանչացն են չորք անկիւնք արարածոցս՝ արևելք, արևմուտք, հիւսիս, հարաւ...իսկ ոմանց հաճոյ թուեցաւ ըստ չորից մշտահոս գետոցն յադենական աղբերէն յառաջ խաղացեալ առ ի տիեզերաց ոռոգումն՝ Փիսոն, Գեհոն, Տիգրիս, Եփրատէս և սոցա գոլով նմանապէս թուով ուռճացեալք ի կենդանական աղբերէն... նոյն աւրինակ ըստ տեսութեանն Եզեկիէլի քառակերպեան աթոռոյ՝ մարդ, առիւծ, եզն, արծիւ...» (№ 4841, էջ 359ա—359բ)։

[2] «Արարատ», 1898, էջ 123։

[3] «Էջմիածին», 1946, IX—XII, էջ 38—39։

[4] «Մովսիսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց», աշխ. Մ. Աբեղյան և Ս. Հարությունյան, Տփխիս, 1913։

### Հ. Դրասխանակերտցի[1]

*2. էջ 11. «Յետ երկնասահանացն հեղեղաց և անդնդապատոյտ ջրահեղձն լինելոյ բոլոր շնչականաց, և յետ ակամայ կամաւ նաւարկութեանն Նոյի և ի ցամաք ելանելոյ ի Հայս ըստ հրամանի տեառն որդւովք և կանամբք հանդերձ և այլովք ևս ընդ նոսին անրան կենդանեօք՝ սկիզբն առեալ դարձեալ առնու աստուածային այցելութեամբն աճելութիւն ծննդոց երկրի»։*

*2. էջ 300. «Յետ երկնասահանաց հեղեղաց և անդնդապատոյտն ջրահեղձ լինելոյ շնչականաց, յետ ակամայ նաւարկութեան Նոյի Իէ խաբ ամսոյ և ի նոյնքանիսն ելանելոյ հանդերձ եռեակ սեռիւք ի լաստէն ջրառող ի Մասիք Արարատեայ»։*

### Ասողիկ

*3. էջ 7. «Արդ յամենեցունց ի սոցանէ, եբր ի լայնալիր մարդաց և ի հովտային լերանց հաւաքեալ ծաղիկս հեշտալի աչաց հայելոյ գեղեցկագոյն գունովքն և անուշահամ հոտովքն՝ բերեալ ընծայ մատուցանեմ աստուածասէր անձինդ և հարցասիրական խորհրդոց քոց...»*

*3. էջ ՄԾԳ «Այլ մեք...... յամենեցունց ի սոցանէ ընդրեալ եբր լայնալիր և ի հովտային լերանց ծաղիկս դեղեցկագոյն, գուարճատեսիլ հոտով կոկոնաձև փնջով ընծա մատուցանեմ բանասէր անձանցդ...»։*

### Մ. Խորենացի և Ասողիկ

*4. Մ. Խորենացի III, ԼԹ, էջ 307 «ըստ իւրում անզգամութեանն սակրով վճարի...» Ասողիկ, էջ 78, «Այլ քաջ զօրավարին Անատոլեայ նոյնժամայն ըմբռնեալ զՊապ՝ կապեաց երկաթի կապանօք և ետ տանել առ կայսր։ Եւ ոչ տեսութեան արժանի արար, այլ հրամայեաց ընկենուլ ի ծով»։*

*4. էջ 324. «Եւ իմացեալ մեծին Թէոդոսի առաքեաց զԱնատոլիայ զօրագլուխն, որ ըմբռնեաց զՊապ և կապանօք էած առ Թէոդոս. և նա տեսութեան ոչ արար արժանի, այլ սակրով վճարեալ և ի ծով ընկեցեալ...»։*

### Ս. Անեցի

*5. էջ 77. «ՈԳ (ՇԱ) ամէր Յոհան ի Կոդովտայ ի գեղջէ Բագարանէ ամս ԻՁ. ոմանք ի պատմագրաց ածէր Յոհան և ածէր Աբրահամ, ի միում ամի ասեն վախճանեալ և ոմանք այսպէս, որպէս գրեալս է»։*

*5. էջ 330. «Ապա տէր Յոհաննէս, ի Կոգովիտ գաւառէ, ի գեղջէ Գաբարանայ, ամս ԻԳ։ Զսա յոլովք ի պատմաղրաց ընդ Աբրահամու ասեն ի միում ժամանակի»։*

### Կ. Գանձակեցի

*6. էջ 30—31. «...վարդապետք և ուսուցիչք սուրբն Սահակ և Մեսրոպ և գլխաւորք յաշակերտացն սուրբն Յովսէփ և Յոհան և Ղեոնդ և Սահակ և Մովսէս Քերթողահայր և Մամբրէ Վերծանող նորուն եղբայր, Եզնակ և Կորիւն, սուրբն Եղիշէ, Դաւիթ փիլիսոփայ և Յովաննէս, տէր Աբրահամ, Արձան, Մուշէ, Խոսրով, Ղազար և յետոյ Ստեփանոս Սիւնեաց եպիսկոպոս, և որ զգիրսն յարմարէր գեղեցիկ Հռոմանոս Սամոսատացի...»։*

*6. էջ 320. «Եւ սկսան Մեսրովպ և Սահակ թարգմանել զԱստուածաշունչ գիրս հանդերձ աշակերտօքն՝ Եզնակ, Կորիւն և փոքունք սոցա՝ Յօվսէփ, Յոհան, Ղեոնդ, Սահակ, Մովսէս Քերթօղն և եղբայրն նորին Մամբրէ Վերծանօղն, սուրբն Եղիշէ, յետոյ Դաւիթ Անյաղթն և Յոհաննէս, տէր Աբրահամ, Մուշէ, Արձան, Խոսրով, Ղազար Փարպեցի և յետ սոցա Ստեփաննոս Սիւնեաց եպիսկոպոսն և Հռափանոս Սամոսացի»։*

### Թ. Մեծոփեցի[2]

*7. էջ 9—10. «Արդ այր մի Թամուր-Լանկ -անուն, դաւանութեամբ և օրինօք*

*7. էջ 349. «Արդ՝ այր մի Թամուր-Լանկ անուն, օրինօք պղծոյն Մահմեդի, երևեցաւ*

---

[1] *«Յովհաննու կաթողիկոսի Դրասխանակերտեցւոյ Պատմութիւն Հայոց», Թիֆլիս, 1912։*

[2] *Պատմութիւն Լանկ-Թամուրայ և յաջորդաց իւրոց արարեալ Թովմա վ-ն Մեծոբեցւոյ», Փարիզ, 1800։*

պղծոյն Մահմետի՝ Նեռին Կարապետի, յայտնեալ երևեցաւ ի յարևելս և ի Սմըրդանդ քաղաքի, անողորմ, անգութ, անագորոյն, լցեալ ամենայն չարութեամբ, պըղծութեամբ և հնարիւք բանսարկուին սատանայի։ Զոր ոմանք ի Սարթափու ասեն զոլ զնա, որ ի գաւառն Կոզովիա մերձ ի լեառն Մասիս ուր տապանն է Նոյի և մերձ ի ճարատդ գաւառ։ Որ գնացեալ ի Թաւրէզ և զանորէիցն յղեալ զնա առ ի քէշիկս պահել զթշնամիս ի ճանապարհին Խորասանու»։

յարևելս ի Սմրղնդ քաղաքի, լցեալ ամենայն չարութեամբ, զոր ոմանք ի Սարթափու ասեն զնա, մերձ յԱրտազ գաւառի, որ և գնացեալ ի Թարւէզ և զանօրէից յղեալ զնա ի քէշիկս պահել զթշնամիսն ի ճանապարհին Խորասանու»։

Թ. Մեծոփեցի[1].

8. էջ 51—52. «Եւ այս են ժողովեալ վարդապետք և եպիսկոպոսք Յովհաննէս վարժապետ և ուսուցիչ ի սուրբ ուխտէն Հերմոնի վանից և աշակերտք իւր Գաւիթ վարժապետ և Ստեփաննոս վարդապետ ի տանէն Սիւնեաց բազում քահանայք. Շմաւոն վարդապետ շնորհալից աթոռոյն Ստաթէի առաքելոյ. Գրիգոր վարդապետ և եպիսկոպոս ի սուրբ Առաքելոյն Թադէոսի. և միւս Գրիգոր վարդապետ և եպիսկոպոս ի հռչակաւոր ուխտէն Հաղբատու...»։

8. էջ 353. «Եւ այս են ժողովեալ վարդապետք և եպիսկոպոսք՝ Յովհաննէս մեծ վարդապետն Հերմոնա վանից և աշակերտք իւր՝ Գաւիթ վարդապետ, Ստեփանոս վարդապետ, Շմաւոն վարդապետ ի Տաթևու, Գրիգոր վարդապետ ի սուրբ Թադէոսէ, Գրիգոր միւս վարդապետ ի Հաղբատու»։

Կ. Բանասեր[2]

9. էջ 6—7. «...ի տղայութեան սնեալ և ուսեալ (Թ. Մեծոփեցին) ի սուրբ ուխտն Մեծոփայ... առ ոտս վարդապետին Յոհաննու...։ Եւ անդուստ գնացեալ ի սուրբ ուխտն Սուխարայ, առ մեծ վարժապետքն Սարգիս և Վարդան, երկոտասան ընկերաւք... Մկրտիչ վարդապետն Նահապետանց, Կարապետ վարդապետ, Մկրտիչ վարդապետ Սւղուլ Բէկենց, Մկրտիչ վարդապետ Հողձեցի, Մարգարէ վարդապետ, Յոհաննէս Փափչէնցին, Սարգիս վարդապետ Սալնապատու և այլքն...։ Եւ մեծ վարդապետն Գրիգոր Որոտնեցին, որպէս դջահս վառեալ ի մէջ աշխարհի, ետ գաւազան Թովմա ճգնաւորին ի քաղաքն Երևան և կոչէ զնա յաստիճան վարդապետութեան երկոտասան իշխանութեան և եկեալ ի վանքն Մեծոփայ և կ ամ անդ կացեալ...»։

9. էջ 353 «... կացեալ (Թ. Մեծոփեցին) առ ոտս Յոհաննէս վարդապետի Մեծոփայ և ժամանակ ինչ առ Սարգիս վարդապետ ի Խառաբաստ և ընկալաւ գաւազան իշխանութեան ի Գրիգորէ Տաթևացոյ ի Երևան քաղաքի հանդերձ ընկերաւք՝ Մկրտիչ, Կարապետ, Մկրտիչ միւս Ողբեկենց, Մկրտիչ Հողեցի, Սարգիս և այլք։ Եւ եկեալ վարդապետն Թումա միւս անգամ ի Մեծոփ և սրբագրեաց զՍաղմոսն զագօթմատոյցն և կ ամ կացեալ անդ»։

Դ. Բաղիշեցու ժամանակագրության աղբյուրների հարցն ամբողջությամբ քննության չենք առնի, որովհետև այդպիսիները մանրամասն նշված են ծանոթագրություններում։ Դ. Բաղիշեցու օգտագործած աղբյուրների առընչությամբ անհրաժեշտ ենք համարում վերանայել նրա ժամանակագրության գնահատման հարցը, որովհետև որոշ հոդվածագիրներ, մեր կարծիքով, գերագնահատել են վերջինիս պատմագիտական նշանակությունը։ Իրենց հոդվածներում Հ. Թոփչյանը և ապա պրոֆ. Աշ. Աբրահա-

[1] «Թ. Մեծոփեցու Ցիշատակարանը», հրատ. Կ. Կոստանյանց, 1892, Թիֆլիս։
[2] Գ. Հովսեփյան, Թ. Մեծոփեցու կյանքը, Վաղարշապատ, 1914 թ.։

մյանը կարծիք են հայտնել, որ Դ. Բաղիշեցու ժամանակագրության առաջին մասը հնարավորություն է տալիս առանձին պատմիչների մեզ հասած աշխատությունների մեջ մի շարք ուղղումներ կատարել, որովհետև ժամանակագրության հեղինակը, ինչպես կարծում են նրանք, օգտվել է Մ. Խորենացու, Փ. Բուզանդի երկերի այնպիսի օրինակներից, որոնք մեզ չեն հասել։ Այս մոտեցումը, թե որքան ճիշտ է, քննության դարձյալ չենք ենթարկի, քանի որ այդ աշխատանքը կատարված է ծանոթագրություններում (տես 59, 116), միայն կնշենք, որ Դ. Բաղիշեցու ժամանակագրությունը մեզ այդ հնարավորությունը չի ընձեռում, քանի որ Դ. Բաղիշեցին օգտվել է ոչ միայն Մ. Խորենացուց կամ Բուզանդից, այլ Ասողիկից։ Դ. Բաղիշեցին իր աշխատության մեջ հիմնականում հետևել է Ասողիկի, իսկ այնուհետև Ս. Անեցու և սրան շարունակողների ժամանակագրությանը։ Խորենացու տեղեկությունները Դ. Բաղիշեցուն մեծ մասամբ անցել են ոչ միայն անմիջապես, այլ Ասողիկի միջոցով, իսկ երբեմն էլ նա վերջինիս տեղեկությունները լրացրել է Խորենացիով (տես վերևում, 4-րդ համեմատությունը), թեև Ասողիկն ինքն էլ բազմաթիվ տեղեր հետևել ու համառոտել է Խորենացուն։ Եւ որպեսզի մասնագետներին հնարավորություն տանք մեր հավաստումներին թեր կամ դեմ արտահայտվելու, նպատակահարմար գտանք առաջարկվող բնագրի այդ մասը հրատարակել ամբողջությամբ։

Դ. Բաղիշեցին որպես ժամանակագիր չունի նախորդ դարերի (XII—XIII դ. դ.), եթե ոչ պատմիչների, գոնե ժամանակագիրների արժանիքները։ Նրա մատենագրական գործունեությունը հանդիսանում էր իր ժամանակի՝ XVII դարի մտավոր կյանքի մասնակի աշխուժացման հետևանք, թեև նրա ժամանակագրությունը չհասավ իր ժամանակակիցների՝ Ա. Դավրիժեցու և այլոց մատենագրական ստեղծագործությունների մակարդակին, որոնց մասին պրոֆ. Մ. Աբեղյանը իրավամբ գրում է. «...Այդ գրվածքների մեջ քննադատությունը, դոկումենտների խուզարկությունը և վկայությունների (ականատեսների) կոնտրոլը բոլորովին բացակայում է։ Գիտական երկեր չեն»[1]։

Ինչպես ցույց է տալիս ծանոթագրություններում և վերևում բերված աղբյուրների համեմատությունը, Դ. Բաղիշեցին թեև գրում է, թե ժամանակագրությունը «ծաղկաքաղ եմ արարեալ», սակայն նրա կատարածն ավելի շուտ մի կոմպիլյացիա է, զանազան երկերից հավաքած և վերապատմած[2], առանձին տեղերում պահելով նույնիսկ բառապաշարը։ Միևնույն եղելության մասին նա աղբյուրների տարակարծությունը նկատելուց այն կողմ չի անցնում։ Ընդարձակ վկայություններն երբեմն խիստ համառոտում է, իսկ երբեմն շարադրված նյութի կապը չկտրելու համար տարբեր աղբյուրներից վերցրածը հերթականությամբ շարահյուսում կամ միևնույն եղելու-

---

[1] Մ. Աբեղյան, Հայոց հին գրականության պատմություն, գիրք 2-րդ, Երևան, 1946, էջ 442։

[2] Հեղինակը իր հիշատակարանի վերջում այդ մասին դարձյալ գրում է. «...աղաչեմ յիշել ի տէր զորուպ Դաւիթ Բանասէրս, որ ծրեցի զսա ըստ կարի իմում սատ և անգ ժողովեալ ի պատմագրաց և գրեցի և եդի ընդ շարս և ընդ կարգս միմեանց...» (Բաքվի օրինակ, էջ ՄՀԷ)։

*թյան մասին տարբեր հեղինակների պատմածը միահյուսում։ Հեղինակը չի խուսափել կրկնություններից*[1]*։*

*Նա երբեմն ընդհատում է շարադրելիք նյութը և սկսում այլ բանի մասին խոսել*[2]*։ Հեղինակը թեև նշում է «կամիմ թվականաւն ասել... զի ի Վարդանայ հետէ չփոթեալ տեսանեմք», սակայն նա բավականացել է որևէ հեղինակի տեղեկությունները բերել տարեթվերով, անկախ նրանից, թե դրանք ինչքանով են հավաստի։ Դ. Բաղիշեցին հոգ չի տարել իր ժամանակագրության պատշաճ մշակմանը։ Այդ երևում է նաև նրանից, որ Մ. Խորենացու առաջին դեմքով պատմելու ձևը նույնությամբ էլ թողել է իր ժամանակագրության մեջ, և բնագրում ստացվում է սխալ այն տպավորությունը, թե մեզ հետ խոսում է ինքը՝ Դ. Բաղիշեցին։ Այս առթիվ միայն մեկ օրինակ.*

| Մ. Խորենացի | Դ. Բաղիշեցի |
|---|---|
| *էջ 123. «Այլ ոչ գիտեմ ասել յորպիսի ազգմանէ ահաղին իմն աղմուկ լեալ չփոթից և բազմութեան զօրացն զմիմեանս կոտորեալ, իսկ Արտաշէս փախուցեալ մեռանի...»։* | *«...Այլ ոչ գիտեմ, թէ որպէս աղմկեալ եղև զօրաց նորա վաղվաղակի յետ դառնայր»։* |

*Հեղինակի աղբյուրներից վերցրած տեղեկություններն առանձին դեպքերում սխալ է հաղորդում։ Հաճախ միևնույն տարեթվի տակ տրված են մի քանի դեպքեր, որոնք տեղի են ունեցել տարբեր ժամանակներում։ Բիչ չեն առանձին դեպքերի տարեթվերի անճշտությունները, բայց տարօրինակն այն է, որ այդ անճշտությունները վերաբերում են ոչ թե հեղինակին ժամանակով հեռու դեպքերին, այլ երբեմն հեղինակին ժամանակով մոտ և ժամանակակից դեպքերին, օրինակ հեղինակը, Մովսես Տաթևացու աթոռակալությունը նշում է 1624—1630 թթ., իրականում՝ 13/I 1629 թ.— 21/V 1633 թ. (տես ծանոթ. 266), օգոստոսի 2-ի արևի խավարումը նշում է 1651 թ., իրականում այն եղել է 1655 թ. (տես ծանոթ. 275) և այլն։*

*Հեղինակի ժամանակակից պատմությունը, ինչպես վերևում նշեցինք, ժամանակագրության մեջ շատ քիչ տեղ է գրավում։ Այստեղ թեև հանդիպում ենք արժեքավոր և հետաքրքիր տեղեկությունների, ժամանակի ախուր վիճակի և ծանր հարկապահանջության, կամայականությունների մասին, սակայն, դժբախտաբար, այդ տեղեկությունները նույնիսկ մի քաղաքի սահմաններում հաջորդաբար չի տրված. օրինակ՝ 1630—1650 թթ., 1651—1655 թթ. մասին ժամանակագրության մեջ շատ քիչ բան ենք գտնում, կամ բոլորովին չենք գտնում։ Ժամանակագրության ուշագրավ մասը՝ հեղինակի ժամանակակից պատմությունը, դժբախտաբար, սահմանափակվում*

---

*[1] Հմմտ. Գր. Լուսավորչի աջի պատմությունը։*

*[2] Կիրակոս Վիրաբեցուն կաթողիկոս ընտրելու համար հավաքված վարդապետների ցանկը ընդհատում է Թ. Մեծոփեցու կապակցությամբ և պատմում սրա կենսագրականից որոշ դրվագներ և այլն։*

*[3] Տես նաև ծանոթ. 32։ Հնարավոր է, որ այս հատվածը Դ. Բաղիշեցին վերցրել է Ասողիկից (էջ 38), թեև այս երկուսին աղբյուր հանդիսացել է Մ. Խորենացին։*

է միայն Բաղեշի քաղաքական դեպքերի և ապա մասամբ եկեղեցական պայքարի վկայություններով։

Ինչպես վերևում նշեցինք, մեր հեղինակը Բաղեշի վանքերից մեկի առաջնորդն էր, ասել է, թե նա պատկանել է հոգևորականության վերնախավին։ Եվ որպես այդպիսին, նա հրճվանքով գրում է. «Աչօք մերովք տեսանեմք զսուրբ Էջմիածինն անթիւ վարդապետօք և արեղայիւք և խարանազգեստ կրօնաւորօք աւելի քան զՇ (500)»։ Հեղինակը հեռու էր ըմբռնելուց այն, որ Էջմիածնում ապաստան գտած այդ 500 եկեղեցականները, ինչպես նաև այլուր գտնվող վանքերի միաբանները սնվում էին երիցս շահագործվող հայ չարքաշ գյուղացու քրտինքով, իսկ եթե այդ գիտեր նա, ապա, ըստ երևույթին, դրանում տարօրինակ բան չի տեսել։ Սա էլ պետք է համարել Դ. Բաղիշեցու ժամանակագրության թերություններից մեկը, որպես սկզբնաղբյուրի։

Ինչպես արդեն նշեցինք, ժամանակագրությունը բաղկացած է երկու հատորից։ Երկրորդ հատորն ունի «Արդ կամիմ ծաղկաքաղ առնել յԱբրահամէ մինչև ի Քրիստոսի ծ[ն]ունդն և անտի կարգաւ մինչ ի Կոստանդիանոս և ի նմանէ մինչև թվին Չ զկարգս նահապետացն զառաքելոցն համառօտաբար» խորագիրը[1]։ Այս հատորն սկսվում է «Աբրահամ հայրն հաւատոյ, որդի Թարայի ծնեալ յերկրին Քաղդեացոց...» և այսպես շարադրվում ըստ Աստվածաշնչի։ Պատմական մասը նվիրված է հռոմեական և բյուզանդական կայսրներին, որը վերջանում է, ինչպես ասվեց, բյուզանդական կայսեր Մանուել Կոմնենոսի շրջանով (մինչև 1180 թ.) և ապա մի փոքրիկ նախադասությամբ, հարևանցիորեն, հիշվում 1453 թվի Կ. Պոլսի անկումը. «Թվին ՋԲ (1453), որ էառ սուլտան Մահմատն, որպէս ասացի. տղայք և աղջկունք էին թագաւորքն և մարտ պատերազմի և բազում արեան հեղմունս ի մէջ նոցա, վասն այնորիկ դիւրամուտ եղև սուլթան Մահմատ և առ»։

Այս հատորի կեսից ավելին (մոտավորապես 1,5 մամուլ) Աստվածաշնչի Մակաբայեցոց 1—3 գրքերի բովանդակության բավական խիտ համառոտումն է։ Այդ բանը ցույց տալու առանձին դժվարություն չկա, քանի որ հեղինակը ինքն էլ խոստովանում է այդ. «Այլ մէկ Քրիստոսի շնորհօքն խուզեալ զամենայն պատմագիրսն և ընագիրսն Մակաբայեցոց յամէնեցունց ի սոցանէ ընդրեալ...»[2]։

Վերոհիշյալ մեջբերման «խուզեալ զամենայն պատմագիրսն» խոսքերով հեղինակը նկատի ունի այս հատորի պատմական մասի համար օգտագործած հեղինակների երկերին։ Դրանից անվանապես հիշում է Եվ. Կեսարացուն, Գր. Նարեկացուն, Կ. Գանձակեցուն, օգտագործել է նաև Մ. Անեցուն։

| Մ. Անեցի | Դ. Բաղիշեցի Բաքվի օրինակ |
| --- | --- |
| Էջ 20. «Յուդա ամաց ԽԸ ծնանի զՓարէս։ Փարէս ամաց ԾԹ ծնանի զԵզրոն. Եզրոն ամաց ԾԸ ծնանի զԱրամ. Արամ | Էջ ՄԽԴ. «Յուդայ ԽԸ ամաց ծնանի զՓարէս ի Թամարայ. Փարէս ամաց ԾԹ ծնանի զԵզրոմն. Եզրոմն ամաց ԾԸ ծնանի |

[1] Բաքվի օրինակ, էջ ՄԽԲ։

[2] Նույն տեղում, էջ ՄԾԴ։ Հեղինակը ժամանակագրության մեջ մի քանի անգամ հիշում է Մակաբայեցիների 1-ին, 2-րդ, 3-րդ գրքերի օգտագործման մասին։ Իր հիշատակարանում ևս Դ. Բաղիշեցին գրում է, որ 2-րդ հատորի ընդգրկած նյութի մի մասը. «...առաջին և երկրորդ և երրորդ գիրք Մակաբայեցոցն պատմի» (Բաքվի օրինակ, էջ ՄՀԷ)։

*ամաց ՌԷ ծնանի զԱմինադար։ Ամինադար ամաց ՌԾ ծնանի զՆաասոոն։ Եւ էր, ասէ, Ամինադար սպարապետ զօրուն Յուդայի ի հանել Մովսէսի զորդիսն Իսրայէլի յԵգիպտոսէ։*

*զԱրամ. Արամ ամաց ՌԾ ծնաւ զԱմինադար. Ամինադար ամաց ՌԾ ծնանի զՆայասոն։ Էր Ամինադար սպարապետ զօրուն Յուդայի յորժամ Մովսէս անցոյց զորդիս Իսրայէլի ընդ ծովն Կարմիր։*

Դ. Բաղիշեցին այս հատորն, անտարակույս, չի գրել միայն վերևում նշված հեղինակների գործերի հիման վրա, նա իր ձեռքի տակ ունեցել է այլ աղբյուրներ ևս, օրինակ, Հոմերոսին, Սևերոս Անտիոքացուն, բազմաթիվ մարգարեների, առաքյալների և այլն, որոնց ասույթներով ու մըտքերով հեղինակը համեմել է իր աշխատությունը։ Բայց որովհետև սույն հատորում հաղորդած, ինչպես պատմական նյութը, այնպես էլ աղբյուրների մանրազնին ուսումնասիրությունը մեզ համար բանասիրական առաջնահերթ նշանակություն ու գիտական արժեք չի ներկայացնում, ուստի այդ ուղղությամբ կատարվելիք մեր աշխատանքները ոչ միայն ընդհատում ենք, այլև երկրորդ հատորը նպատակահարմար չգտանք հրատարակել, ուստի հրատարակության բնագրում կբավականանանք հատորի սկզբից և վերջից ընդարձակ հատվածներ բերելով։

Հրատարակության համար հիմք ընդունեցինք ժամանակագրության Բաքվի օրինակը, իսկ A (№ 7589) և Б (№ 4044) տարբերակների տարընթերցվածները դրեցինք տողատակ։

Ի վերջո կցանկանայինք նշել մի հանգամանք ևս. ժամանակագրության Բաքվի օրինակում, միևնույն ձեռագրով, տարբեր տեղեկություններ, գրված են ձեռագրի հինգ էջերի ներքևի լուսանցքում, բայց այդ վկայությունների տեղը հատուկ նշանով, ինչպես սովորաբար լինում է, ցույց չի տրված։

Այդ հինգ հատվածները հրատարակության բնագրում պահեցինք, հետևելով A տարբերակի կոնտեքստին, մինչդեռ Б տարբերակում բացակայում է առաջին հատվածը (էջ 306), իսկ երրորդ (էջ 309) և չորրորդ (էջ 326) հատվածները կոնտեքստում գտնվում են տարբեր տեղերում քան A-ում, մնացածը (էջ 307 և 358) նույնն է, ինչ A-ն։

Դ. Բաղիշեցու ժամանակագրության երեք տարբերակների կոնտեքստում այս հատվածների տարբեր տեղեր գտնվելը մեզ ենթադրել է տալիս, որ դրանք բուն բնագրին, հետագայի, թերևս գրչի, ավելացումներ են։ Այսպիսի մի ավելացում էլ գտնում ենք Б տարբերակում (էջ 360, տողատակ)։ Մեր վերոհիշյալ ենթադրությունը կարող է և ճիշտ չլինել, այդ պատճառով նշված հատվածները հրատարակության բնագրերից դուրս չգցեցինք, այլ նշեցինք շեղադիր։

| | | | |
|---|---|---|---|
| ՋԼ (930) | Ադամ ՄԼ (230) ամաց ծնաւ զՍէթ, սորայ անդրանիկ՝ կային և ապա Աբէլ։ | Ռ 600 | Սեմ Ճ (100) ամաց ծնաւ զԱրփաքսաթ. սա մատանդեաց զոսկերս Նախահօրն Ադամայ և Եւայի։ Զսա յոյժ սիրէր հայր իւր՝ Նոյ։ |
| ՋԺԲ (912) | Սէթ ՄԵ (205) ամաց ծնաւ. սա հրաման առ յԱստուծոյ ոչ առնել խնամութիւն ընդ ազգին Կայենի։ | ՆԿԵ 465 | Արփաքսաթ ՃԼԵ (135) ամաց ծնաւ. սա ամփոփեաց զոսկ[եր]սն Նախահօր ի Գողգոթայ, և զԵւային ի Բեթղեհեմ ի վիճակն իւրեանց։ |
| ՋԵ (905) | Ենովս ՃՂ (190) ամաց ծնաւ. սա յուսացաւ կոչել զանուն տեառն Աստուծոյ։ | ՃԻ 120 | Կայինայն Կ (60) ամաց ծնաւ. զսա Մովսէս ոչ յիշէ, այլ Ղուկաս աւետարանիչն, զի սա բազմացոյց զկռապաշտութիւն ի Քաղդեացիս. սա շինեաց զԽառան։ |
| ՊԺ (810) | Կայնան ամաց ՃՀ (170) ծնաւ. սորա եղբայրքն և ազգն անձինք Մ (200) եկին ի լեառն ԱՀերմոն ճգնել կուսութեամբ։ | ՆԿ 460 | Սաղա ՃԼ (130) ամաց ծնաւ. սորա միւս որդի Ցետկան։ |
| ՊՂԵ (895) | Մաղաղիէլ ՃԿԵ (105) ամաց ծնաւ. սա կեցեալ մինչև ԽԸ (48) ամն Նոյի։ | ՆԴ 404 | Էբեր ՃԼԴ (134) ամաց ծնաւ. սա այր բարի և աստուածապաշտ։ |
| ՋԿԲ (902) | Յարեդ ՃԿԲ (162) ամաց ծնաւ, սա կեցեալ մինչև ՄՁ (280) ամն Նոյի. ի սորա Խ (40) ամն լցաւ Ռ (1000) ամն Ադամայ և եդին իւրեանց թաղաւոր Աղօրոս անուն։ | ՅԽԳ 343. | Փաղեկ ՃԼԴ (134) ամաց ծնաւ. յաւուրս սորա բազմացան մարդիկ և զարձեալ բաժանեցին զերկիր ի վերա միմեանց հարստահարելով։ |
| ՅԿԵ (305) | Ենովք ՃԿԵ (165) ամաց ծնաւ. զսա վերափոխեաց Աստուած ի դրախտն և ի յայսմ ամի սպանաւ Կայէն ի միւս Ղամէքայ։ | ՅԼԹ 339 | Ռագաւ ՃԼԲ (132) ամաց ծնաւ. ի սկիզբն ծննդեայն սորա սկսան շինել դաշտարակն մինչև ի Խ (40) ամն, զոր փլոյց Տէր։ |
| ՋՁԹ (989) | Մաթուսաղայ ՃՁԷ (187) ամաց. ոմանք ասեն առ Ջրոյն մեծի մեռաւ և այլոց՝ թէ յառաջ մեռաւ։ | ՅԼ 330 | Սերուք ՃԼ (130) ամաց ծնաւ։ |
| ՉՀԳ (773) | Ղամէք ՃՁԸ (188) ամաց ծնաւ. սա մեռաւ յառաջ քան զհայրն ԺԹ (19) ամօք։ | ՄԱ 201 | Նաքովր ՀԹ (79) ամաց ծնաւ. յաւուրս սորա լցաւ երկիր անօրէնութեամբ և ազգն Քամայ առին զՊաղեստին զրկանօք։ |
| ՋԾ (950) | Նոյ Շ (500) ամաց հրաման առ յԱստուծոյ առնուլ կին Նոյեմզարայ անուն և ծնաւ երիս որդիս՝ զՍեմ, զՔամ և զՅաբեթ ի Ճ (100) ամն։ Եւ յորժամ եղև Ռ (600) ամաց կատարեաց զգործ տապանին։ ՅԱդամայ մինչև ցայժմ ՍՄԽԲ (2242) ամ։ Եւ ի Ռ (600) ամին Նոյի եկն ջրհեղեղն և եմուտ Նոյ ի տապանն և որդիքն իւր հանդերձ կանամբք։ Ամ մի բովանդակ իար ամսոյ ԻԷ (27) մտին և ի Նոյնքանիսն ելին։ | ՄԵ 205 | Թարա Հ (70) ամաց ծնաւ. յաւուրս սորա եգեն ամազունք, այսինքն կանանց իշխանութիւն, զի կին մի Ցնացեալ թագընկալ ի Թորգոմայ։ |
| | | ՃՀԵ 175 | Աբրահամ Ճ (100) ամաց ծնաւ զԻսահակ։ |

Այս Գ (3) էջս են Գ (3) ազգ՝ յԱբրահամ և ցՆինոս և ցը մերն յետ Նինոսի մանուկ տիօք, զոր Քսիւսթրայ, Սեմա, Զրուան, Քաբեղև ԻԵ (25) լեզու ազգն Սեմայ։

| | | |
|---|---|---|
| Քամ, զսորա որդին Քանան անիծեաց Նոյ, ուստի Քանանացիք։ | | Յաբէթ։ Զմեր ազգի որպիսութիւն և զքաջութիւն մի ըստ միոջէ գրեալ եմք։ |
| Քուշ, յորմէ Քուշացիք, որք են Հապաշք։ | | Գամեր |
| Մեստրայիմ, սոցանէ Եգիպտացիք։ | | Թիրաս |
| Ներբովթ՝ Եթովպացիք. էր սա շինեաց զԲաբելոն և թագաւորեաց անդ։ | | Թորգոմ |
| Բար. սա որդի Ներբովթայ, որ էր Բէլ և Նոոնոս։ | | Հայկ |
| Անեբիս | | Արմենակ |
| Արբէլ | | Արմայիս |
| Քայաղ | | Ամասիայ |
| Արբէլ միւս | | Գեղամ |
| Նինոս ծնաւ զՆինուաս. սա պարըսպեաց զՆինուէ և Նստաւ։ | | Հարմայ |
| Շամիրամ կինն. սա սպան զԱրայն Գեղեցիկ։ | | Արամ ծնաւ զԱրայն Գեղեցիկ։ |

Սեմ, Քամ, Յաբէթ. ԱԺ (11)-ան գոլով վերուստ ի վայր մինչև Արամ, զի Արայն Գեղեցիկ, որդի Արամայ ԲԺ (12)-ան եր[կ]րորդէ սպան Շամիրամ, բայց ոմանք այլ և այլ անուն տան սոցայ՝ Նոյի մա, Տիտան, Յաբեթի, Յապետոսթէ։ Յետ փլանելոյն աշտարակին ԼԲ (32) Քամայ, ԺԵ (15) Յաբեթի, որ լինի ՀԲ (72)։

XIII

## ԳՒԻԹԻ ԲԱՆԱՍԻՐԻ ԲԱՂԻՇԵՑՈՅ ԾԱՂԿԱՔԱՂ ԱՐԱՐԵԱԼ Ի ԲԱԶՈՒՄ ՊԱՏՄԱԳՐԱՑ [ԶԱԶ]ԳՆ ՅԱԲԵԹԻ ԵՒ ՍՈՒՂ ԻՆՉ ԶՍԵՄ[ԱՅ] ԵՒ ԶՔԱՄԱՅ ՐՍՏՈՅԳ ԳՏԱԿԱՒ ԲԱԶՈՒՄ ԱՇԽԱՏՈՒԹԵԱՄԲ ԸՆՏՐԵԼՈՎ ԶԼԱՒՆ ԵՒ ԶՊԻՏԱՆԻՆ ԱՆՍԽԱԼԱՊԷՍ ՇՆՈՐՀՕՔ ՔՐԻՍՏՈՍԻ ԱՍՏՈՒԾՈՅ ՄԵՐՈՒՄ ծ2

*Յետ երկնասահանաց հեղեղաց և անդնդապատոյտն ջրահեղձ լինելոյ ջնջականաց, յետ ակամայ նաւարկութեան[1] Նոյի ԻԷ (27) իար ամսոյ և ի նոյնքանիսն ելանելոյ հանդերձ եռեակ սեռիւք ի լաստէն ջրադող ի Մասիք Արարատեայ։ Եւ յետ կրկին օրհնութեան աճել ծնելութեամբ և օրէնսդրութեան ոչ հեղուլ դարիւնն բանականի և ոչ ուտել զմիս արեամբ ջնջով հանդերձ և յետ կար երդման ոչ ողողել դարձեալ ամենայն երկրի և տալոյ զմարգարէութիւն, զքահանայութիւն և զթագաւորութիւն Նոյի, զոր կորոյս Ադամ։ Եւ նոյն քահանայութեամբն պատարագեաց Աստուծոյ ի սուրբ կենդանեաց և մարգարէութեամբն օրհնեաց զերիս որդիս ըստ իւրաքանչիւր պատուոյ յայտնելով նոցա զապագայսն։ Եւ թագաւորութեամբն բաժանեաց զաշխարհս յերիս մասունս՝ յԱսիայ, յԵւրոպիայ և ի Լիբիայ։ Եւ բաժանեաց զնոսա երից որդոց. զԱսիա Սեմայ ետ, սկսեալ ի Պարսկաստանէ, դայ ընդ մէջ Ասորեստանի և երթայ մինչ ի Պաղեստինէ թափանց գնացմամբ ծիր առնու Յոինու Կուրաբայ, որ է Գեհոն։ ԶԼիբիայ ետ Քամայ, որ սկսանի ի Գեհոնէ, որչափ հոսանէ ընդ ներքս հարաւ կոյս մինչ ի Գադիրոն։ ԶԵւրոպիայ Յաբեթի շնորհեալ, որ սկսանի յականցն Տիգրիս գետոյն, որ բաժանէ ընդ Պարս և ընդ Մաղէ մինչև յարևմուտս առնու ի հիւսիսոյ և ի հարաւոյ մասնաւորաբար։*

*Յաբեթ ծնանի զԳամեր։*
*Գամեր ծնանի զԹիրաս։*
*Թիրաս ծնանի զԹորգոմ։*
*Թորգոմ ծնանի զՀայկն։*
*Հայկն ծնանի զԱրմենակ։*

---

1 A *Բաղըշեցո*, Б *Բաղիշեցւոյ*։ 3 A *ըստուգ, ընդրելով*։ 4 A *պիտանին*, Б *մերոյ*։ 5 A *անդնգապատոյտ*, Б *անդընդապատոյտոյտն*։ 8 A *Արարատեա*, Б *աւրհնութեան*։ 9 A *արիւն*։ 10 *միս*։ 11 A *ողողել*։ 12 A *և զքահանայութիւն*։ 13—14 A *պատարագեաց Աստուծոյ ի սուրբ կենդանեաց և մարգարէութեամբն* չիք։ 14 A *որդիսն*։ 15 Б *պատւոյ*։ 16 Б *թագաւորութեամբ*։ 17 A *Ասիայ Եւրոպիայ Լիբիայ*։ 18 A *որդոց իւրոց*։ 20 A *Ցոինիւ, որ* չիք։ 21 Б *հատանէ* փխ. *հոսանէ*, A *ի հարաւ*։ 22 Б *Գադրոն*, A *ետ Ցաբեթի*։ 23 A *յականց*։

Արմենակ ծնանի զԱրամյիս։
Արամյիս ծնանի զԱմասիայ։
Ամասիայ ծնանի զԳեղամ։
Գեղամ ծնանի զՀարմայ։
Հարմայ ծնանի զԱրամ։
Արամ ծնանի զԱրայն Գեղեցիկ[2]։
Արայ Գեղեցիկ ծնաւ զԱրայեանն Արայ։
Արայեանն Արայ ծնաւ ըզՍօս, որ է Անուշաւան։

Այլ մեք դարձցուք ի վեր Ցարեթ, ուստի ազգաբանեցաք և սկսցուք համա ‖ ռօտաբար զքաջութիւն և զտիրելն հայրենեաց, ՃՁԱ թէ որպէս կամ զիարդ տիրեցին աշխարհի։

Ցարեթ ծնանի բազում որդիք, նախ զԳամեր, ուստի աշխարհ կալուածո նորա կոչեցան Գամիրք, զՄագոգ, ուստի Կեղտք և Գաղատացիք, զՄադայ, ուստի Մարք, զՑաւան և ի նմանէ Հելլենք և Յոյնք. իսկ որդիք Ցաւանայ Եղիշա, յորմէ Սիկիլացիք և Աթենացիք։ Կիտիիմ, յորմէ Հռովմայեցիք. Թորէլ որդի Ցաբեթի, յորմէ Թետաղք. Մոսոք, յորմէ Լիւրիկեցիք. սոքա ամենեքեան որդիք Ցաբեթի ազգօքն իւրեանց։

Թիրաս որդի Գամերայ, ի նմանէ Թրակացիք, սա ծնանի Դ (4) որդիս՝ զԱսքանազ, յորմէ Սարմատք, Եւրիփատ, յորմէ Սօրամատք, զԹորգոմ, որ ժառանգեաց զկալուածս երէց եղբօր իւրոյ Ազքանազայ, յորմէ մեք կոչիմք Հայեաստանեայքս և նայ ժառանգեաց զՍարմատիայ, ‘որրորդ զՔիտիմ և ի նմանէ Մակեդոնացիք, և ի սոցանէ մեկնեցան կղզիք և ազգ հնդետասան. ապայ ի բաժանել ազգաց, յազգս եղև ԾԱ (51) ազգ[3]։

Թորգոմ որդի Թիրասայ, ուստի Թորգոմեանս։ Հայկ որդի Թորգոմա սերունդ ազգիս մերոյ։ Եւ սա մի էր ի հսկայիցն քաջազանգուրն և խայտակն[4], միաբանեալ ի չար շինուածս ամբարտակին զԽ (40) ամ մինչև ի շնչել հողմոյ ուժգին կործանելով զբուրքն ահագին, բաժանելով զմի լեզուն ՀԲ (72)։ Զայն տեսեալ Բելայ, որ է Նեբրովթ որդի Մեծրայիմայ, որդոյ Քուշայ, որդոյ Քամայ[5], որ ի Նոյէ, ըմբոստացեալ, մեծամտեալ, խորհէր միապետել ի վերայ այլոց ազգաց և ատուածս համարէր զինքն։ Բայց Հայկայ ոչ հնազանդեալ նմա և առեալ զորդի իւր զԱրամենակ, զոր ծնաւ ի Բաբելոն, և զորդի Արամանեկայ զԿադմոս հանդերձ այլ ուստերօք և դստերաւք և որդոց որդովք և ընդոծնօք, եկեալ յարեւոյ ի նա իբրև արք ԳՃ (300) և ամենայն սխիւ գայ ի Ցայրարատ ի լիառնոտին միում ի դաշտավայրի։ Շինէ անդ տուն

1 A զԱրամայիս։ 2 A Արամայիս։ 7 A զԱրայեան։ 8 A Արայեան, զՍօս, Б որ և։ 9 A յազգն Ցաբեթի, ազգաբանեցայք։ 10 A զքաջութիւն, հայրենեացն իւրեանց։ 13 A կալուածոյ։ 14 A ի չիք։ 15 A Յունք, Եղիշայ։ 16 A Կիտիմ, Հռոմայեցիք։ 17 A սոքայ։ 19 A յորմէ փխ. ի նմանէ, սայ։ 20 Б Երիփատ։ 21 A յորմէ փխ. որ, երէց որդոյ, 22 A կոչիմք մեք Հայաստանեաստ։ 23 Б զԱրամատեայ, A զՄակեդոնացիք։ 27 АБ Թորգոմայ, A սայ։ 28 АБ աշտարակին փխ. ամբարտակին։ 31 A Մեծրաիմայ։ 33 Б մամարէր։ 34 A նմայ, զԱրամանեակ։ 35 A Բաբիլոն։ 36 A դստերօք, որդօվք, ընդոծնովք, եկեալոյ։ 37 Б յարեւո, A նայ, A Ցարարատ։ 38 Б լեառնոտին։

ընակութեանն կալուածոյ և տա Թոռին իւրոյ Կադմոսի և ինքն առեալ զԱրամենակ որդի իւր խաղայ յարեմուտս հիւսիսի և գնա առնու անդ և կոչէ զբարձրաւանդակ դաշտն Հարք։ Ցինէ գիւղ մի անդ և անուանէ Հակաշէն, այսինքն աստ են բնակեալ որդին Թորգոմայ[6], Հայկն, որ անուանի այժմ Մալանծկերտ։ Բայց յառաջ ‖ ԾԶԲ քան զգալ Հայկայ ցրուեալքն յաշտարակէն խառնիճաղանճքն աստ անդ զետեղեալք էին փանաքիք և զնոսայ հնազանդեալ Հայկայ ինքն դոլով գլուխ ամենեցուն սոցայ՝։ Բայց Ներբովթ, որ է Բէլ, լուեալ զամենայն և առաքեաց զորդի իւր զԲար[8] առ Հայկն ասելով. «Միայն հնազանդ լեր բանիւ և նիստ ի տան քում պատուով»։ Եւ ոչ լուաւ նմայ քաջազանդուրն, այլ մեծաւ անարգանաւք յետս դարձոյց զառաքեալն։ Եւ Բէլ մաընչեաց իբրև զչար դազան և ժողովեաց զամենայն հնազանդեալ զօրս իւր իբրև զաւաղ ե եկեալ հասեալ յերկիրն Արարադեայ մերձ ի տունն Կադմեայ. և փախստական ;ինի Կադմոս առ Հայկ, քաջ ընթացս առաքէ առաջի իւր առ հաւն իւր. «Գիտեայ, ասէ, զի Բէլ եկեալ հասեալ է յաւերժիւք քաջօք և երկայնադէզ հասակաւք սկայիւք մրցօղօք»։ Եւ Հայկ աճապարեալ հաւաքէ զորդիս իւր և զԹոռունս յոյժ, նուաղունս յորդորելով զնոսա և չու արարեալ հասանէ ի ձորադաշտակի միոջ, ուր Բէլ նստէր հանդերձ սկայիւք, վառեալք յաղեղն և ի սուսեր և ի տէգ նիզակին։ Եւ Հայկն և որդիքն և Թոռունք եղեն Գ (3) գունդ, գնացեալք ընդառաջ. և խայտակն լի քարշէ պինդ զլայնալիճ աղեղն և զերեք Թեւեան նետ դիպեցուցեալ երկաԹագամ տախտակի կրծիցն ՆերրովԹայ Թափանց անց ընդ Թիկունսն յայնկոյս, յերկիր հարըստէր զմսադէղն սատակմամբ և զօրքն ցիր և ցան ի փախուստ դարձան։ Եւ զտեղի պատերազմին կոչեաց Հայուձոր, և զտեղի սատակման Բէլայ՝ Գեբեղման մինչև ցայսաւր ժամանակի։ Բայց զդիակն Բէլայ բերեալ եդ ի Հարք ի տեսիլ կանանց և որդոց իւրոց։ Իսկ աշխարհս մեր կոչի յանուն նախնոյն մերոյ Հայկայ՝ Հայք[9]։ Սորա կային երկու որդիք այլ, բաց յԱրամենակայ, գլխաւորք Խոռ և Մանաւազ, ուստի Խոռխոռունիք, որ է Արճէշ և Բերկրի, և Մանաւազեանքն, որ այժմ կոչի Մալածկերտ։ Եւ եղեալ որդի Մանաւազայ Բաղ անուն, ուստի Բզնունիք յեզր ծովակին[10]։

Եւ կեցեալ Հայկ ամս շատ մեռանի ի Հարք, Թողեալ զամենայն ինչ Արամանեկայ անդրանկի իւրոյ և զեղբարսն յիշխանուԹիւն նմա։ Արամենակ Թողեալ զեղբարս զԽոռ և զՄանաւազ տալով զերկիրն և ին ‖ ԾԶԳ քն հանդերձ ախիւն և որդովք երԹայ յարևելս հիւսիսի տեղի մի բարետեսակ պարսպեալ լերամբ և ընդ

1 A ընակուԹեան, Б տան փխ. տա։ 2 A զԱբեմենակ զորդի, A գկայ։ 3 A ըզբարձաւանդակ։ 7 A հնազանդեցուցեալ։ 10—11 A տուն քոյ։ 11 B պատվով, Б նմա։ 12 A մաընչեաց։ 14—15 A տուն Կադմոսի։ 15 Б և չիք, A փախըստական։ 16 A դիտեաց։ 17 Б հասել, A քաչիւք։ 18 A մըրցաւզօք, Թոռունսն։ 20 A սկայիւք իւրովք վառեալ։ 21 A Հայկ։ 25 Б յայնկուլյս։ 26 A զօրք։ 27 Б Բէլա։ 28 A ցայսօր, զի ակն փխ. զդիակն։ 30 A անուն, Հայկայ չիք։ 31 A այլ չիք, յԱրամենակա։ 32 A Խոռխոռունիք, Б Մանաւազա։ 35 A կացեալ։ 36 A որդոյ իւրում անդրանկի, զեղբայրս։ 37 A նմայ, զեղբայրսն։ 38 Б ադախիւ, A որդովք։ 39 A պարըսպեալ, ընդ չիք։

ստորոտով լերին դետո կարկաջասան ի յարևմտից ընդ մէջ ան-ցանելով և զդաշտն արևելից իմն գոգցես երկայնութեամբ ընդ մէջ դէպ յարեգակն պտրզեալ. յայսմ խորութեան դաշտի բնակեալ Արամենակայ, շինէ զմասն ինչ հիւսիսոյ դաշտին յոտն լերին ի նոյն կողմանէ և անուանէ զլեառն սպիտակ Արագած և զկալուածն՝ ոտն Արագածոյ. և կեցեալ ամս շատ մեռանի հաւատալով Արմախսայ որդոյ:

Արմայիս որդի Արտմանեկայ ի նմին իսկ դաշտի բլուր մի, առ եզերբ գետոյն Երասխայ, շինէ քաղաք և տուն բնակութեան իւրոյ և անուանէ զնա Արմաւիր յանուն իւր, և զանուն գետոյն յանուն Թոռին իւրոյ Երաստայ՝ Երասխ[11]: Եւ զորդին իւր զՇարա զյոլովածին և զշատակեր ամենայն ախիւ իւրով առաքէ ի դաշտ մի մաւտւոր, արգաւանդ ի թիկունս հիւսիսոյ Արագածու, ուր ջուրք բազում գնան, և զգաւառն անուանեալ Շիրակ: Այս Արմայիս ծնաւ զԱմասիայ, կեցեալ շատ ամս մեռաւ[12]:

Ամասիայ բնակէ յԱրմաւիր, յետ ամաց ծնանի զԳեղամ և յետոյ զՓառոխ արի և զՑոլակ: Եւ յետ ծնանելոյն անցանէ զգետովն Երասխայ մերձ ի լեառնն հարաւոյ և շինէ անդ առ խորշիւք լեառնն ոտին Բ (2) տուն՝ մինն յարևելս ստորոտոյ լեբանն մօտ յակն աղբերն և միւսն յարևմուտս կոյս նորին տան, բացագոյն աւուր միոյ ճանապարհ: Եւ ետ ի ժառանգութիւն Բ (2) որդոց իւրոց արւոյն Փարոխի և կայտռին Ցոլակայ, որ անուանին՝ Փառախոտ և Ցոլակերտ, բայց զլեառն յիւր անուն կոչէ Մասիք և գայ յԱրմաւիր և կեցեալ ամս շատ մեռաւ[13]:

Գեղամ ծնաւ զՀարմա յԱրմաւիր, եթող զնա անդ հանդերձ որդովք և ինքն զմիւս լերամբն յարեելեայ հիւսիսոյ յեզր ծովակի միոյ շինէ տուն, կոչէ զ[լ]եառն Գեղ և զշէնսն Գեղաքունի, որով կոչի և ծովն: Աստ ծնաւ զորդի իւր զՍիսաք բարեգեղ և գեղեցկադեղն. սմայ տա ժառանգութիւն ի ծովէն ընդ արևելս մինչ ցդաշտ մի, որ դետն Երա[ս]խայ հատեալ զքարանձաւս, զոր բազումք Քարավազս անուանեն, աստ բնակեալ Սիսակ լնու զկալուածս իւր, ուստի կոչին Սիւնիք: Բայց ինք Գեղամ դառնայ անդրէն ի դաշտ ‖ անդր և առ ոտամբ նորին լերինն շինէ մեծ ճԶԴ դաստակերտ մի և դնէ զիւր անունն Գեղամի. յետոյ ի Գառնկէ Թոռէ նորա կոչեցաւ Գառնի, և առ Վաղարշակաւ կոչեցաւ Վարաժնունի, վասն վարժ անուան, որ էր փոյթ յորս եղջերաց և այծեմանց. և հրամայէ որդոյ իւրոյ Հարմայի յԱրմաւիր բնակել և կացեալ ամս բազում մեռաւ[14]: Իսկ Հարմայ կեցեալ ամս ծնանի զԱրամ և մեռաւ: Արամ բազում գործ քաջութեան պատմի. լաւ

2 A իմն չիք: 3 A արեգակն: 4 A Արամանեկայ: 5 A զլիառն: 8 A Արմախս, Արամենեկա: 10 A անունն: 11 A անուն Թոռին, Երազխայ Երազխ, Б զՇարայ զհոլովածին: 12 Б ազխիւ: 13 A մօտաւոր: 14 A բազումք, ղաւառն: 15 AБ մեռանի: 18 A Երազխայ, լեառն: 19 Б խորշիւք ի լեառնն, A խորշիւք լերին, Б սաորոտ: 20 Б յարևմուտ, A կուս: 23 A զլիառն իւր: 24 A Արմաւիր, AБ մեռանի: 25 A զՀամրայ, զնայ: 26 A լերամբ արևելայ, Б հիսիսոյ: 27 A Գեղարքունի: 29 A տայ: 30 A Երախս: 32 Б ինքն: 34 A մի չիք, Б իւր, A անունն: 35 Б Թոռնէ: 36 A եղջերուաց: 37 Б որդւոյ, A բնակիլ: 38 Б կեցեալ, A բազում ամս, մեռանի, կացեալ: 39 A քաջութեանս գործ:

համարէր զմեռանելն իւր, քան թէ քայլ մի ոտին ի սահմանաց իւրոց կոխել օտարածնաց[15]. զի սա անուանեաց Առաջին Հայք, զԿեսարիայ իւր վիճակով, և Երկրորդ Հայք՝ ի Պոնտոսէ մինչև ի Ծոփաց գաւառն և Երրորդ՝ անտի մինչև ի Նփրկերտ, Չորրորդ՝ անտի մինչև ցԱղձնիս։ Եւ զիւր սեփական աշխարհն կոչէ Մեծ Հայք, զոր յետ բազում ժամանակաց Մօրիկ կայսրն Հռովմայեցոց փոփոխեաց զանուանս նոցա, զայս վասն այն ասացի, զի յորժամ հանդիպեսցիս այլ և այլ անուանց ոչ մեղադրեսցես[16]։

Եւ այս Արամս փոքր ինչ յառաջ է քան զՆինոս։ Եւ սայ սպանանէ զՆիւքարն՝ զգլուխն Մեդացոց, յեղեր սահմանաց Հայոց, որ հանապազ քուշանաբար զինու սըմբակակոխ արարեալ զՀայս և տիրեալ ամս Բ (2), զոր քաջապէս ձերբակալ արար զՆուքար ածէ յԱրմաւիր ցից երկաթի վարեալ ընդ ճակատ յորմ պարըսպին վարսել հրամայէ ի տեսիլ անցաւորաց և զաշխարհ նորա մինչև Նինուէի և Ասորեստանի տիրէ։ Մինչև ի Նինոս թագաւոր, որ քէն ունէր միշտ ի մտի վասն սպանման Բէլայ հաւոյն իւրոյ և Նիւքարա, այլ ոչ իշխէր ընդդիմանալ նմա և մեծ համարձակութիւն տայ նմա վարսակալ ածել մարգարտէ և երկրորդ նորա կոչեալ[17]։ Խաղա նոյն զաւրութեամբ զկողմամբն Ասորեստանի և գտանէ զոմն ապականիչ երկրին իւրոյ Բարշամ անուն, յազգէ հսկայից անապատ արարեալ զերկիրս ի գիմի հարեալ ընդ մէջ Կորդաց ի դաշտն Ասորեստանի սպանանէ զնա և դաշտն ի ծառայութիւն կացուցանէր ամս բազումս։

Եւ գնացեալ յարեւմուտս հիւսի[սի] Պայեապիս Տիտանեան ոմն բռնացեալ ունէր զԿապադովկիայ, զՏրապիզոն մինչև ի ծով Ովկիանոս. և Արամ ի դիմի հարաւ նմա հալածէ ի կղզի ինչ Ասիական և տա զտեղին Մաշակայ ազգականին իւրոյ և բիւր մի ի զօրաց || իւրոց յօգնականութիւն նմա և հրամայէ աշխարհին ճՁԵ ուսանել զլեզու հայկական և մինչև ցայսաւր ժամանակի անուանեն զկլիմն զայն Պոտոն Արմենիան, այսինքն Առաջին Հայք, որպէս յառաջն ասացաք[18]։ Եւ սա կեցեալ այսպիսի քաջութեամբ. ծնաւ զԱրայն Գեղեցիկ և երկրորդէր Նինոսի թագաւորութիւն։

Արայն Գեղեցիկ տիրէ հայրենեաց իւրոց կոչելով զերկիրն յանուն իւր Այրարատ։ Եւ սա պատուի ի Նինոսէ որպէս և հայրն իւր և յետ փախըստական լինելոյ Նինոսի ի կնոջէն իւրմէ ի տուայտէն Շամիրամայ ի Կրիտէս կղզին և անդ մեռեալ, որպէս ասեն։ Այնուհետև կաթոտ Շամիրամ կս առաւել լրբեալ ի շամշեալ խորհուրդն իւր և տեսալ էր զԱրայն Գեղեցիկ, որ երթս և եկս առնէր ի ժամանակս Նինոսի տափայր հանապազ ընդդէմ

---

1 А բզմեռանիլն։ 2 Б օտարանաց։ 3 А զԿեսարիեայ, վիճակօքն, Պոնտոսէ։ 4 А անտի երրորդ մինչ։ 5 А սեպհական աշխարհ։ 6 Б հետ փխ. յետ, Մօրիկայ, А Հռոմայեցւոց։ 9 А Արամ, Б սա։ 10 А ըսպանանէ, գլուխ, Б Մեգացւոց յեղր։ 11 А քուշանաբար սմբակակոխ առնէր։ 12 А զՆիւքարն։ 13 Б զարսպի։ 15 А մինչ, Թագաւորն։ 16 Б Բէլա։ 17 А այլ չիք, Նմայ։ 18 Б աա, А Նմայ։ 19 А խաղայ, զօրութեամբ։ 21 А զերկիրն։ 22 А զնայ, Б զզաշտն։ 23 Б կացուցանել, բազում։ 24 А Պայապիս։ 25 А զԿապադովկեայ, մինչ։ 26 А Նմայ։ 27 А տայ։ 28 А օգնականութիւն։ 31 А ասացայք։ 34 А իւր անուն Արարատ, հայր։ 35 Б փախստական։ 36 Б շուայտէն փխ. տուայտէն։ 37 А կաթոտն։ 38 А երթ և եկս։

նորա։ Եւ յորժամ փախեաւ Նինոս ի կնոջէն իւրմէ եւ ի հնազանդութենէն Շամիրամայ. և Շամիրամ յար առաքէր առ նա դի կամ եկեալ առցէ զնա և տիրէ Նինուէի և ամենայն Ասորեստանի և թէ ոչ, գոնէ միայն զչար կամս տռփանացն կատարեսցէ և երթիցէ պատուով, որում ոչ հաւանեալ Արայի ընաւ։ Եւ եկեալ կաթոտն Շամիրամ ամենայն ուժով ի վերա Արայի յԱյրարատ և պատերազմեցաւ և սպանաւ Արայն Գեղեցիկ և տիրեաց ամենայնի Շամիրամ[19]։ Սա շինեաց զՎան քաղաք, դի ամառնային եղանակն անդ կացցէ, վասն զովութեան և զայլ երեք եղանակն ի Նինուէ[20]։

Եւ որդի մի էր Արայի ԲԺ (12)-ան ամաց, և Շամիրամ վասն տռփանաց հօր նորա կոչէ դնա յանուն հօր նորա Արայ և տա դպատիւ ի ձեռս նորա։ Եւ ի մեռանել Շամիրամայ ի Զարմեսեայ, որ է Նինուաս յորդոյ իւրոյ։ Եւ Արայեանն Արա մեռաւ ի պատերազմին և եթող զաւակ ամենահարուստ յիր և ի բան զԱնուշաւան։ Անուշաւան, որ և Սօս. սա շատ արհամարհանս կրեալ ի Նինուասէ տուայտի ի դրան արքունի և օգնեալ ի բարեկամաց շտհի զմասն ինչ աշխարհիս յետոյ, ապա և զբոլորս և յետ ամաց բազմաց նուաճելոյ մեռանի[21]։

Եւ աստ բարձեալ լինի պայազատութիւն սոցա ոչ ըստ ազգի, այլ ըստ յառաջադիմութեան արանց զմիմեամբք ելանելով հարստահարութեամբ տիրելով Թորգոմեանս տոհմի. նախ Պարետ, Արբոկ, Յաւան, Փառնաւոս, Սուր, առ սովաւ Յեսու, որդի Նաւեա, սատակեաց զՔանանացիս, և ոմանք ի նախարարացն Քանանացոց փախուցեալ եկին ի Հայս ‖ և ստուգեալ անտի գոլ զազգն Գնթունեաց, որ առյապայ եղեն զգեցուցանօղք ազգին Արշակունեաց։ Հաւանակ, Վաշտակ, Հայկակ. սա ամբոխ արարեալ ի վերա Բելոքոսի Նինուէի թագաւորի և մեռանի ի նմանէ։ Ամպակ, Առնակ, Շաւարշ, Նորայր, Վստասկար, Գոռակ, Հրատն, Ընձակ, Գղակ, Հօրոյ, Զարմայր, Պերճ, սա յաւուրս Գաւթի թագաւորի, Արբուն, Բազուկ, Հոյ, Յուսակ, Կայպակ[22]։ ճջջ

Յետ սոցա կրկին դարձաւ իշխանութիւն ի Հայկազունսն, նշանաւորարար որդի ի հօրէ պայազատելով ոչ միայն իշխանաց իշխան, այլ ճոխաբար թագաւոր նոր։

Պարոյր Սկաորդին ոչ միայն իշխան այլև տրդ թագաւոր, զոր և զներրող գովեստի սորա ուսցիս ի Մովսէս Քերթողէ[23], զի և զայս ծաղկաքաղ եմ արարեալ ըստ ախորժակաց իմոց։ Այս Պարոյրս յիշխանութեան աւուրս օգնական լեալ Վարբակայ Մարի Մեդացոյ բարձին զթագաւորութիւնն ի Սարդանապալլայ թագաւորի Ասորեստանի[24], որ նստէր ի Նինուէ, որ կոչի Աթուրիայ

2 A հնազանդութենէ, յար չիք։ 3 A տիրեսցէ։ 4 A տռփանաց նորա։ 5 A պատուօվ։ 8 A սայ, Б զամառնայինն։ 9 Б Գ փխ. երեք։ 12 A անունն։ 13 A տայ, մեռանիլ։ 14 A Արայեան Արայ։ 17 Б բարէկամաց։ 18 Б ետոյ։ 23 Б Փառնօոռ, Նաւեայ։ 24 Б Քանանացւոց։ 26 A Գթունեաց, ըզգեցուցանօղք։ 28 A Բելեքոսի։ 29 Б Շաւարշ։ 30 Б ջօրո. A սայ, Б յաւուր, թագաւորի չիք։ 31 Б Արբաւն, A Կայկապ։ 32 Б Հայկազանսն։ 33 Б իշխանաց չիք։ 36 Б ներրող, A սորայ։ 37 A սա փխ. զայս։ 38 A լեալ։ 39 Б Մեդացւոյ, զթագաւորութիւն։ 40 Б Նուէ, A Աթուրայ։

*և Սելևկիա և այժմ Մօսըլ։ Եւ յորժամ Վարրակէս Մար տիրեաց իսկ և իսկ Մարաց և Ասորեստանի զԲելոքոս թագաւորեցոյց ի Բաբելոն և զՊարոյր թագաւորեցոյց Հայեաստանեաց։ Առ այս Պարոյրս եկին որդիքն Սենեքարիմայ Սանասար և Ադրամելէք յետ սպանելոյ հօրն իւրեանց առաջի կռոց փախուցեալք յերրորէն յԱսորդանայ։ Եւ Պարոյր պատուեաց զնոսա, որ յետոյ ի ժամանակս Արշակունեաց անուանեցան Արծրունիք և Գնունիք[26]։ Արծրունիք, որք զարծուիս բարձեալ առաջի Արշակունեաց և բնակութիւն ի Սասուն գաւառի, և Գնունիք այսինքն, տակառապետ, որք զանոյշ գինի մատուցանէին առաջի թագաւորին, և բնակութիւն սոցա յԱմուկ բերդի[26]։ Այլ Պարոյր թագաւոր կացեալ ամս բազումս մեռանի։*

*Հրաչեայ որդի նորա առնու զթագաւորութիւնն։ Հրաչեայ կոչի սա, վասն կարմրայտ և բոցատիպ դոյոյն. առ սովաւ յիշէ գիրն Երեմիայի, թէ հրաման տուր ազգին հիւսիսոյ Ասքանազեան գնդին[27], այսինքն Հրաչէի գալ ընդ Նաբուգոդոնոսորա ի վերա Երուսաղէմի ի գերութիւն սոցա և սա խնդրեաց զմի ի գերելոց Շամբատ անուն յազգէ Յուդայ և ետ,* որ էր եղբայր Յովաքազու և որդի Յօվսիայ թագաւորի։ Եւ բերեալ ի Հայս և պատուով պահեաց, զի թագաւորազնին ի թոռանց Դաւթի և Աբրահամու է ի Սառայէ և անվանեցան Բագրատունիք[28] և բնակութիւն նոցա ի Աղթամար, զի ասեն թէ Աղթամարոյ կաթողիկոսքն ի նոցանէ են։

*Բայց կարի յոյժ զարմանամ հիացմամբ ընդ միջոց սոցա, զի բազում ամք են ի տիրելոյն Վարրակայ և Դ (4) թագաւորք այլ յետ նորա տիրեցին Ասորեստանի մինչ ի Սենեքարիմ, որ որդիք սորա եկին առ Պարոյր և աստի յառաջ յոլով ամք են մինչ ի Նաբուգոդոնոսոր, որ յիշէ ի ժամանակս Հրաչէի որդոյ Պարուրա, այլ թէ գրիչն սխալեալ կամ յանուսումն բարուց, կամ շատ ամ կացին Պարոյր և Հրաչէ։*

*‖ Այլ կամիմ ազիւսակով յայտնել զՄարաց և զՀայոց թագաւորութիւն և թափանց անցանել երագութեամբ։* ճԶԷ

| *Մարաց առաջին թագաւորն* | *Հայոց առաջին թագաւորն* |
|---|---|
| *Վարրակէս Մար* | *Պարոյր Հսկայորդին* |
| *Մաւդակիս* | *Հրաչեայ* |
| *Առտիկիս* | *Փառնուաս* |
| *Դէովկիս* | *Պաճոյճ* |
| *Փռաւորտիս* | *Կոռնակ* |
| | *Փաւոս* |

2 A զԲելիքոս։ 3 A Բաբիլօն, Պարուր։ 4 Б որդիք։ 5 A ըսպանանելոյ, կռոցն։ 6 АБ զնոսայ, A այլ փխ. որ յետոյ։ 8 Б արծուիս։ 9—10A տկառապետ չիք։ 10 A զանուշ։ 11 A սոցայ։ 12 Б բազում։ 13 A զթագաւորութիւն։ 14 A սա չիք։ 16 A Նաբուգոդոնոսորայ։ 18 Б Յուդա։ 18 –22 տողը Б որ էր եղբայր... ի նոցանէ են չիք։ 23 A սոցայ։ 24 Б Վա[ր]րակայ։ 25 A մինչև։ 27 A մինչև։ 27—28 Б որդւոյ Պարուրոյ։ 28 A սխալեալ է, անյուսում։ 30 A ազիւսակօվ։ 33 A Պարուր սկաորդին։ 34 A Մօտակիս։ 36 A Գէովկիս, Պաճույճ։ 37 A Փռաւորդիս։

Կուաք
Աժդահակ

Այս Աժդահակ, որ թարգմանի վիշապ, սա սպան զԲաղդասար, զորդի Նաբուգոդոնոսորայ և տիրեաց ի վերա Մարաց և զԲաբելոն ամս Բ (2), յԼԶ (36) ամի թագաւորութեան իւրոյ, և սա կոչեցաւ Դարեհ, և յոյժ սիրէր զԴանիէլ մարգարէն։ Եւ ի ժամանակս սորա մարգարէն եգ զվճիռն ԿԲ (62) եւթներորդացն, որ է ԴՃՁԳ (483) մինչև ի ծնունդ կենարարին մերոյ, որ փութացաւ յառաջ քան զուԹսուն ամն։

Հայկակ
Երուանդ սակաւակեաց
Տիգրան[29]

Այս Տիգրան հուժկու լեալ ամենայն Նախնեաց իւրոց և հզաւր զօրութեամբ։ Սա սպան զԱժդահակ Մարաց թագաւորն աջակցութեամբ Կիւրոսի Պարսից թագաւորին, զի նիզակակից էր նորա և բանիւ նորա սպան և գերեաց զտուն սորա ագխս իբրև Ռ (1000) և զԱնուշ մայրն վիշապաց պատուով պահէր, տարեալ ընակեցուցեալ ի Գողթան ի Ծուղայ ի Խրամ և կոչեաց զանուն ազգին Մուրացաւան, այսինքն զարմ Մարաց թագաւորին Աժ ‖ դա- ՅՁԸ

հակայ։ Յետ որոյ և Կիւրոս հնազանդեցուցեալ իւրն երկրորդ առնելով։ Եւ սա շինեաց զՏիգրանակերտ ի պատիւ քուեր: Եւ սա ծնաւ զԲար, Տիրան, Վահագն և կեցեալ ամս մեռաւ։ ԶԲար Տիրանայ, ասեն, հանգոյն Հերակլայ, և ընդ վիշապաց կռուեալ և յաղթեալ յորմէ Վահունիք։ Սորա որդին Առաւեն, յորմէ Առաւենեանքն. Ներսեհ, Զարեհ, աստի Զարեհաւան. Արմոգ, Բագամ, Վան[30], Վահէ. սա ընդվզեալ ընդդէմ Աղէքսանդրի Մակեդոնացոյ մեռանի ի նմանէ և տիրեաց միահեծան Աղէքսանդր[31]։

Եւ աստի ի վայր ոչ հաւաստեաւ ունիմ ասել թագաւոր Հայոց, զի շփոթեալ ցուցանի ցանկն Թորգոմեան[32], զի Աղէքսանդր տայր հասարակաց թագաւորութիւն ըստ հաճոյից իւրոց։

Յետ Աղէքսանդրի տիեզերակալի, որ թագաւորեաց ԺԲ (12) ամ և ի մեռանելն Դ (4) բաժանեաց զթագաւորութիւն Դ (4) դայեակ որդոց իւրոց, զոր իւրում տեղո՞ն ասելոց եմք[33]։ Յորոց մինն Սելևկոս թագաւորեաց Բաբելոնի, Պարսից և Ասորոց, սա Նիկանովր կոչեցաւ, վասն յաղթութեան, ամս ԼԱ (31)։ Զսա պայազատէ նորին որդի Անտիոքոս Սովտէրն կոչեցեալ, ամս ԺԹ (19)։ Յետոյ սորա Անտիոքոս Թիոս, ամս ԺԷ (17)։ Եւ ի ԺԱ (11) ամին սորա, զկնի Կ (60) ամի վաղճանի Աղէքսանդրի. ապստամբեցին Պարթևք և Պարսք ի ծառայութենէ Մակեդոնացւոց

2 A Աժդախակ, Նրվանդ։ 5 A սայ։ 5--6 A զՊաղդասար։ 6—7 Б Նաբուգոդոնոսորա։ 8 A զԲաբիլոն։ 8—9 A Բ-ս ԼԶ։ 10 A սայ։ 11 Б Դաղեհ։ 13 A սոշայ։ 14 A եօթներորդացն։ 4 A լինել։ 7 A հզօր։ 9 Б Կիրոսի։ 10 A արքային փխ. թագաւորին։ 11 A Նորայ։ 13 A զորայ, հազար։ 14 A պատւով։ 15 A ընակեցուցանէր։ 16 Б Ճուղա։ 17 Б անուն։ 20 Б զԿիւրոս։ 21 A սայ, Б քեռ, A քուերն։ 22 Б Վահակն հսկայ, ամս սակաւ։ 24 A սորայ, Б Առաւեան, A Առաւեննեանք։ 26 Б Մակեդոնացւոց։ 31 Б ՄԲ փխ. ԺԲ։ 33 Б յիւրում տեղւոջն։ 34 A Բաբէլոնի։ 35 A Նիկանովրայ։ 37 A Յետ սորայ, Б ՄԱ փխ. ԺԱ։ 38 A սորայ, զկնի չիէ, զԿ, Б վախճանին։ 39 A Մակեդոնացոց։

և եդին իւրեանց թագաւոր զԱրշակ։ Այս Արշակ քաջ էր ի Թետուրական ծննդոցն, ի սերմանէ Աբրահամու, որոյ ասաց Աստուած «Թագաւոր ի քէն ելցեն»[34]։ Սա թափէ յարևելից և ի Բաբելոնէ զիշխանութիւն Մակեդոնացոց և ետ Հռոմայեցոց Ճ (100) քանքար ամի-ամի պատարագս, զի մի օգնեսցեն Մակեդոնացոցն։ Սա թագաւորեալ ամս ԼԱ (31) մեռանի ի Բալհ[35]։ Եւ յետ նորա Արտաշէս, որդի նորա, ամս ԻԶ (26)։ Զսա պայազատէ Արշակն մեծ, որդի նորա, ի վերա սորա եկին ի Բաբելոն Դեմեար և որդի նորա Անտիգոն, թագաւորք Ասիոյ և պատերազմեցան։ Եւ Արշակ յաղթեալ ըմբռնէ զնոսա և տանի ի Պարթևս։ Էր Դեմետրի եղբայր մի կրսեր Անտիոքոս անուն ի Սիդէ քաղաքի սնեալ, իբրև լուաւ զգերիլ եղբօր իւրոյ եկն էառ զտեղի նորա։ Իբրև լուաւ Արշակ եկն ի վերա նորա ԲԺ (12)-ան բիւրուք ի ձմերայնի յանձուկ տեղի և սպանանէ զնա և դարձեալ դնէ զԴեմետր. և սա տիրեաց երրորդ մասին աշխարհի[36]։ Այս Արշակ || մեծ, թոռն Ար- ՃՁԲ
շակայ քաջի, թագաւորեցուցանէ Հայոց զեղբայր իւր զՎաղարշակ, Խաղտեաց դաւառին, որ է Կեսարիայ, տալով նմա զհիւսիս և զարևմուտս։ Այս եղև սկիզբն երկուց հարազատ թաղաւորացն՝ Պարսից և Հայոց ի տոհմէ Արշակունեաց։

Նախ ասասցուք զՊարսիցն որքան տևեցին Արշակունիքն համառօտաբար և ապա զՀայոցն ձիգ և յերկար ըստ ոնոյն.

Արշակ մեծ ամս ԾԴ (54), Արշական ամս ԼԱ (31), Արշանակ ամս Լ (30), Արտաշէս ամս Ի (20), Արշաւիր ամս ԽԶ (46), ի սորա Ի (20) ամին ծնունդն Քրիստոսի ի Բեթղէէմ Հր[է]աստանի։ Արտաշէս ամս ԼԵ (35), Դարեհ ամս Լ (30), Արշակ ամս ԺԷ (17). Արտաշէս ամս Ի (20), Պերոզ ամս ԼԴ (34), Վաղարշ ամս Ծ (50), Արտաւան ամս ԼԱ (31)։ Զսա եսպան Արտաշիր Ստահրացի, որդին Սասանայ և երարձ զթագաւորութիւն Արշակունեաց ի Պարսից[37], յաւուրս Խոսրովու հօր սրբոյն Տրդատայ Արշակունոյ ի ԻԹ (29) ամի թագաւորութեան նորա։

Այլ մեք թողցուք զսոսա և դարձցուք յառաջին կարգն ուստի թողաք և թուեսցուք զՀայոցն զամքն և զոր ինչ լինել նոցա[38]։

Վաղարշակ թագաւոր եղբայր Արշակայ մեծի, որպէս յառաջ ասացաք, թագաւորեաց Հայոց ամս ԻԲ (22)։ Սա յօրինէ զաթոռ թագաւորութեան իւրոյ ի Մծբին[39] և յօրինէ կարգս կենցաղականս զանազան յօրինուածով գտեալ դիր ի նախնեացն Հայոց։ Թագադիր զԲագարատ դնէ, զի յառաջ նախաձեռն սա եղև Արշակայ յառնուլ զՀայս։ Սա էր Հրէայ, յազգէ Յուդա և զգեցու-

2 A ծնընդոց։ 3 A Բաբիլօնէ։ 4 A զՄակեդոնացւոց զիշխանութիւն, Б Հռոմայեցւոց։ 5 Б Մակեդոնացւոցն։ 7 A զսայ։ 8 Б որդի չիք, A սորայ, Բաբիլօն։ 11 A Սեդէ։ 12 A զգերիլն։ 13 A բիւրիւք։ 14 A յանձուկ տեղիս, զնայ, սա չիք։ 15 A թոռն մեծին։ 17 A գաւառի։ 21 A երկար։ 24 A սորայ, ծնունդ, Բեթղեհէմ։ 27 A զսայ։ 28 Б Ստհրացի, Սասանա։ 30 Б Արշակունւոյ, ամին։ 31 A զսոսայ, առաջին։ 32 Б ուտի, A զամենեքեան փխ. զամքն, և (զոր) չիք։ 35 A ԻԱ փխ. ԻԲ։ 36 Б կենցաղական։ 37 A նախնեաց։ 38 A և այ։ 39 A առնուլ, սայ, Յուդա և որպէս ասացաք և զգեցուցանող։

ցանող իւր, զնձեռէս Փանանացի և կոչէ զազգն Գնթունի։ Եւ Թիկնապահ ի զաւակացն Խոռայ Հայկազնոյ, որ և Մախազունիք։ Եւ ըզԴատ ի վերա որսոյ, որ և Վարաժնունիք։ Եւ զԳարաղ ոմն ի վերա կուտից և զԳաբէլ սպասարար և Գաբեղեանք և Արեղեանք կոչին նոքա։ Եւ Արծրունիք, որք արծուիս բարձեալ։ Եւ Գնունիս, որ գինի մատուցանէին առաջի թագաւորին։ Սոքա յորդոցն Սենեքարիմայ, Եւ Սպանդունիսդ ի վերա զենարանաց։ Եւ զՀաւունիսդ բաղեկալս։ Եւ Ձիւնակալդ ձիւնակիրս յամարայնի[40]. Եւ երկրորդ իւր ի զաւակացն Աժդահակայ։ Եւ յարևելից Բ (2) նահապետութիւնս՝ զՍիսականսն և որ ի տանէն Կադմեայ, և || ԾԲ յարևելից հիւսիսոյ զԱռան ի ծնընդոց Սիսակա, ուստի Աղուանք. և ի սորա ծնընդոցն սերին ազգն Ուտէացոց և Գարդմանցոց, և Գօղէացոց[41], և Գարգարացոց իշխանութիւն։ Եւ Գուշարայ, որ յորդոցն Շարայի ժառանդեցուցանէ զԿանդարս։ Զտէրութիւն Տաշրայ և զԱշոցաց ընդդէմ Կովկասու լերինն կարգէ զհզօր ազգն ի զաւակէ Միհրդատայ Դարեհի նախարարի։ Եւ զՏուրք ոմն ի Պասքամայ վասն դժնեա երեսաց կարգէ կուսակալ արևմտից և կոչէ զնա Անգեղտան։ Եւ զայր ոմն Սրտեա-Սլաք անուն, յազգէ Հայկա, կարգէ պահել զլեառն որսալ քօշս[42], որ և Սղկունիք և ի սոցին զՄիանդակնայ դառնալի, յորմէ Մանդակունիք և զայլսն ամենայն, զոր ոչ գրեմ լիապէս, այս Վաղարշակ հաստատեաց և մեռաւ ի Մծբին[43]։ Առ սա եկին ի Հնդկաց Բ (2) եղբարք իշխանք ճարտարք Դեմետր և Գիսանէ անուն և բնակեցուցանէ զնոսա ի Տարօն, զոր յետ ԺԵ (15) ամի սպանան նոքա և որդիք նոցա արարին զպատկերս նոցա և եդին ի տեղի Իննակնեա. և եղև մեհեան նոցա, զոր յետ բազում ժամանակի սուրբն Գրիգոր խորտակեաց և եդ անդ զնշխարս սուրբ Կարապետին[44]:

Եւ թագաւորեաց Արշակ որդի նորա ամս ԺԳ (13)։ Աս պատերազմեալ ընդ Պոնդացիսն և յաղթեաց նոցա և նշանակ եթող յեզր ծովուն մեծի զնիզակն իւր բոլորատէգ մխեալ արեամբ զեռնոց ձգեալ ուժգին յերկանաքար մի և խորագոյն նստոյց զնիզակն ի կարծր քարն և կանգնեաց ի ծովեզրն և ժամանակ ինչ պաշտեցին և մեռաւ Արշակ[45]։

Եւ թագաւորեաց Արտաշէս որդի նորա ամս ԻԵ (25), սա հպարտ գոլով և պատերազմասէր ոչ եղեալ երկրորդ Պարսից, այլ զՊարսից արքայն Արշանակ իւր երկրորդ արարեալ։ Եւ դնացեալ ի Լիբիայ զԿրասոս թագաւոր[46] նոցա մահացուցեալ և տիրեաց նոցա։ Սա զմիջօրեայն մթացուցեալ բազում նետաձգութեամբն, զի անհամար գոլով զօրաց յիջևանս իւրաքանչիւր քար մի դնէին

1 А զձեռնէս։ 3 Б զԳարող։ 4 Б զԳարեղեանք։ 5 А արծուիք։ 6 А որք, որդոցն։ 7 А Սպանդունիք, զենարանացն։ 8 Б Ձիւնակալդ չիք։ 10 А զՍիսականսն։ 11 А ծնընդոցն Սիսակայ։ 12 Б ծընդոցն, Ուտեացւոց, Գարդմանացւոց։ 13 Б Գօղէացւոց, և Գարգարացւոց չիք։ 14 А որդոցն։ 15 Б Տաշրա, զԱշացոց, А Կովկասու։ 17 Б Պասքամա, А դժնայ։ 19 Б գարդէ, զլեառն, А գդօշս, Սլկունիք։ 20 А զՄիանդակնայ, Б զՄիանդակն անդառնալի։ 22 А ի Մծբին չիք, եղբայրք։ 25 А Ինակնեայ։ 26 Б Գրիգոր Լուսաւորիչն, А խորտակեաց զայն։ 27 А Կարապետին որ է վանք հոգակաւոր։ 29 А նշայնակ յաղթութեան։ 30 А ծովոյն, զնիզակ։ 35 Б հպարպ։ 36 Б Արշակնակ։ 38 А զմիջօրեան։

*և լինէր իբրև զահագին կարկառ մի, սա զծովն մեծ որպէս ցամաք ցուցեալ վասն անչափ նաւացն, որ կից կային առ միմեանըս կամելով զամենայն արևմուտս հնազանդել, այլ ոչ դիտեմ, թէ որպէս աղմկեալ եղև զօրաց նորա վաղվաղակի յետ դառնայ բերելով ընդ ինքեան զպատկեր արեգական և լուսնի յԱրմաւիր և պաշտեցին. և մեռանի Արտաշէս յիւրոց զօրացն խոցեալ*[47]*։*

*Եւ թագաւորեաց Տիգրան որդի նորա ամս ԼԳ (33)։ Ի սմանէ ապստամբեցան Յոյնքն, որ ի կողմանս Մաժակայ, վասն որոյ երթեալ պատերազմի և յաղթէ նոցա։ Եւ ի քեռ այր իւր հաւատայ զՄաժաք և զՄիջերկրայս բերէ ընդ ինքեան զկուռս նոցա յաշխարհս մեր զԴիոսին յԱնի, զԱրտեմիդեա, զԱփրոդիտեա և Հեփեստոոին յայլ տեղիս. ‖ և անտի դիմէ յաշխարհն Պաղեստինացոց։* ճՂԱ. *Իսկ դշխոյն Հրէից Աղէքսանդրիայ, որ և Սաղինա, կին Աղէքսանդրի որդւոյ Յոհաննու, որդոյ Շմաւոնի, եղբօր Յուդա Մակաբէի, զայնու ժամանակաւ նայ էր թագաւոր Հրէից։ Ունէր սա Գ (3) որդիս՝ Հիւրկիանոս, Արիստաբուլոս և Անտիգոնոս։ Այս դշխոյս ինչս բազում ետ Տիգրանայ և հնազանդեալ նմա, գնաց ի նմանէ։ Եւ զդերեալսն, որ ի Հրէից անթիւ բերեալ Տիգրանայ բնակեցուցեալ յԱրմաւիր։ Յայնմ ժամանակի Պոմպիոս Հռոմայեցոց զօրաւար եկեալ անթիւ զօրօք ի Միջերկրայս ի վերա Տիգրանայ և ոչ էհաս նմա, զսպարապետն իւր կացոյց ի Դամասկոս կալ ընդդէմ Տիգրանայ և ինքն գնացեալ ի Մաժակ պատերազմել ընդ Միհրդատայ. և փախոյց զնա և տիրեաց տեղայն և զպատանին Միհրդատիայ անուամբ հօրն գերեաց և չուեալ ի Հրեաստան ետես, զի Սաղինայ դշխոյն Հրէից տուեալ էր զթագաւորութիւն Արիստաբուլեա՝ որդոյ իւրոյ և քահանայութիւն Հիւրկիանեայ. և պատերազմեալ առ զքաղաքն և առ դերի զթագաւորն Արիստոուբուլոս և եդ ի տեղի նորա դՀիւրկիանոս կամելովն Անթիպատրեայ Ասկաղոնաց[ի]ս հօր Հերովդէի։ Եւ Հիւրկիանոս թագաւոր և քահանայ խնդրեաց ի Պոմպէոսէ, զի արասցէ գործակալ զԱնթիպատրոս, զոր և արարն իսկ, և ինքն Պոմպէոս հանդերձ Արիստաբուլի. չուէ ի Հռոմ։ Իսկ Տիգրան իբրև լուաւ զայս ամենայն դարձեալ եղև երկրորդ Պարսից և առեալ ի նմանէ անթիւ զօր և կացոյց ի վերա Բաղափրան Ըռըշտունի և իւրով հանդերձ խաղայ յԱսորիս ի վերա Հռոմայեցոց ընդառաջ նորա զա Գաբիանոս զօրավար նոցա. և ոչ կարաց ի դիմի կալ, այլ խոյս ետ, գնաց յԵգիպտոս և գաղտ ի Հռոմայեցոց հաշտութիւն*

1 A *ահագին,* A *մեծ* չիք։ 2 A *նաւուցն, կացին* փխ. *կային, միմիեանս։* 6 A *իւրոց։* 8 A *ապըստամբեցան Յունք, Մաժաքայ։* 9 A *պատերազմէ, ի (քեռ)* չիք։ 10 Б *զՄասաք* փխ. *զՄաժաք։* 12 Б *զՀեփեստոսին,* Б *Պաղեստինացւոց։* 13 A *դըշխոյն, Սաղինայ կինն։* 14 A *որդոյ, Շմաւօնի, Յուդայ։* 15 A *զի այնու։* 16 A *սայ, զԱրիստապուլոս։* 18 A *Տիգրանայ։* 19 A *յայն, Պոմպեոս։* 20 A *զօրավար Հռոմայեցւոց։* 21 A *իւր* չիք։ 22 Б *և* չիք։ 23 A *գնայ։* 25 Б *Հրէաստան։* 27 A *Արիստապուլեա, իւրում։* 28 A *Արիստապուլոս, Հիւկիանոս։* 29 A *զԱնթիպատրեա, Ասկաղոնաց[ի]ս* չիք, *հօրն Հերօվդէի։* 32 A *Արիստապուլիւ։* 33 A *երկրորդ եղև։* 34 A *զօրս,* Б *զԲազարբփրան Ըռշտունի, իւր զօրօք։* 35 Б *Հռոմայեցւոց։* 36 A *եյանէ* փխ. *զա, զօրաւար։* 37 A *Եգիպտոս,* Б *Հռոմայեցւոց։*

խօսեալ ընդ Տիգրանայ. և զքեր որդին զպատանին Միհրդատ արձակէ՞ գաղտ առ նա, զոր Պոմպէոս կալեալ էր համբաւելով, թէ գաղտ փախեաւ։ Իբրև լուան Հռոմայեցիք զայս իր, փոխեն զԴաբիանոս և փոխանակ նորա առաքեն զԿրասոս, որ եկեալ անթիւ զօրաւք կալ ընդդէմ Հայոց և ոչ տայր թոյլ ընդ Եփրատ անցանել։ Եւ առաքեաց Տիգրան զԲազափրան նահապետն Ըռըշտունեաց և զԴնէլ նահապետ Գնունեաց, բաղում զօրու ընդդէմ Հռոմայեցոց կամ հնազանդ առնել զԱսորեստան և զՊաղեստինէ և կամ ի սուր սուսերի մաշել։ Եւ եկեալք զհրամանն կատարեցին մաշ ‖ ելով զամենեսեանն ի սուր սուսերի և յաղթեցին նոցա և ԾՂԲ փախուցին։ Յառաջ նոցա եկեալ Պակորոս ոմն, խնամի Անտիգոնեայ եղբօր Հիւրկիանայ ասելով. «Բազմափրա փութայ, զի զՀիւրկիանա թագաւոր դրեսցես և դիցես թագաւոր զփեսայն իմ, զԱնտիգոնոս, տամ քեզ Շ (500) աղջիկս գեղեցիկս և Ռ (1000) քանքարս ոսկւոյ»։ Եւ գնացին ի վերայ Պաղեստինայ, իբրև տեսին զՀիւրկիանոս թագաւոր և Փեսաղոս որդի Անթիպատրեա գործակալ, զի յայն ժամանակի զԱնթիպատրոս հայր սորա և զՓերուրի եղբայր սպանեալ էին հրէայքն՝ դեղըմպութեամբ. և մնացեալ այս Փեսաղոս, որ այժմ գործակալ է Հերովդէս։ Իբրև տեսին սոքա զյաղթութիւն Բազմափրայ խօսին զխաղաղութիւն հնազանդութեան։ Եւ Բազափրան յառաջագոյն առաքեաց զԴնէլ տակառապետն Յերուսաղէմ առ նոսա գալ ի հնազանդութիւն։ Եւ Հիւրկիանայ զտակառապետն բազում զօրօք ոչ ետ թոյլ մտանել ի քաղաքն, այլ Ճ (500) արամբ և Դնէլ խրատ տայր Հիւրկիանեա, թէ ել գնայ առ Բազափրի իշխանն մեր և լեր պատուով։ Եւ նորա պահանջեալ երդումն և նա երդուաւ յարեգակն և ի լուսինն և յամենայն պաշտելիս, ընդ որ վստահացեալ գնաց առ Բազափրի տարաւ ընդ ինքեան զՓեսաղոս գործակալ։ Եւ յորժամ գնացին առ ժամ մի մեծարէր Բազափրան զՀիւրկիանոս թագաւոր և յետ սակաւու եղեալ վոքր մի հեռացաւ վասն երդման և ասաց զօրացն մատնել զՀիւրկիանոս ի ձեռն Անտիգոնեայ եղբօր իւրոյ։ Եւ Անտիգոնոս ատամամբք կարեաց զականջ Հիւրկիանեայ եղբօր, զի մի այլ լիցի քահանայպետ ըստ օրինացն։ Եւ Փեսաղոս եղբայր Հերովդի իւրովի էհար զգլուխն ի քարի. և Անտիգոնոս բշիժկ առաքեաց է թունաւոր դեղովք սատակեցին զնա։ Իբրև ետես Հերովդէս գաղտ փախեաւ ընտանեօքն ի Հռոմ առ Աւգոստոս կայսրն պատմել զանցս աղէտից հօրն և եղբարցն, թէ որպէս մեռան ի վերա հաւատարմութեան Հռոմայեցոց։ Եւ մինչ այս եղև առաջի Բազափրա ընրոնեաց զՀիւրկիանոս թագաւոր և

---

1 А քուեր։ 2 А նայ, Б զօր։ 5 А զօրօք, ոչ չիք։ 6 А զԲազափրան։ 7 А Դնել նահապետն, Б Հռոմայեցւոց։ 9 А եկեալ։ 12 Б Անտիգոնեյ, А Բազափարւ 15 А Պաղեստինոյ։ 16 А Հիւրկիանոս, Б Անթիպատրեայ։ 17 А սորայ։ 19 Б Փասղոս։ 20 А սոքայ զյաղթութիւնն Բազափրայ։ 21 А յառաջայգոյն։ 23 А Հիւրկիանոս։ 24 Б քաղաք, А արամբք, խըրատ։ 25 Б գնա, А Բազարբրան, Б պատւով։ 26 А զերդումն, լուսին։ 27 А պաշտելիսն։ 27—28 А Բազարբրա և տարեալ։ 29 А Բազարբրան։ 30 А ելեալ։ 31 А Անտիգոնեա, իւրում։ 33 А օբինաց։ 34 А Հերովդէի, Б եհար, А ըզգլուխ իւր։ 35 А թիւնաւոր։ 36 А ընտանօք, Б Հռովմ։ 37 А կայսր, աղէտիցն։ 38 Б Հռովմայեցոց։ 39 Б Բազափրայ, ըմ[ր]ոնեց։

*փահանայ և՝եա զիշխանութիւն Անտիղոնեա եղբօր նորա, ըստ խոստման Պակարոսի, աներոջ նորա, զի առցէ զխոստացեալն։ Եւ մտին ի քաղաքն ձեռնատուութեամբ Անտիգոնեա. նոր թագաւորի ոչ մեղանչեցին քաղաքին այլ զտուն և զաղխ և զամենայն ինչս Հիւրկիանեա հանդերձ ինքեամբ երեր Բազափրի գերի և բնակեցուցեալ ի Վան քաղաքի[48]։ Իբրև լուաւ կայսրն Օգոստոս զիրսն, որ եղեն ի բերանոյ Հերովդէի, թագաւորեցուցանէ ‖ ճՂԳ զՀերովդէս Հրէաստանի կամակցութեամբ դշխոյին Եգիպտացոց Կղէոպատրայ և Հերովդէս հանդերձ Հռովմայեցովք եկեալ ի վերա Երուսաղէմի, պաշարեալ առ զնա, և սպան զԱնտիգոնոս թագաւոր և տիրեաց ամենայնի։ Եւ Տիգրան յետ դերելոյն զՀիւրկիանոս կացեալ Բ (2) ամ մեռաւ[49]։*

*Եւ թագաւորեաց Արջամ, որդի Արտաշէսի, եղբայր Տիգրանայ, ամս Ի (20). ի սորա առաջին ամին մեռաւ Արտաշէս Պարսից թագաւոր և մնաց ժառանգ թագաւորութեան նորա Արշաւիր, փոքր աղայ և ոչ կարաց օգնել Արջամայ, վասն որոյ Արջամ ձեռն ետ յՕգոստոս և այս եղև սկիզբն մասնաւոր հարկս տալ Հայք Հռովմայեցոց[50]։ Եւ Հերովդէս սկսեալ ի Հռովմէ մինչև յԱնտիոք սալայատակ արար վճանապարհս, խնդրեաց յԱրջամայ արս անարուեստից և ոչ ետ յառաջ, յետոյ վասն սաստիկ պատասխանոյն Օգոստեա տայ, զոր խնդրէր և Արջամ մեռանի[51]։*

*Եւ թագաւորեաց Արգար որդի նորա ամս ԼԸ (38)։ Սա խազմ արար ընդ Հերովդէս, սպանանէ զեղբօր որդի նորա, զի բազում զօրօք եկեալ էր ի վերա իւրն։ Ի Բ (2) ամին սորա, և ի ԽԲ (42) ամին Օգոստեա, ԻԱ (21) ամին Արշաւիրի Պարսից թագաւորին և ԼԲ (32) ամին Հերովդէի, յԱդամայ ՐՃՂԸ (5198), ի ՃՂԵ (195) նահանջին ծնանի տէրն մեր Յիսուս Քրիստոս ի Բեթղէեմ Հրէաստանի, յորում ամի Օգոստոս առաքեաց զԿիւրրոն առնել աշխարհագիր[52]։*

*Ի ԺԸ (18) ամին իւրոյ Արգար շինեաց զՈւրհայ և եգ անդ զաթոռ թագաւորութեան ի Մծբնայ։ Զայս Ուրհայ, որ է Եդեսիայ, յառաջ շինեաց Նեբրովթ Բէլն և անուանեաց Որեդ և կրկին շինեաց Սելևկու բարեկամն Աղէքսանդրի և երրորդ այս Աբգարս[53]։ Ի ԻԷ (27) ամին Աբգարու մեռաւ Արշաւիր Պարսից արքայ թողլով Գ (3) որդին՝ Արտաշէս, Կարին, Սուրէն և դուստր մի Կոշմ անուն։ Արտաշէսն առեալ զթագաւորութիւն և Բ (2) եղբարքն հակառակէին ընդ նմա. իբրև լուաւ իմաստունն Արգար չուեաց ի Բահլ քաղաքի և համոզեաց Գ (3) եղբարսն ի*

---

*1 Б զիշխանութիւն նորա։ 2 А Պագարոսի։ 3 Б Անտիգոնեայ։ 5 А Բազափրան։ 6 Б կայսր։ 8 Б Եգիպտացւոց։ 9 А Կղէոպատրայ, Հռոմայեցովք։ 10 А էառ։ 11 А Տիրան փխ. Տիգրան։ 12 А կեցեալ, մեռանի։ 14 А սորայ։ 15 А թագաւորն։ 10 Б ազա։ 17 Б Օգոստոս։ 18 А Հռոմայեցոց, Հռոմէ։ 19 А Արջամայ։ 20 А պատասխանացն։ 21 Б Օգոստեայ տա զօրս խնդրէրն։ 23 Б Հէրովդէս։ 24 Б էր չիք, А ամի սորայ։ 25 А Օգոստիեա, ի ԻԱ, Արտաշէսի փխ. Արշաւիրի։ 20 Б ԼԱ փխ. ԼԲ, А Հերովդէի, Б ՃՂԸ։ 27 А Բեթղեհեմ, Б Հրեաստանի։ 28 А առաքեաց Օգոստոս։ 30 Б զՈւրհա։ 31 А Մրծբինայ։ 33 АБ Սելեկոս։ 34 А Արգարիոս։ 35 Б արքայն, А որդիս։ 36 А կոմշ։ 37 А եղբայրքն։ 38 Б զԳ։*

հաշտութիւն, տալով զթագաւորութիւն Արտաշէսի և կոչեաց զնոսա Պալհաւս՝ Արտաշէսի Պալհաւ, Կարենա Պալհաւ, Սուրենայ Պալհաւ։ Զայս վասն այն երկարեցի, զի ծանիցես զլուսատուն մեր ի Սուրենա Պալհաւէ սերեալ, և ի Կարենա Պալհաւէ՝ զազգն Կամսարականաց, և յետոյ ի ժամանակն Տրդատայ եկին յաշխարհս մեր։ Բայց մեծն Արդար ‖ յետ համոզելոյ զնոսա առեալ ծՂԴ գիր երդման դարձաւ և ի հեռաւոր ճանապարհին հանդիպի նմա ցաւ ուրկութեան[54]։ Եւ ի յայսմ ամի Տիպեր կայսրն ոստիկան առաքեաց յԵրուսաղէմ՝ զՊիղատոս և զպատկերն իւր ընդ նմա դնել ի տաճարն։ Եւ եւ հոգին սուրբ ի դարիրայէն և աղխաւագգեաք[55] Բ (2)-սեանցն աղաղակէին։ Այլ այս Պիղատոս և Հերովդէս չորրորդապետն և Փիլիպոս և Լուսենա չարախօսէին զԱրգար առ գործակալս Հռոմայեցոց, որ գային տանել զհարկն ամի ամի ասելով, թէ «Արգար ապստամբել կամի յարքայէ, վասն այն գնաց ի Պարս և եկն, զի նոքա զօր առաքեսցեն[56]»։ Ընդ այն աւուրս եկաց ի գործ հազարապետութեան Ասորոց և Փիւնիկեցոց և Պաղեստինացոց Մառինոս, յառաջագոյն առաքեաց Արգար առ նա զՄարիհայ բդեաշխն Աղձնեաց և զՇամշագրամ նահապետն Ապահունեաց[57] և զգիր ուխտի Գ (3) եղբարցն Պարսից ասելով. «Մի ունկն մատուցես չարախօսաց իմոց, զի վասն համոզելոյ զնոսա գնացի ի Պարս»։ Եւ. Մառինոս սիրով ընկալաւ զնոսա ասելով. «Ոչ ընդ իցեմ նոսա մի լիցի կասկած ի մտի քում»։ Եւ մինչ դարձան լուան զսքանչելիսն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ զորդի այրւոյն յարուցեալ էր ի մեռելոց Ինային քաղաքին. եկեալ աչօք տեսին և երկրպագեցին Քրիստոսի և եկեալ պատմեցին Արգարու[58]։ Եւ նա հաւատաց և առաքեաց առ տէրն մեր Թուխթ աղաչանաց գալ առ նա[59]։ Եւ տէրն մեր երանեաց զնա և առաքեաց զանձեռագործ դաստառակն պատկերին, որով կէս մարմնոյն ողջացաւ, յետոյ Թադէոս առաքեալն զբովանդակն։ Եւ երանելին Արգար բոլորով սրտիւ հաւատաց ի Քրիստոս և փոխեցաւ առ նա։

Յետ սրբոյն Արգարու յերկուս բաժանեցաւ թագաւորութիւն՝ զի Անանուն որդին Արգարու թագաւորեաց ի Յեդեսիայ և ուրացաւ զՔրիստոս և սպան զԱդդէ աշակերտ Թադէոսի, և Սանատրուկ քեռորդի Արգարու Արշակունոյ թագաւորեաց յԱրտազ, որ և Շաւարշան և այժմ Մակու. իսկ Անանուն սատակեցաւ անկաւ սիւն կճեա ի վերա նորա ի նոյն ամի։

Եւ թագաւորեաց Սանատրուկ քեռորդի Արգարու ամս Լ (30)։ Եւ եկեալ ի վերա Ուռհայոյ և փակեցին ընդդէմ նորա զդուռն և

---

2 A Կարենայ, Б և Սուրենայ։ 4 A Սուրենայ, Կարենա։ 5 A որ յետոյ։ 7 Б դի[ր]ս։ 8 Б Տիբեր։ 9 A զԵրուսաղէմ։ 10 Б զարիրաէն, A աղխաւեղագէղք Բ-սիեանցն։ 13 Б Հռոմայեցւոց։ 16 Б Փիւնիկեցւոց։ 18 A նայ, A զՇամշագրամ։ 20 A գներ փխ. մատուցես։ 22 A լուիցեմ փխ. ընդ իցեմ։ 23 A սքանչելիսն։ 24 A այրուն։ 25 A երկրպագեն։ 26 A երանելին Արգար փխ. նա։ 27 A թուղայ նայ։ 28 A պատկերն ի դաստառակին։ 29 A զկէս, բովանդակ։ 31 A նայ։ 32 A երկուս, Б թագաւորութիւնն։ 33 Б զի չիք, զԱնանունն։ 37 A կճեայ։ 39 A Ուռհայուս։

խնդրեցին ուխտ, զի պահեսցէ զնոսա քրիստոնեայ և երդուեալ նոցա, և բացին զդուռն և ստեաց || ծՂե երդմաննն։ Եւ զամենայն որդիսն Աբգարու սպան և զամենայն ինչս տան նորա ետ կնոջն Աբգարու և բարեպաշտ և առաքինի կինն զամենայն ետ և գնեաց ցորեան և բաշխեաց կարօտելոց, զի սղութիւն էր հացի, և գնացեալ Յերուսաղէմ կրօնաւորեցաւ և հանգեաւ ի Քրիստոս։ Այս Սանատրուկս նահատակեաց զԹադէոս առաքեալն և զօրիորդն իւր զսուրբն Սանդուխտ ի Յարտազ և զսուրբն Բարդուղիմէոս ի Յաղփակ և զսուրբն Յուդայ Յորմի և յետոյ ինքն նետիւ խոցեալ[60]։

Եւ թագաւորեաց Երուանդ ամս Ի (20)։ Սա որդի կնոջ Արշակունոյ Վարարի, յղացեալ յայլ և յայլ սերմանց։ Սա արար ընդ տանն Սանատրկոյ, որպէս նա ընդ տանն Աբգարու, բայց մնաց պատանի մի Արտաշէս անուն, զոր առեալ Սմբատայ Բագրատունոյ փախեաւ ի Պարս առ Դարեհ արքայ և իբրև մեծացաւ առեալ զօր ի Դարեհէ եկեալ սպանանէ զԵրուանդ ի Յերուանդաւան քաղաք[61]։

Եւ թագաւորեաց Արտաշէս որդի Սանատրկոյ ամս ԽԱ (41)[62]։ Ի սորա ժամանակս կոչեցան Ամատունիք և պատուեցան։ Եւ են սոքա Հրէա՝ յազգէ Մանուէլա, հօր Սամփսոնի, դերեալ յԱրշակայ մեծէ[63]։ Ի վերա սորայ եկն արքայն Ալանաց յայնկոյս Թեէ Կոկասու լերին և ըմբռնեցաւ ի Հայոց որդի, Թագաղարմին և փախուցին զնոսա մինչ ի Քուռ գետ և բանակեցան նոքա յայնկոյս գետոյն և սոքայ աստի և երթ և եկս լինէին Ալանք առ Արտաշէս զի հաշտեսցին և Արտաշէս ոչ լսէր նոցա։ Յետոյ վասն կսկծանաց որդոյ թագաւորին, քոյր նորա Սաթենիկն գայր յափն գետոյն յայնկուսէ և կականմամբ ձգեալ զձեռն իւր աղաղակէր. «Ով քաջդ Արտաշէս ոչ է պարտ դիւցազանութեանդ ի սորկի պահել զորդի քաջաց և անհաշտ խռովութիւնն առնել ի մէջ Բ (2) հզօր թագաւորացս»։ Եւ Արտաշէս իբրև ետես զկականումն օրիորդոյն Սաթինկայ առ ափն գետոյն, որ վասն եղբօրն, տռփեցաւ նմա և ասաց զկիրս մտաց դայեկին իւրոյ Սմբատայ, որում հաւանեալ խօսին ընդ թագաւորն Ալանաց տալ զօրիորդ իւր զՍաթենիկն Արտաշէսի ի կնութիւն և արձակել զեղբայրն նորա փառօք, որում տայ զՍաթենիկն. և կնքեցին մուրհակ հաշտութեան և զարձան[64]։ Ընդ Սաթինկայ եկին յԱլանաց Սուքիասանքն և եկին ընդ նմա և աշակերտեցան որդոց Ոսկեանց և մկրտեցան ի յակունս Եփրատայ, յետ ԽԲ (42) ամի նահատակութեան Թադէոսի առաքելոյն և յետոյ սուրբն Ոսկեանք նահատակեցան յորդոցն Արտաշէսի Վրոյ և Վնդոյ կո || ծՂՁ չեցեալ և սուրբն Սուքիա-

1 A քրիստոնեայս։ 2 Б նոցա չիք։ 6 Б կրօնաորեցաւ։ 7 A զօրիորդն։ 9 A Յաղբակ, սուրբն։ 10 A խոցեալ մեռանի։ 11 A Արշակունւոյ։ 12 A այլ և այլ։ 13 A ի փխ. (նա) ընդ։ 14 A միայն մնաց։ 16 Б եկել, A Երևանդաւան քաղաքի։ 19 A սորայ։ 20 A Հրէայ, Արշակայ 21 A մեծի, կովկասու։ 23 A մինչև։ 28 Б դիւցազնութեանդ։ 31 A տռփեցաւ։ 32 A Սմպատայ։ 33 Б խօսէին, A զօրիորդ։ 34 Б արձակեալ։ 35 A մուրհակ կընքեցին։ 36 A Ալանաց, Սուքիասեանքն։ 37 A առ. փխ. ընդ։ 38 A յակունսն։

սանդ խոյս ետուն ի Ծաղկէ լեռնէն և գնացին ի Սուկաւ լեառն, զոր ի Բօսատաղ[65]։ Եւ յաւուրս Արտաշէսի կոչեցան ամիսք և շաբաթք և երկրագործութիւն ի Հայս, զի մինչ ի յայս աւազակարար կէյին մարդիկ և սա յամենայն սահմանս իւր արձան կանգնէր քարեա դրոշելով յանուն իւր և յետոյ վճարեաց[66]։

Եւ թագաւորեաց Արտաւազ Շիդար[67] որդի նորա ամս Բ (2)։ Սա՝ յաւուր միում հեծեալ ի ձի կամէր երթալ որսալ կինճս, հասեալ ի վերա կամրջի յԱրտաշատ, ցնորեալ ի խելաց, անկաւ ի գետն, և աննետի եղեալ ընական դիւահար գոլով, զոր Հայք բաղում առասպելս տողեն ի Մասիք լ[ե]առն շղթայիւք պարաւանդեալ[68]։

Եւ թագաւորեաց Տիրան եղբայր նորա ամս ԻԱ (21). սա մեռաւ ի բքոյ ձեան[69]։

Եւ թագաւորեաց Տիգրան եղբայր սորա ամս ԽԲ (42)։

Եւ թագաւորեաց Վաղարշ որդի Տիգրանայ ամս Ի (20)։ Սա պարսպեաց դաւանն Վարդգէս ի վերա Քասախ գետոյ և անուանեաց Վաղարշապատ և փոխեաց ի նայ զարքունիս[70]։

Եւ թագաւորեաց Խոսրով որդի նորա ամս ԽԸ (48)։ Սա անցեալ զլեառն մեծ Կովկաս ի վերա Խազրաց, զի զհայր նորա Վաղարշ նոքա սպանեալ էին և առեալ զվրէժն բիւրապատիկ և հնազանդեալ զնոսա առնու պատանդս և դառնայ[71]։ Ի ԻԹ (29) ամին սորա սպան Արտաշիր Սահրացի զԱրտաւան Պարսից թագաւորն Արշակունի և լուեալ Խոսրով խնդրեալ զօր ի Փիլիպոսէ կայսերէ Հռոմայեցոց։ Եւ գնաց ՝ի վերա Արտաշրի որդոյն Սասանայ և փախոյց զնայ մինչև ի Հնդիկս և թափեաց ի նմանէ զՄիջագետս, զԱսորեստան և զայլ արքանիստ աշխարհն[72]։ Եւ յոյժ նեղեալ Արտաշիր ի Խոսրովայ կոչէ զամենայն նախարարս իւր, աղաչէ զնոսա, եթէ ոք կարասցէ թափել զնա ի ձեռաց Խոսրովու, եթէ հնարիւք դեղոց կամ խողխողմամբ սրոյ, երկրորդ իւր լինել և տացէ նմա զԲահլ քաղաք։ Յառաջ կացեալ Անակ, որ ի Սուր[են]եանն Պալհաւէ խոստանա առնել զհրամայեալն յԱրտաշրէ և իբր հատուածի պատճառաւ գա յաշխարհս Հայոց տամբ և ընտանեաւք հասանէ յԱրտազ գաւառի և պնդեալ զօրացն Արտաշրի զհետ նորա կամօքն Անակայ, զի իբրաւացուցէ զփախչելն։ Եւ Խոսրով զօր առաքեաց թափեաց զնա ոչ գիտելով զնենգ[ութիւն] նորա։ Եւ աստ յԱրտազ գաւառի պատահէ նմա օթևանս առնել մօտ առ դուրս ի ներքսագոյն սրբս || կապարի ծԴէ խորանի դամբարանի սուրբ առաքելոյն Թադէոսի. և անդ, ասի,

1 Ա լիառն։ 2 Ա Բօսաղաղ։ 4 Ա կային փխ. կէյին, սայ ամենայն, Բ սահման։ 5 Ա դրոշմելով զանուն, Բ վարեաց փխ. վճարեաց։ 7 Ա աւուր։ 8 Բ ի [խելաց] չիք։ 9 Ա գետ, եղեալ չիք։ 10 Բ տողէն, Ա լիառն։ 13 Բ բքո, Ա ձիան։ 14 Ա և թագաւորեաց Տիգրան եղբայր սորա ամս ԽԲ չիք։ 17 Ա զարքունիսն։ 19 Ա լիառն։ 20 Ա վրէժն։ 21 Բ պադանդս, դառնա։ 22 Ա զԱրտաւ։ 23 Ա Խոսրովու։ 24 Ա Հռովմայեցոյ, Արտաշէսի, Բ որդւոյն։ 25 Բ զնա, Ա Խնդիկս։ 26 Ա արքայանիստ։ 27 Բ նեղեցաւ։ 29 Ա սրրոյ։ 30 Ա զԲալհ։ 31 Ա Սուրեան։ 32 Բ և (իբր) չիք, իբրև, Ա հատուածի, զայ աշխարհս։ 33 Ա ռամբք և ընդանեօք։ 35 Ա զփաղչիլն։

*յղանալ մօրն սրբոյն Գրիգորի, ի Ցանակայ, անուն նորա Ոգոհի, որ յետոյ ժառանգեաց զվիճակն նորին։ Եւ գնացեալ Անակ սիրով առ Խոսրով թագաւոր և նա մեծարեաց որպէս զազգային իւր, զոր յետ Բ (2) ամաց յերրորդում յիշեաց զգաւ ուխտին, որ առ Արտաշիր, ոպան զԽոսրով յորո նետիւ[73]. և մինչ յոգւոյ էր հրամայեաց կոտորել ընտանիսն Անակայ միայն շնորհօքն Աստուծոյ և աղօթիւք առաքելոյն Թադէոսի մնաց պատանի մի Գրիգոր անուն, առեալ դայեակ նորա Սոփի, ազգաւ Հոռոմ, քոյր Եւթաղեայ, փախոյց գաղտ ի Կեսարիայ և մկրտեալ ի Քրիստոս կոչեցաւ Գրիգոր[74]։ Այլ Արտաշիր Պարսից թագաւոր իբրև լուաւ զսպանումն Խոսրովայ վաղվաղակի դիմէ յաշխարհն Հայոց և միահեծան տիրեաց Պարսից և Հայոց ամս ԻԶ (26)։ Եւ գիտելի է, զի Անակ յորժամ եկն ի Հայս, մնաց որդի մի նորա ի Պարս, Սուրէն անուն և նստաւ առ հօրաքեռն իւր Խոսրովուհի և զարդացեալ չոգաւ յերկիրն Ճենաց և Դարբանդաց և թագաւորեաց ի վերա նոցա։ Այս Խոսրովուհի, քոյր Անակայ, կին էր Տիրանայ որդոյ Ջուաշիրի արքային Հեփթաղաց, ուստի լեալ ի նմանէ Բ (2) որդիս Ջգօն անուն, որ է Ցակոր և Հրաչէ։ Եւ յետ ինչ ամաց զհայր սոցա Տիրան սպան զթագաւորն Լփնաց Առիդէս անուն և տիրեաց երկրին։ Եւ Ցակոր որ և Ջգօն և Հրչէ եղբայր նորա ի մեռանել ծնօղացն եկին յերկիրն Գթաց և ի բարի պատահմանէն թագաւորեաց Հրչէ ի վերա Գթաց։ Եւ սա էր, որ եկն ի վերա Դիոկղետիանոսի և Տրդատ որդի Խոսրովայ, ուր սնեալն՝էր ի Կեսարիայ առ Լիկիանոս կեսառոս Դիոկղետիանոսի. սա ած ընա կենդանի առաջի նորա և զայլ քաջութիւնսն պատմեաց Լիկանէս առաջի արքային։ Եւ նա թագաւորեցոյց զՏրդատ ի տեղի հօր իւրոյ։ Բայց Ցակոր յետ ինչ ամաց մկրտի հաւատացեալ ի Քրիստոս և սիրեաց զվարս միակեցութեան առ Մարոդէ կրթեալ և յետոյ եղև եպիսկոպոս Մծբին քաղաքին։ Այլ ոմանք զՀրչէ քւեր որդի ասեն Ցակոբայ անուն, մօր նորա Ակդէն[75] և ոմանք եղբայր որպէս ասացաք։ Այլ մեք դարձցուք ուստի թողաքն. յետ սպանման Խոսրովա ի Ցանակայ տիրեաց Արտաշիր Հայոց ամս ԻԶ (26)։ Ցայսմ ժամանակի եկեալ Բառլահաս ոմն յԱլանաց և նահատակեաց զսուրբն Սուքիաս ընկերօքն, որ կային ցարդ ևս կենդանի, որպէս ասէ Ցովհաննէս պատմագիրն[76],*

|| Վասն թագաւորելոյն Տրդատայ ի վերա Հայոց ի Դիոկղետիանոսէ։ *ԺՂԸ*

*Եւ թագաւորեաց Տրդատ ԾԵ (55), յերկրորդ ամին Դիոկղե-*

1 А *Ոգուհի։* 2 А *զվիճակ նորա, Անակ* չիք։ 3 А *զնա,* Б *զազգաին։* 4 А *իւր* չիք, Б *յերրորդումն։* 5 А *ի յորս,* Б *հոգւոյն։* 6 А *զնդանիսն։* 9 А *Կեսարիա։* 11 АБ *յիմէ* փխ. *դիմէ։* 13 Б *զի* չիք, *զԱնակ։* А *նորա* չիք։ 14 А *սնաւ* փխ. *նստաւ, իւրում Հոսրովուհի։* 16 А *քոյրն։* 17 Б *որդւոյ։* 19 Б *թագաւորն։* 20 Б *երկիրն։* 21 Б *եկն։* 23 А *Խոսրովու, որ* փխ. *ուր։* 24 А *Կեսարիա։* 26 А *արքային։* 27 А *մկըրտի։* 28 А *վարս, Մարուղէ ճգնաւոր։* 29 А *քաղաքի։* 30 А *քուեր։* 31 А *և ոմանք եղբայր որպէս ասացաք* չիք։ 35 А *Ցօհանէս։* 37 Б *Տրդատա։* 39 Б *Տրդաա ի վերայ Հայոց ամս ԾԵ, երկրորդ։*

ախանոսի և յառաջին ամին Շապհոյ Պարսից արքային։ Եւ յառաջին ամի թագաւորութեան իւրոյ եկն Ցեկեղեաց գաւառն ղոհս մատուցանել իգական պատկերին Անահտայ՝ կնոջն Արմազդայ, որում ստիպեալ զսուրբն Գրիգորիոս ոստո թաւոյ մատուցանել և յոչ հաւանել սրբոյն չարչարեաց զնա ԲԺ (12)-ան կտտանօք մինչև լուաւ ի Տաճատայ Ամատունոյ, որ էր այր քեռ Արտաւազդայ Մանդակունոյ, թէ սա որդի է Անակա մահապարտի, վասն որո չէ պարտ դմայ կեցոյ և կամ զարև տեսանելոյ։ Եւ արկին զնա ի Խոր Վիրապն յԱրտաշատ քաղաքի ի մէջ օձիցն թունաւորաց ամս ԵԺ (15)-ան[17]։ Զի սուրբն Գրիգորիոս սնեալ ի Կեսարիայ և Սոփի կին, Բուրդարա Պարսկի և քոյր Եւթաղեա, դայեակ որբոյն, ամուսնացոյց զնա ի դուստրն Դաւթի՝ Մարիամ անուն, ուստի ծնաւ Բ (2) որդիս՝ զՎրդանէս և զԱրիստակէս։ Եւ հրաժարեալ յամուսնոյն զինուորեցաւ Տրդատայ, հարիւրապետին Լիկիանոսի, զի զպարտս հօրն վճարեսցէ, զի լուեալ էր զանցս աղէտիցն ի դայեկէն իւրմէ և կամ թէ աստուածային իմն գոգցես աեռչութեամբ լինել լուսատու խաւարեալ ազգիս Հայոց[18]։

Եւ ի յայսմ ամի Մամգոն ոմն ի Ճենաց եկն առ Տրդատ։ Այս Մամգոն և Բղդոյ Բ (2) եղբայք թագաւորազինք Ճենաց աշխարհին հակառակէին ընդ միմիանս, զի Բղդոյ դայեակ էր թագաւորին Ճենաց Արբուկայ։ Եւ Մամգոն առնուլ կամէր զպատիւն և Բղդոյ իմացեալ զնախանձ եղբօրն մատնեաց զնա քսութեամբ առ թագաւորն Արբոկ, թէ կամի Մամգոն, եղբայրն իմ, սպանանել զքեզ։ Եւ Մամգոն փախեաւ և եկն ի Պարս առ Արտաշիր։ Եւ լուեալ Արբոկայ թագաւորին Ճենաց և բարկացաւ և յարուցին պատերազմ ընդ միմեանս և մինչ յայսմ էին մեռաւ Արտաշիր ե թագաւորեաց Շապուհ որդին. և ոչ կարաց պահել զՄամգոն, այլ առաքեաց ի Հայս առ գործակալս իւր գրելով առ Արբոկ թագաւորն Ճենաց. թէ «Մի լիցի պատերազմ ընդ իս և ընդ քո, զի զՄամգոն երդուեալ էր հայրն իմ յարեգակն ոչ տալ զնա ի ձեռս քո, այլ ես աքսորեցի զնա յեզերս աշխարհին Հայոց, որ հաւասար է նմա մահու»։ Եւ մինչ եկն Մամգոն հանդիպեալ Տրդատայ յայ || նմ աւուրսն թագաւորեալ և ոչ կամեցաւ ժԳԹ տնալ ընդ գործակալսն Շապհոյ, որ փախեան ի Տրդատա այլ ամենայն ախիւն իւրով յարեցաւ ի Տրդատ[19]։ Եւ իշխանն Տարօնոյ նահապետն Սղկունեաց, որ նստէր յամուրն Ողկան, ապստամբեալ ի Տրդատա օգնական առնելով զՏարօն և զԱսաուն միտելով զհետ Շապհոյ։ Եւ Տրդատ արքայ ասէ Մամգոնայ. «Հնարեա սպանանել զնա դեղովք կամ զինուք, տաց զտեղի նորա քեզ»։

2 А իւրոյ չիք, գաւառ։ 3 А Անահտայ չիք։ 5 Б ոչ, А հաւանելն, զնայ։ 7 Б Մանդակունւոյ, А սայ է որդի։ 8 А և (կամ) չիք։ 9 А Վիրապըն Արաաշաա, օձից։ 10 Б Գր[իգ]որիոս։ 11 А Բուրդարայ, Б Պարսիկի։ 12 А զնա չիք։ 15 А էր չիք։ 19 Б եղբարք, А թագաւորազին։ 20 Б միմեանս։ 21 А Արբոկայ։ 22 Б Բղդո փխ. Բրդոյ, զնախանձն եղբօր։ 26 Б միմիեանս։ 29 Б թագաւոր։ 30 А քեզ փխ. քո, զի չիք, А արեկակն։ 31 А քոյ, այլ չիք, Б հեզր։ 32 А նմայ։ 33 А յայն աւուրս։ 34 Б Շապոհ։ 35 Б աղխիւն։ 36 А Սըլկունեաց, ամուրն։ 39 Б դեղօք, А զտեղին։

Եւ նա եկեալ իբր զբարեկամ Շապհոյ և նա ընկալաւ զնա յամուրն. և յետ սակաւուց գտեալ դիպող ժամ սպանանէ զնա ներքև յորս և կալեալ զամուրն. և թագաւորն Տրդատ տայ զնահապետութիւնն Տարօնո Մամգոնայ, ուստի Մամիկոնէից ազգն[80]։

Եւ յևթուտասան ամին Տրդատայ Նստի յաթոռ սուրբ Առաքելոյն մեծն Գրիգորիոս, յետ անտանելի չարչարանաց ելեալ ի Վիրապէն։ Եւ ամփոփեալ զնշխարս սրբոց Հռիփսիմեանցն յետ Թ (9) աւուրն նահատակութեան նոցա ի նոյն արքայէն Տրդատա։ Եւ յետ բժշկելոյ խողացեալ արքային և դիւաբախ զօրացն երթեալ սուրբն Գրիգորիոս ի Կեսարիայ բազում զօրօք առ Ղևոնդիոս պատրիարգն և ձեռնադրեալ ի նմանէ հայրապետ Հայոց։ Եւ տուեալ նմա պարգևք զնշխարս սուրբ Կարապետին և զԱթանագինեայ եպիսկոպոսին, որ էր անեւ իւր։ Եւ եկեալ պերճ փառօք, որպէս վայել էր նմա։ Ընդառաջ նորա գնաց մեծն Տրդատ Գ (3) օրեա ճանապարհ յափն Եփրատայ առ ստորոտով Նպատ լերինն, որ է այժմ Աբաղայ. և մկրտեաց զթագաւորն Տրդատ և անուանեաց Յովաննէս և ԳՃՌ (300000) այր ի զօրաց, և պատարագեալ ի խորանն վրանին, որ յափն գետոյն և հաղորդեալ կենաբար հացիւն և անմահական բաժակաւն։ Եւ ի Ի (20) ամին Տրդատայ շինեաց Լուսաւորիչն մեր զսուրբ Կարապետն ի տեղի Գեմետրեա և Գիսանա դիցն[81]։ Եւ ի սոյն ամի թագաւորեաց մեծն Կոստանդիանոս Սպանիացին և հաւատաց ի Քրիստոս ի ձեռն Սեղբեստրոսի Հռոմայ հայրապետի, զոր լուեալ Տրդատայ ի սրբոյն Գրիգորի գնացին ի Հռոմ ի տեսութիւն նորա ՀՌ (70000) հեծելով և յոյժ բերկրեցան Կոստանդիանոս և Տրդատ, Գրիգորիոս և Սեղբեստրոս։ Եւ պատմեցին իրերաց զդարձն իւրեանց և բազում պաղատանօք հայցեն զսուրբն Գրիգորիոս մատուցանել պատարագ, զոր ակներև ամենեցուն տեսին զհոգին սուրբ աղաւնոյ նման իջեալ ի սուրբ սեղանն և Բ (2) թագաւորքն ևս առաւել բորբոքեցան || ի սէրն Քրիստոսի և ադոն ի Մ ներքոյ ծիրանեացն քուրձ և կային որպէս զանմարմին ուսեալք ի սրբոց հայրապետացն և դաշինս գրեցին ահաւոր բաժակաւ միարան լինել երկուց ազգաց և կնքեաց գրով մեծն Կոստանդիանոս և սուրբ հայրապետն Սեղբեստրոս՝ տալ Հայոց Երուսաղէմ զԳողգոթայ և զսուրբ Յակոբ և տեղի մի պատարագի ի սնարս սուրբ Յարութեան և կախեալ կանթեղ մի ի վերա սուրբ գերեզմանին և խնդրեալ յԱստուծոյ. յետոյ ճլ լոյս ի սուրբ գերեզմանէն և լուսաւորեաց զկանթեղ սուրբ Լուսաւորչին մինչև ցայսօր ժամանակիս։ Զայս ամենայն հրաման ընկալաւ և ետ իշխանութիւն հայրապետութեան ինքնագլուխ որպէս և աթոռա-

1 A բարեկամ։ 2 A սակաւուց աւուրց, Б ըսպանանէ։ 3 A նեաիւ հարեալ։ 4 Б Տարոնոյ։ 5 Б յեօթուտասան, A առաքելոյն Թախէոսի։ 8 A աւուր։ 9 A բժբշկելո։։ 10 Б զօրաւք։ 12 A զԱթանագինա, Б և չիք։ 16 A մկըրտեաց, անուանեաց զնա։ 18 A խորան։ 20 Б մեր չիք։ 21 A Գիսանեայ։ 23 Б Հռովմայ, A հայրապետին։ 26 A և Գրիգորիոս։ 27 A իւրեանց և բազում չիք։ 29 Б աղաւնւոյ, A սեղան։ 30 Б առաւել չիք, AБ աջանէին։ 32 A բաժակաւն։ 33 Б Բ փխ. երկուց, A գրով։ 36 A խորանս փխ. ի սնարս։

կալին Պետրոսի և Պօղոսի, և տան մասն ինչ ի նշխարաց գլխա-ւոր առաքելոցն և զահեակ ձեռն Անդրէի առաքելոյն և մասն ինչ ի Ղուկասու Աւետարանչէն[82]։ Եւ եկեալք մեծաւ ցնծութեամբ շի-նեցին ի Տարօն զսուրբ Առաքելսն և եդին անդ զասացեալ նշ-խարսն։

Եւ մինչ եկին ի Հռոմայ, զօրքն Շապհոյ ասպատակեալ էին ի Հայս ատ և անդ և ի Տփխիս և ի Տաշիրս։ Եւ մեծն Տրդատ իւրովի մղէր զպատերազմ։ Եւ ձայն արկեալ առ մեծն Կոստան-դիանոս և նա առաքեաց զօր բազում ի վերա Պարսից, և նեղեաց զնա, և Շապուհ խնդրեաց զխաղաղութիւնն ի Կոստանդիանոսէ. և հաւանեալք հաշտեցան ոչ ևս նեղել զՀայաստան։ Եւ հայցեալ մեծն Կոստանդիանոս ի Շապհոյ զԹագն Դաւթի մարգարէի, զոր առ Ցովար ի տանէ Ամոնայ, որ ի Ղովտայ, ի գլխոյ Մեդքոմայ, և եդ ի գլուխն Դաւթի, որ մնաց մինչ ի Սեդեկիայ, զոր դիրեալ Նաբուգոդոնոսոր և ապա ի Կիւրոս մինչ ի Դարեհ վերջին, զոր սպան Աղէքսանդր, որով պսակեցան Մակեդոնացիքն մինչև Ցան-տիոք, զոր սպան Արշակ Պարթեւն և առ զԹագն մինչև Ցարտա-ւան, զոր սպան Արտաշիր Ստհրացի, և նա ետ յորդին իւր ի Շապուհ, զոր խնդրեաց սուրբն Կոստանդիանոս իբր, թէ օրինակ արասցէ. և յորժամ արարն, խնդրեաց յԱստուծոյ, զի Դաւթին առ ՝ինքն մնասցէ և եդ զերկու Թագսն ի մի տեղի և ծառայք Շապհոյ առին զնոր շինեալն և գնացին և մնաց հինն առ Կոս-տանդիանոս։ Եւ յայսմ ժամանակի շինեաց Տրդատ դշինեած ամ-րոցին Գառնոյ սքանչելի դրօշւածով յանուն քեռն իւրոյ Խոս-րովիդխտոյ[83]։

Ցայսմ ժամանակի եղև ժողովն ի Նիկիայ ընդդէմ Արիոսի Աղէքսանդրացոյն չարափառի աւազ երիցու, որ իշխեաց ասել, զորդին Աստուծոյ արարած, դրդեալ նա ի սատանայէ։ Եւ սուրբն Կոստանդիանոս հրաւիրակ առաքեաց առ Լուսաւոր || իչն մեր և ՄԱ նա ոչ կամեցաւ գնալ, զի մի առաւել փառաւորեսցի, այլ զՄրսար որդին իւր զԱրիստակէս և զհօրաքեռ որդին իւր զսուրբն Ցուկոբ առաքեաց ի Կեսարիա առ արքեպիսկոպոսապետն Ղևոնդիոս, զի նովաւ հանդերձ գնասցեն ի Կոսաանդ[ն]ուպօլիս։ Եւ գնացեալք ի միասին և դարձան մեծաւ ուրախութեամբ և խնդութեամբ ուղղափառ կանոնաւ, զոր ընկալեալ սուրբն Գրիգորիոս կնքեաց իւրով բանիւ՝[84] Բսկ մեք փառաւորեսց[ուք]։ Եւ խրատեն զսուրբն Գրիգոր, Անտօն և Կրօնիդէս և սուրբ հայրապետն Ցակոբ և ասեն. «Ծածկեա զքեզ ի մարդկանէ ի ծերութեանդ, զի մի առաւել փա-ռաւորեսցիս և զոսկերս քո պաշտեսցեն ճիւղաբարոյ ազգն Հա-յոց»։ Եւ սուրբն պաշտեալ զաթոռ հայրապետութեան ամս Լ (30)

1 A Պօղոսի, գլխաւոր չիք։ 6 Б եկն, A էին չիք։ 7 A և (ի Տփխիս) չիք։ 9 A առա-քեալ։ 12 A մարգարէին։ 13 A Ամօնա։ 14 A մինչև։ 15 A մինչև։ 16 A Մակեդանացիք։ 17 Б առ չիք։ 18 A որ փխ. և, ի որդին։ 19 A ի (Շապուհ) չիք, մեծն փխ. սուրբն։ 21 A զերկուս, ծառայքն։ 24 A քեռ։ 26 A ի (Նիկիայ) չիք։ 27 A Աղէքսանդրացւոյն, աւաք։ 29 Б լուսաւորիչ։ 30 A նայ, կրսեր։ 31 A իւր չիք։ 32 Б արքեպիսկոպոսն։ 34 A ի միա-սին չիք, ուրախութեամբ և չիք։ 36 A փառաւորութեան։ 39 A քոյ։ 40 A սուրբն չիք։

ձեռնադրեալ աւելի քան զՆ (400) եպիսկոպոս և այնուհետև անյայտ եղև բաղում ժամանակս կեցեալ ի Մանեա սուրբ կուսի այրն բնակելով և հանգեաւ ի Քրիստոս անգիտելի մարդկան։ Եւ հովուաց ոմանց գտեալ կանգուն վախճանեալ ի փորուած գխյ ծառոյ, կարկառս քարանց կուտեցին ընդդէմ նորա, ոչ գիտելով թէ ով ոք է նա, վայել էր իսկ որք Փրկչին մերոյ ծնընդեանն խորհրդածուք լինէին, լինել և աշակերտին յուղարկմանն սպասաւորք[86]։ Զոր տեսեալ մեծին Տրդատայ առաքեաց զսուրբն Արիստակէս ի Կեսարիա ձեռնադրել հայրապետ ի ԽԷ (47) ամի արքայութեանն իւրոյ ըստ յառաջագոյն խրատու սուրբ Լուսաւորչին։ Եւ ինքն Տրդատ նոյն վարուց փափագեալ Ը (8) օրեայ մի անգամ ճաշակէր և յաւուրս քառասնորդաց անսուաղ անցուցանէր, զի թէպէտ յետ այնորիկ եկաց ամս Ը (8), այլ յարաժամ լեառնակեցիկ լինէր ըստ նմանութեան Անառնի։ Եւ ի ԾԴ (54), ամի Տրդատայ խողխողեցաւ սուրբն Արիստակէս յԱրքեղայոսէ իշխանէ Չորրորդ Հայոց, ի Ծոփաց գաւառի ի Զմշկածակ. և բարձեալ զնշխարեալ մարմին նորա աշակերտացն և տարեալ եդին ի Թիլն աւանի Եկեղեաց գաւառի, որ եկաց հայրապետ ամս Է (7)[86]։

Եւ յաջորդեաց զտեղին աւագ որդին մեծին Գրիգորի սուրբն Վրդանէս, ի ԾԴ (54) ամին Տրդատայ[87] ձեռնադրեալ ի Կեսարիայ, ամս ԺԵ (15). և ի ԾԵ (55) ամին Տրդատայ տան նմա դեղ, որպէս կատաղեալ Հրէայքն կենարարին զլեղին և ոչ մեռանելն նետիւ ի յորս դողամիտ և պղծասէր իշխանքն տան դեղ մահու և շիջուցին յինքեանց զջահն մեծաբորբոք և խաւարեցան ինքեանք[88]։ Եւ ժողովեալ նախարարացն առ մեծն Վրդանէս թախանձանաց գրեն թուղթ առ Կոստանդիանոս որդի մեծին Կոստանդիանո || սի և նա լուեալ աղաչանաց նոցա առաքեաց թագ ՄԲ և ծիրանի ի ձեռն Անտիոքոսի զօրագլխին իւրոյ և թագաւորեցոյց զԽոսրով որդի Տրդատայ ամս Թ (9)[89]։ Սա յոյժ կարճ հասակաւ ոչ ինչ արութիւն ցուցեալ, այլ միայն շինեաց զԴուին քաղաք առ ստորոտով լերինն Գեղամայ և անդ փոխեաց զարքունիս, վասն դառնաշունչ օդոյ փչմանն և տնկեաց անտառս և մայրիս և մեռաւ[90]։

Եւ թագաւորեաց Տիրան որդի Խոսրովայ ամս ԺԳ (13) կամակցութեամբ մեծին Վրդանայ ի Կոստանդիանոսէ և սա ես վատթար ամենայն գարշութեամբ։ Ցերրորդ ամի սորա փոխի ի Քրիստոս մեծն Վրդանէս և եդաւ ի Թորդան ընդ եղբօրն, որ առյապա և նշխարք սրբոյն Գրիգորի[91]։

Եւ ժողովեալ նախարարացն առ Տիրան և առաքեն զսուրբն

1 A ԴՃ։ 3 Б յայրսն։ 4 A հովվուց, ոմանց չիք։ 6 A նայ։ 9 A ի (ԽԷ) չիք։ 10 A արքայութեան, առաջագոյն։ 11 Б վարոց։ 14 A լեռնակեցիկ, Б Անտօնի։ 16 A Զմբշկածակ։ 20 A աւագ, Б մեծի։ 22 Б կեցեալ հայրապետ ամս ԺԷ փխ. ամս ԺԵ, ի չիք, A նմայ։ 23 Б յոչ։ 25 A ինքեանք։ 27 A թուղթ գրեն, Б Կոստանդինոս, A որդին։ 28 Б Կոստաղանոսի, A նոցա չիք։ 29 A զօրավարին։ 30 A սայ։ 32 Б Գեղամա, A փոճեաց։ 40 A Խոսրովու։ 42 A սորայ։

Յուսիկ, որդին Վրթանայ, ի Կեսարիա և ձեռնադրեն կաթողիկոս, որ եկաց ամս Զ (6)[92]։ Ընդ այն ժամանակս թագաւորեաց ուրացողն Քրիստոսի, պիղծն Յուլիանոս և հնազանդեալ զամենայն թագաւորս, ընդ որ յոյժ զարհուրեալ Տիրանայ դնաց առ նա Յասորիս և նա խնդրեաց պատանդս։ Եւ Տիրան ետ զՏրդատ որդին իւր կնաւ և որդովն Գնէլաւ և զՏիրիթ, որդի Արտաշէսի մեռելոյն որդոյն և արձակեալ զՏիրան փառօք պիղծն Յուլիանոս և տա նմա զպատկերն իւր նկարեալ ընդ դիւաց, զոր բերեալ Տիրան ագիտաբար կանգնեաց յեկեղեցոջն ի Ծոփաց գաւառին, զոր հանդիպեալ անդ սուրբ հայրապետն Յուսիկ ընկէց զպատկերն յերկիր և ոտիւքն կոխեալ մանրեաց առաջի ծառայիցն Յուլ[ի]անոսի, զոր իբրև ետես Տիրան, ասաց. «Գանել զնա ստուար վարուցօք». մինչ ի գանելն աւանդեաց զսուրբ հոգին և տարան եդին ընդ հարս իւր։ Եւ բերին զԴանիէլ ծերունին, որ էր աշակերտ սրբոյն Գրիգորի, զի նստուցանեն յաթոռն և նա դէմ յանդիման նզովեաց զՏիրան. և Տիրան ետ զնա խեղդամահ առնել[93]։

Եւ յաջորդէ զաթոռն Փառներսեհ յԱշտիշատոյ ամս Դ (4), ոչ ի նոյն ազգէ, զի որդիքն Յուսկայ Պապ և Աթանագինէ անարժան գործովք լեալք, ի միում աւուր երկոքին շանթահար լեալք յԱշտիշատ, թողեալ փոքր պատանի մի որդի Աթանագինէի, որ էր ի Կեսարիայ ի վարժ ուսման[94]։

Եւ յայսմ ամի Շապուհ նահատակեաց զսուրբն Սարգիս և զՄարտիրոս որդի նորա[95]։ Եւ կոչեաց Շապուհ զՏիրան խարկանօք և խաւարեցոյց զԲ (2) ակն նորա, փոխանակ Բ (2) լուսաւոր հայրապետացն՝ որ սպան[96]։ Եւ Վըրամշապուհ խաւարեցոյց զնա ի քութենէ Փի || սկայ, վասն ձիոյ միոյ, ուստի եղև անթիւ- ՄԳ
արին, զի Հռոմայեցիքն ընդ Հայոց էին և յաղթեցին Պարսից, զայն իբրև ետես Շապուհ, և ոմանք ասեն Ներսեհ, զանցս աղէտից վաղվաղակի թագաւորեցուցանէ զԱրշակ[97]։

Եւ թագաւորեաց Արշակ ամս Լ (30). սա որդի Տիրանայ, թագաւորեաց ի Պարս և հանդերձ Տիրանաւ առաքէ ի Հայս[98]։ Սա, ի Գ (3) ամին իւրոյ, առաքէ զՆերսէս որդի Աթանագինէի ի Կեսարիայ առ արքեպիսկոպոսապետն Եւսեբի, զի ձեռնադրեսցէ զնա հայրապետ. և ի ժամ օծմանն եղև ահագին հրաշք, զի հոգին սուրբ էջ յերկնից աղաւնոյ նման ի վերա գլխոյն Ներսէսի և ապա ի վերա Բարսղի[99]։

Եւ եկեալ սուրբն Ներսէս պերճ փառօք նստաւ յաթոռ հայրապետական ամս ԼԴ (34), նման սրբոյն Գրիգորի. և զամենայն սահմանս բարեձևութեան, զոր արար ուսցիս ի կատարեալ պատմագրաց[100]։ Եւ Արշակ նշկահեաց զարքայն Հռովմայեցւոց Վաղէս։

3 А յուրացողն Քրիստոսի զպիղծն։ 4 А Տիրանայ չիք։ 5 А պատանդն, զորդին։ 6 А զՏրիթ։ 7 Б որդոյ։ 10 Б զո[ր]։ 11 Б Յոլիանոսի։ 13 А վարոցովք։ 16 Б զի Տիրան փխ. զՏիրան, А Տիրան չիք։ 18 Б որ փխ. ոչ։ 20 А լինալք յԱշտիշատ ի միում։ 21 Б վարժս։ 23 Б որդին, խարանօք։ 24 А լուսաւոր չիք։ 25 А Վարազշապուհ փխ. Վրամշապուհ։ 26 Б Փիսակայ։ 23 А աղէտիցն։ 32 А սա երեք ամին 33 Б Կեսարիա, А արքեպիսկոպոսն. 35 А աղաւնանման։ 37 А յաթոռն։ 40 А Հռովմայեցոց։

Եւ Վաղէս գրեաց թուղթ աղաչանաց առ Արշակ ոչ խախտել զեղեալ պաշխնքն առաջնոց, իսկ նա գոռոզութեամբ արհամարհեաց զնա[101]։ Եւ ցասեաւ Վաղէս կայսրն կոչէ առ ինքն զԹէոդոս զօրագլուխն իւր և անհամար զօրս կուտեաց առ նմայ հրաման տայր քանդել զաշխարհս Հայոց և բերել ի հիմանց։ Զարհուրեալ յոյժ Արշակայ ի մեծէն Թէոդոսէ զօրաւարէ, առաքեաց ընդառաջ նորա զսուրբ հայրապետն Ներսէս առնել հաշտութիւնն։ Եւ նա գնաց մեծաւ թախանձմամբ աղերսեալ զԹէոդոս։ Եւ ետ զանցեալ ամաց հարկն լիով։ Եւ բարեցապարտն և հեզն յամենայնի Թէոդոս լուեալ սուրբ հայրապետին և արար հաշտութիւն[102]։ Եւ գնաց սուրբ հայրապետն ընդ Թէոդոսի առ Վաղէնտիանոս և ի հանդարտութիւն շրջեաց զկայսրն։ Եւ նա զպատանդսն արձակէ ընդ նմա զԳնէլ որդի Տրդատայ։ Զայս Տրդատ ի բարկութեան ժամու սպան կայսրն, վասն այսորիկ զԳնէլ, որդի նորա առաւել շքեղացոյց, արծաթ և ոսկի բազում ետ նմա, և տայ նմա զպատիւ հիւպատո[ս]ութեան. ընդ նմին և զծիրիթ արձակէ ընդ սրբոյն Ներսէսի և կոյս մի Ոլոմպիա, զքոյր իւր տայ Արշակայ ի կնութիւն[103]։ Եւ մեծաւ փառօք եկին առ Արշակ։ Եւ Գնէլ առ կին զՓառանձեմ դուստր Անդովկայ Սիւնեաց իշխանի և օրըստօրէ յառաջանայր։ Եւ Տրիթ նախանձեալ ընդ փառս նորա, քսեաց զնա առ Արշակ, թէ «Կամի ապստամբել ի քէն, տես, զի զմիտս ամենայն նախարարացն առ ինքն յան || կուցեալ է»։ Եւ տա ՄԴ առատապէս զսկի և Արշակ էհան զնա յԱյրարատէ տամբն իւրով և առաքեաց Յաղխովկտ ըստ առաջին սովորութեան զանդրանիկն պահել յԱյրարատ վասն թագին, և զայլսն ի Հաշտէնս և ի Յաղխովկտ, որպէս և զԳնէլ։ Եւ կուրացեալն Տիրան իբրև լուաւ, բարկացաւ որդոյն Արշակայ և անէծ զնա և Արշակ ետ խեղդել զՏիրան և առան վրէժք սրբոյն Յուսկա հայրապետին և Դանիէլի եպիսկոպոսին[104]։ Եւ յորժամ եկն Գնէլ ի կողմանս Աղիովտայ ոչ դադարէր Տրիթ ի չարախօսելոյ զնա։ Եւ Արշակ որսոյ աղագաւ անդ դնացեալ և նետիւ սպանին զնա իբր ի չըքմեղս եղեալ։ Եւ ի լալ Փառանձեմա ի վերա առն իւրոյ[105], տեսեալ Արշակա և տռպացաւ նմա և առ զնա։ Ոմանք ի պատմագրացն, որպէս Բիւզանդ, ասեն՝ Տիրիթ վասն գեղեցկութեան Փառանձեմա ետ սպանանել Արշակայ ի խորան վրանին, աղաչելով սրբոյն Ներսէսի և ոչ լուեալ[106]. և Մովսէս Խորենացին այսպէս, որպէս յառաջ գրեցաք, սպանեալ նետիւ ի ստորոտ Նպատ լերինն, որ է Աբաղայ։ Եւ եղե Փառանձեմ կին Արշակայ։ Եւ նա ոչ հաւանէր մտօք նորա,

3 A Վաղէս չիք։ 4 A և չիք, Б ընդ փխ. առ։ 6 A առաքէ։ 7 Б հաշտութիւն։ 9 Б հարկսն, բարեցեպարարն, A ամենայնի։ 13 A նմայ, որդին։ 14 A առաւէլ չիք, շքացոյց։ 15 Б ե արծաթ, A պատիւ։ 16 A զՏրիթ։ 17 Б Ոլոնտիոս, A տա։ 20 Б Տիրիթ, A ընդ չիք, զփառս։ 23 Б ոսկի, A Արշակ չիք, յԱրարատէ տամբ։ 25 Б թագի, զայլն, A Խաշտէնս։ 26 ե (զԳնէլ) չիք։ 27 A զնայ։ 28 Б հայրապետ։ 29 A Յաղխղովտայ։ 30 Б Տիրիթ։ 31 Б ան[դ]։ 32 A Փառանձէմայ, և (տռփացաւ) չիք։ 33 Б և ոմանք, A պատմաղրաց, Բուզանդ։ 34 A Տրիթ։ 35 A խօրան։ 36 A Խորենացի, յառաջ գրեցաք։ 37 A ի (ստորոտ) չիք, Б Արագա։

զի Թաւամարմին էր, Արշակ սիրէր զՈլոմպիայ։ Եւ Նախանձեալ Փառանձիմայ բան եդ ընդ դրան երիցուն Մրջըմնիկ անուն և նա խառնեաց զմահադեղն ընդ փրկական խորհրդոյն և ետ Ոլոմպիայ և ելոյծ ի կենաց[107]։ Եւ լու եղև առ Վաղէս, զի նշկահեաց Արշակ ի եսպան՝ զքոյրն իւր, բարկացաւ և կամէր ելանել ծանր ամբոխիւ ի Հայս։ Եւ լուեալ Արշակայ մեծաւ պաղատանօք աղաչէ զսուրբն Ներսէս ոչ Թողուլ զվիճակն իւր, գնալ շիջուցանել զբարկութիւն Վաղէսի, զի բազում ժամանակս ոչ էր տեսեալ սուրբն Ներսէս զԱրշակ, վասն պղծութեան Նորա։ Եւ Նոքա եղեալ էին կաթողիկոս զՉունակ ապաշնորհն։ Եւ սուրբն Ներսէս ետես զաղէտս Հայաստանեացս չոքաւ առ կայսրն Վաղէս, տանելով ընդ ինքեան պատանդս զորդի Արշակայ զՊապ և զամենայն Նախարարն[108]։ Եւ Վաղէս չարափառն ոչ ընկալաւ զՆերսէս իբր մի անգամ և երկու դըժող հրամանաց և աքսորեաց ի Պատմոս կղզին աշակերտաւքն հանդերձ, որ կացին անդ Թ (9) ամիս և կերակրեալ լինէին ի շնորհացն Աստուծոյ, որ ծովն ձուկն և հուր և փայտ ձգէր արտաքս և յապառաժ տեղւոջ ջուր բղխեցոյց[109]։ Եւ կալաւ առ ինքն զՊապ և զամենայն Նախարարս Հայոց մեծաւ ‖ Մե պատուով արձակեաց աղաչանօք Մակեդոնի պղծոյ, որ յայն աւուրս եպիսկոպոս էր Բիւզանդիոյ, զի Նոքա դաւանեցին ընդ Նմա, վասն այնորիկ Թափեաց զնոսա ի ձեռաց Վաղէսի և հաշտեցաւ։ Եւ յետ սակաւ ինչ աւուր սատակեցաւ պիղծն Վաղէս այրմամբ հրոյ յԱգրիանուպօլիս և առնու զԹագն մեծն Թէոդոս կամակցութեամբ Գրատիանոսի[110]։ Եւ դարձոյց զամենայն սուրբ հարսն ընդ որս և զսուրբն Ներսէս և պատուով առ ինքն պահէր մինչև արար ժողով ՃԾ (150) եպիսկոպոսաց ի Կոստանդնուպօլիս, վասն հողէմարտին Մակեդոնի և Նզովեցին զմեռեալ դի Նորա և հաստատեցան ի հաւատս։ Եւ դարձաւ մեծն Ներսէս ի Հայաստան[113]։ Եւ ետես զի Արշակ քաղաք ապաստանի էր շինեալ ամենայն չարագործաց, անէծ զնա և զբնակիչսն. և աղօթիւք սրբոյն սատակեցան ամենայն բնակիչք, ըշտ երեէր ի ձեռս Նոցա և մեռանէին։ Եւ կործանեցաւ քաղաքն Արշակաւան[112]։

Եւ Շապուհ առաքեաց Ջալառզան Պալհաւիկն և ըմբռնէ զԱրշակ և զՎասակ զօրավար որդի Վաչէի, որդոյ Մամգոնայ և տարեալ ի Պարս և եդ Յանդմշն բերդի, որ սաւուղաբար մեռաւ[113]։ Եւ զՄերուժան Արծրունի ուրացողն առաքեաց Շապուհ ի Հայս, տալով Նմա զքոյրն իւր, գալ միապետել զաշխարհս Հայոց ի վերայ Պարսից. և Նա ջանայր խափանել զքրիստոնէութիւն և շինէր ատրուշան կրակի[114]։ Զայն տեսեալ Յացեալ Նախարարացն Թողին զկանայս իւրեանց ի յամուրս և գնացին լալով անկան յոտս

1 Б սիրէր Արշակ զՈլոմպիայ, Նախանձելː 6 А աղաչէրː 10 А ապաշնորհ, Ներսէս չիքː 11 А յինքեանː 12 А զորդինː 13 А զսուրբն զՆերսէս, Б Ներսէսː 14 А դժրողː 18 А պատուով մեծարեալː 19 А աւուրː 20 Б էր չիք, А Բուզանդիոյː 22 А աւուրցː 23 Б Ցագիանուպօլիսː 24 Б զարձոյ, А զհողեոր փխ. զամենայն, հայրսնː 30 А զբնակիչս Նոքա, Б [ա]ղօթիւքː 31 А ձեռըսː 34 А Վասակː 36 Б ուրացօղնː 37 А զքոյր, А ի վերայ չիքː 38 Б և (շինէր) չիքː 39 Λ ատրուշանː 40 А գնացին չիքː

սրբոյն[115], ոչ անտես առնել զվիճակն Աստուծոյ. և լուաւ Նոցա, և գնաց առ մեծն Թէոդոս թագաւորեցուցանել զՊապ, որ էր ի պատանդի առ նմայ[116]։

Եւ թագաւորեցոյց կայսրն Թէոդոս զՊապ, որդի Արշակայ, ամս Է (7)։ Եւ անթիւ զօր գումարեաց ընդ նմա և զՏէրենդ զօրաւարն ընդ նմա։ Եւ եկեալ տեսին զՄերուժան Արծրունի ուրացողն, զի պետացեալ ունէր զաշխարհս Հայոց։ Եւ պատերազմեցան ընդ զօրս Պարսից և սուրբն Ներսէս ել ի գլուխ լերին Նպատայ, օրհնեաց զՄուշեղ, որդի Վասակայ, կախելով զգաստառակ ձեռացն ի նիզակն նորա։ Եւ զամենայն զօրսն խաչակնքեալ մղեաց ի պատերազմ։ Եւ աղօթիւք սուրբ հայրապետին ել հողմ ուժգին ի կողմանցն Հայոց ընդդէմ Պարսից և կոտորեցին զնոսա և զամենեսեանսն փախստական արարին։ Եւ ըմբռնեալ Սմբատ Բագրատունի զՄերուժան ուրացօղն և շիշ երկաթի շողացուցեալ բոլորեալ և եդ ի գլուխ նորա. և բարձաւ չարն || ի միջոյ և ոչ ՄԶ ետես զփառս Աստուծոյ և անհոգապէս տիրեաց Պապ աշխարհիս։ Եւ մեծն Ներսէս դնէր վկայութիւն ոչ գնալ ընդ ճանապարհս հաւրն, այլ կեալ ըստ կանոնաց աստուածպաշտութեան[117]։ Եւ Պապ ամաւթալի պղծութեամբ կայր յարուամոլութեան, զի անօրէն մայրն նորա ի ժամ ծննդեան ձօնեալ էր զնա դիւաց։ Եւ դեքն յայտնի երեւէին նմա և էր ի գործ զաղրագործութեան[118]։ Եւ սուրբն Ներսէս բազում անգամ խրատէր զնա և նայ ոչ լսէր, վասն որոյ տա նմայ դեղ մահու ի գեօղն Խախ Ցեկեղեաց գաւառին և ելոյծ ի կենաց ի Ե (5) ամի իւրոյ։ Եւ Պապ ի չքմեղս եղեալ և աշխարհ ամենայն սգացեալ ի վերա սրբոյն Ներսէսի[119]։ Եւ եդին կաթողիկոս զՍահակ ոմն ի զաւակէ Աղբիանոսի ի Մանածկերտոյ ամս Դ (4) և առանց մեծի արքեպիսկոպոսին Կեսարու։ Զոր լուեալ Բարսղի մեծի զսպանումն սրբոյն Ներսէսի անէծ զպիղծն Պապ և զիւրսն ամենայն և երդուաւ այլ ոչ ձեռնադրել եպիսկոպոս Հայոց[120]։ Եւ Պապ ապստամբեալ ի Թէոդոսէ ձեռն ետ ի Շապուհ։ Եւ իմացեալ մեծին Թէոդոսի առաքեաց զԱնատօլիայ զօրագլուխն, որ ըմբռնեաց զՊապ և կապանօք էած առ Թէոդոս. և նա տեսութեան ոչ արար արժանի, այլ սակրով վճարեալ և ի ծով ընկեցեալ, վասն սրբոյ առն Աստուծոյ, զոր նա սպան[121]։ Եւ թագաւորեցոյց զՎարազդատ ոմն Արշակունի, որ առ ինք էր[122] ի պաղան[դ]ի և թագաւորեաց ամս Դ (4)։ Սա յար և նման Տրդատայ, այլ մանուկ տիօք և գնացիւք։ Սա կացոյց զԶաւէն կաթողիկոս, եղբայր Սահակայ, ամս Դ (4)։

Այլ Վարազդատ միտեալ զհետ Շապհոյ, զոր իմացեալ Թէոդոսի կոչէ առ ինքն և երկաթեղէն կապանօք ետ տանել ի Թուլաս կղզի[123]։

---

3 Б պատա[ն]գի։ 6 А զօրավար։ 7 Б ուրացօղն։ 8 А եյեալ։ 13 А ճկացեալսն փխ. զամենեսեանսն, Б [ը]մբռնեալ։ 14 А Բագրատունի չիք։ 19 А կեայր, Б յարուամոլութեան։ 20 А մայր։ 21 А էր չիք, զագրաւութեան։ 22 А և խրատէր բազում անգամ սուրբն Ներսէս։ 24 А էլոյծ զնա։ 29 А զպիղծ։ 33 А սակրօվ։ 35 А Վարազդատ։ 36 Б ինքն։ 37 Б տիօք։ 39—40 Թէոդոս։

Եւ թագաւորեցոյց զԲ (2) որդիսն Պապայ, զԱրշակ և զՎաղարշակ, պատանդ պահելով զմայր մանկանցն, որք եկեալ ճզօրեղարար յաղթեցին Պարսից։ Եւ եկեաց հայրապետ Ասպուրակէս ամս Ե (5), եղբայր Սահակայ և Զաւենա[131]։ Ցերկրորդ ամին Արշակայ մեծն Թէոդոս վաղճանի և առնուն զթագաւորութիւն որդիքն Արկադէոս ի Բիւզանդիայ և Ոնորիոս ի Հռոմ։ Իմացեալ Շապհոյ զթուլամոլթութիւն Արկադեա խօսի ընդ նմա զխաղաղութիւն. և Արկադ յանձն առ և բաժանեն Շապուհ և Արկադ զաշխարհս Հայոց յերկուս։ Արշակ ելեալ յԱյրարատէ գնաց ի կողմն Ցունաց Ցեկեղեաց գաւառն, ‖ Մէ վասն քրիստոնէութեան և մօրն, որ ի պատանդ[132]։ Եւ Վաղարշակ բնակեցաւ ի Ցայրարատ ի բաժնի Պարսից, որ եկաց ամի մի և մեռաւ։ Իբրև ետես Շապուհ վաղվաղակի թագաւորեցոյց զԽոսրով[126]։ Եւ թագաւորեաց Խոսրով Արշակունի, որ էր պատանդ առ Շապուհ, սա թագաւորեաց ամս Ե (5)։ Իբրև լուան նախարարքն Հայոց, որ ի բաժնին Ցունաց, որ ընդ Արշակայ գնացեալ էին, թէ Շապուհ թագաւոր կացոյց Արշակունի, ուրախացան, թողին զԱրշակ և գնացին ի կալւածս իւրեանց առ Խոսրով[127]։

Եւ Մեսրովպ աշակերտ մեծին Ներսէսի. յորժամ վաղճանեցաւ էր նոտար ի դրան արքունի մինչև ցարդ և թողեալ զհոգս արքունի գնաց ի Գողթան կեալ միակեցութեամբ[128]։

Եւ թագաւորն Խոսրով իբրև տիրեաց ամենայն նախարարացն յղէ առ Արկադ, խնդրէ զբաժինն Ցունաց, զի ծառայեսցէ Բ (2) թագաւորաց և տացէ զիւրաքանչիւր բաժնի զհարկն ի նոյն թագաւոր. և զի մեռեալ էր Արշակ նոցայ եդեալ թագաւոր և Արկադ յանձն էառ[129]։

Եւ եկաց կաթողիկոս սուրբն Սահակ, որդի մեծին Ներսէսի, ամս ԾԱ (51), ի Դ (4) ամի թագաւորութեան Խոսրովու կամակցութեամբ նորա։ Իբրև լուաւ Շապուհ բարեկամանալն Խոսրովու առ Արկադ և առանց հրամանին նստուցանել զՍահակ հայրապետ, բարկացաւ և առաքեաց զԱրտաշիր որդին իւր, որ եկեալ ըմբռնեաց զԽոսրով և ետ տանել Ցանուշն բերդի, որպէս յառաջ զԱրշակ[130]։

Եւ թագաւորեցոյց զՎռամշապուհ եղբայր Խոսրովայ ամս ԻԱ (21)։

Եւ Շապու[հ] Պարսից յետ ՀԲ (72) ամի թագաւորութեան իւրոյ մեռանի առեալ զթագաւորութիւն Արտաշիր, որդի նորա, ամս Դ (4)։ Առ սա գնաց մեծն Սահակ և թախանձեալ, զի սպարապետ կացուսցէ Հայոց զՀամազասպ փեսայն իւր Մամիկոնեան փոխանակ Սահակայ ասպետի։ Եւ Արտաշիր կատարեաց զխնդիրն

1 Λ եղբայրս այսինքն որգիսն։ 2 Б մանեացն։ 4 A Զաւէնայ, յերրորդ փխ. յերկրորդ։ 5 A առնու, որդիքն չիք։ 6 A Բուզանդիա, Б Հռովմ։ 7 Б Ա[ր]կադեա։ 8 Б և բաժանեն։ 9 AБ յԱրարատէ։ 15 A բաժնի։ 16 A որ չիք, Б Շապուհու։ 17 A ուրախացան յոյժ, Б ի չիք, կալւածս։ 19 A Մեսրոպ, Б վախճանեցաւ։ 24 A իւրաքանչիւր։ 25 Б թագաւորն։ 26 A յանձ։ 29 Б զբարեկամանալն։ 33 A յառաջն Արշակ։ 34 A Խոսրովու։ 37 A իւրոյ չիք։ 38 A գընաց։

դրելով առ Վռամշապուհ մեր թագաւորն։ Եւ իբրև եկն սուրբն Սահակ և կատարեցին զհրամայեալսն[131]։

Մեռաւ Արտաշիր արքայն և թագաւորեաց Վռամ, որ և Կրմանն կոչեցաւ, ամս Ժ (10)։ Եւ զնոյն սէր և բարեկամութիւն կալաւ ընդ Հայոց[132], Ցայսմ ժամանակի Մեսրովպ սքանչելի այրն Աստուծոյ եգիտ դձայնաւոր գիրսն, տուեալ՚ս Աստուծոյ ի վիմին տպաւորեալ ի Բալու։ Եւ սկսան Մեսրովպ և Սահակ թարգմանել զԱստուածաշունչ գիրս հանդերձ աշակերաօքն՝ Եզնակ, Կորիւն և փոքունք սոցա՝ Ցօվսէփ, Ցոհան, Ղեոնդ, Սահակ, Մովսէս Քեր- թօղն և եղբայրն նորին Մամբրէ Վերծանօղն, սուրբն Եղիշէ, յետոյ Դաւիթ Անյաղթն ‖ և Ցոհաննէս, տէր Աբրահամ. Մուշէ, ՄԸ Արձան, Խոսրով, Ղազար Փարպեցի և յետ սոցա Ստեփաննոս Սիւնեաց եպիսկոպոսն և Հոտիանոս Սամոստացի[133]։

Եւ Վրամշապուհ բարւոք վաղճանեալ. և սուրբն Սահակ խնդրէ ի Վռամայ, Պարսից արքայէ, թագաւորեցուցանէ զկապեալն Խոսրով, զոր արարն իսկ[134]։

Եւ թագաւորեաց Խոսրով ի կրկնումն ամ մի միաւ[135]։ Եւ Ցազկերտ, որդի Վռամայ, թագաւորեաց Պարսից, թագաւորեցու- ցանէ Հայոց զՇապուհ որդի իւր ամս Դ (4), զոր ոչ ընկալան և ոչ դնէին նմա պատիւ թագաւորի իշխանքն Հայոց։ Եւ մեռաւ հայր սորա Ցազկերտ, վասն որոյ անարգանօք վարեցին և մեռաւ։ Եւ մնաց երկիրս Հայոց ամ մի անթագաւոր, ժողովեցան իշ- խանքն առ սուրբն Սահակ և գնացին առ Վռամ երկրորդ, որդի Յազկերտի, և խնդրեցին ի նմանէ թագաւոր Արշակունի. և նա թագաւորեցոյց զԱրտաշիր որդի Վռամշապհոյ։ Եւ թագաւորեաց Արտաշիր, որ և Արտաշէս, ամս Դ (4)։ Եւ զի սա զեխ էր և իգա- մոլ, միաբանեալ նախարարքն առ սուրբն Սահակ, զի օգնեսցէ նոցա լինել չարախօս զնմանէ առ Վռամ, զի ընկեսցեն զնա և հեթանոս ածեն ի տեղի նորա և սուրբն ոչ միաբանեցաւ ընդ նոսա։ Եւ նախարարացն գնացեալ ի Պարս հանդերձ Սուրմակաւ Արծկեցոյ առ Վռամ երկրորդ և չարախօսէին զԱրտաշրէ և զՍա- հակ հայրապետէ. և նա լուաւ նոցա եդ ի կապանս զԱրտաշիր և զսուրբն Սահակ արգել ի կաթողիկոսութենէ, զՍուրմակ չարախօ- զու տալով ի տեղի նորա և բաղում պարգևս տուեալ նախարա- րացն արձակէ Պարսիկ մարզպանաւ Միհրշապուհ անուն[136]։

Աստանօր բարձաւ թագաւորութիւն Արշակունեաց ի Հայոց տեւեալ ամս ՇԿԸ (568)[137]։ Եւ բարձաւ ճայրապետութիւն ի ցեղէ Լուսաւորչին, զի թէպէտ յետ այսորիկ մնաց սուրբն այլևս ԺԶ (16) ամ, սակայն անարժան վերակացւօք ի Քրիստոսէ ՆԾԱ (451) ամ, և ի Լուսաւորչէն ՃԽԵ (145) ամ մինչև ցայժմ[138]։

Եւ կեցեալ Սուրմակ ոսոխասէրն ամ մի հալածեն զնա նա-

4 A և (Կրմանն) չիք, նոյն։ 6 Б էգիա։ 7 Б թարքմանել։ 9 Б Ցովսէփ։ 10 A եղբայր, վերծանողն։ 12 Б Փարպիցի։ 14 A Բարուոք, A վախճանեալ, Սահակ չիք։ 17 A և մեռաւ։ 18 A Վռամա թագաւոր։ 22 A յերկիրս։ 24 Ազկերտի։ 28 Б Վառամ։ 29 A միաբանեցեալ։ 34 A աւեալ։ 36 Б թագաւորութիւնն։ 37 A հայրապետութիւնն։ 38 Б սուրբն Սահակ, այլեւ չիք։ 41 Б սոսխասէրն փխ. ոսոխասէրն։

խարարքն և խնդրեն յարքայէն Պարսից զԲրգիշոյ Ասորի վատթար քան զնա, որ եկաց ամս Գ (3)։ Դարձեալ աղաչեն և եա զՇմուէլ և նախարարքն յերկուս բաժանեալ, ոմանք ասէին, զոր թագաւորն տայ նայ լիցի կաթողիկոս, իսկ Մանէճ Ապահունի և Սպանդարատ Արշակունի խնդրէին զսուրբն Սահակ հայրապետ նաև զՄեսրոպ և այլ եպիսկոպոսունքն խնդրէին զսուրբն Սահակ, վասն որոյ հաւանեալ Վռամայ կատարէ զերկուց դասուց զխընդիրն տա զՇմուէլ հակառակ աթոռ և տա սրբոյն Սահակայ զիւր վիճակն միայն վարդապետել և ձեռնադրել, զոր Շմուէլն կամիցի։ Եւ թագաւորն ասէ ցսուրբն Սահակ. «Երդմնեցուցանեմ զքեզ ի քոյին հաւատն || և յաւետարանն, զի միամիտ կացցես և յորդորեսցես զամենայն կոյլ ի ծառայութիւն մեզ և մի պատրել ի մոլար հաւատակցութիւնն Յունաց»։ Զայս իբրև լուաւ սուրբն Սահակ ի բարկութիւն բրդեալ, զմահ յանձն առեալ, կանգուն կացեալ ի բեմբասութեան ձևի, համեստ հայեցուածով. «Ո՞աւ լիցի կարծել մոլար զՅոյնսն», և պատմեաց զերախտիս նախնեաց իւրոց առ նախնիս նորա և այլ բազում բան և յանդիմանեաց զհրապաշտութիւն նոցա։ Եւ յոյժ պակեաւ թագաւորն և ամենայն ատեանն, հրամայեաց արծաթ բազում տալ նմա իբրև համարձակախօսի առաջի այսպիսի հզօր թագաւորի, զի Աստուած յարգոյ ցուցանէ զծառայս իւր։ Եւ սուրբն Սահակ ասէ. «Արծաթ քո քեզ լիցի, բայց խնդրեմ, զի զՎարդան թոռն իմ, որդի Համազասպայ, արասցես ստրատելատ բաժնի քում, որպէս և Թէոդոս իւրոյ բաժնին և զամենայն նախարարսն մատուսցես ի գահի իւրում»։ Զոր և արարն իսկ բազում շքեղութեամբ արձակէ զնոսա։ Բայց Շմուէլ վատթարն կացեալ ամս Ե (5) մեռանի։ Եւ ժողովեալ նախարարացն առ սուրբն Սահակ անկան յոտս նորա ունել զաթոռն և սուրբն ոչ լուաւ նոցա մինչ կարի աղաչեցեալ ասաց զտեսիլն իւր ի Վաղարշապատ քաղաքի ի ախս սարկաւագութեան՝ զջնջումն Արշակունեաց թագաւորաց և զքահանայութիւն ի ցեղէ սրբոյն Գրիգորի մինչև ի յետին ժամանակն ապա նորոգիլ Բ (2) գաւազանացն[139]։ Եւ նախարարքն վա՜յ կարդացեալ թողին զնա ի կամս իւր։ Եւ հանգեաւ մեծն Իսահակ նաւասարդի Լ (30), յորում աւուր ծնեալ էր, ի յերկրորդ ամի Յազկերտի, որդոյ Վռամայ, և յերրորդ ամի մարզպանութեան Վարդանայ։ Եւ եդ ի տեղի իւր զսուրբն Մեսրոպ, Զ (6) ամիս կեցեալ հայրապետ, և ննջեաց ի Քրիստոս[140]։ Եւ եդ ի տեղի իւր զՅովսէփ աշակերտն իւր ամս Ը (8). էր սա ի գաւառէն Վա-

Մթ

1 Б զԲրդիշոյ։ 3 A երկուս, ասէին չիք։ 5 A Սպանդարադատ Արշարունի։ 6 A Մեսրովպ։ 8 Б տայ, A սրբոյն չիք։ 13 A հաւատակցութիւն։ 14 A բարկութեան, յանձ։ 15 A հայեցուածովք։ 16 A զՅունսն, զերահտիսն։ 18 A զհրապաշտութիւնս։ 19 A հրամաեաց, Б իբր։ 20 Б զի չիք, զԱստուած։ 21 A ասէ չիք, քոյ։ 22 Б թ[ո]ռն, Համայզասպա։ 23 Б և (Թէոդոս) չիք, A Թէոդորոս։ 25 A թագաւորն փխ. արարն, արձակեաց։ 28 A զաթոռ։ 29 Б սարկաւագութեան։ 30 A զհայրապետութիւն փխ. զքահանայութիւն։ 31 Б մինչ։ 33 Б հանգաւ։ 34 Б Սահակ, որում։ 35 A ամն Ազկերտի, Б որդւոյ, A յերրորդի։ 37 Б կացեալ, A վաղջանի ննջեաց։

յոյ ձորոյ, ի դեղջէ Հողոցմաց։ Բայց գիտելի է, զի յորժամ հանգեաւ ի Քրիստոս սուրբն Սահակ և սուրբն Մեսրոպ, դարձեալ զօրացաւ Սուրմակ և Զ (6) ամ ինքն կատարէր զձեռնադրութիւնն և ոչ իշխէր սուրբն Յովսէփ ասել ինչ։ Եւ յորժամ մեռաւ Սուրմակ, ապա համարձակեալ Յովսէփ ամս Բ (2)։ Սա արար ժողով ի Շապիվանս, ուր դատաստանաց կանոնս կարգեցին։ Սա նահատակեալ ընդ սրբոց Ղևոնդեանց ի Պերոզէ որդւոյ Յազկերտի, յետ Բ (2) ամի նահատակութեան սրբոց Վարդանանցն[141], զի այս Բ (2) ամս ի կալանս կացին ի Պարս ի Նիւշաւոր քաղաք և շահեցան զերանելի մոգպետն Ներշապուհ։ Եւ մինչ ի կալանսն էին հրամայեաց մնացեալ || նախարարացն տալ ձեռնադրել զԳիւտ ՄԺ կաթողիկոս, որ եկաց ամս Ժ (10)։ Էր սա ի գաւառէն Վանանդայ, ի գեղջէ Օթմսոյ։ Եւ ոմանք ի պատմագրացն ասեն, թէ Վարդան կացոյց զսա կաթողիկոս, յորում աւուրսն դարձան ի Հայս յԱթենայ սուրբ Մովսէս Քերթողն և Մամբրէ և Դաւիթ, և թուի թէ ի լինել ժողովսյն Քաղկեդոնի վաղջանեալ էր Գիւտ, զի չփոթեալ երևի միջոցս[142]։

Եւ յետ կատարման սրբոց Վարդանանցն ՌՄԼ (1230) ընկերօքն հրոտից Լ (30), ի ԺԶ (16) ամին Յազկերտի և մնաց երկիրս Հայոց անիշխան ամս Զ (6), յետոյ զղջացեալ Պերոզ, որդի Յազկերտի, կացոյց իշխան Հայոց զՄագնոս[143], որդի Վարդանայ, որ եկաց ամս Ի (20)։ Յառաջին ամին սորայ եկաց հայրապետ Յոհան Մանդակունի ամս ԺԲ (12) և ոմանք Զ (6) ասեն։ Յաւուրս սորայ սուրբ հայրն Թաթուլ Վարոսիւ եղբարբն թողեալ զամենայն և գնացեալ ի լեառն Կաղզուանայ, որ Վիշապաձոր անուանի և անդ ճգնեալք որպէս զանմարմինն[144]։

Եւ յետ Յոհաննու տէր Բաբգէն, ի գաւառէն Վանանդայ, ի գեղջէ Օթմսոյ, ամս Զ (6)։ Յաւուրս սորայ միաբանեալ եպիսկոպոսք և վարդապետք և անյաղթ փիլիսոփայք, աշակերտք սրբոց թարգմանչացն և միաբան նզովեցին զժողովն Քաղկեդոնի և զտումարն Լևոնի և զգուշացուցին զաշակերտեալս[145]։

Եւ կացեալ իշխան Հայոց Վահան, որդի Հմայեկի, եղբօր Վարդանա, ամս ԼԱ (31), կամակցութեամբ Վաղարշայ, որդւոյ Պերոզի, թագաւորին Պարսից։ Սա նորոգեաց զամենայն եկեղեցիս Հայաստանեայս զաւերեալսն ի Պարսից։ Սա և զԱլանս արգէ[լ]ական արար[146]։

Եւ յետ Գիւտա[147] նստաւ տէր Սամուէլ ամս Ժ (10) ի Յարծկոյ. ապա տէր Մուշէ, ի գաւառէ Կոտայից, ի գեղջէ Աղաբերից, ամս Ը (8). ապա Սահակ, ի գաւառէ Հարքայ, ի դեղջէ Զակայ,

2 Б հանգաւ։ 3 А զձեռնադրութիւն։ 4 А ասել սուրբն Յովսէփ։ 5 Б Յով[ս]էփ։ 6 А տուդանաց։ 8 А Վարդանանց։ 10 А կալանս։ 11 Б հրամայեց։ 14 Б աւուր։ 15 Б սուրբն, Б Քերթօղն։ 16 А Քաղկեդոնի չիք, Б վա[խ]ճանել։ 18 А Վարդանեանց, ՌԼԶ փխ. ՌՄԼ։ 19 А Ազկերտի։ 20 А յերկիրս, Հայոց չիք։ 21 А զՄամգնոս։ 24 Б հայրն Թաթուլ։ 25 А լեառն Կաղըզվանայ։ 26 А ճգնեալ։ 28 А գեղջէն։ 29 А աշակերտօք։ 31 А զաւմարն, Б և [զգուշացուցին] չիք, զգուշացուցին, А աշակերտեալսն։ 32 А Հմայակէ։ 37 А Գիւտա, Б Սմուէլ։ 38 А Կոտէից։ 39 А ութ։

*ամս Է (7). ապա տէր Քրիստափոր, ի գաւառէ Բագրեւանդայ, ի գեղջէ Տիրառճոյ, ամս Զ (6)[148]։*

*Եւ յետ Յոհաննու[149] եկաց իշխան Հայոց Վարդ Պատրիկ, եղբայր նորա, ամս Դ (4)։ Սա բազում արեան ճապաղիս արար ի Հոռոմոց և տեսլեամբ ասացին նմա չլինել բազում եկեղեցիս յանուն սրբոյն Ստեփաննոսի և կատարեաց անյապաղ։ Եւ զկնի Վարդ Պատրկայ մարզպանք Պարսիկք տիրեցին ամս ԺԱ (11)[150]։*

*Եւ յետ Քրիստափորին տէր Ղեւոնդ, ի գաւառէ Առբերանոյ, ի գեղջէ Փոքր Առեստոյ, ամս Գ (3)։*

*Եւ եկաց իշխան Մեժէժ Գնունի ամս Լ (30)։*

*Յետ Ղեւոնդի || եկաց հայրապետ Ներսէս, ի գաւառէ Բագրե-* ՄԺԱ
*ւանդայ, ի գեղջէ Աշտարակոյ, ամս Թ (9)։ Յետ սորայ Յոհաննէս, ի գաւառէ Գարեղենից, ի գեղջէ Սնձղնուտայ[151], ամս ԺԵ (15)։ Եւ ապա տէր Մովսէս ամս Լ (30), ի գաւառէ Յարագածոտն, ի գեղջէ Եղիվարդայ։ Սա Ժ (10) ամին իւրոյ, և ոմանք Դ (4) ասեն, և յիշխանութիւն Մեժէժայ և Յուստինոսի Կոստանդնու և Խոսրովու Պարսից, այս Մովսէսի հրամանաւ եդաւ թվականն Հայոց, յետ լրման Մ (200)-ելին Անդրէասայ, ի Գունին քաղաքի ի կենարար ծննդենէ Փրկչին մերոյ ամք ՇԾԳ (553), և ի Լուսաւորչէն ՄԽԱ (241) և ի գտանելոյ գրոյն ՃԺԷ (117) և էր Յունաց թուականն ՅԴ (304) և Ասորոց թուականն ՊՀԱ (871), ոմանք ի պատմագրաց ասեն, թէ առ Ներսէսիւ եղաւ թվական, բայց յոլովքն առ այս Մովսէսիւ ասեն. թվական Ժ (561) կարգեցաւ Շ (500)-եակն ի ձեռն Էասայ Աղէքսանդրացոյ[152]։*

*Այս Մովսէս զԿիւրիոն ոճն, փակակալն իւր, եպիսկոպոս ձեռնադրեաց Վրաց և Գուգարայ և Եգերացոց նահանգին ըստ առաջնոցն սովորութեան։ Եւ Կիւրիոնս այս միտեցաւ զհետ ժողովոյն Քաղկեդոնի և հայրապետն Մովսէս բազում անգամ խրատեաց զնա և նա պատճառէր զպատճառս մեղաց սուտ կարծել զիրն[153]։ Եւ յետ Մովսէսի նստի տէր Աբրահամ, ի գաւառէ Ըռըշտունեաց, ի գեղջէ Աղբաթանից, ամս ԻԳ (23) ի մարզպանութեան Տաճկաց, զի յետ Մեժեժայ իշխանի Տաճիկք տիրեցին Հայոց ամս ԼԶ (36)։ Եւ յաւուրս Աբրահամու յայտնի եղև աղանդն Կիւրոնի, վասն որոյ նզովէ զնայ և բաժանեցան Վրացիքն ի Հայոց և եղեն քաղկեդոնիք։*

Այսուհետև կամիմ թվականաւն ասել զամենայն բան, զի ի Վարդանէ նետէ շփոթեալ տեսանեմք զիշխանութիւն Հայաստանեաց և թագաւորութիւն ամենևիմբ բարձեալ, զի թէպէտ երբեմն-երբեմն

3 A *Ցոհաննու*, Б *Հայոյ Վար[գ]*։ 6 A *Սահփաննոսի*։ 8 A *Քրիստափորի, Առբերունունոյ*։ 10 Б *Մէժէժ*, A *Գնունունի*։ 11 A *գաւառէն*։ 12 A *Աշտարակայ*, Б *այսորիկ փխ. սորայ*։ 13 A *Անձղնուտայ*։ 15 A *Եեղիվարդայ*, Б *ի Ժ*։ 18 A *իշխանութիւն*։ 17 A *Թվական*։ 18 Б *Մ-ելն*, A *Անդրիասայ*։ 19 A *ծննդէնէն*։ 20 A *ի (գտանելոյ)* չիք։ 22 Б *պատմագրացն, տէր Ներսէսիւ, Թվականն*, 23 A *յոլովք*։ 24 A *Շ-ակն*, Б *Աղէքսանդրացւոյ*։ 25 A *ի Կիւրիոն*։ 26 A *Գուգարաց*, Б *Եգերացւոց*, A *նախանդին*։ 27 A *Կիւրիոնս*։ 28 A *Մովսէս* չիք։ 30—31 A *Ըռուշտունեաց*։ 33 A *Կիւրենի*։ 35 Б *Քաղկէդոնի*։ 36 A *Թվականաւ*։ 37 A *Վարդանայ, Հայաստանեացս*։ 38 A *Թագաւորութիւնն*։

իշխանք նստէին, այլ ի հրամանէ Պարսից և Յունաց և էր զի ին-քեանք նստէին մինչև զԹագրատունիսն այլ աստ մարզպանք Պար-սիկք տիրէին, այլ մեք թվականաւն զկարգն ցուցից:

*Թվին Ի (571) Նստաւ կաթողիկոս տէր Աբրահամ յետ Մով-սէսի, որպէս յառաջն ասացի։ Ապա տէր Յոհաննէս, ի Կոգովիտ գաւառէ, ի գեղջէ Գաբաբանայ, ամս ԻԳ (23)։ Զսա յոլովք ի պատ-մագրաց ընդ Աբրահամու ասեն ի միում ժամանակի[154]։*

*Մօրիկ կայսրն նստուցեալ ի Հայս ի բաժնի իւրում, բայց մեք ստուգեցաք, որպէս յառաջն ասացի։*

*|| Թվին ԾԷ (608) Դաւիթ Սահառունի մարզպան եղեւ Հայոց ամս Լ (30)[155]։* ՄԺԲ

*Թվին ԿԲ (613) բուն բաժանումն։ Եւ ի յայսմ ամի ելեալ Մահմետ սուտ մարգարէ Տաճկաց, յազգէ Իսմայէլի, գլուխ վաճա-ռականաց Եգիպտոսի։ Սա զօրավար Քաղրթի, որ էր գլուխ իս-մայէլականաց և Քաղրթ իբրատոջն Մահմետի տիրեաց Պարսից, Հայոց և Ասորոց, Եգիպտացոց, Մարաց և Պարթեաց և Պաղես-տինացոց, և իբրև յաջողեցաւ բստացան զսա օրէնսդիր բստ պղծութեան կամաց իւրեանց։ Սա կեցեալ իշխան ամս Ի (20)։ Եւ յետ սորա տիրեցին Ապուբաքր, Օթման և Օմառ։ Այլ մեք դարձցուք ի վեր ուստի թողաք։*

*Թվին ՀԷ (628) Նստաւ կաթողիկոս տէր Կոմիտաս, ի գաւառէ Արագածոտն, ի գեղջէ Աղցից, ամս Ը (8)։ Սա նորոգեաց զվկա-յարան սրբոյն Հռիփսիմեայ և ազօթիւք գտեալ զսուրբ մարմինն անյայտ տեղ և չափեաց Թ (9) թիզ և Դ (4) մատ կնքեալ ի յարկեղ սրբոյն Գրիգորի և սրբոյն Սահակայ և ոչ իշխեաց բա-նալ, այլ ինքն ևս կնքեաց և եդ ի ներքոյ սեղանոյն և ասաց ողբալով «Անձինք նուիրեալք»[156]։ Ապա տէր Քրիստափոր ամս Դ (4)։ Սա յաղատ տանէ, ազգական Աբրահամու[157]։ Եւ ապա տէր Եզր, ի գաւառէ Նգայ, ի գեղջէ Փառաժնկերտէ, ամս Ժ (10)։ Սա կուրացեալ կաշառօք ի Հերակլէ վարձաւ քաղկեդոնիկ. և ետ նմայ Հերակլ կայսրն զերրորդ մասն Կողբաց գին հաւատոյն և փոփո-խեաց և խախտեաց զառաքելական սահմանս. եղև այս թվին ՁԷ (638)։*

*Թվին ԾԸ (659) եկաց իշխան Թէոդոս Ռշտունի ամս ԻԵ (25) ձեռամբ իսմայէլականաց[158]։ Սա շինեաց զՁաղթամար կղզին։*

*Թվին ՂԶ (647) Նստաւ հայրապետ տէր Ներսէս, ի գաւառէ Տայոց, ի գեղջէ Իշխանայ, ամս Ի (20), ձեռամբ Թէոդորոսի իշ-խանի։ Սա մեծապէս նորոգեաց զէջմիածինն և զՏոր Վիրապն և զԴվնայ սուրբ Սարգիսն։*

---

3 Б *ցուցցուք*։ 5 А *յառաջն* չիք։ 6 Б *Բաղաբանայ*։ 9 А *ըստուգեցայք*։ 10 Б *մարզպանեալ, եղեալ* չիք։ 12 Б *բաժանումն*։ 13 А *սուտ մարգարէն Մահմեդ, Իսմայելի*։ 14 А *զօրաւար Քաղըրթի*։ 15 А *Քաղըրթ*։ 16 Б *Եղիպտացւոց*։ 16—17 Б *Պաղեստինացւոց*։ 17 Б [*ի*]*բրև, ստացան, զսա* չիք։ 19 А *Աբուբաքր*։ 20 Б *ուստի*։ 21 Б *Կումիտաս*։ 23 А *զսուրբ* չիք, *զմարմինն*։ 24 Б *յանյայտ*, А *չորս մատն*։ 26 А (*եդ*) *ի* չիք։ 28 А *աղատ*։ 29 А *Նգոյ, Փառաժնակերտէ*։ 30 Б *քաղկէդոնիկ*։ 32 А *և եղև*։ 34 А *ՁԸ* փխ. *ԾԸ*, Б *Թէոդորոս*։ 35 А *զԱղթամար*։ 37 Б *Իշխանա*, А *Թէոդոսի*։ 38 А *զէջմիածին*, Б *և* (*զՏոր*) չիք։ 39 Б *զԴունայ*։

*Արդ՝ յերկրորդ ամին Ներսէսի և ի Ժ (10) ամին Թէոդորոսի և ի մի ամին Կոստանդի, որդոյ Կոստանդնի, բարձաւ իշխանութիւնն Պարսից, որ Սասանեանն կոչէր, ի ձեռն իսմայէլականաց՝ Ապուբաքրայ, Օթմանայ, և Օմառայ։ ԻԲ (22) ամի իշխանութեան նոցա, որ յետ Քաղըրթի և Մահմետի սոքա բռնացեալ ունէին զաշխարհս, եկեալ զօրաց սոցա ի Տիզբոն սպանին զՈրմիզդ, թոռն Խոսրովու, յեկտասան ամի թագաւորութեան նորա և ինքեանք տիրեցին Պարսից թվին ՂԸ (649). տևեցին Սասանեանքն ի սպանմանէն Արտաւանայ Արշակունոյ մինչև ցայժմ ամք ՆԺԸ (418)*[159]*։*

Արդ կամիմ համառօտարար բացայայտել զթագաւորութիւնս Պարսից, որ Սասանեան կոչի մինչև ցայժմ:

*Նախ և առաջին Արտաշիր, որդի Սասանայ Ստահրացի, ամս ԽԷ (47)։ Սա սպան զԱրտաւան Արշակունի բառնալով զթագաւորութիւն նոցա ի Պարսից, վասն որոյ Խոսրով հայրն Տրդատայ քինախնդիր եղեալ իբր ազգային. և փախոյց զնա մինչև ի Հնդիկս. և այս Արտաշիր առաքեաց զԱնակ, որ սպան նենգութեամբ զԽոսրով։ Ապա Շապուհ, որդի Արտաշէրի, թագաւորեաց ամս ԽԶ (46). յաւուրս սորա չարչարեաց Տրդատ զսուրբն Գրիգոր և արկեալ ի Վիրապն և նահատակեցան սուրբ կուսանքն և խողխողեալն Տրդատայ և բժշկութիւն նորա և զօրացն ի ձեռն սրբոյն Գրիգորի և Ձեն ազին Մամգոնի և Կամսարականի որդոյ Պերոզամատայ ի Կարինեան Պալհաւէ գալն ի Հայս առ Տրդատ և են սոքայ մեծ նախարարութիւնք. և շինումն Կոստանդնուպօլսի։*

*Ապա Ներսեհ, որդին Շապհոյ, ամս Թ (9)։*

*Ապա Որմիզդ ամս Գ (3)։ Շապուհ, որդի Որմզդի, ամս ՀԳ (73)։ Սա նահատակեաց զսուրբն Սարգիս։ Ի ԿԹ (69) ամին սորա նստաւ սուրբն Սահակ հայրապետ Հայոց։*

*Արտաշիր, որդի Շապհոյ, ամս Գ (3)։ Առ սա գնաց սուրբն Սահակ և պատուեցաւ։ Վռամ Կրման, որդի նորա, ամս ԺԱ (11)։ Յազկերտ, որդի նորա, ամս ԺԱ (11)։ Վրամ Երկրորդ ամս ԻԲ (22)։ Առ սա գրնացին նախարարքն Հայոց և Սուրմակ չարալեզու ընդ նոսա և ընկեցին զԱրտաշիր Արշակունի, որդի Վռամշապհոյ. ի տէրութենէ և զսուրբն Սահակ ի կաթողիկոսութենէ։ Եւ առ սովաւ. բարձաւ թագաւորութիւն Արշակունեաց ի Հայոց տևեալ ամս ՇԿԸ (568) և հայրապետութիւն ի ցեղէն սրբոյն Գրիգորի տևեալ ամս ՃԽԵ (145). թէպէտ եկաց յետ այնորիկ կենդանի սուրբն Սահակ այլևս ԺԶ (16) ամ։*

*Ապա Յազկերտ, որդի Կրմանայ, ամս ԺԹ (19)։ Ի ԺԷ (17) ամին՝ սորա կատարեցան Վարդանանքն։ Ապա Պերոզ, որդի Յազ-*

*1 A Ներսեսի, Թէոդոսի։ 2 Б որդւոյ, A իշխանութիւն։ 3 A կոչիւր։ 5 Б Քաղըրթի։ 8 A Թուին։ 9 A Արշակունույ։ 11 A բայցայայտել։ 12 A Սասանեանք կոչին։ 14 A զթագաւորութիւնն։ 16 A և (փախոյց)* չիք, Б *մինչ։ 18* Б *զԽոսրով նենգութեամբ, Արտաշրի։ 19 A յաւուր, Տրդատ* չիք։ *22 A որդոյն։ 23* Б *Պերոզամատայ, A Կարնեան։ 26* Б *որդի Որմզդի ամս ՀԳ* չիք։ *27* Б *սա նահատակեաց զսուրբն Սարգիս* չիք, *և ի։ 28 A սուրբ։ 31 A Յազկերտ որդի նորա ամս ԺԱ* չիք։ *34* Б *սուրբն, A սովաւ։ 38 A այլև։ 40 A ամի։*

կերտի, ամս ԻԲ (22)։ Վաղարշ ամս Դ (4)։ Կաւատ ամս Է (7). սա էառ զՑամիթ։ Զամասպ ամս Բ (2)։ Կաւատ ամս ԺԷ (17)։ Խոսրով ամս ԽԸ (48)։ Սա մօտ ի վախճանն իւր հաւատաց ի Քրիստոս և մկրտեցաւ, և ի սենեակն իւր սեղան եդ կանգնել յանուն սուրբ Աստուածածնին և հաղորդեցաւ ‖ և կացեալ սակաւ ՄԺԳ աւուր վախճանի։

Եւ յետ նորա Որմիզդ, որդի նորա, ամս ԺԲ (12)։

Խոսրով ամս ԼԷ (37)։ Սա գնաց փախստեամբ առ կայսրն Մօրիկ, զի փոքր էր և ոչ ընդունէին զնա զօրքն արեաց գնդին։ Եւ Մօրիկ մկրտեաց զնա և անթիւ զօրս եդ ընդ նմա, որ եկեալ տիրեաց հայրենեացն։ Սա խնդրեաց զվրէժն Մօրկայ և գերեաց զսուրբ խաչն փրկչական և տարաւ ի Թաւրէզ, որ մնաց անդ ամս ԺԳ (13), մինչև թագաւորեցոյց Հերակլ զԽոռիան նախարարն Պարսից և փոխարէն էառ զսուրբ խաչն և տարաւ եդ Ցերուսաղէմ ի տեղի իւր թվին ՁԲ (633)։

Կաւատ Ա (1) ամ։ Արտաշիր ամս Թ (9)։ Խոռիան Ա (1) ամ. սա ոչ ի նոյն ազգէ։ Խոսրով, որդի Արտաշրի, ամ մի։ Բորմ և Զարմանդուխտ, դստերք վերին Խոսրովու, Ա (1) ամ։ Ցազկերտ, որդի Խոսրովու, ամս ԺԲ (12)։ Զսա սպանին զօրքն իսմայէլականաց ի Տիզբոն և բռնացան ի վերա ամենայնի Ապուբաքր, Օթման և Օմառ, որպէս յառաջ ասացի[160]։

- Այլ մեք դարձցուք յառաջին ոճն, ուստի թողաքն ի Հայոց բան.

Թվին ՃԺԳ (664) եկաց իշխան Հայոց Համազասպ ամս Է (7)[161]։

Թվին ՃԺԶ (667) նստաւ հայրապետ տէր Անաստաս, ի գաւառէ Մասեացոտանէ, ի գեղջէ Ակոռոյ, ամս Զ (6)։ Սորա հրամանաւն Անանիայ Շիրակացին արար մեկնութիւն տումարի և զտնշարժ եղանակ նորին և մնաց անհաստատ[162]։

Եւ ապա Գրիգոր եկաց իշխան ամս Ժ (10)։ Ցաւուրս սորա նստաւ հայրապետ տէր Իսրայէլ, ի գաւառէ Վանանդայ, ի գեղջէ Ցօթմանայ, ամս Ժ (10)։ Եւ ապա տէր Սահակ հայրենօք ի Ձորոյփորոյ, ի գեղջէ Արքուաշինայ և մայրենօք ի Մազազայ, ի գեղջէ Բերդկանց, ամս ԻԴ (24)։

Յետ Գրիգորի եկաց իշխան Ներսեհ Կամսարական և միւս այլ Ներսեհ ընդ սոցա ամք Ը (8)։

Ապա Սմբատ Բագրատունի ամս Ի (20)։ Ցաւուրս սորա և տեառն Սահակայ վրդովեցաւ աշխարհս Հայոց. և Մրւոն գլուխ իսմայէլացոց ոստիկան առաքեաց ի Հայս Մահմետ անուն, այր ժանդ և չար, որ եկեալ քանդէր և աւերէր զաշխարհս մեր։ Եւ յետ նորա Արդլայ անուն ևս չարագոյն .ջան զնա, որ եկեալ

1 А Գ փխ. Դ։ 3 А վաղջան։ 4 А մկըրտեցաւ։ 6 Б վախճանի։ 8 Б փախըստեամբ։ 10 А մկըրտեաց։ 12 Б Թարուէզ։ 15 А ՁԸ փխ. ՁԲ։ 17 А ոչ չիք, Б յազգէ, Բորմ չիք։ 19 Б ԺԲ ամ, А եսպան։ 20 А Արուբաքր։ 21 Б յառաջն։ 22 Б թողաք։ 23 А բանն։ 27—28 А հրամանաւ։ 28 Б տօմարի։ 30 А յաւուր։ 32 А Ցօթմայ, հայրենեօք։ 33 А մայրենեօք, Մաղաղայ։ 35 Б միուս։ 38 А Մրվան։ 39 Б իսմայիլացւոց։ 40 А ժանտ։

աւերէր զՀայս, ընդ որս և զմեծ կաթողիկոսն Սահակ կապեալ շղթայիւք նա տանել ի Դամասկոս։

Եւ յետ Սահակայ նստաւ տէր Եղիայ, հրամանաւ Սահակա, ամս ԺԴ (14), ի դեղջէ Արճիշոյ։ Յաւուրս սորա և Սմբատայ եկն ի Հայս ոստիկան Օկբայ || անուն, որ և Մահմետ, խիստ և անագորոն, [ՄԺԳ] որ եկեալ ի Մրւանէ անհնարին չարիս անցոյց ընդ Հայս։ Եւ ժողովեալ ազգին Կամսարականաց և Սմբատայ և այլ իշխանացն Հայոց ի վերա Օկբայի ի Վարդանակերտ և կոտորեցին զամենայն զօրս նորա։ Եւ Օկբա Մահմետ փախստեա գնաց առ ամիրապետն իւր Աբդլմէլիք, զի մեռեալ էր Մրւան և առեալ անթիւ զօրս գալ հիմնայատակ առնել զՀայս։ Իսկ սուրբ կաթողիկոսն Սահակ դերեալն յԱբդլայէ դեռևս կայր կենդանի ի Դամասկոս։ Իբրև լուաւ զսպառնալիսն Օկբայի բազում թախանձմամբ խնդրէր երթալ առ նա և հրամայեցաւ գալ և եկեալ մինչ ի Խառան վախճանեցաւ. և մինչ յոգւոյ էր պաղատանաց թուղթ գրեաց առ Օկբայ. «Ոչ առնուլ զքէն վրիժուց ի Հայոց, եթէ զայդ առնիցես եկեսցէ աւրհնութիւն Աբրահամու և Իսմայէլի հօր քո և ի վերա քո». և ծալեալ զթուղթն եդ յափն իւր և ննջեաց։ Եւ Օկբա, որ և Մահմետ, իբրև լուաւ զմահն սրբոյն, եկն եկաց ի վերա գերեզմանին, շարժեալ զձեռն. «Սալամ ալէք» ասելով. յայն ժամ եղև ահագին նշան, զի մեռեալն զձեռն շարժեալ և ետ զթուղթն ի նա և իբրև ընթերցան վաղվաղակի կատարեաց զխնդիրն և կնքեաց մուրհակ ոչ աւերել զՀայաստան. այս եղև ի թվին ՃԾԱ (702) յաւուրս տէր Եղիայի։ Եւ յայսմ ամի առ Մահմետ զծովն Գեղամայ և զՍևան[163]։

Զի թէպետ և առ ժամն ոչ մեղանչեցին Հայոց, այլ յետ փոքր ինչ ամաց ՃԾԸ (709) թվին նենգութեամբ ժողովեցին զամենայն իշխանսն Հայոց ի Նաղչուան և ի Խրամ յԲ (2) եկեղեցիսն և այրեցին զնոսա և զկանայս և զմանկունս նոցա ի գերութիւն վարեցին, ընդ որս և զՎահան Դ (4)-ամեա, որդի Խոսրովու տեառն Գողթնայ, տարան և առյապայ պսակեցաւ մարտիրոսութեամբ յՕմարա[164]։

Թվին ՃԿԴ (715) նստաւ հայրապետ Յոհանէս, ի գաւառէն Տաշրայ, ի գեղջէն Օձնայ, ամս ԺԱ (11), այր իմաստուն և հանճարեղ։ Սա ծաղկերանկ և խորտեալ ոսկով զարդարէր զլինքն, այլ ի ներքոյ տատասկաձև խորք զգենոյր։ Եւ Վլիթ ոճն ոստիկան Հայոց պատմեաց զգեղեցկութիւն նորա առաջի Օմարայ։ Եւ նա կոչեաց զՅոհան առաջի իւր երև[ե]լ մեծաշուք փառօք, ասէ ցնա Օմար. «Քրիստոս և աշակերտքն իւր խոնարհութեամբ շըր-

---

1 A մեծ։ 3 A Եղիեա։ 4 A Արճշոյ։ 5 A անագորուն։ 6 A Մըրվանէ, անհուն փխ. անհնարին, անցուցանէր։ 7—8 A իշխանաց։ 10 A Մրվան։ 12 A դերեալսն։ 13 A Օկբէի։ 14 Б խն[դ]րէր, A գնալ փխ. երթալ։ 15 Б վախճանեցաւ, հոգւոյ։ 16 A առ ոստիկան, Б թէ փխ. եթէ։ 17 A քոյ։ 18 A քոյ, Б զթուխտն, A ննջեաց։ 19 Б զմահ։ 23 Б և (կընքեաց) չիք։ 26 A առ չիք։ 28 A իշխանս, Б Նախչուան։ 29 Б մանկունս։ 31 A տարան գերութիւն առ որ յապա։ 33—34 A հայրապետ տէր Յոհաննէս ի գեղջէն Օձնայ ի գաւառէն Տաշրայ։ 36 A ըզգենոյր։ 38 A նայ, Б զՀոհան, երեիլ։ 39 A աշակերտք։

ջէին, դու ընդէ՞ր այդպէս պճնազարդիս»։ Եւ նա ասէ ցնա. «Քրիստոս աստուածն մեր և աշակերտքն իւր նշանօք և զօրութեամբ փայլէին, իսկ մեք ոչ ունիմք զնոյն զօրութիւն, այլ ունիմք արտաքոյ զարդարել զերեսլիսս ի տեսութիւն բռամկաց. և թէ կամիս տեսանել առանձին, ‖ տեսցես զլիս». և ետես զնա ՄԺԵ խորք զգեցեալ ի մերկ մարմինն և յոյժ հիացեալ ամիրապետն ասէ ցնա. «Զոր խնդրես յինէն առայ և տաց քեզ»։ Ասէ ցնա հայրապետն. «Երեք բան խնդրեմ ի քէն՝ մի զի զոք բռնութեամբ մի դարձուցես ի գինս ձեր, և երկրորդ՝ զի ազատ լինիցին պաշտօնեայք եկեղեցոյ. և երրորդ զի հանցես յաշխարհէն Հայոց զազգն Յունաց, զի միտ նոցա առ թագաւորն իւրեանց է»։ Եւ նա ուրախութեամբ զխնդիրն կատարեաց մուրհակ կնքելով։ Սա արար ժողով ի Մանածկերտ և սրբեաց զՀայաստան ի քաղկեդոնական դաւանութեանցն, զի յԵզրէ մինչ ի սա Ե (5) կաթողիկոսաց ժամանակ խմորեալ էին Հայաստան աշխարհս ի ժողովս Քաղկեդոնի ի տեղիս-տեղիս, զոր սուրբն Յոհան սրբեաց և սահմանեաց դեկտեմբեր ԻԵ (25) տօնել Դաւթի և տեառն եղբօրն, և ասաց «Մեղաք յամենայնի և զ[պատուի] և անշարժ առնել զծնունդն Քրիստոսի յունվար Զ (6) ըստ կանոնաց տեառն եղբօրն». եղև այս թվին ՃՀԳ (724)[165]։

Թվին ՃՀԶ (727) նստաւ հայրապետ տէր Դաւիթ, ի դաւառէ Կոտայից, ի գեղջէ Արամօնից, ամս ԺԴ (14) յամս անիշխանութեան։ Ապա տէր Տրդատ, ի դաւառէ Վանանդա, ի դեղջէ Օդմսոյ, այր պարկեշտ և սուրբ, ամս ԻԳ (23)։ Եւ ապա միւս Տրդատ ի Գառնաւորաց ամս Գ (3). ի սորա առաջին ամն Աշոտ Բագրատունի եկաց իշխան ամս ԺԵ (15) ձեռամբ Աբդլայի թվին ՄԺԳ (764)։ Ապա տէր Սիոն եկաց հայրապետ, ի դաւառէ Արագածոյ, ի գեղջէ Բունից, ամս Ը (8)։ Սա աղօթիւք ղցամաքեալ աղբեւրն Սիմս լերին բղխեցոյց առաջի ոստիկանին յեպիսկոպոսութեան ժամանակին։ Ապա տէր Եսայի, ի Նիգ դաւառէ, Ցեղապատրուշ գեղջէ, ամս ԺԳ (13)։ Սա որդի գոլով կնոջ այրոյ սնեալ սրբութեամբ ի տաճարի տեառն։ Ի սորա Զ (6) ամին կացեալ իշխան Հայոց Սմբատ, որդի Աշոտոյ, ամս ԻԲ (22) թվին ՄԻԹ (780)։ Յետ Եսայեա եկաց հայրապետ տէր Ստեփաննոս, ի Դուին քաղաքէ, ամս Բ (2)։ Ապայ տէր Յովբ, ի Յոստանէ, ամ մի և կէս։ Ապա տէր Սողոմոն, ի քաղաքէն Գառնոյ, ամ մի։ Ապա տէր Գէորգ, ի դաւառէ Արագածոյ, ի գեղջէ Բուրականէ, ամս Գ (3)։ Ապա տէր Յովսէփ, ի դաւառէ Արագածոտանէ, ամս ԺԱ (11). ի սորա Թ (9) ամին և

1 Б այդպէս չիք, А նայ։ 2 А աշակերտօ, Б նշանեօք։ 4 А զարդարեայ, Б զերեսլիս, А ռամկաց։ 5 А (և) թէ չիք։ 7 Б ասա։ 8 Б Գ, մեն, А ոք։ 9 А զէնս, ազատք։ 10 Б եկեղեցւոյ, երրորդն։ 10 А յաշխարհէ։ 12 Б նա չիք։ 13—14 Б քաղկէդոնական։ 14 А դաւանութեանց, Եզրէ մինչև։ 16 Б Քաղկէդոնի, զոր, А Յոհան։ 17 Б սաւնել, А Դաւթի մարգարէին, Б եղբաւրն։ 19 А զծնունդ, Б եղբաւրն։ 20 А ի թվին։ 21—22 Б ի Կոտայից դաւառէ։ 25 Б ղա[ս]նաւորաց, А ի (սորա) չիք։ 26 А ԺԷ փխ. ԺԵ։ 28 А աղաւթիւք չիք, ցամաքեալ։ 32 А տան փխ. տաճարի, ի սորա ժամանակին և Զ։ 33 А Սմպատ, Եսայեայ։ 34 Б Ստեփաննոս։ 35 А Յովբ ի Ոստանէ։ 36 А զաղաքէն, Գրիգոր փխ. Գէորգ։ 37 А Յովսէփ։ 38 А Արաղածոյանէ, ի (սորա) չիք։

*Թվին ՄԾԱ (802) կացեալ իշխան Աշոտ, որդի Սմբատայ, Մսակերն ամս Ի (20)։ Յետ Յովսէփայ եկաց հայրապետ տէր Դաւիթ, ի գաւառէ Մազազոյ, ի գեղջէ Կակաղոյ, ամ Իէ (27). ի սորա ԺԹ (19) ամին և թվին ՄՀԱ (822) կա ‖ ցեալ իշխան Հայոց Սմբատ,* ՄԺՉ *որդի Աշոտոյ, ամս ԼԲ (32)։ Յետ Դաւթի տէր Յովաննէս Նստաւ հայրապետ, ի գաւառէ Կոտայից, ի գեղջէ Ովայից, ամս ԻԲ (22)։ Յաւուրս սորա և Սմպտոս իշխանին Ջոբր ամիրապետն ոստիկան առաքեաց ի Հայս Աբուսէթ անուն, որ շատ ոճիրս գործեաց և զԲագարատ իշխանն Տարօնոյ կապանօք ետ տանել առ Ջաբր. և ընակչացն Սասնոյ եկեալ սպանին զԱբուսէթ և զօրս նորա։*

*Յետ Յովանէսի Նստաւ հայրապետ տէր Զաքարիա, ի Կոտայից, ի դեղջէ Ձագայ, ամս ԻԲ (22), որ ի միում աւուր ի սարկաւագութենէ եհաս ի վեհագոյն աստիճան։ Ի սորա առաջին ամին և Սմբատայ ԼԲ (32) ամին և թվին ՅԲ (853) Ջաբր ամիրապետն ոստիկան առաքեաց ի Հայս զչար գազանն Բուղայ անթիւ զօրօք, դալ առնուլ զվրէժն Աբուսէթայ, զոր սպանին։ Ո՜հ, ո՜հ գառնութեան ամիս, որ անասելի չարիս արար և յոլովք զըրկեցան ի լուսոյն կենաց ուրացութեամբ և բազումք վկայութեամբ կատարեցան ի Քրիստոս ընդ որս և սուրբն Ատոմ Զ (6) ընկերօքն, ի Յաղրակ գաւառէ, Յորսիրանայ գեղջէ, մանուկ աիօք և կայտառ երեսօք զնոսա խնայելով, զի թերևս կարասցէ յանօրէն օրէնս իւր դարձուցանել, ըստ չար սովորութեան իւրոյ, բազում ջանիւ. և ոչ կարաց խախտել զնոսա ի սիրոյն Քրիստոսի։ Եւ յետ բազում կտտանաց հրամայեաց ի փայտէ կախել զնոսա։ Եւ սուրբն Ատոմ բարձրագոչ ձայնիւ քաջալերէր զընկերս իւր և ի նոյն կատարեցան ըստ նմանութեան տեառն, և ընդ նոսա այլ ևս ՃԾ (150) վկայք։ Իբրև ետես գազանաբարոյն Բուղայ զչար կամսն իւր յաջողեալ, ապա զբռամբ ածեալ զիշխանսն Հայոց զօրս խաբէութեամբ և զոմանս սաստիւ և զայլսն նենգիւ ընդ որս և զՍմբատ Բագրատունի, որ Աբլաբասն կոչեցաւ, կապանօք տարեալ առ Ջաբր ի Բաբելոն ընդ այլ իշխանացն, որ համարձակ խոստովանեցաւ զՔրիստոս աստուած առաջի ամենեցուն և ի կալանս սովով և ծարաւով վաղճանեցաւ և եդին զսուրբ մարմինն նորա մերձ ի դուրն Դանէլի մարգարէին։*

*Եւ յետ աւերման աշխարհիս Հայոց ժողովեցան մնացեալ նախարարքն առ մեծ կաթողիկոսն Զաքարիայ և հաւանութեամբ ամենեցուն կացուցին իշխան, մեծաչուք պատուով զաւրհնեալն Աշոտ, զորդի Սմբատայ Խոստովանողի, թվին ՅԳ (854)։ Սա վե-*

---

2 Б *Յովսեփայ*։ 3 АБ *Մաղաղայ*, Б *ամս*, А *ի (սորա)* չիք։ 4 А *Սմպատ*։ 5 А *Յովանէս*։ 6 А *Կոտէից*, *Օվայից*։ 7 Б *Սմբաաայ*։ 8 А *Ապուսէթ*։ 9 А *Տարոնոյ*, Б *կապանաւք*։ 10 А *զԱպուսէթ*, Б *զզօրս*։ 11 А *և ետ*, Б *Յովանիսի*, А *տէր* չիք, Б *Զաքարիայ*։ 11—12 А *Կոտէից*։ 15 А *Բուղա*։ 16 А *Ապուսէթայ*։ 17 А *գործեաց* փխ. *արար*։ 20 Б *ընկերաւքն*, А *Յորսիրանա*, А *աիօք*։ 21 А *կայտառք*, *խնաելով*, *կարացէ*։ 21—22 Б *յանուրէն աւրէնս*։ 23 А *ի (սիրոյն)* չիք։ 25 А *ձայնէր*։ 26 А *և (ընդ)* չիք, *այլ և*։ 27 А *կամս*։ 30 А *զՍմպատ*։ 31 А *Բաբիլոն*։ 32։ А *Քրիստոս*։ 33 Б *ծարաւով վախճանեցաւ*, А *մարմին*։ 34 Б *Դանիէլի*։ 37 А *իշխան մեծ պատուօվ*, А *զօրհնեալն*։ 38 А *Սմպատայ*։

հադոյն գտաւ ամենայն նախնեաց սրբութեամբ և մաքրութեամբ յինքն յանդուցանելով զմիտս ամե ‖ նեցուն հաւատացելոց և Մժէ· անհաւատից Յուդայեան գոլով շառաւիղ ի տոհմէ թագաւորաց, որք երբեմն թագադիրք լեալք Արշակունեաց և այժմ վերստին ստեղծեալ և պտղաբերեալ թագաւորութեամբն, զի այժմ սպառապետ կոչեցեալ։ Եւ տեսեալ զլաւութիւն նորա ոստիկանին, որ Ալի Արմէն կոչէր, կացոյց զնա իշխանաց իշխան զամս ԼԱ (31). և յետոյ պսակեալ եղև թագաւոր ամս Ե (5), զոր ասելոց եմ[166]։ Յետ Զաքարիայ նստաւ հայրապետ տէր Գէորգ, ի քաղաքէն Գառնոյ, ամս ԻԱ (21), ի ԻԲ (22) ամի իշխանութեանն Աշոտոյ, թվին ՅԻԴ (875)։

Այսուհետև կամիմ բացայայտել զթագաւորութիւն Բագրատունեաց որպէս յառաջ զՀայկազանց և զԱրշակունեաց։

*Եւ թագաւորեաց Աշոտ, յետ ԼԱ (31) [ամի] իշխանութեան իւրոյ, վասն առաւել խոնարհութեան իւրոյ, ընկալեալ թագ յերկուց թագաւորացն՝ Իսմայէլեան և Յունականէն, թվին ՅԼԶ (887) և ի գալստենէ Փրկչին ամք ՊՁԸ (888), ի հայրապետութեան Գէորգեա ԺԲ (12) ամս, օծեալ ձեռամբ նորա, ի բառնալոյ թագաւորութեան Արշակունեաց ամք ՆԼԴ (434)։ Եւ կացեալ սա թագաւոր ամս Է (7) վախճանի[167]։ Էին յաւուրս սորա Սահակ վարդապետ Հայոց Ապիկուրէշն կոչեցեալ և Համամ Արևելցի, որ զվերլուծութիւն առակացն գրեաց համեղ[168]։*

*Եւ յետ Աշոտի թագաւորեաց Սմբատ, որդի նորա, ամս ԻԴ (24), թվին Յ և Խ (891), կամակցութեամբ Լևոնի կայսերն Հոռոմայեցոց, որդո Վասլի, որ պսակեաց զհայրն նորա[169]։ Եւ նստաւ հայրապետ տէր Մաշթոց Խոտաճարակն ի Սևանայ ամ մի, յԸ (8) ամի թագաւորութեան Սմբատայ, սա յԱրագածոտնէ, ի Յեղիվարդայ։ Եւ յետ նորա տէր Յովաննէս մաշեալն անյաղթ փիլիսոփայ և պատմագիր, աշակերտ Մաշթոցի և ազգական, ամս ԻԸ (28), ի թվին ՅԽԶ (897)[170], Ի սրբոյն Գրիգորէ մինչև յայս լինին Ծ (50) հայրապետք, ըստ թվին յոբելինին։ Այլ աստանօր յայսմ ժամանակի ճմլի սիրտ իմ և դողան երիկամունք իմ, յորժամ յիշեմ զաղէտս անցիցն, որ ընդ մեզ, զի թէպէտ կային մեր թագաւորք, բայց ընդ ձեռամբ անօրինաց էին։ Եւ նոցա տէրութիւնն բաժանեալ ի Պարս, ի Բաբելոն և ի Պաղեստին, ի Միջերկրայս և ի միմեանց շորթել կամէին։ Բայց թուի թէ մեծագոյնն նոցա ի Բաբելոն նստէր, որ ասի յետնամնաց Մահմետի։ Այլ յորոց և էին ոստիկանք չարք և անոպայք[171] դային զկնի*

2 Б *հանդուցանելով*։ 4 А *լեալք*։ 5 А *ստեղձեալ*։ 5—6 Б *սպարապետ*։ 7 А *իշխանաց* չիք։ 9 А *Զաքարիա, Գէորգ*։ 10 А *իշխանութեան*։ 15 А *վասն առաւել խոնարհութեան իւրոյ* չիք։ 16 Б *թագաւորաց, յիսմայէլեան*։ 18 А *Գեորքայ*, Б *ամին ածեալ, և* փխ. *ի*։ 20 А *Ե* փխ. *է, վախճանի*, Б *յաւուրս*։ 21 А *Յարևելցի*։ 23 А *Աշոտոյ, Սմպատ*։ 24 Б *կայսերն*, А *Հոռվմայեցւոց*։ 25 Б *որդի*։ 27 А *Սմպատայ, սա յԱրագածոտնէ ի Յեղիվարդայ* չիք։ 28 А *Յովհաննէս*։ 30 Б *մինչ*։ 31 А *թվոյն*։ 34—35 А *տէրութիւն*։ 35 А *Բաբիլոն*, Б *և (ի)* չիք։ 35—36 А *Մէջերկրացս*։ 38 А *թվի*։ 37 А *Բաբիլօն*։ 38 А *անոպայքանք*։

միմեանց, որպէս յառաջագոյն պիղծն Բուղայ, յետոյ Աֆշին, որդի չարագործին Աբուսիթայ և ևս չար ապականիչն Յուսփայ, որ այժմ ընաջինջ արար զազգս մեր և զՍմբատ թագաւորն խեղդեաց, յետոյ կախեալ զփայտէ ի Դուին քաղաքի և փախեան որդիք արքայի՝ Աշոտ առ կայսրն Լևոն և Արաս ‖ ի Վրաց տունն։ Եւ ՄԺԸ տնօրէնն Աֆշին յորժամ դայս ամենայն գործեաց թագաւորեցոյց ինքն զԳագիկ ի տոհմէ Արծրունեաց, հակառակ թագաւորութեան ազգին Բագրատունեաց։ Էր սա քւեր որդի Սմբատայ թագաւորի զոր սպան[172]. Եւ Գագիկ նոր թագաւոր, որ ի Յարծրունեաց, շինեաց յԱղթամար կղզին եկեղեցի՝ յանուն սրբոյ Խաչին, թվին ՅԿԵ (916)։

Այլ երկիրս Հայոց Մնաց անթագաւոր զամս Է (7), զի այս Գագիկ Վասպուրականին տիրեաց մասնաւոր, այլ բարի, զկարգ սորա յիւրում տեղւոջն ասելոց եմ։

Եւ յետ Է (7) ամի անիշխանութեան Հայոց թագաւորեաց Աշոտ, որդի Սմբատայ, ի ձեռն թագաւորին Յունաց, որ եկեալ մեծաւ յաղթութեամբ տիրեաց հայրենեաց ամս Ը (8), ՅՀ (921) թվին։ Եւ աշխարհս յերկուս բաժանեցաւ՝ <Թագաւորութիւնն> Աշոտ Բագրատունի՝ յԱնի, ի տեղի հօր իւրոյ և Գագիկ Արծրունի ի կողմանս Վասպուրականի։ Սա որդի Դերանկանն ամս ԻԹ (29)։ Ապա Դերենիկ որդի նորա ամս ԺԷ (17) և ապա Ապուսահլ, եղբայր սորին և ապա Աշոտ, նորին որդի, սակաւ ժամանակ և ապա Բ (2) եղբարքն՝ Գուրգէն և Սենեքարիմ Մնաց թագաւոր ամս Ի (20)։ Այս զրաժին իւր ետ Վասլի և էառ զՍևաստ և զԿեսարիայ։ Այլ մեք դարձցուք ի վեր ուստի թողաք։ ՅԱշոտ Բագրատունի որ ի Է (7) ամին սորա և ի թվին ՅՀԷ (928) նստաւ հայրապետ տէր Ստեփաննոս ամ մի։ Ապա տէր Թէոդորոս ամս ԺԱ (11)։

Յետ Աշոտոյ թագաւորեաց Արաս, եղբայր նորա, ամս ԻԴ (24)։ Յաւուրս սորա նստաւ հայրապետ տէր Եղիայ ամս Է (7) և էր յաւուրս սոցա խաղաղութիւն։ Եւ զկնի սորա նստաւ հայրապետ տէր Անանիայ Մոկացի, առաջնորդ սուրբ ուխտին Վարագայ, ամս ԻԲ (22), այր սուրբ։ Յաւուրս սորա և Արասայ թագաւորին բազում անապատք և վանքորայք հաստատեցան. նախ՝ Կամրջաձոր, ի գաւառին Արշակունեաց, իսկ ի գաւառին Շիրակայ Հոռոմոսին կոչեցեալ վանք. և սուրբ ուխտն Նարեկ՝ Յուշտունեաց գաւառին, և վանք Հնձուց ի Կարին գաւառի։ Եւ յայսմ ժամանակի սուրբ հայրն Վարդիկ և Վանգոյ վանացն Թաթլոյ՝ Վիշապաձոր անուանեալ, ի բարձրաբերձ լերինն Կազզւանայ. և սուրբ հայրն Կարմիր ի Ծոփաց գաւառին բնակէր և բազում անուանի վարդապետք[173].

Եւ թագաւորեաց Աշոտ, որդի Արասայ, ամս ԻԷ (27), թվին

---

2 A Ապուսիթայ, Б չար չիք։ 5 A Աշոտայ, կայսրն Յունաց։ 8 Б քւէր։ 10 A յեկեղեցի։ 12 A յերկիրս։ 14 A իւրում։ 19 Б ի Յանի։ 20 A Դերանկան։ 21 Ь Արուսահլ։ 23 Б Մնացին։ 25 Б ուսա զոր Թոզաք։ 26 A Ե փխ. Է, ՅՀԵ փխ. ՅՀԷ։ 29 A աւուրս, հայրապետ չիք։ 30 A աւուր 33 A վանորայք։ 34 A Արշարունեաց փխ. Արշակունեաց։ 35 Б Հոռոմոսին, A ի գաւառին ի ըՄշտունեաց։ 38 Б և փխ. ի։ 39 A գաւառի։

ՆԲ (953)[171]։ Եւ յետ Անանիայի եկաց հայրապետ տէր Վահան ի Բաղայ ամ մի, որդի Ջուանշիրի՝ իշխանին Բաղաց։ Սա դաշնադիր եղև ընդ Վրաց քաղկեդոնա || կանաց և իմացեալ վարդապետք ՄԺԸ ժամանակին և հալածեցին զնա և նա փախստեամբ եկեալ ի Վասպուրական։ Եւ եդին կաթողիկոս զտէր Ստեփաննոս ամս Բ (2), ազգական Մաշթոցի։ Եւ ապա զտէր Խաչիկ, հարազատ Անանիայի, ամս ԺԹ (19), բանիբուն և անյաղթ, որ սանձեաց զբերանս հերձուածողաց[172]։

Եւ թագաւորեաց Սմբատ, որդի Աշոտոյ, որ Շահնշահ կոչեցաւ, այսինք[ն] գլուխ թագաւորաց, ամս ԺԳ (13), թվին ՆԺԹ (970)[176]։ Եւ նստաւ հայրապետ տէր Սարգիս ամս ԻԴ (24)։ Եւ թագաւորեաց Գագիկ, եղբայր Սմբատայ, ամս ԻԹ (29), թվին ՆԽԲ (993)։ Արդ՝ ի Ժ (10) ամին Գագկայ և ԻԷ (27) Վասիլ կայսեր Յունաց և Ռ և Դ (1004) ամի մարմնանալոյ տեառն և թվին ՆԾԱ փայլէր լոյս զարեգակն սուրբն Գրիգոր Նարեկացին, որդի Խոսրովու Անձևացեաց եպիսկոպոսին. և յայսմ ամի աւարտեաց զհոգեկեցոյց բանս իւր, զոր այժմ ունի եկեղեցի սուրբ և ոմանք ասեն, թէ յայսմ ամի փոխեցաւ ի Քրիստոս աստուածն[177]։

Եւ յայսմ ժամանակի Սենեքարիմ, որ Արծրունեաց թագաւոր կողմանցն Վասպուրականի, նեղեալ ի յանօրինաց ետ զՎասպուրական ի Վասիլ թագաւորն, բաց ի վանօրէիցն և առնու ի նմանէ զՍեբաստ իւր գաւառօքն, որպէս ասացաք։ Եւ են սոքա յորդոցն Սենեքարիմայ, որ սպանին զհայրն իւրեանց և փախստեա եկին ի Հայս, որ առաջին թագաւոր Գագիկ և վերջինս Սենեքարիմ։ Որ ի ժամանակս սորա բերաւ սքանչելօք ի Կոստանդնուպօլսէ ի Հայս յեթն մասանցն Քրիստոսի, եդեալ ի յոսկի մարգարտաշար տփի, ի ձեռն Ստեփաննոսի եպիսկոպոսի, եղբօր որդոյ Դաւթի սուրբ ճգնաւոր եպիսկոպոսի. և Սենեքարիմ թագաւոր հիմնարկեալ մօտ ի շիրիմ սորա մեծափառ եկեղեցի և եդ ի նմա անյայտ զբերեալ մասունսն, ի կենդանութեան Գրիգորի Նարեկացոյ, որ կոչի Ապարանից սուրբ խաչ։ Եւ նստաւ հայրապետ Պետրոս ամս ԽԲ (42), թվին ՆԿԵ (1016)։ Ի Զ (6) ամին սորա թագաւորեաց Յովաննէս, որ և Սմբատ, ամս Ի (20), սա որդի Գագկայ Շահնշահի։ Կայր եղբայր սորա Աշոտ անուն և հակառակ էր թագաւորութեան նորա և հաւանութեամբ ամենեցուն թագաւորեցուցին զնա մասանց ինչ։ Եւ յետ Յովանիսի թագաւորեաց Գագիկ. որդի Աշոտոյ, եղբայրն Գագկայ, որ ոչ տարեալ հող պատերազմի, որով վարի թագաւորութիւնն, այլ հանապազ ընթերցման պարապէր։ Եւ Յոյնք, բառ սովորութեան

2 Ա Բաղաց ամ, Ջւանշիրի իշխանի։ 4 Ա փախստականս։ 6 Ա ապա չիք, տէր· 7 Բ զբերանս։ 9 Ա Շահընշահ։ 12 Ա Սմպատայ։ 13 Ա ՆԾԱ փխ. ՆԽԲ, և ի ԻԷ։ 14 Բ ՌԴ փխ. Ռ և Դ, Ա բանին փխ. տեառն։ 17 Ա ունի չիք։ 19 Բ Արծրունեաց։ 21 Ա թագաւորն Յունաց։ 24 Ա փախըստեայ։ 25 Ա Սենեքերիմ։ 25—26 Ա Կոստանդնուպօլսոյ։ 26 Բ յէ։ 28 Բ որդւոյ։ 31 Բ Նարեկացւոյ։ 33 Բ Յովհաննէս, Ա Սմպատ։ 34 Ա սորա եղբայր։ 36 Բ Յովհաննիսի։ 37 Ա եղբօրն։ 37 Բ տար[ե]ալ։ 38 Ա թագաւորութիւն։ 39 Ա ընթերձման, Յունք։

իւրեանց խարկանօք, ուռ ինքեանս կոչեն ի սադրելոյ իշխանացն Սարգսի և || Գրիգոր Բճնեցոյ և արգելին զԹագաւորն ի կղզին ՄԺԹ Աղթամար և ինքեանք տիրեցին Հայոց ամս ԻԱ (21)[178]։

Եւ բարձաւ Թագաւորութիւն յազգէն Բագրատունեաց թվին ՆՂԲ (1043), որ տևեցին ամս ՃԾԸ (158) ի Թագաւորութենէ Աշոտի մինչև յայս Գագիկ յետին։

Այլ յառաջ քան զայս տէր Պետրոս հայրապետն արար մեծ ոքանչելիս ի Տրապիզոն քաղաքի, յաւուր մկրտութեան տեառն, առաջի մեծ Թագաւորի Վասլի, ջուր գետոյն յետս արգելեալ զօրութեամբ սուրբ խաչին և լոյս ճառագայթեալ ի վերա ջրոյն և Թագաւորն մկրտեցաւ ձեռամբ նորա ի ջուրն և յամօթ եղեն Յոյնք։ Եւ տարեալ Թագաւորն զտէր Պետրոս հայրապետն ի Սեաստ, զոր ետ Արծրունեաց և հանգեաւ անդ ի Թվին ՇԶ (1057)։ Եւ նստաւ հայրապետ տէր Խաչիկ, քեռ որդի տեառն Պետրոսի, ամս Զ (6)։ Եւ յետ սորա չափան եղև հայրապետութիւն զամս ԻԴ (24). զի ոչ տային Թուլլ Յունքն, զի անճարակ լեալ, ասեն, Հայք ի կրօնս մեր դարձցին։ Յայն ժամ Գագիկ արքայն Կարուց, զուն գործեալ վասն նորոգման հայրապետութեան, տայ զԿարս քաղաք իւր վիճակովն ի Թագաւորն Յունաց և փոխանակ առեալ զդղեակն Ծամընդոյ և հրաման ընկալեալ ի կայսերէն Տիօժլէ՝ ձեռնադրել հայրապետ Հայոց, զի յորժամ Վասիլ Թագաւոր տարաւ զտէր Պետրոսն ի Սևաստ, ոչ տային Թոյլ Յոյնքն համարձակութեամբ կատարել զհայրապետութիւն մինչև ցայս, որ Թվին ՇԺԴ (1065)։ Եւ նստաւ հայրապետ տէր Գրիգորիս, որ և Վահրամ, որդի Գրիգորի Մագիստրոսի, որդոյ Վասակա Նահատակի, յազգէ Պալհաւունոյ։ Սա Թողեալ էր զիշխանութիւն և միայնացեալ յանապատն և գտեալ զնա ի Սեաւ լեառն, տարեալ օծին հայրապետ և անուանեցին զՎահրամն, Գրիգորիս յանուն հօրն, կացեալ յաթոռն ամս ԺԷ (17)։ Սայ էր ի քաղաքէն Բջնոյ և Վկայասէր անուանեցաւ և ճառս բազումս Յունաց և Յասորոց Թարքմանեաց և մեկնեաց զարուեստ քերականութեան։ Սա եդ ի մտի երԹալ ի Հռոմ յերկրպագութիւն սուրբ առաքելոցն և յոչ կամաց ձեռնագրեաց զտէր Գէորգ փոխանակ իւր, զի ինքն նուիրեաց զինքն և հայրապետն գնաց ի Հռոմ և մեծապէս պատուեցաւ որպէս զլուսաւորիչն։ Եւ անտի նաւեաց գալ Յերուսաղէմ. և ակամայ նաւն եհան զնա յԵգիպտոս. և անդ բազում հրաշս արար և հագարացի Թագաւոր նոցա մեծաւ սիրով ընկալաւ զնա. և ետ զԵգիպտոս և զԱղէքսանդրիա զաԹոռն Մարկոսի Աւետարանչի յիշխանութիւն նմա. և անդ Թարքմանեաց զվարս հարանցն սրբոց։ Եւ յետ բազում ամաց դարձեալ գայ ի Հայս և ետես || զկաԹողի- ՄԻ կոսուԹիւն ի Դ (4) բաժանեալ[179]. տէր Գէորգ մեռաւ յանկմանէ

5 А ՄԾԸ փխ. ՃԾԸ, Թագաւորութենէն։ 6 А այս։ 9 А Թագաւորին։ 12 А Յոնք։ 16 Б Յոյնքն։ 17 А այն ժամ, Գակիկ։ 18 Λ տա։ 22 А Յունք։ 23 А զհայրապետութիւնն։ 27 А լերին, Б ածին։ 29 Б սա։ 33 А Գէորք։ 36 А էհան, Б զնան։ 38 Б աւետարանչին։ 39 Б և անդ նս Թարգմանեաց։ 40 А բազմաց, գայ չիք, կաԹողիկոսութիւն։ 41 А Գէորք։